# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B. P. 2111 Le Caire (R.A.E.) Tél. 3914908
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 1326 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 4 ՅՈՒՆՈՒԱՐ 1996 ՀԱՏԸ ՑԵՐԵՔ 25 Եգ. Դհկ. ١٩٩٦ عدد رقم ١٣٢٦ - الخميس ٤ يناير ١٩٩٦


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## ԿԵՆՍՈՒՆԱԿ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆՆԵՐՈՎ ԼԻ ՆՈՐ ՏԱՐԻ

Սովորութիւն է, որ ամէն տարեվերջի, փառալից մարդը ակամայ յետադարձ ակնարկ մը կը նետէ անցնող տարուան ընթացքին անցուդարձներու վրայ և պահ մը ինքսինքեան խորհրդածէ, թէ որքանով և ինչքանով այդ տարին եղած է բեղմնաւոր կամ ապարդիւն, ոչ միայն իր անձնական կեանքին համար այլ և իր համայնքին ու հայրենիքին:

**1995**-ը անցեալին կը պատկանի այլեւս: Որքան զարմանալի է, թէ ի՞նչ սրընթաց առագութեամբ **365** օրերը սահեցան ու տարիով մը ծանրաբեռնեցին անյիշատակ ժամանակներէ ծնունդ առած պատմութիւնը: Եւ մարդկութեան մեծագոյն խորհրդատուն, դաստիարակն ու ուսուցիչը այդ անցեալն է, որուն շարունակական ներկայութիւնը մեր ամենօրեայ քաղաքական, միջազգային թէ ազգային կեանքին մէջ միայն իր բարերար ազդեցութիւնը կրնայ ունենալ: Եւ քաղաքակիրթ աշխարհի պատմութեան անցեալին պատկանող էջերուն վրայ յստակ կերպով նշմարելի են հայ ժողովուրդին ձգած արիւնոտ սակայն ամբողջ դարերուն կուրծք տուած հետքերը:

Անցնող **1995** տարին եւս իր նախորդին նման,եղաւ ծանրակշիռ իրադարձութիւններով լեցուն տարի մը մեր հայ ժողովուրդին համար: Սակայն նշմարելի է, որ **1995** տարուան ընթացքին հայ ժողովուրդը որոշ չափով զգաց դրական գործընթացք: Բաղդատամամբ վերջին քանի մը տարիներու դժուարութեանց, հայրենիքի մէջ իրագործուած են քանի մը յաջողութիւններ:

Առաջին առթիւ դրական մեծ ոստում պէտք է նկատել ատոմակայանի վերանորոգումն ու ելեկտրումի արտադրութեան վերսկսիլը: Երկրորդ՝ կը տեղեկանանք թէ շրջափակումին պատճառով, տնտեսական նոր քաղաքականութիւն մը կը որդեգրուի, որուն պատճառով՝ շրջափակումն այլեւս իր ազդեցութիւնը պիտի չունենայ: Կայ նաեւ նախորդ տարուան բաղդատմամբ, ապրանքային արտածումներու աճում՝ **23** տոկոսով:Հողերու և բնակարաններու **90** տոկոսէն աւելի սեփականաշնորհում. Նաեւ ձեռնարկութիւններու **88** տոկոսի սեփականաշնորհում: Յիշենք նաեւ որ ազգային եկամուտն աճած է **10** տոկոսով:

Այս բոլոր յաջողութիւնները մեզ յոյս և վստահութիւն կը ներշնչեն որ **1996** տարին հայ ժողովուրդին համար պիտի ըլլայ հոգսերու թեթեւացում: Բնականաբար զինադադարը իր բարերար ազդեցութիւնը ունեցաւ Մայր հայրենիքի ամբողջ տարածքին վրայ: Խաղաղութիւնը նուաճեց արցախահայերուն մօտ: Ոչ մէկ զինուոր զոհուեցաւ **1995** տարւոյ ընթացքին: Ոչ մէկ մայր մտահոգուեցաւ իր զաւկին ճակատագրով: կը մաղթենք որ միջազգային խաղաղարար ուժեր տեղակայուին այս տարի:

Վստահաբար այս բոլոր վերոյիշուած յաջողութիւններու կողքին, որոնք կ՛արժանանան մեր համակրական վերաբերմունքին, կայ նաեւ հայրենի իրականութեան ժխտական երեսները, որոնց մասին նոյնպէս քաջ տեղեակ ենք. սակայն անոնք չեն կրնար արժանանալ մեր հաւանութեան: Մենք զանոնք կը նկատենք ժամանակաւոր և անցումային: Թող երբեք տկարութեան չվերագրուի հայրենի այսօրուայ ղեկավարութեան հասցէին ուղղուած մեր վստահութեան և գնահատանքին արտայայտութիւնը:

Թող նոր տարին երջանկութիւն և հպարտութիւն պարգեւէ մեր անմահ հայրենիքին ու հայ ժողովուրդին: Եղբայրութիւն և խաղաղութիւն հաստատէ մարդոց հոգիներէն ներս: Նոյնպէս թող վերջնական խաղաղութիւն տիրէ Միջին Արեւելքի մէջ: Բոլորիս աղօթքն է, որ ողորմածն Աստուած համայն մարդկութեան տայ սէր ու միաբանութիւն, և բոլոր բարի կամեցող մարդոց հաւնութիւն և երջանիկ կեանք:

Ս. Ծնունդով առաւել իմաստաւորուած, նոր տարին դիմաւորենք իմաստութեամբ և Աստուծմէ մեզի պարգեւած կեանքը հարստացնենք բարի գործերու կատարումով: Հետեւաբար թող **1996** տարւոյ ընթացքին սփիւռքահայ ամէն համայնքէ ներս տեղի ունենայ ընկերային օժանդակութեան յանձնախումբ մը, որ իր ձեռնհաս նուիրաբերումով հասնի անկարին ու չքաւորին, նիւթապէս թէ բարոյապէս: Յանձնախումբին պարտականութիւնը պէտք է ըլլայ սատար հանդիսանալ անգործին, հիւանդին, աղքատին, ծերին կամ երիտասարդին: Սոյն հարցին մասին դեռեւս պիտի անդրադառնանք յառաջիկային:

Անխորտակ կամքով, և ծառայելու ուխտով դիմաւորենք նոր տարին:

Շնորհաւոր, կենսունակ, յաջողութիւններով լի Նոր Տարի կը մաղթենք բոլորին:

## Հ.Մ.Մ.Ի ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՈՂՋՈՅՆԻ ԽՕՍՔԸ ԱՄԱՆՈՐԻ ԱՌԻԹՈՎ

Իր ետին ձգելով **74** տարիներու անցեալ մը, **1996**ին Հ.Մ.Մ.եան մեր ընտանիքը պիտի թեւակոխէ իր հիմնադրութեան **75** ամեակը:

"Հայրենիքի հետ, Հայրենիքի համար" ազգային նշանաբանով՝ հայ երիտասարդութեան ծառայութեան մէջ գտնուած Հ.Մ.Մ.ը, որ մեր ժողովուրդին հպարտութեան էջեր շնորհած է իր մարզական բազմաճիւղ գործունէութեամբ և յաղթանակներով, իր հիմնադրութեան **75**-ամեակի սեմին կ՛ողջունէ պատմակերտ շղթային նոր օղակները հանդիսացող Հայկական Սփիւռքի տարածքի գործող Հ.Մ.Մ.եան բոլոր նորահաս սերունդները.- միութենական թէ ղեկավար մակարդակի վրայ,- որոնք ազգապահպանման պատնէշի վրայ կը շարունակեն իրենց գործունէութիւնը՝ ի խնդիր մեր ազգային երազներու իրականացման:

Մեր ողջոյնի առաջին խօսքը՝ հայրենի անկախ պետականութեան, որ իր հովանին տարածելով հայրենաբնակ երիտասարդութեան առողջ դաստիարակութեան վրայ եւս, որոնցմէ պիտի դարբնուի մեր ժողովուրդի վառ ապագան: Երիտասարդութիւնն է մեր հայրենիքի յոյսերու ծաղիկն ու բոյրը: Նորանկախ և ազատ հայրենիքի մէջ ծիլեր արձակած Հ.Մ.Մ.եան մեր շարժումը վայելելով թիկունքը Հայկական Սփիւռքի Հ.Մ.Մ.եան ընտանիքին, կը մաղթենք, որ առաւել եւս ծաղկի, ամրապնդէ իր կառոյցները, խտացնէ իր շարքերը՝ ի խնդիր հայրենի երիտասարդութեան ազգային հայրենասիրական կազմաւորման, ողջմիտ կողմնորոշման և հայրենի անկախ պետականութեան ամրացման:

**75** ամեակի սեմին՝ շնորհաւորելով մեր Հայկական Սփիւռքի տարածքին գործող բոլոր շրջանները՝ կը հրաւիրենք զիրենք, որ համագործակցութեան օրինակելի ոգիով ձեռք երկարեն ոչ միայն իրարու, այլեւ՝ Հայրենիքի Հ.Մ.Մ.եան նորահիմ ընտանիքի: Մեր բոլորին հայեացքները ուղղուած են հո՛ն, Արարատի փէշերուն, ուր վերանորոգ կեանքով պիտի ծաղկի հայութեան երազը: Հ.Մ.Մ.ը որպէս Հայ ժողովուրդի յետ-եղեռնեան կեանքի ծնունդը, բացուեցաւ հայութեան երիտասարդական, մարզական կարիքներուն առջեւ և անսակարկօրէն ծառայեց, որ եղեռնէն զարնուած, որ որբացած հայու խլեակներուն ջամբելով ազգային առողջ դաստիարակութիւն՝ Սփիւռքի մէջ ազգակերտումը ապահովէ: Գործը, պայքարը պիտի շարունակուի և անոր նոր դրօշակակիրներն ու նոր ջահակիրները պիտի հանդիսանան նորահաս սերունդներու:

(Շար. տեսնել էջ 4)

## ԹՈՂ ԱՅՍ ՆՈՐ ՏԱՐԻՆ

Թող այս նոր տարին, լինի բարեբեր.
Թող խաղաղութիւն լինի աշխարհին.
Թող ապրի մարդը կամքով աներեր
Ու մայրը գտնի իր կորած որդուն...

Թող ազատ լինեն ազգերը գերուած.
Թող պայծառ լինի ամենուր, գարուն,
Թող որ կարկաչեն առուակները ժիր.
Երգեն, ծիծաղեն սրտերը տխուր...

Թող նոր կեանքի հետ մարդն էլ նորոգուի,
Թող վիշտն ու ցաւը իսպառ մոռանայ.
Թող կեանքը լինի վարդագոյն երազ.
Առօրեան չքնաղ տեսիլք դառնայ...

Թող որ բոլորը ապրեն երջանիկ.
Թող սէրն անսահման տարածուի փութով.
Թող ռազմի փոխան երգ ու պար լինի.
Ու եղբայր դառնան բոլորը սիրով...

Թող դրախտ Երկիր Նայիրին.
Թող հպարտ հնչեն մեր երգերը վառ.
"Ջախորդ օրերը" իսպառ հեռանան
Հայրենի երկնից ջինջ ու կենարար...

ՆԵՐՍԷՍ Տ. ՄԵՍՐՈՊԵԱՆ (ՊԱԼԱՅԵԱՆ)

ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԵՒ Ս. ԾՆՈՒՆԴԻ ԱՌԹԻՒ

ՃԱՀԱԿԻՐ

Կը շնորհաւորէ իր բոլոր աշխատակիցները, ընթերցողները եւ բարեկամները, մաղթելով անոնց քաջառողջութիւն խաղաղութիւն և երջանկութիւն

## ԴՈԿՏ. ԳԱՄԱԼ ԷԼ ԿԱՆԶՈՒՐԻ ԵԳԻՊՏՈՍԻ ՎԱՐՉԱՊԵՏ



Երեքշաբթի 2 Յունուար 1996-ին, Եգիպտոսի նախագահ Մոհամէտ Հոսնի Մուպարաքի յատուկ հրամանագրով Հանրապետութեան նոր վարչապետ ընտրեց Դոկտ. Գամալ Էլ Կանզուրի: Առ այդ, նոյն օրը առաւօտեան Եգիպտոսի վարչապետը Դոկտ. Աթէֆ Սիտքի, ներկայացուցած էր իր գլխաւորած կառավարութեան հրաժարականագիրը:

ՖՈՒԹՊՈԼ

## ՀԱՅԱՍՏԱՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻ ԱՇԽԱՐՀԻ ԱԽՈՅԵԱՆՈՒԹԵԱՆ ՄՐՑՈՒՄՆԵՐՈՒՆ

Անցեալ ամսուայ 12-ին, Փարիզի մէջ որոշուեցաւ 1998-ին Ֆրանսայի մէջ տեղի ունենալիք աշխարհի ֆութպոլի ախոյեանութեան զտումի խմբակները: 172 երկիրներու խումբերէն միայն 32-ը իրաւունք պիտի ունենան մասնակցելու աւարտականին: Խումբերը բաժնուած են ինը խմբակներու: Հետեւաբար Հայաստան 9-րդ խմբակին մաս կազմելով՝ պիտի մրցակցի Գերմանիոյ,Փորթուկալի, Ուքրանիոյ և Ալպանիոյ հաւաքականներուն հետ:

# ՆՈՐ ՏԱՐԻՆ ԵՒ Ս. ԾՆՈՒՆԴԸ



**ԻՐԵՆՑ ԲԱՐԵԿԱՄՆԵՐՈՒՆ, ՅԱՃԱԽՈՐԴՆԵՐՈՒՆ**
**ԵՒ ԱՇԽԱՏԱՒՈՐՆԵՐՈՒՆ**



## ԿԸ ՇՆՈՐՀԱՒՈՐԵՆ

| | | |
|---|---|---|
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>**ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆ**<br>*Ջերմագինս կը շնորհաւորեն իրենց բարեկամները,*<br>*ու սրտանց կը մաղթեն բոլորին*<br>*բարի եւ երջանիկ տարի* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>**ՀՐԱՉ ՍԻՄՈՆԵԱՆ**<br>*Ջերմագինս կը շնորհաւորեն իրենց բարեկամները,*<br>*ու սրտանց կը մաղթեն բոլորին*<br>*բարի եւ երջանիկ տարի* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>**ՆՈՒՊԱՐ ՍԻՄՈՆԵԱՆ**<br>*Ջերմագինս կը շնորհաւորեն իրենց բարեկամները,*<br>*ու սրտանց կը մաղթեն բոլորին*<br>*բարի եւ երջանիկ տարի* |
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>**ՎԱՐԴ ԱԼԵՔՍԱՆԵԱՆ**<br>*Ջերմագինս կը շնորհաւորեն իրենց բարեկամները,*<br>*ու սրտանց կը մաղթեն բոլորին*<br>*բարի եւ երջանիկ տարի*<br>**ETALEX** | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>**ՏԻԳՐԱՆ ՊՕՂՈՍԵԱՆ**<br>*Ջերմագինս կը շնորհաւորեն իրենց բարեկամները,*<br>*ու սրտանց կը մաղթեն բոլորին*<br>*բարի եւ երջանիկ տարի*<br>**REINZ** | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>**ՎԱՐՈՒԺԱՆ ԳԱԶԱՆՃԵԱՆ**<br>*Ջերմագինս կը շնորհաւորեն իրենց բարեկամները,*<br>*ու սրտանց կը մաղթեն բոլորին*<br>*բարի եւ երջանիկ տարի* |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԵՏՈՒԱՐԴ ԱՒԱԳԵԱՆ<br>*Հելիոպոլիս* | ՏԻԿ. ԱՆԱՀԻՏ ՍԱՐԳԻՍ<br>ԵՒ ԴՈՒՍՏՐԸ ՍՈՆԻԱ<br>*Հելիոպոլիս* | ՏԻԱՐ<br>ՊԵՏՐՈՍ ՄՈՎՍԷՍԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՎԱՀԱԳՆ ՏԵՓՈՅԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՍՈՒՐԷՆ ՊԱՅՐԱՄԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՀԱՅԿ ԻՐԱՏԵԱՆ<br>*Գահիրէ* |
| ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ<br>ՊԵՏՐՈՍ ՏԸՆԿՃԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՄԱՐՏԻԿ ՊԱԼԱԵԱՆ<br>*Հելիոպոլիս* | ՀԱՅԿ ՀԱՃԻ ԳԷՈՐԳԵԱՆ<br>ԵՒ ԶԱՒԱԿՈՒՆՔ<br>*Գահիրէ* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՅԱԿՈԲ ԱԼԵՔՍԱՆԵԱՆ<br>*Գահիրէ* | ԱՐԹԻՆԵԱՆ<br>ԵՂԲԱՐՔ<br>*Գահիրէ* | ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՆՈՐԱՅՐ ՍԻՄՈՆԵԱՆ<br>*Գահիրէ* |
| ՏԻԱՐ<br>ԱՒԵՏԻՍ ՄՈՎՍԷՍԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՎԱՐՈՒԺԱՆ ՏԱՏՈՒՐԵԱՆ<br>*Հելիոպոլիս* | ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ<br>ԳԸԶԸԼԵԱՆ ԿԷՎՐԷԿԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԱՐԹՕ ՍՐԱՊԵԱՆ<br>*Գահիրէ* | ԳՐԻԳՈՐ ԵՒ ՅՈՎՀԱՆՆԷՍ<br>ՊԱԼԹԱՅԵԱՆ ԵՂԲԱՐՔ<br>*Գահիրէ* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՄԻՍԱՔ ՉԷՉՃԷՆԵԱՆ<br>*Գահիրէ* |
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՆՈՐԱՅՐ ՏԷՕՎԼԷԹԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՀԱՅԿ ՆԱԳԱՇԵԱՆ<br>*Հելիոպոլիս* | ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԳԷՈՐԳ ԵՐԶՆԿԱՑԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԻԱՐ<br>ՅԱԿՈԲ ՊԱՍՄԱՃԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԻԱՐ<br>ԱՐԹՕ ՍԱՐԱՖԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԷՏՈՒԱՐ ԶԱՐԴԱՐԵԱՆ<br>*Գահիրէ* |
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՊԵՐՃ ԱՐԹԻՆԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԱՐԱՄ ԱԲԻԿԵԱՆ<br>*Հելիոպոլիս* | ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԺԱՆ ԻՍԿԵՆՏԷՐԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԻԱՐ<br>ՎԱՂԱՐՇ ԶԱՔԱՐԵԱՆ<br>*Հելիոպոլիս* | ՏԻԱՐ<br>ՍԻՄՈՆ ՉԱՄՔԷՐԹԷՆԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՀԱՆՐԻ ԲԵՏԵՐԵԱՆ<br>*Գահիրէ* |
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՊԵՐՃ ԱՍԱՏՈՒՐԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՊԵՏՐՈՍ ՈՍԿԵՐԻՉԵԱՆ<br>*Հելիոպոլիս* | ՆԱՅԼ<br>ՔՐՈՒՔՈՏԱՅԼ<br>*Գահիրէ* | ԼԵՒՈՆ ԵՒ ՅԱԿՈԲ<br>ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆ ԵՂԲԱՐՔ<br>*Գահիրէ* | ՏԻԱՐ<br>ՄՈՒՐԱՏ ՖՈՒԱՏ<br>*Գահիրէ* | ՏԻԱՐ<br>ՄԱՆՈՒԷԼ ԿԱՐՄԻՐԵԱՆ<br>*Գահիրէ* |
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԼԵՒՈՆ ՏԷՐ ՅԱԿՈԲԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՅԱԿՈԲ ՉՐԱՔԵԱՆ<br>*Հելիոպոլիս* | ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԺԻՐԱՅՐ ԱՐԹԻՆԵԱՆ<br>*Գահիրէ* | ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ<br>ՄԱՐԿՐԻԹ Պ. ՅԱԿՈԲԵԱՆ<br>*Գահիրէ* | ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ<br>« ԵՐՈՒԱՆԴ »<br>*Գահիրէ* | ՏԻԱՐ<br>ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԵԼԳՈՆԵԱՆ<br>*Գահիրէ* |
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԱՐԹՕ ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ<br>*Հելիոպոլիս* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՅԱԿՈԲ ԷՔՍԷՐՃԵԱՆ<br>*Հելիոպոլիս* | ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԷՏԻ ԳԱՍԱՊԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԷՏՈՒԱՐ ՔԻՒՓԷԼԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԻԱՐ<br>ՊԵՏՐՈՍ Յ. ԳՈԳՈՐԵԱՆ<br>*Գահիրէ* | ՆԿԱՐՉՈՒՀԻ<br>ԱՐՄԻՆԷ ԺԱՄԿՈՉԵԱՆ<br>*Գահիրէ* |
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՅՈԼԱԿ ԵՐԶՆԿԱՑԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՎԱՀԷ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ<br>*Հելիոպոլիս* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԴԱՒԻԹ ՄԻՐԶԱՅԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԻԿԻՆ<br>ԶԱՐՈՒՀԻ ԶՕՐԱՅԵԱՆ<br>*Գահիրէ* | ՉԷՉՃԷՆԵԱՆ<br>ԸՆՏԱՆԻՔ<br>*Գահիրէ* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԷՏՈՒԱՐ ՄԻՆՆԷԹԵԱՆ<br>*Հելիոպոլիս* |
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՖՐԵՏԻ ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՕՆՆԻԿ ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ<br>*Հելիոպոլիս* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԷՏՈՒԱՐ ՍԱՅԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՊԵՐՃ ՕՏԱՊԱՇԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԻԱՐ<br>ԳԷՈՐԳ ՍԱՐԳԻՍԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՓԻԷՌ ԵՐԱՄԵԱՆ<br>*Հելիոպոլիս* |
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԳԵՂԱՄ ԹՐԱՅԵԱՆ<br>*Գահիրէ* | ՏԻԱՐ<br>ԳԷՈՐԳ ԲՐՈՒՏԵԱՆ<br>*Հելիոպոլիս* | ՏԻԱՐ<br>ԱՐԹԻՆ ԹԱՇՃԵԱՆ<br>*Գահիրէ* | ՄԻՔԱՅԷԼԵԱՆ<br>ԸՆՏԱՆԻՔ<br>*Գահիրէ* | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԺՈՐԺ ՍԻՄՈՆԵԱՆ<br>*Հելիոպոլիս* | ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԿԱՐՕ ԱԲԳԱՐԵԱՆ<br>*Հելիոպոլիս* |

ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ

Ջերմագինս կը շնորհաւորէ իր անդամները,

ու սրտանց կը մաղթէ բոլորին

բարի եւ երջանիկ տարի

---

ԱՐԹՕ ԵՒ ԴԱՆԻԷԼ
ՃՈՒՃՈՒԵԱՆ ԵՂԲԱՐՔ

Ջերմագինս կը շնորհաւորեն իրենց բարեկամները,

ու սրտանց կը մաղթեն բոլորին

բարի եւ երջանիկ տարի

---

ELPAR SHOES
ՎՐԷԺ Լ. ՍԷՖԷՐԵԱՆ

Ջերմագինս կը շնորհաւորէ իր բարեկամները,

ու սրտանց կը մաղթէ բոլորին

բարի եւ երջանիկ տարի

---

Jacques Serop

TEXTILES Կահոյքի կերպասներ
վարագոյրներ, անձեռոցներ
և տարբեր տեսակի ծածկոցներ.

Upholstery fabrics, curtains, towels
& different kind of covers

Tel (03)4206347 Fax: (03)5466117

---

STUDIO PHILLIPE
AND
PHILIPPE PHOTO TRADE

Ջերմագինս կը շնորհաւորեն իրենց բարեկամները,

ու սրտանց կը մաղթեն բոլորին

բարի եւ երջանիկ տարի

---

Հ.Մ.Մ. – Ն.Ս.Մ.Մ. –

ՏԻԿՆԱՆՑ " ՄԱՐՕ " ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ

---

ՄԱՍՆԱԳԷՏ ԳՈՄՓԻՈՒԹԸՐԻ
ՃԱՐՏ. ԳԷՈՐԳ ԻՐԱՏԵԱՆ
*Գահիրէ*

ՏՈՔԹ.
ՏԻԳՐԱՆ Ժ. ՅՈՎԱԿԻՄԵԱՆ
ԱԿՆԱՎԵՐԱԲՈՅԺ
*Հելիոպոլիս*

ՎԱՐԴԳԷՍ ԵՒ ԱԼՊԵՐ
ՔՐԷՏԵԱՆ ԵՂԲԱՐՔ
*Գահիրէ*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՀԱՅԿ ԱՍԱՏՈՒՐԵԱՆ
*Հելիոպոլիս*

ՄԱՍՆԱԳԷՏ ԳՈՄՓԻՈՒԹԸՐԻ
ՃԱՐՏ. ԵՒ ՃԱՐՏ.ՀԻ
ՅԱԿՈԲ ԵՒ ԼԵՆԱ ԻՐԱՏԵԱՆ
*Գահիրէ*

ԱՍԱՏՈՒՐԵԱՆ
ԸՆՏԱՆԻՔ
*Կիպր*

---

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՆՈՐԱՅՐ ՊԷՆՕՀԱՆԵԱՆ
*Աղեքսանդրիա*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԼԵՒՈՆ ԳԱՂԹԱՑԵԱՆ
*Աղեքսանդրիա*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԲՒԶԱՆԴ ԲՐՈՒՏԵԱՆ
*Հելիոպոլիս*

ՏԻԱՐ
ԿԱՐՊԻՍ ԵԱԶԸՃԵԱՆ
*Գահիրէ*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԶԱՒԷՆ Մ. ՊԱԼԱԵԱՆ
*Մոնթրէալ*

ՄԱՐՏԻԿ ԵՒ ՌՈՒԲԷՆ
ԹԷՐԶԻՊԱՇԵԱՆ ԵՂԲԱՐՔ
*Գահիրէ*

ՊԵՐՃ ԵՒ ՊԱՐԳԵՒ
ՄԱԶԼԸՄԵԱՆ ԵՂԲԱՐՔ
*Աղեքսանդրիա*

ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ
ՅԱԿՈԲ ԱՆՍՈՒՐԵԱՆ
*Աղեքսանդրիա*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՊԵՏՐՈՍ ՊԵՏԻԿԵԱՆ
*Հելիոպոլիս*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԱՐՍԷՆ ԷՄԻՐԶԵԱՆ
*Հելիոպոլիս*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՇԱՆԹ Ս. ՊԱԼԱԵԱՆ
*Մոնթրէալ*

ՏԻԱՐ
ՆՈՒՊԱՐ ԿԵՐԻԿԵԱՆ
*Մոնթրէալ*

Հ.Բ.Ը. ՄԻՈՒԹԻՒՆ
*Աղեքսանդրիա*

ՏՈՒՔԹ. ՔՐԻՍԹԵԱՆ-
ԿԱՐՊԻՍ ԹՕՍՈՒՆԵԱՆ
*Աղեքսանդրիա*

ՏԻԿԻՆ
ՍԻՐԱՐՓԻ ՔԻԼԻՏՃԵԱՆ
*Հելիոպոլիս*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՎԱՀՐԻՃ ՃԵՐԷՃԵԱՆ
*Պէյրութ*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՎԱՀԷ Զ. ՊԱԼԱԵԱՆ
*Մոնթրէալ*

SARWAT STATIONARY
ԴՊՐՈՑԱԿԱՆ ՊԻՏՈՅՔՆԵՐ
*Գահիրէ*

ՏԻԿԻՆ
ԱՆԻ ԹՕՍՈՒՆԵԱՆ
*Աղեքսանդրիա*

ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ
ԱՐԹՕ ԱՐԹԻՆԵԱՆ
*Աղեքսանդրիա*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՆՈՒՊԱՐ ՏԷՕՎԼԷԹԵԱՆ
*Հելիոպոլիս*

Contractor
NABIL S. TOUTOUNGI
Heliopolis

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՅԱԿՈԲ ԳՈԼՈՅԵԱՆ
*Գահիրէ*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՎԱՀԱՆ ԳԱԶԱՆՃԵԱՆ
*Մոնթրէալ*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՆԱԶԱՐԷԹ ԳԱՐԹԱԼԵԱՆ
*Աղեքսանդրիա*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՍԱՐԳԻՍ ԹՕՍՈՒՆԵԱՆ
*Աղեքսանդրիա*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԲՒԶԱՆԴ ԶԱՔԱՐԵԱՆ
*Հելիոպոլիս*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԱՒԵՏԻՍ ՏԷՄԻՐՃԵԱՆ
*Պէյրութ*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՅԱԿՈԲ ՏԷՕՎԼԷԹԵԱՆ
*Գահիրէ*

ԺԻՐԱՅՐ ԵՒ ՄԱՐԱԼ
ՊԱԼԱԵԱՆ
*Հելիոպոլիս*

Ն. ԵՒ Ե.
ԴԱՒԻԹԵԱՆ ԵՂԲԱՐՔ
*Աղեքսանդրիա*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԽԱՉԻԿ ԳԱՍԱՊԵԱՆ
*Գահիրէ*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԽՈՐԷՆ ԳԱԼԸՆԵԱՆ
*Հելիոպոլիս*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՊԵՐՃ ԳՈԳՈՐԵԱՆ
*Մոնթրէալ*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԼԵՒՈՆ ԵԿԱՒԵԱՆ
*Լոս Անճելըս*

ՏՈՔԹ.
ՄԻՔԱՅԷԼ ԵՐԱՄԵԱՆ
*Կիպր*

ՏԻԱՐ
ՄԻՆԱՍ ՊԱՆՏՈՅԵԱՆ
*Աղեքսանդրիա*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՃՈՐՃ ՍԷՖԷՐԵԱՆ
*Գահիրէ*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՅԱԿՈԲ ՀԱՄԲԻԿԵԱՆ
*Հելիոպոլիս*

ՍԵՐԺ ԵՒ ԱԼԷՆ
ՍԱԳԱՅԵԱՆ ԵՂԲԱՐՔ
*Գահիրէ*

ՆԱՍԻՊ – ԹՈՐԳՈՄ
ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ
*Գահիրէ*

Հ.Մ.Ը.Մ.-ՆՈՒՊԱՐ
*Աղեքսանդրիա*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՄՈՒՇԵՂ ՊԱՍՄԱՃԵԱՆ
*Աղեքսանդրիա*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՅԱԿՈԲ ՔԷՇԻՇԵԱՆ
*Հելիոպոլիս*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԱՐԱ ՏԷՓՈՅԵԱՆ
*Հելիոպոլիս*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԱՆԴՐՕ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ
*Գահիրէ*

ՏԻԱՐ
ՆՇԱՆ ՎԱՐԴԵԱՆ
*Հելիոպոլիս*

ՕՀԱՆՆԷՍԵԱՆ
ԸՆՏԱՆԻՔ
*Գահիրէ*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՅՈՎՍԷՓ ԿԻՒՄԻՒՇԵԱՆ
*Աղեքսանդրիա*

ՍԵԴԻ ԵՒ ՊԵԼԻՆԱ
ԳՕՋՈՒՆԵԱՆ
*Աւստրալիա*

ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ
ՎԻԳԷՆ ՃԻԶՄԷՃԵԱՆ
*Հելիոպոլիս*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԽՈՍՐՈՎ ԶԱՔԱՐԵԱՆ
*Հելիոպոլիս*

GYMPEX
ԷՏՈՒԱՐ ՄԵԼԻՔԵԱՆ
*Գահիրէ*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԹԱԳՒՈՐ ԱՐԱՊԵԱՆ
*Գալիֆորնիա*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՄԿՕ ԽԱՆՃԵԱՆ
*Աղեքսանդրիա*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՍԱՐԳԻՍ ՎՈՒՔՈՒՖԵԱՆ
*Գահիրէ*

ՏՈՔԹ.
ՀՐԱՅՐ ՏՐԴԱՏԵԱՆ
*Հելիոպոլիս*

ՖՐԱՆՍԻՍ ՓԱՓԱԶԵԱՆ
ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ
*Գահիրէ*

ՏԻԿԻՆ
ԺԱԳԼԻՆ ՓԱՐԹԱՄԵԱՆ
*Հելիոպոլիս*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՅՈՎՀԱՆՆԷՍ ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ
*Աւստրալիա*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԱՐԱՄ ՍԱՀԱԿԵԱՆ
*Աղեքսանդրիա*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԱՐԱՄ ԳՈՒԹՆՈՒԵԱՆ
*Հելիոպոլիս*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԺՈՐԺ ԱՒԱԳԵԱՆ
*Գահիրէ*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԳԷՈՐԳ ԷՔՍԷՐՃԵԱՆ
*Հելիոպոլիս*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՊԵՐՃ ՔԷՉԷՃԵԱՆ
*Հելիոպոլիս*

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԱՐԹՕ ՓՈԼԱՏԵԱՆ
*Աւստրալիա*

ՋԱՀԱԿԻՐ
4 ՅՈՒՆՎ. 1996

## Հ.Բ.Ը.Մ. - ԳԱՀԻՐԷ

### ԿԱՐԵՒՈՐ ԱԶԴ

ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԻՒՆԸ, այսու կը յայտարարէ, թէ գործակցաբար ՊԱՆՔ ՄԻՍՐ դրամատան Շահարկման Աւանդապահներու Տնօրէնութեան հետ, հրապարակային աճուրդով պիտի վաճառէ բարերարուհի Ս. Ճ. Զագըրի կողմէ նուիրուած կալուածէն, Զամալէք թաղամասին մէջ գտնուող և իր սեփականութիւնը եղող 1750 քռ.մ. մակերեսով պարապ հողատարածք մը, որ կը գտնուի 20 Մոհամէտ Մազհար փողոցին վրայ:

Հրապարակային աճուրդը տեղի պիտի ունենայ, Կիրակի 14 Յունուար 1996-ի առաւօտեան ժամը 10-ին, ՊԱՆՔ ՄԻՍՐԻ աշտարակին 3րդ յարկը, 153, Մոհամէտ Ֆարիտ փողոց Գահիրէ, հեռ. 3561111 և 3562222

Աճուրդին պայմանատետրը կարելի է ստանալ փոխան ԵՓ. 100-ի,

1 - ՄԻՈՒԹԵԱՆՍ ԿԵԴՐՈՆԷՆ

15 Էմատ էլ Տին փողոց հեռ. 5919636

2 - ՊԱՆՔ ՄԻՍՐ դրամատան շահարկման աւանդապահներու Տնօրէնութենէն 153, Մոհամէտ Ֆարիտ փողոց

3 - Մասնագէտ-գնահատիչ ՇՈՒՔՐԻ ՄԻԽԱՅԻԼ ՍԱԼՄԱՅԻ գրասենեակէն, 2 Սոլիման էլ Հալապի փողոց հեռ. 5744931 և 5781907

********************************************

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ հոգեւոր հովիւ, Տ. Գալուստ Քհնյ. Դարբինեան և իր ազգականները, ներկայիւս շնորհակալութիւն կը յայտնեն Գահիրէի Ազգային Իշխանութեան անդամներու, Եկեղեցեաց Պատ. Հոգաբարձութեան, այլ հոգաբարձութիւններու պատ. անդամներուն, զանազան Միութեանց վարչութիւններուն, Գերապայծառ Պետրոս Եպս. Թարմունիի, Ն. Վսեմ. Լիազօր դեսպան,Դոկտ. Էտուարտ Նալպանտեանի, Ազգային վարժարաններու տնօրէնութեանց և ուսուցչական կազմին, զանազան ազգայիններուն և բոլոր անոնց որոնք ծաղկեպսակներով, նուիրատուութեամբ, հեռագրով կամ նամակներով և բարեսիրական հաստատութիւններու նուիրատուութեամբ ցաւակցութիւն յայտնեցին ողբացեալ՝

ԵՐԻՑՈՒՀԻ ԷԼՄԱՍՏ ԴԱՐԲԻՆԵԱՆԻ

մահուան առթիւ:

********************************************



## "ՋԱՀԱԿԻՐ"ԻՆ

Առ ի գնահատութիւն թերթիս ազգօգուտ գործունէութեան, Նոր Տարւոյ և Ս. Ծննդեան տօներու առթիւ, Մոնթրէալէն շնորհակալութեամբ ստացած ենք հետեւեալ նուիրատուութիւնները.

Տէր և Տիկին
Շանթ Պալաեան 500
Տէր և Տիկին Վահան Գազանճեան և զաւակը Արամ 125
Տէր և Տիկին
Պերճ Գոգորեան 125
Տէր և Տիկին
Զաւէն Պալաեան 125
Տէր Տիկին
Վահէ Պալաեան 125

Ողբ. Սանդուհի Զամպաքճեանի մահուան տխուր առթիւ վասն ցաւակցութեան Տիկին Տիգրանուհի Սիմոնեան կը նուիրէ 20

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Տիկ. Սիւզի Սէֆէրեան իր շատ սիրելի եղբօր ողբ. Արթին Սէֆէրեանի մահուան քառասունքին առթիւ կը նուիրէ.

Ս. Եկեղեցեաց Տիկնանց Խնամակալութեան 200
Գահիրէի Աղքատախնամին 300
Այծեմնիկ Հանգստեան Տան 300
Նուպարեան Ազգ. Վարժարանի Տիկնանց Խնամակալութեան 50
"Արեւ" Օրաթերթին 50
"Յուսաբեր" Օրաթերթին 50
"Ջահակիր Շաբաթաթերթին 50
(Ստանալ Գահիրէի Ազգային Առաջնորդարանէն)

Տիկ. Սոնիկ Պէրպէրեան իր շատ սիրելի մօրեղբօր ողբ. Արթին Սէֆէրեանի մահուան քառասունքին առթիւ կը նուիրէ

Գալուստեան Ազգ. Վարժ. Տիկնանց Խնամակալութեան 200

Արժ. Տ. Գալուստ Քհնյ. Դարբինեան իր երէցկնոջ ողբացեալ ԷԼՄԱՍՏ ԴԱՐԲԻՆԵԱՆԻ մահուան քառասունքին առթիւ կը նուիրէ.

Եկեղեցւոյ Պայծառութեան 50
Հայ Կաթողիկէ եկեղեցիին 50
Ս. Եկեղեցեաց Տիկնանց Խնամակալութեան 50
Գահիրէի Աղքատախնամին 50
Այծեմնիկ Հանգստեան Տան 50
Հայ Կարիքի Խաչին 50
Յուսաբեր Ակումբին 50
Հայ Գեղ. Միութեան 50
Կոկանեան Սրահին 50
Հայկական Ընթերցասրահին 50
Նիր Իսթ Հայ. Ակումբին 50
Հ.Մ.Ը.Մ.-Արարատին 50
Հ.Մ.Ը.Մ.-Նուպարին 50
"Արեւ" Օրաթերթին 50
"Յուսաբեր" Օրաթերթին 50
"Ջահակիր Շաբաթաթերթին 50
(Ստանալ Գահիրէի Ազգային Առաջնորդարանէն)

Ողբ. Սանդուհի Զամպաքճեանի մահուան տխուր առթիւ վասն ցաւակցութեան Պետրոս և Աւետիս Մովսէսեան եղբարք կը նուիրեն

Հայկական Ընթերցասրահին 10
"Ջահակիր" Շաբաթաթերթին 10

## ՍՏԱՑՈՒԱԾ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Շնորհակալութեամբ ստացանք ՊՐ. ՍԻՄՈՆ ՍԱՄՍՈՆԵԱՆԷ (ԱՄՆ) 35 տոլար, փոխան 1995 տարւոյ բաժանորդագինի:

## ԼԱՆՋԱԽԱՂԻ ՏՈՒՉՈՒԹԻՒՆ

Ն.Ս.Օ.Տ.Տ. ԳԱՐԵԳԻՆ Ա. ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ
ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ՍՐԲԱՏԱՌ ԿՈՆԴԱԿԻ
ԸՆԹԵՐՑՄԱՄԲ
ՇԱԲԱԹ 6 ՅՈՒՆՈՒԱՐԻ ԱՌԱՒՕՏՈՒՆ
Ս. ԾՆՆԴԵԱՆ ՊԱՏԱՐԱԳԻ ԸՆԹԱՑՔԻՆ
Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՀՈԳԵՒՈՐ ՀՈՎԻՒ
ԱՐԺ. Տ. ԳԱԼՈՒՍՏ ՔՀՆՅ. ԴԱՐԲԻՆԵԱՆ
ԿԸ ՍՏԱՆԱՅ ԼԱՆՋԱԽԱՉ ԿՐԵԼՈՒ ԱՐՏՕՆՈՒԹԻՒՆ
ՇՆՈՐՀԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ, ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ ԴԱՀԼԻՃԻՆ ՄԷՋ

ԳԱՀԻՐԷԻ Ս. ԵԿԵՂԵՑԵԱՑ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

---

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻ 1996 ՏԱՐՒՈՅ "ԵՐԵՒԱՆ" ՊԱՏԻ ՕՐԱՑՈՅՑԸ

(53-ՐԴ ՏԱՐԻ)
ՆԿԱՐԱԶԱՐԴՈՒԱԾ ՀԱՅՐԵՆԻ ԱՆՈՒԱՆԻ ՆԿԱՐԻՉ
ՄԱՐՏԻՐՈՍ ՍԱՐԵԱՆԻ
ԳՈՒՆԱՒՈՐ ՆԿԱՐՈՎ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ "ՆՈՒՊԱՐ" ՀՐԱՏԱՐԱԿՉԱՏԱՆ
Ն. ԵՒ Հ. ՍԻՄՈՆԵԱՆ ԵՂԲԱՅՐՆԵՐՈՒ

Ունենալու համար դիմել Սրահ ամէն երեկոյ կամ հեռ. 3914908

## "ՋԱՀԱԿԻՐ" ՇԱԲԱԹԱԹԵՐԹԸ ՆՈՒԷՐ ՁԵՐ ՍԻՐԵԼԻՆԵՐՈՒՆ

Այն ազգայինները, որոնք կը փափաքին Նոր Տարուան առթիւ "Ջահակիր" նուիրել՝ Հայաստանի կամ արտասահմանի իրենց ազգականներուն և բարեկամներուն, կրնան հաղորդել թերթիս վարչութեան (հեռ. 3914908) ամէն օր կ.ե. ժամը 8էն 12 (ի բաց առեալ Կիրակի օրերէն): Իսկ Աղեքսանդրիոյ մէջ, ընկ. Վրէժ Սէֆէրեանի: Տարեկան բաժանորդագրութեան սակն է 20 եգ. ոսկի (պարզ փոստով) և 35 եգ. ոսկի (օդային փոստով):

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ "ՋԱՀԱԿԻՐ"Ի

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ

ՏՐԱՄԱԴՐԵԼԻ ԵՆ

ԱԻԱՆԴԱԿԱՆ ԴՕՓԻԿ, ԼԱՀՄԱՃԻՒՆ, ՔՈՒՊԷՊԱ, ՄԱՆԹԸ, ՏԵՐԵՒԻ ԼԻՑՔ ԵՒ ԳԱՆԵԼՈՆԻ

Բոլոր անոնք որոնք կը փափաքին ունենալ, թող հաճին դիմել սրահ ամէն երեկոյ ժամը 7 -11 և կամ հեռաձայնել 3914908 թիւին:

---

## Հ.Մ.Մ.Ի ՈՂՋՈՅՆԻ ԽՕՍՔԸ ԱՄԱՆՈՐԻ ԱՌԻԹՈՎ

( Շար. Ա. էջէն )

*Հ.Մ.Մ.ականներ,*

*Մեր սիրելի և պանծալի միութեան հիմնադրութեան 75-ամեակն է: 75-ամեակը մեզ բոլորս կը կոչէ միութենական գիտակցութեան և պատասխանատուութեան, որպէսզի ձեռք-ձեռքի տուած, մեր միակամութեամբ զօրացած ո՛չ միայն փառաւորենք մեր միութեան անցած ճանապարհը, գնահատենք այդ ճանապարհին վրայ զոհաբերուած,- մահացած թէ կենդանի,- նուիրեալներու վաստակը, այլեւ՝ զայն վերածենք կարեւոր հանգրուանի՝ դէպի ապագան նետուած ծրագիրներով: Ծրագիրներ, որոնք պիտի զարգացնեն մեր մարզական կեանքին տարբեր ճիւղերը, պիտի զօրացնեն մեր միութենական կառոյցներն ու ակումբները, պիտի համախմբեն երիտասարդութիւնը մեր շուրջ, պիտի ներգրաւեն պատանիները մեր մարզական շարքերէն ներս՝ "Հ.Մ.Մ. միշտ պատրաստ" նշանաբանով:*

*Նոր Տարին կը բացուի հայութեան կեանքին համար Հ.Մ.Մ.ի հիմնադրութեան 75-ամեակի տարին ըլլալու ցանկութեամբ:*

*Շնորհաւոր Նոր Տարի:*

*Հ.Մ.Մ.ի*
*ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ*

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B. P. 2111 Le Caire (R.A.E.) Tél. 3914908
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 1327 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 25 ՅՈՒՆՈՒԱՐ 1996 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 25 Եգ. Դհկ. ١٩٩٦ الخميس ٢٥ يناير - ١٣٢٧ عدد رقم


## ԼԵՒՈՆ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ.–

### "Խաղաղ, ստեղծագործ աշխատանք՝ ի բարօրութիւն և ի փառս մեր հնգամեայ անկախ հանրապետութեան "

### ՀՀ ՆԱԽԱԳԱՀԻ ԱՄԱՆՈՐԻ ՈՒՂԵՐՁԸ ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ

*Սիրելի հայրենակիցներ,*

*Անցեալ տարուայ Ամանորի մաղթանքում ես յոյս էի յայտնել, որ 1995 թուականը կը ստանայ մեր ժողովրդի հոգսերի թեթեւացման և անկախ պետականութեան շօշափելի արգասիքների դրսեւորման տարի:*

*Այսօր, ես խորին գոհունակութեամբ այդ յոյսը լիովին արդարացուած կարող եմ համարել:*

*1995 թուականն, ի տարբերութիւն անկախութեան նախորդ տարիների, իսկապէս եղաւ բեկումնային՝ տնտեսութեան բնագաւառում առկայ դրական միտումների ամրապնդման, դրամի արժէքի և գների համակարգի կայունացման, արտաքին առեւտրի աշխուժացման, բնակչութեան կենսամակարդակի թէկուզ դանդաղ, բայց նկատելի բարձրացման տեսակէտից:*

*Համոզուելու համար հարկ չկայ դիմել վիճակագրական տուեալների և տնտեսական ցուցանիշների օգնութիւնը. բաւական է տեսնել երթեւեկող մեքենաների քանակը, շուկաների ու խանութների առատութիւնը, մարդկանց ժպիտն ու անող լաւատեսութիւնը:*

*Հարկ չկայ նաեւ հաւաստել, որ այդ ամէնը պարտաւոր ենք պահպանել ու խորացնել առաջիկայ տարուայ ընթացքում՝ մեր ժողովրդին ապահովութեան և կայուն յառաջընթացի զգացողութիւն ներշնչելու համար, քանզի առանց այդ զգացողութեան անհնար է պատկերացնել Հայաստան երկրի բարգաւաճման բաղձալի հեռանկարը:*

*Մեր ժողովուրդը չափազանց թանկ գին վճարեց անկախութեան և Արցախի ազատագրութեան համար: Վճարեց սակայն ոչ թէ ակամայ, այլ գիտակցաբար: Տառապեց բայց դիմացաւ, նեղսրտեց բայց տոկաց, քանզի վեհ էր նպատակը և անսակարկելի:*

*Ժամանակից առաջ ընկնելով, կարծում եմ, արդէն իսկ իրաւունք ունենք սա համարել անօրինակ սխրագործութիւն, որն արժանանալու է սերունդների անմնացորդ ակնածանքին: Եւ քանի որ չկայ սխրագործութիւն որ չհասկացուի, չկայ ազնիւ ջանք, որ արդիւնք չտայ, չկայ քրտնաթոր մեղու, որ ծիլ չարձակի, մեր ժողովրդի գործադրած ահռելի ճիգն էլ, անկասկած, պէտք է տար իր պտուղները: Ուստի պատահական չէր, որ 1995 թուականը դարձաւ պտղաբերութեան առաջին տարին. հունձքը՝ թէև համեստ բայց յուսադրող:*

*Իշխանութեան մարմինների, արդիւնաբերողների, գիւղական աշխատաւորութեան, գործարար աշխարհի, հանդարտ, տքնաջան աշխատանքի շնորհիւ, կարելի է ասել, ժողովրդի կեանքն այս տարի աստիճանաբար մտաւ բնական հունի մէջ, իր առօրեայ հոգսերով ու դժուարութիւններով բայց կանխատեսելի ընթացքով: Տեղի չունեցաւ որեւէ ցնցում կապուած դրամի կուրսի, աղանի, գների փոփոխութեան, ապրանքների բացակայութեան կամ տնտեսական բնոյթի այլ երեւոյթների հետ:*

*Տնտեսական կայունացման գործում անշուշտ, իր վճռական դերը խաղաց միջազգային ֆինանսական կազմակերպութիւնների աջակցութեամբ մշակուած Հայաստանի սոցիալ տնտեսական զարգացման 1995 թուականի համալիր ծրագիրը ի չիք դարձնելով նրա իրագործման հետ կապուած բոլոր յոռետեսական գուշակութիւնները:*

*Տնտեսական կայունացման միտումների ամրապնդումից և մաքրոտնտեսական հաւասարակշռութեան վերականգնումից բացի 1995 թուականը Հայաստանի տնտեսական կեանքում նշանաւորուեց նաեւ մի շարք կենսական ձեռնարկումների, իրականացման առումով: Շահագործման յանձնուեցին Մեծամօրի աթոմակայանը, Հեր-Հերի ջրամբարը, Արաքսի կամուրջը, Տաւուշ-Իջեւան ավտոճանապարհը, ռազմարդիւնաբերական համալիրի մի քանի արտադրամասեր և այլն:*

*Ուզում եմ յատկապէս գնահատել աթոմակայանի վերականգնման պատասխանատու ծրագրին մասնակցած բոլոր մասնագէտների, գիտնականների,շինարարների բարձրորակ աշխատանքը, որի շնորհիւ Հայաստանը մասամբ վերականգնեց իր էներժետիք անկախութիւնը: Այդ առթիւ աթոմակայանի աշխատակիցներին մաղթում եմ ամենայն բարիք վստահութիւն յայտնելով, որ կայանի անխափան ու անվտանգ գործարկումը դուք կը դիտէք ձեր սրբազան պարտականութիւնը և պետութեան պատուի խնդիրը:*

( Շար. տեսնել էջ Բ. )

## ԺՈՂՈՎ ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹԵԱՆ ԼՈՒԾՄԱՆ ՇՈՒՐՋ

Տեղեկացանք որ Ուրբաթ 19 Յունուար 1996-ին, Մոսկուայի մէջ ԱՊՀ-ի անդամ երկիրներու մասնակցութեամբ, վեհաժողով մը գումարուած է, որուն ընթացքին օրակարգի հարց եղած է Լեռնային Ղարաբաղի հակամարտութիւնը: Հաղորդուած է թէ Մոսկուայի միջնորդութեամբ, դրական որոշումներ առնուած են Ղարաբաղեան հիմնահարցի խաղաղ կարգաւորման առընչութեամբ:

Ժողովին ներկայ գտնուած են ՀՀ նախագահ Լեւոն Տէր Պետրոսեան և Ատրպէյճանի նախագահ Հէյտար Ալիև, որոնք նաեւ կողմնակի հանդիպում մը ունեցած են իրարու հետ: Երկխօսութեան գլխաւոր հարցերը եղած են ղարաբաղեան հակամարտութեան կարգաւորում ինչպէս նաեւ խաղաղութեան համաձայնագիր մը ստորագրել Հայաստանի և Ատրպէյճանի միջև:

## ԳԱՐԵԳԻՆ Ա. ԿԱԹՈՂԻԿՈՍ ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐ ԿԸ ԺԱՄԱՆԷ



Ամենայն Հայոց Կաթողիկոս Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. և Արեւելեան թեմի առաջնորդ Գերշ. Խաժակ Արք. Պարսամեանի "Հռաշափառ"ի արարողութիւն ընթացքին

ՆԻՒ ԵՈՐՔ: Ամենայն Հայոց կաթողիկոս Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա., Չորեքշաբթի 10 Յունուարին Նիւ Եորքի ժամանեց, ընկերակցութեամբ գաւազանակիր Արտակ Արք. Տիգրանեանի: Օդանաւակայանը դիմաւորած են ներկայացուցչական անձնաւորութիւններ գլխաւորութեամբ Արեւելեան թեմի առաջնորդ Գերշ. Խաժակ Արք. Պարսամեանի:

Նոյն օրը երեկոյեան, Ս. Վարդան Մայր Տաճարին մէջ տեղի ունեցած է միջեկեղեցական "Հռաշափառ"ի արարողութիւն: Ապա Առաջնորդարանի հանդիսրահին մէջ ընդունելութիւն մը սարքուած է:

Նորին Սրբութիւնը ամսոյս 15-ին ժամանեց Ուաշինկթըն, ուր հանդիպում ունեցաւ Աշխարհի Դրամատան ղեկավարներուն հետ ու շնորհակալութիւն յայտնեց անոնց, Հայաստանին մարդկային օգնութեանց համար:

Վեհափառ Կաթողիկոսը Ուաշինկթընի մէջ "Հրաշափառ"ով մուտք գործեց Ս. Մարիամի Հայոց եկեղեցին, ինչպէս նաեւ հանդիպում ունեցաւ միութիւններու երիտասարդութեան հետ, ու տեղի ունեցաւ խնճոյք:

Նորին Սրբութիւնը ամսոյս 16-ին Սպիտակ տան մէջ հանդիպում ունեցաւ նախագահ Պիլ Գլինթընի հետ, որուն կ'ընկերակցէր Գերշ. Տ. Խաժակ Արք. Պարսամեան և ԱՄՆ-ի մօտ ՀՀ դեսպան Պր. Ռուբէն Շուկարեան: Ամենայն Հայոց Կաթողիկոսը նախագահ Գլինթընի պարգեւատրեց Ս. Գրիգոր Լուսաւորիչի շքանշանով, որպէս գնահատութիւն Հայաստանի նկատմամբ ԱՄՆ-ի ցուցաբերած հսկայ օժանդակութեան և Հայաստանի անկախութեան նեցուկ կանգնելուն:

Հանդիպումի ընթացքին անոնք քննարկեցին Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան

( Շար. տեսնել էջ 4 )

## ՖՐՈՒԱՆՍՈՒԱ ՄԻԹԵՐԱՆԻ ՄԱՀԸ ՈՒ ԹՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

Երկուշաբթի 8 Յունուար 1996-ին, իր մահկանացուն կնքեց Ֆրանսայի նախկին նախագահ Ֆրանսուա Միթերան, 79 տարեկանին, յետ երկարատեւ հիւանդութեան: Ան վերջին տարիներուն կը տառապէր քաղցկեղի հիւանդութենէն:

Հանգուցեալը իմաստուն նախագահ մը եղած է և հաւատացած ընկերվարական գաղափարներուն: 14 տարի նախագահած է և դարձած միջազգային քաղաքական մեծագոյն դէմքերէն մին: Ան յատկապէս աշխատեցաւ Եւրոպայի միութեան համար և եւրոպական պետութիւններու մէջ անկատու տեղ մը գրաւած էր իր իշխանութեան շրջանին:

Յիշենք թէ հանգուցեալ նախագահը 1987-ին, եւրոպայի առաջին նախագահն էր որ ճանչցաւ հայոց ցեղասպանութիւնը:

Միթերան իր ողջութեան կտակած էր թաղուիլ իր ծննդավայր Կարնաք քաղաքին՝ Մոնթ Պէվրայի ընտանեկան դամբարանին մէջ: Այս գծով յուղարկաւորթիւնը տեղի ունեցաւ Հինգշաբթի 11 Յունուարին, ի ներկայութեան 75 պետութիւններու ղեկավարներու, նաեւ 1300 օտարազգի պաշտօնատարներու "Նոթըր Տամ" պատմական տաճարին մէջ: Թաղման արարողութեան մասնակցեցան նաեւ Եգիպտոսի և Հայաստանի նախագահներ՝ Հոսնի Մուպարաք և Լեւոն Տէր Պետրոսեան:

( Շար. տեսնել էջ 4 )

## ՄԵՂՐԻԻ ԿԱՄՈՒՐՋԻ ԲԱՑՈՒՄԸ

Սահմանային Արաքս գետի վրայ գցուած 192 մեթր երկարութեամբ կամուրջը յուսալի աւտոուղեգծով կապեց Հայաստանն ու Իրանը:

Այն երկու երկրների միջեւ կը նպաստի տնտեսական յարաբերութիւնների ու առեւտրի զարգացմանը նրանց միջեւ: Այս հանգամանքը բազմիցս ընդգծուեց կամրջի շահագործման յանձնման հանդիսաւոր արարողութեան ժամանակ, որը տեղի ունեցաւ Դեկտեմբեր 26-ին:

Մեղրի էին ժամանել փոխնախագահ Գագիկ Յարութիւնեանը, վարչապետ Հրանդ Բագրատեանը, ԱԺ փոխնախագահ Արա Սահակեանը, կա-

( Շար. տեսնել էջ 4 )

ՄՈՆԹՐԷԱԼԱՀԱՅ ԿԵԱՆՔ

## ՊԱՐՈՅՐ ՄԱՍԻԿԵԱՆԻ 18-ՐԴ "ԱՂՋԻԿՏԵՍ"Ը

Կիրակի 26 Նոյեմբեր 1995 երեկոյեան ժամը 6.30ին, վարագոյրը կը բացուէր, ընկերակցութեամբ զուարթ երաժշտութեան, ուր եգիպտահայ ծանօթ թատերագիր Պարոյր Մասիկեանի "Աղջիկտես"ը անգամ մը եւս կ'անմահանար "Հ.Կ.Մ.-ի Ալիշանի թատերասէրներ"ու խումբով:

Թատրերգութեան նիւթը՝ պայքարն է ամուսնութեան թեկնածուներուն միջեւ ուր ան-կեղծ ու մաքուր սէրը իր բարո-յականով կը յաղթանակէ նիւ- թականի շռայլ այլ գունաւոր երազներուն, անգամ մը եւս ապացուցանելով, թէ ամուս-նութիւնը շուկայական սակար- կութեան վրայ դրուած ապ-րանք չէ:

Այս բարձրորակ նիւթը, համեմուած էր նոյնորակ նուրբ սրամտութիւններով, ուր բեմական հասուն փորձառութեամբ ներկայացուց "Հ.Կ.Մ."-ի թատերախումբը, թերեւս... յաջողելով գանատահայ հասարակութեան խնդուքի ծիծաղը... դուրս քաշելով մեզ՝ հանդիսականներս, գէթ քանի մը ժամ, առօրեայ մեր մտահոգութիւններէն:

Գրիգոր Արընեան (հայրը) իր վարժ ու արագ խաղարկութեամբ կրցաւ դառնալ առանցքը իր խաղընկերներուն միջեւ, պահելով ներկայացման ընթացքը մինչեւ վերջ: Անի Էվերեկլեան (մայրը) իր ձայնի անոյշ ելեւէջներով ու դէմքի խաղարկութեամբ եղաւ տիպար մայր մը,պահելով բեմական ներդաշնակութիւնը իր ամուսնոյն հետ: Շնորհալի էր Հուրիկ Պալասանեանի (աղջիկը) ներկայութիւնը բեմին վրայ: Ան իր տխրութեամբ կրցաւ "contrast" մը ստեղծել ներկայացման զուարթ մթնոլորտին, առաւել եւս շեշտելով այդ զուարթութիւնը: Միհրան Աւետիսեան (փաստաբան) իր ինքնավստահ խաղարկութեամբ, արդարացուց իր դերը:

Անդօ Քէշիշեան (Թովմասեան հայր) անկեղծօրէն կրցաւ տալ այն յուսահատ հօր դերը, որ իր որդւոյն և մանաւանդ իր սկզբունքներուն սիրոյն, կ'ընդունէր նոյնիսկ նախատութիւններ հանդուրժել: Իսկ Ալիս Նէրկիզեան (Թովմասեան մայրը) իր դէմքի պերճախօսութեամբ (միակ բառը՝ "խայտառա՛կ") կրցաւ յաջող դուրս գալ: Ինքնավստահ և ուժեղ էր Անի Պարթեւեան իր քարտուղարուհիի դերին մէջ, ուր յաջող կերպով ներկայացուց Օրէնքն ու Արդարութիւնը: Օ՛հ, Պերճ Պարթեւեան և Թօնի Ջէրճէզեան (արհեստաւոր հայր և որդի) մէյ-մէկ ուրոյն տիպարներ էին, որոնց մուտքն ու ելքը սրտանց քրքիջներ կը յառաջացնէին: Իսկ էպրուկ Հանըմի միջնորդի դժուարին դերը մարմնաւորած էր Բերկրուհի Էվերեկլեան, որ բեմական ճկունութեամբ և յստակ առոգանութեամբ յաջողեցաւ իսկական էպրուկ Հանըմ մը դառնալ:

Հուսկ ուրեմն Դաւիթ Յ. Էվերեկլեան "խռուած" թեկնածուին դերով: Արդեօք կարելի՞ էր գտնել տխրութեամբ և ուրախութեամբ յոյսերով կամ յուսխաբութեամբ, ժպտելով կամ արցունքով աւելի "շուարած" թեկնածու մը, քան արուեստագէտ Դ. Էվերեկլեանը... չե՛մ կարծեր... Ան տիտան մըն էր բեմին վրայ: Տարիներու ընթացքին Պր. Էվերեկլեան եղած է մոմ մը, սակայն անսպառ մոմ մը, որ որքան լոյս կու տայ մեր բեմին ու արուեստին, այնքան կարծէք ան աւելի կ'աճի ու կ'ուռճանայ...: Մէկ խօսքով Դ. Էվերեկեան թատերական ու բեմական յաղթանակ մըն էր որ կը տանէր այդ գիշեր...:

Օրուայ յայտնութիւնն էր բեմադրիչ՝ Ռոզալիա Վասիլեան, որ ուրիշ բեմական շնորհներու կողքին, այսօր իր բեմադրական կարողութեամբ ոչ մէկ ճիգ ու աշխատանք չէր խնայած երեկոյի յաջողութիւնը իր գագաթնակէտին հասցնելու:

Նուագի պատասխանատու Վիգէն Համիտեան և բեմայարդարման պատասխանատու Սարգիս Պարսումեան տարած էին քուլիսային ապերախտ աշխատանքները:

Խուռներամ հանդիսատեսներու ծափերուն մէջ Հայ Կաթողիկէ Տիրամայր Նարեկ եկեղեցւոյ հովուապետ՝ Հայր Գէորգ Զապարեան իր շնորհակալական խօսքերով քաջալերեց այս մեծ զոհողութեան ռահվիրաները, որոնց աշխատանքը բացառիկ յաջողութեամբ պսակուած էր այդ գիշեր:

Վարձքերնիդ կատար սիրելի՛ տղաք:

Այս նկարագրականը մամուլին յանձնուած պահուն, ուրախութեամբ տեղեկացանք թէ նոյն ներկայացումը կրկնակի յաջողութիւն գտած է իր յաջորդ ելոյթին՝ զոր տեղի ունեցած է 9 Դեկտ. 1995-ին, Թորոնթոյի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Հայ Կաթողիկէ եկեղեցւոյ "Քէօրօղլեան" սրահին մէջ:

ՊԵՐՃ ԳՈԳՈՐԵԱՆ

Գանատա

ՖՐԱՆՍԱ

## ԵԳԻՊՏԱԿԱՆ ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ ՆՈՐԱՐԱՐԸ՝ ԺՈՐԺ ԳԱԶԱԶԵԱՆ

Ժ. Գազազեան Նոյեմբեր 25-ի երեկոյեան համերգ մը կու տայ իր կազմած "Սապիլ" խումբով որ անծանօթ մը չէ միջազգային փառատօններու կազմակերպիչներու: Ժողովրդական աւանդական նուագարաններու և մեղեդիներու իր անդադար որոնումները զինք տարած են հնդկական, թրքական, հայկական ժողովրդական երաժշտութիւններու ոլորտները ուր նուագարաններու նմանութիւններ յայտնուած են եգիպտականին հետ: Ինք այդ բոլորին համադրումով ստեղծած է իր երաժշտութիւնը որ զինք դասել կու տայ եգիպտական երաժշտութեան ամէնէն հետաքրքրական նորարարներու շարքին մէջ:

Ժ. Գազազեան 1953-ին Գահիրէ ծնած է: Շատ ծանօթ անուն մըն է նաեւ որպէս շարժանկարի նուագներու յօրինող: "Սապիլ" հինգ հոգինոց խումբը կազմած է 1991-ին, լաւագոյնս մեկնաբանելով աւանդական ժառանգութիւն մը որ նոր արժեւորումներու կարօտը ունէր:

ԱՌՈՂՋԱՊԱՀԱԿԱՆ

## ՓՐՈՖ. ՅԱԿՈԲ ՋԱՔԸՐՈՎԻ ԳԻՒՏԸ "AIDS" ՀԻՒԱՆԴՈՒԹԵԱՆ ԴԱՐՄԱՆՈՒՄԻ ՄԻՐԷՆ ՆԵՐՍ

Ներկայ դարու երկրորդ կէսին "էյծ"ը կը հանդիսանայ դարուս չարանենգ հիւանդութիւնը: Սոյն մանրէով վարակուածներու թիւը անընդհատ կը բարձրանայ, իսկ բժշկութիւնը տակաւին արդիւնաւէտ միջոց չէ գտած անոր կասեցման դէմ: Այս ուղղութեամբ աշխարհի տարբեր երկիրներու մէջ, զանազան գիտահետազօտական հիմնարկներ կը կատարեն ուսումնասիրութիւններ: Պուլկարիոյ մէջ առաջիններէն մէկը, որ սկսած է պայքարիլ այս հիւանդութեան դէմ, կը հանդիսանայ փրոֆ. Յակոբ Ջաքըրովը:

Ան Պուլկարիոյ մէջ քաղցկեղի հիմնարկի հիմնադիրն է: Գիտնական-վիրաբոյժի երկարամեայ փորձառութիւնն ու քննութիւնը կը յանգին այն եզրակացութեան, որ մինչեւ գտնուի "էյծ"ի դէմ յատուկ պատուաստանիւթ, կարելի է որպէս նախապահպանութեան միջոց օգտագործել Լերդատապ Պ-էն (Խեպատիտ Վ) պատուաստը, և այդ պատուաստի սրսկումով դանդաղեցնել հիւանդութեան յառաջացումը:

Թէեւ սկիզբը շատերը տարակուսանքով ընդունեցին փրոֆ. Ջաքըրովի գիւտը, սակայն, հետզհետէ գիտնականի թելադրանքը ճանաչում գտաւ ինչպէս մեզ մօտ, այնպէս ալ արտասահման: 1994 թուականին օտար գիտնականներ հաւանութիւն տուին հայազգի բժիշկի առաջարկին:

Համաշխարհային առողջապահական կազմակերպութիւնը նոյնպէս ընդունեց Ջաքըրովի թելադրանքը, որպէս փրոֆիլաքթիք միջոց: Այս տարի, Պուլկարիոյ առողջապահութեան նախարարութիւնը յատուկ նամակով ճանչցաւ հայ գիտնականի նպաստը այս ուղղութեամբ և թելադրեց բժշկական հիմնարկներուն օգտագործել Լերդապատ Պ պատուաստը, նշելով թէ ախտազերծումը օգտակար է հիւանդներուն համար, որոնք HIV մանրէի կրողներ են և այդպէսով կարելի պիտի ըլլայ որոշ ժամանակով կասեցնել HIV վարակումը անցնելու "էյծ"-ի:

Ձնայած իր յառաջացած տարիքին, փրոֆ. տօքթ. Յակոբ Ջաքըրովի պրպտուն միտքը միշտ զբաղ է որեւէ գիտական հարցով, անոր նոր գիւտը աւանդ է բժշկութեան ասպարէզին մէջ, ինչ որ ճանաչում գտաւ Պուլկարիոյ և արտասահմանի մէջ:

Կ. Հ.

"Երեւան Շաբաթաթերթ"

Սոֆիա

## ԻՄԱՍՏՈՒՆ ԽՕՍՔԵՐ

- Հայրենասիրութեան ապացոյցը գործն է, այլ երբեք՝ խօսքը:

- Մարդու մը ամենագէշ վիճակն այն է, երբ կը դադրի խորհելէ:

- Բարեգործութիւնը հատուցում չի պահանջեր:

- Մարդոց նկարագիրը կը ձեւաւորուի ոչ թէ գեղեցիկ նամերով, այլ արգասաւոր գործունէութեամբ:

- Կան մարդիկ, որոնք նման են սնանկացած խանութպաններուն, ցուցափեղկին մէջ բաներ մը կ'երեւին, սակայն ներսը՝ ոչին:

## ՄԱՀԱԶԴ

Գահիրէի Ազգային Իշխանութիւնը, խոր ցաւով կը գուժէ յանկարծական մահը, Ազգային Առաջնորդարանիս դիւանատան յիսնամեայ քարտուղար՝

### ՕՐԻՈՐԴ ԱՍՏՂԻԿ ԼԵՒՈՆ ՊՈՒՏԱՔԵԱՆԻ

որ հանգեաւ ի Տէր, իր բնակարանին մէջ, Հինգշաբթի, 4 Յունուար 1996-ի առաւօտեան: Յուղարկաւորութիւնը տեղի ունեցաւ Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ նոյն օրը, կէսօրէ ետք ժամը 1-ին:

Հանգուցեալին համար կատարուեցաւ Ազգային յուղարկաւորութիւն: Թող Տէրը լուսաւորէ հանգուցեալի հոգին:

ԴԻՒԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## ՏԽՐՈՒՆԻ

Գահիրէի Ազգային Առաջնորդարանի պաշտօնէութիւնը խոր ցաւով կը գուժէ մահը՝

### ՕՐ. ԱՍՏՂԻԿ ԼԵՒՈՆ ՊՈՒՏԱՔԵԱՆԻ

որ պատահեցաւ յանկարծական կերպով, իր բնակարանին մէջ, Հինգշաբթի 4 Յունուար 1996-ին վաղ առաւօտեան:

Հանգուցեալին համար կատարուեցաւ Ազգային յուղարկաւորութիւն:

Ամենակալ Տէրը թող լուսաւորէ հանգուցեալի բարի հոգին:

ԴԻՒԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## ԴԱՄԲԱՆԱԿԱՆ

### ԽՕՍՈՒԱԾ ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ ԿՈՂՄԷ ՈՂԲ. ԱՍՏՂԻԿ ՊՈՒՏԱՔԵԱՆԻ ԹԱՂՄԱՆ ԱՌԹԻՒ

Երէկ, չորս Յունուարին, աշխատանքային օրուան աւարտին, Օրիորդ Աստղիկ տուն վերադարձաւ: Յաջորդ առաւօտ ոչ եւս էր աստենական կեանքին համար: Մենք բոլորս, իր պաշտօնակիցները, Ազգային Իշխանութեան անդամները, անսպասելի այս գոյժին առթիւ, վշտահար ու ապշահար մնացինք: ինչպէս անաղմուկ և շնորհալի եղած էր կեանքը, այնպէս ալ անաղմուկ ու անհանդէս կը մեկնի այս աշխարհէն:

Ազգային Առաջնորդարանի մէջ պաշտօնավարութեան յիսուներորդ տարին թեւակոխած էր: Մենք բոլորս, փոխանակ յիսնամեայ բոլորանուէր ծառայութեան համար յարգանքի և գնահատումի հանդիսութիւն կազմակերպելու, եկած ենք ահաւասիկ զինք յուղարկաւորելու իր յաւիտենական հանգիստին:

Պաշտօնեաներուն համար պետականօրէն օրինադրուած արձակուրդներէն չէր օգտուէր, նուիրուած ըլլալով իր գործին, երբ ուրիշներ ամրան տաքին, արձակուրդի կը մեկնէին, զինք կը գտնէինք, ժամացուցային կանոնաւորութեամբ իր գրասեղանին առջև և պատրաստակամ որեւէ ծառայութեան: Բոլոր ատենագրութիւնները, տեղեկագրերը, վկայականները, բծախնդրօրէն կը գրէր ու կը մեքենագրէր: Իր ներկայութիւնը ապահովութիւն մըն էր Ազգային Առաջնորդարանէն ներս: Կնիքները իր մօտն էին, աւանդները կը պահէր խղճմտօրէն: Մէկ խօսքով քանակէն քաշուած ուղիղ գծի նման, պարկեշտ, ուղղամիտ ու ջանասէր օրիորդ մը: Բայց նաեւ սովորութիւն ըրած էինք իր բոլոր ծառայութիւնները ընդունելու, առանց նկատի առնելու զինքը, առանց գնահատելու իր թանկագին աշխատանքը:

Ապահովաբար կը պատկանէր անմնացորդ զոհողութեամբ ծառայողներու այն սերունդին որուն համրանքը, ցամքելու աստիճան կը նուազի մեր համայնքէն: Կը ստանար ինչ որ տրուէր անտրտունջ, առանց որեւէ պահանջքի. ամէնքս ալ գիտենք թէ որքան սակաւ էր այն ինչ որ կը տրուէր իրեն իբրեւ վարձատրութիւն:

Հիմա այլեւս չի կայ. այլեւս զինք պիտի չտեսնենք իր գրասեղանին առջեւ, միշտ պատրաստակամ: Այս կորուստին պատճառած սուգին առջև բոլորս ալ, մեր մխիթարութիւնը պիտի գտնենք անտարակոյս Ս. Գրքէն, Քրիստոսի Աւետարանէն ուր Աստուածային ճշմարտութիւնը իբրեւ շնորհ, հաւատացեալներու առջեւ կը բազմապատկուի միշտ:

Աստղիկ Պուտաքեան, հաւատաւոր օրիորդ մըն էր: Գիտենք թէ հաւատքը փրկարար է: Բայց նաեւ ըստ Առաքեալին, հաւատք առանց գործոց մեռեալ են: Ողբացեալը իր հաւատքին միացուցած էր նաեւ գործ, այսինքն հաւատք գործովք յաջողեալք: Կէս դար անխափան, օրինակելի ջանասիրութեամբ իր հաւատքին միացուց նաեւ արդիւնաւոր գործ:

Մեր մարմինը տուն մըն է որուն մէջ կը բնակի հոգին: Հաւատքին ձէթը կը կենդանացնէ հոգին: Մեր Տէրը պատուիրեց արթուն ըլլալ միշտ և պատրաստ վասնզի չենք գիտեր երբ տան տէրը ետ պիտի առնէ հոգին որուն վրայ կայծ մը կայ իր շունչէն: Առտուն կանուխ, երեկոյեան, գիշերը թէ հաւախօսին: Ճիշդ Աւետարանական իմաստուն կոյսերուն նման հաւատքին ձէթը առկայծ պահեց օրիորդ Աստղիկ Պուտաքեան: Դատաստանին օրը, պատրաստ պիտի ըլլայ ընդունելու բարձրեալն Աստուծոյ կողմէ որ պիտի ըսէ, ինծի եկէք դուք արդար աշխատանքով ծանրաբեռնուածներդ, արքայութեան մէջ, որը պատրաստըւած է աշխարհի սկիզբէն բոլոր զինք սիրողներուն համար:

Այլ պարագաներու, ուրիշ ննջեցեալներու դագաղին առջեւ, դամբանական խօսած ատենս, սովորութիւն ունէի ըսելու. "Յանուն Գահիրէի Ազգային Իշխանութեան, ցաւակցութիւններ կը յայտնենք ողբացեալի ազգականներուն և զաւակներուն": Այսօր սակայն սգաւորը Ազգային Իշխանութիւնն է, կը կորսնցնէ անխոնջ աշխատանքի խոնարհ հերոս մը որ ահաւասիկ կ'անհետի յիսնամեայ լուռ, պարկեշտ, խոհական ծառայութենէ մը ետք:

Յաւիտենական հանգիստ իր բարի հոգւոյն: Թող Տէրը ընդունի զինք յաւիտենական երանութեան մէջ ուր արդարները յարազուարճ բերկրանքով Աստուած տեսութեան կ'արժանանան:

ԶԱՒԷՆ ԱՐՔԵՊՍԿ. ՉԻՆՉԻՆԵԱՆ

ՋԱՀԱԿԻՐ

## Հ. Գ. Մ.-ի ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՓԱՌԱՏՕՆԸ

*Ինչպէս ամէն տարի, այս տարի եւս Հայ Գեղ. Միութեան Միջմաղաքային երիտասարդական Փառատօնը տեղի ունեցաւ Շաբաթ 6 Յունվ.ի երեկոյեան, Հելիոպոլսոյ "Պըլըքտանեան՝ հանդիսասրահին մէջ, մասնակցութեամբ Գահիրէի և Աղեքսանդրիոյ մշակութային երիտասարդական մարմիններու և ազգային վարժարաններու աշակերտութեան:*

*Փառատօնը կը հովանաւորէր թեմիս առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան և կը նախագահէին Տէր և Տիկ. Նուպար Սիմոնեան:*

*Տիկ. Թալին Երզնկացեանի պատշաճ բացման խօսքով սկսաւ գեղարուեստական յայտագիրի գործադրութիւնը, հանդիսավարութեամբ Պր. Գրիգոր Մարգարեանի:*

*Առաջին առթիւ ելոյթ ունեցան Հ.Գ.Մ.-ի և Կոկանեան Սրահի Երիտ. Մարմիններու մի քանի անդամ-անդամուհիները, ներկայացնելով "Զօներգ հայ լեզուին" երգախառն ասոյթը: Ապա Աղեքսանդրիոյ Պօղոսեան վրժ.ի աշակերտներէն՝ փոքրիկներ Դալար և Նորայր Պէնօհանեաններ դաշնամուրի վրայ յաջող զուգանուագածութեամբ առինքնեցին հանդիսականները: Ապա Նուպարեան վրժ.ի աշակերտութեան կողմէ ներկայացուեցաւ խմբային ասմունք: Նախ, լաւ առոգանութեամբ արտասանուեցաւ Յ. Թումանեանի "Հսկան", ապա՝ "Զարին վերջը" քերթուածը: Իսկ Գալուստեան վրժ.ի աշակերտութիւնը հանդէս եկաւ ներկայացնելով Կենդանի Պատկեր մը: Սոյն ինքնատիպ և հայրենաշունչ Կենդանի Պատկերին աշխատանքը յանձն առած էր Պր. Ասպետ Արթինեան: Օր. Մարալ Տէօվլէթեանի պատրաստութեամբ ելոյթ ունեցան Հ.Գ.Մ.-ի և Կոկանեան Սրահի "Զանգեզուր" Պարախումբը:*

*Լոռա Գասապեանի ինքնավստահ կատարումով ունկնդրեցինք դաշնամուրային նուագածութիւն: Ինչպէս ամէն տարի, այս տարի եւս "Յուսաբեր"ի Երիտ. Մարմինը իր մասնակցութիւնը բերաւ, սակայն այս տարի դաշնակի յատուկ նուագածութեամբ ելոյթ ունեցաւ Թամար Փայլակեան: Խոստմնալից երիտասարդ մը, որ նաեւ նուագեց իր յօրինած մէկ կտորը: Որմէ ետք ամուսնով իրեն ընկերացաւ և խոր ապրումով արտասանեց Արաքսի Դելիփեան՝ "Երկիր Հայաստան"ը:*

*Կարճ դադարէ մը ետք, գործադրուեցաւ հանդիսութեան երկրորդ բաժինը: Փառատօնին բանախօսն էր նախկին սուրիահայ ճարտ. Տիկ. Սաթօ Աբգարեան: Արդարեւ շահեկան բանախօսութիւն մըն էր, որ խօսեցաւ հաղորդական ոճով Տիկին Աբգարեան: Ան իր խօսքին մէջ անդրադարձաւ հայ մշակոյթի կարեւորութեան մասին, ապա շեշտը դրաւ ճերմակ ջարդի վտանգին վրայ: Շարունակելով իր խօսքը, Տիկ. Ս. Աբգարեան ընդգծեց այսօրուայ Հայաստանի կացութիւնը իր բոլոր երեսներով, ապա ըսաւ ան.- "Այս օրերուն իւրաքանչիւր հայու պարտքն է, իր մասնակցութիւնը բերել, կերտելու և հզօրացնելու համար մեր հայրենիքը, որովհետեւ միայն հայրենի հողի վրայ կարելի է գոյութիւն յաւերժացնել": Եւ վերջապէս յարգելի բանախօսուհին կարգ մը շինիչ առաջարկներ ներկայացուց, համայնքէս ներս ազգապահպանումը զօրացնելու կապակցութեամբ ":*

*Հանդիսութեան վերջին բաժինը տրամադրուած էր միջազգային արուեստագէտներ՝ Ժիրայր Բաբազեանի և Նորա Արմանիի թատերական բացառիկ ելոյթին: Սիրուած դերասանները ներկայացուցին "Կռահել անհնար է" կատակերգութիւնը, որ հատուածներ էին հայ թէ օտար թատերական գործերու: Արդարեւ իւրայատուկ ոճով բեմադրուած այս ներկայացումը մեծապէս խանդավառեց ներկայ հանդիսականները:*

( Շար. տեսնել էջ 3 )

## "ՀԱՅԱՍՏԱՆ" ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ՀԻՄՆԱԴՐԱՄ

### ՇԱԳԱԳՈՐԾՄԱՆ ՅԱՆՁՆՈՒԵՑ ՍՏԵՓԱՆԱԿԵՐՏԻ ՄԱՆԿԱԿԱՆ ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ ՀԱՄԱՃԱՐԱԿ ՀԻՒԱՆԴՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԲԱԺԱՆՄՈՒՆՔԸ

1995 թուականի Մայիսին Ամենայն Հայոց Կաթողիկոս Գարեգին Առաջինը հովուապետական այց կատարեց Լեռնային Ղարաբաղի Հանրապետութիւն: Այցելութեան ընթացքում Վեհափառ Հայրապետը ստանձնեց մանկական հիւանդանոցի համաճարակ հիւանդութիւններու նոր բաժանմունքի շինարարութեան ֆինանսաւորումը:

Յունիսին սկսուեց շինարարութիւնը: Բաժանմունքի կարիքը կար դեռեւս արցախեան պատերազմից առաջ: Պատերազմն այդ կարիքն անհրաժեշտութիւն էր դարձրել:

Հիմնադրամի պատուէրով աւարտուեց բաժանմունքի երկյարկանի շէնքի ներսի և դրսի շինարարական աշխատանքները: Ներկայումս այն ունի չորս բաժանմունք և կարող է ընդունել տարատեսակ սուր վարակիչ հիւանդութիւններ ունեցող երեսուն երեխաների:

Ծրագրի շրջանակներում բաժանմունքին են յատկացուել հիւանդանոցային մահճակալներ, ներքնակներ, ծածկոցներ և համալիր սպիտակեղէն:

Յունուար 18-ին տեղի ունեցաւ բաժանմունքի բացման արարողութիւնը: Արարողութեանը ներկայ էին ԼՂՀ փոխվարչապետ Ժիրայր Պողոսեանը, փոխվարչապետ Հիմնադրամի գործադիր վարչութեան անդամ Եուրի Ղազարեանը, առողջապահութեան նախարար Սլավիկ Ադաբալեանը. "Հայաստան" Հիմնադրամի գործադիր վարչութեան ներկայացուցիչներ: ԼՂՀ կառավարութեան ներկայացուցիչներն իրենց խորին երախտագիտութիւնն յայտնեցին "Հայաստան" Համահայկական Հիմնադրամին, Ամենայն Հայոց Կաթողիկոս Գարեգին Ա-ին և շինարարներին:

Բաժանմունքի շէնքն օծեց Հայ Առաքելական Եկեղեցու Արցախի թեմի առաջնորդ Պարգեւ եպիսկոպոս Մարտիրոսեանը:

## 43 ՀԱԶԱՐ ՂԱՐԱԲԱՂՑԻՆԵՐ ՀԱՅԱՍՏԱՆԷՆ ՎԵՐԱԴԱՐՁԵԼ ԵՆ ՀԱՅՐԵՆԻՔ

ԵՐԵՒԱՆ, ՅՈՒՆՈՒԱՐ 29, "ՆՈՅԵԱՆ ՏԱՊԱՆ"

1992 թ. Հայաստանում գրանցուած էր ԼՂՀ ժամանակաւորպէս լքած 57 հազար մարդ: Նրանցից աւելի քան 43 հազարը 1993-1995 թթ. վերադարձել են ետ: Հայաստանում 12,800 փախստական էր գրանցուած ԼՂՀ Շահումեանի շրջանից: Նրանցից ետ է վերադարձել ընդամէնը 470 մարդ:

Ներկայումս Հայաստանում ապրում է ԼՂՀ 14,000 քաղաքացի: Այս թուի մէջ մտնում են զոհուածների ընտանիքներ, միայնակ թոշակառուներ և հաշմանդամներ, ինչպէս նաեւ ադրպէյճանցիների նուաճած տարածքների բնակիչներ:

## 21-ՁԵՌՆԱՐԿՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ՏԷՐԵՐԸ՝ ՍՓԻՒՌՔԱՀԱՅԵՐ

ԵՐԵՒԱՆ ("Նոյեան Տապան".- ՀՀ կառավարութեան աճուրդի կեդրոնի տնօրէն Արմէն Շամշեանի համաձայն, Հայաստանի մէջ սեփականաշնորհուած աւելի քան 200 ձեռնարկութիւններէն 21-ին բաժնետէրերը սփիւռքահայեր են:

Ըստ տնօրէնին, սփիւռքահայերու մասնակցութեան տոկոսը տարբեր ձեռնարկութիւններու մէջ կը տատանի 1-30 % սահմաններուն մէջ:

"Արտասահմանցիների կողմից ձեռնարկութիւնների հսկիչ փաթեթին տիրանալու միտում չի նկատուում: Բաց տնտեսութեան պայմաններում միշտ ցանկալի է արտասահմանցիների մասնակցութիւնը երկրի տնտեսական կեանքում", ըսած է Ա. Շամշեան:

## ԵՐԿՈՒ ՀԱՅԱԶԳԻ ՆԱԽԱՐԱՐՆԵՐ ՌՈՒՍԻՈՅ 32 ՀՈԳԻՆՈՑ ԴԱՀԼԻՃԻՆ ՄԷՋ

ՄՈՍԿՈՒԱ.- Յունուար 11-ին, Հրապարակուեցաւ Ռուսիոյ ներկայի կառավարութեան անդամներուն ցանկը, որմէ երեւան կու գայ, որ նախարարաց խորհուրդին անդամ են երկու Հայազգի նախարարներ՝ Վիքթոր Տանիլով Դանիէլեան և Կեննատի Մելիքեան: Առաջինը կենսոլորտի և բնական հարստութիւններու, իսկ երկրորդը աշխատանքի նախարար է:

## ՀԱՅՐԵՆԻ ՆՈՐ ԹԵՐԹ ՄԸ՝ "ՆՈՐ — ԴԱՐ"

1995 թուի Դեկտեմբերին, հայրենի մամուլին երկար շարքին վրայ աւելցաւ նոր անուն մը՝ "Նոր-Դար": Թերթը լոյս կը տեսնէ Հայաստանի Հանրապետութեան Տեղեկատուութեան Նախարարութեան կողմէ: Թերթին բովանդակութիւնն ու բնոյթը գրական-մշակութային է, պարբերականութիւնը՝ յարաբերական:

Թերթը առաւելաբար կը շօշափէ գրական-գեղարուեստական, մշակութային-տեսական նիւթեր: Թերթին գլխաւոր խմբագիրն է ծանօթ գրականագէտ Աբգար Ափինեանը:

Արդարեւ, թերթը կու գայ դառնալու հայրենի մտաւորականութեան ամպիոններէն մին: Ի հարկէ, ան պիտի պահպանէ իր մակարդակը, հրամցնելով լուրջ գրականագիտական, արուեստաբանական յօդուածներ:

## ՊԱՏՄԱԲԱՆ ՄՈՀԱՄՄԷՏ ՌԷՖԱԱԹ ԷԼ ԻՄԱՄԻ ԾԱՀԵԿԱՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆԸ

Վերջերս հրապարակ ելած եգիպտացի պատմաբան Մոհամմէտ Ռէֆաաթ էլ Իմամի՝ "Հայերը Եգիպտոսի մէջ 19-րդ դարուն" բովանդակալից գիրքին առիթով, Կոկանեան Սրահի վարչութիւնը անցեալ Հինգշաբթի 1 Փետրուարի երեկոյեան, դասախօսական երեկոյ մը կազմակերպած էր նոյնինքն պատմաբանին կողմէ:

Դասախօսութիւնը տեղի ունեցաւ Կոկանեան Սրահի "Ալ. Սարուխան" լսարանին մէջ, ի ներկայութեան մեծ թիւով մշակութասէր հասարակութեան մը, գլխաւորութեամբ թեմիս Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի: Սրահի Ցկեանս պատուոյ նախագահ Պր. Կարպիս Եազըճեանի հակիրճ բացման խօսքէն ետք, էլ Իմամ խօսեցաւ հետաքրքրական բանախօսութիւն մը, որ մեծապէս գնահատուեցաւ ներկաներուն կողմէ:

Ան յիշեց 19-րդ դարու աչքառու այն հայերուն մասին, որոնք գործած և մեծ դեր ունեցած են եգիպտական կառավարութեան մէջ, յանձին՝ Պօղոս Եուսուֆեանի, Նուպար փաշայի, Տիգրան Տ'Ապրօ փաշայի, Զրաքեանի, Հէքէքեանի և այլ նշանաւոր դէմքերու:

Յարգելի բանախօսը տեղեկացուց, թէ շնորհիւ Տիգրան Տ'Ապրոյի, Եգիպտոսի կառավարութիւնը վերջերս կարողացաւ փրկել Թապան Իսրայէլի ձեռքէն և իր սահմաններուն միացնել: Ան յայտնեց թէ 19-րդ դարու վերջերը նոյն հարցը ծագած էր Սինայի թերակղզիին և Թապային համար, և սակայն ըսաւ ան,- Տիգրան Տ'Ապրօ կարողացած էր Օսմանեան Թուրքիոյ կառավարութեան փաստել, թէ Թապան եգիպտական սահմաններուն մաս կը կազմէ: Այդ փաստաթուղթն էր,



որ ներկայացուեցաւ Եգիպ-Իսրայէլի սահմանային դատի ընթացքին:

Պատմաբանը իրեն ուղղուած բոլոր հարցումներուն գոհացում տալէ ետք եզրափակեց իր խօսքը յայտարարելով, թէ յաջորդ աշխատանքը պիտի ըլլայ գրել "Հայերը Եգիպտոսի մէջ մինչև 1960-ական թուականները" նիւթին շուրջ, որուն համար եգիպտահայ համայնքի անդամներէն կը խնդրէ ուղարկուին իրեն որևէ տեղեկութիւններ կամ փաստաթուղթեր և կամ յիշատակի նկարներ, ամբողջական և որակաւոր գործ մը հրատարակելու մտադրութեամբ:

Պր. Ճորճ Սիմոնեանի արաբերէն լեզուով շնորհակալական խօսքերով վերջ գտաւ սոյն շահեկան բանախօսութիւնը:

Ա. Մ.



## ԿԱՅԾ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ

Կայծ Երիտասարդական Միութիւնը Լոս Անճելըսի ակտիւ և շատ աշխոյժ երիտասարդական կառոյցներէն մին է:

Ինչպէս անցեալին նաեւ ներկայիս Միութեան ղեկավարութեան հիմնական մտահոգութիւնն է հայ երիտասարդը հայ պահել, աւելի հայկական աւանդոյթներուն, կարենալ սիրցնել հայ լեզու և ստեղծել մաքուր մթնոլորտ մը:

Աւանդոյթ դարձած է Կայծ Երտասարդական Միութեան կողմէ ամէնամեայ Ս. Ծնունդի ընտանեկան ճաշկերոյթ հաւաքները, որպէս գրաւական հայապահպանման և գոյատեւման:

Արդարեւ 6 Յունուար 1996-ի երեկոյեան Փասատինայի "Կարօ Սողանալեան" սրահը լեցուն էր Կայծականներով և Միութեան համակիր ընտանիքներով, որոնք Արմէն Տիրան խումբի և երգիչներ՝ Յարութ Պալեանի, Լեւոն Սեւանի գաղցրահունչ երգեցողութեամբ վայելեցին հայկական այն ցանկալի մթնոլորտը, որ կրնար նախանձ պատճառել շատ-շատերուն:

Ընկերուհի Հուրի Խաչատրեան հաստատակամօրէն իր բացման խօսքին մէջ ըսաւ թէ. "...85 տարիներ առաջ հիմնըւած Կայծ Ուսանողական Միութեան իբր հետեւորդներ, այսօր տակաւին կը շարունակենք ծառայել հայ ազգին նոյն նպատակներով, որ հետապնդած էին մեր նախորդները:

Տասնամեակ մը անցած է Լոս Անճելըսի մէջ Կայծ Երիտասարդական Միութեան հիմնադրութենէն:

Հակառակ այսօրուայ դժուար պայմաններուն մենք՝ որպէս Կայծականներ ստանձնած ենք ծանր պարտականութիւն մը մեր ուսերուն վրայ, ո՛չ միայն հիմը դնել Կայծ Երիտասարդական Միութեան, այլ աշխատանք տանիլ անոր շուրջ համախմբելու և պատրաստելու այն երիտասարդները, որոնք ապագային պիտի ստանձնեն ղեկը այս զօրաւոր միութեան:

Մեզի համար որքա՜ն կարեւոր է հայկականութիւնը և հայրենասիրութիւնը, նոյնքան և աւելի կարեւոր է, որ երիտասարդները հեռու մնան այս մեծ քաղաքի փորձութիւններէն և մոլութիւններէն և տիրանան առողջ, հայեցի դաստիարակութիւն:

Ընկերուհի Խաչատրեան իր խօսքը փակեց շնորհակալական խօսքերով, յատկապէս շեշտը դնելով Ս. Դ. Հնչակեան կուսակցութեան ղեկավարութեան վրայ, որոնց քաջալերանքին կը պարտի Միութեան ունեցած յաջողութիւնները:

Ուշ երեկոյեան ներկաները գոհունակ մեկնեցան սրահէն, անցընելով յիշատակելի գիշեր մը:

ԹՂԹԱԿԻՑ

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
15 ՓԵՏՐ. 1996

<u>ԳԱՀԻՐԷ</u>

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Հինգշաբթի, 15 Փետրուար 1996-ին, ՏՕՆ Է ՍՐԲՈՑ ՎԱՐԴԱՆԱՆՑ ԶՕՐԱՎԱՐԱՑՆ ՄԵՐՈՑ ՀԱԶԱՐ ԵՐԵՍՈՒՆ ԵՒ ՎԵՑ ՎԿԱՅԻՑՆ, ՈՐՔ ԿԱՏԱՐԵՑԱՆ Ի ՄԵԾԻ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ:

Նոյն օրը Տօն է նաեւ անուանակոչութեան

**ՎԵՀԱՓԱՌ Տ. Տ. ԳԱՐԵԳԻՆ Ա.**

**ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ**

Այս առթիւ Հինգշաբթի, 15 Փետրուար 1996-ին, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարիս մէջ պիտի մատուցուի հանդիսաւոր Ս. Պատարագ:

Ս. Պատարագը պիտի մատուցանէ և քարոզէ Թեմիս Բարեխնամ Առաջնորդ

**Տ. ԶԱՒԷՆ ՍՐԲ. ԱՐՔԵՊՍ. ՉԻՆՉԻՆԵԱՆ**

Ի ժամ Ս. Պատարագի "Հայր Մեր"-էն առաջ պիտի կատարուի Հայրապետական Մաղթանք:

Եկեղեցական արարողութիւններուն պիտի մասնակցին Ազգային Վարժարաններու աշակերտները:

| | | | |
|---|---|---|---|
| Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը | | | 8.30-ին |
| Սկիզբ Ս. Պատարագի | — | — | 9.45-ին |
| Հոգեհանգիստ | — | — | 10.45-ին |

Կը հրաւիրենք մեր հաւատացեալ ժողովուրդը ներկայ գտնուելու կրօնական սոյն հանդիսութիւններուն փառաւորելու համար Սրբոց Վարդանանց պանծալի յիշատակը:

Ե. Գ. Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

## ՀԱՅ ԳԵՂ. ՄԻՈՒԹԻՒՆ ԿՈԿԱՆԵԱՆ ՍՐԱՀ ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ

Հինգշաբթի 15 Փետրուար 1996, երեկոյեան ժամը 9-ին

Հ.Գ. ՄԻՈՒԹԵԱՆ "ԹԷՔԷԵԱՆ ՍՐԱՀ"ԻՆ ՄԷՋ

## ՈԳԵԿՈՉՈՒՄ ՎԱՐԴԱՆԱՆՑ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻ

Հովանաւորութեամբ՝

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

ԵԳԻՊՏԱՀԱՅՈՑ ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ

Օրուան բանախօսուհի՝

**ՏԻԿԻՆ ԱԼԻՍ ՏԵՓՈՅԵԱՆ**

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՊԱՏՇԱՃ ՅԱՅՏԱԳԻՐ

| | |
|---|---|
| Արտասանութիւն | Օր. Անի Պօղոսեան |
| Ջութակ | Պրն. Կորֆի Յարութիւնեան<br>դաշնակի ընկերակցութիւն՝<br>Տիկին Նարինէ Օհաննէսեան |
| Դ. Դեմիրճեանի "Վարդանանք"էն | Հատուած՝ կը ներկայացնեն<br>Օր. Մարօ Մազլումեան և<br>Պրն. Ճորն Սիմոնեան |
| Մեներգ | Տիկին Լիզա Քրէտեան<br>դաշնակի ընկերակցութիւն՝<br>Տիկին Իրինա Ջալեան |
| Խօսք | Օրուան բանախօսուհի<br>Տիկին Ալիս Տեփոյեան |
| Դաշնակ | Տիկին Իրինա Ջալեան |
| Փակման խօսք և Պահպանիչ | Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան |

Հայկական քէշկէկի սպասարկութիւն

*Սիրալիր հրաւէր բոլորին*

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Արտասահմանի մէջ, Հայկական բոլոր գաղթօճախներուն համար առաջնահերթ հարցը, ժողովուրդին վերապրումն ու հայեցի գոյատեւումն է: Ուրեմն, ապագայ սերունդին հայեցի կրթութիւն ջամբելու համար, մեր վարժարանները շէն պահել մեր պարտականութիւնն է:

Ուստի, ներկայիս Գահիրէի Ազգային իշխանութիւնը կը յայտնէ յարգոյ հասարակութեան և ուսանողութեան ծնողներուն, թէ 1995 կրթական տարեշրջանին, Գալուստեան և Նուպարեան մեր Ազգային վարժարաններու բոլոր ուսուցչուհիներուն, իրենց ստացած ամսական թոշակէն բացի և կրթական նախարարութեան որոշմամբ և հաճութեամբ, բաշխած ենք հարիւր տասը հազար յաւելեալ Եգիպտական ոսկի, ի հատուցում:

ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

## "ՋԱՀԱԿԻՐ"ԻՆ

Ողբ. Անի Աշնեանի մահուան քառասունքին առթիւ, անոր քաղցր յիշատակին, Օրօր և Ժագլին Աշնեաններ կը նուիրեն 100

Առ ի քաջալերութիւն թերթիս ազգօգուտ գործունէութեան, Պր. Փարամազ Տօնիկեան (Պէյրութէն) կը նուիրէ 50

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իրենց սիրելի ազգականին, Ողբ. Սանդուխի Ջամպաքճեանի մահուան քառասունքին առթիւ, անոր քաղցր յիշատակին (Միաց. Նահանգներէն), Տէր և Տիկին Վռամ Սարաֆեան և մայրը Տիկին Զարուհի Սարաֆեան կը նուիրեն.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 50 |
| Գահիրէի Աղքատախնամին | 50 |
| Հայ Կարիքի Խաչին | 50 |
| "Այծեմնիկ" Հանգստ. Տան | 50 |
| "Արեւ"ին | 50 |
| "Յուսաբեր"ին | 50 |
| "Ջահակիր"ին | 50 |

Իր սիրելի մօր, Ողբ. Սանդուխի Ջամպաքճեանի մահուան քառասունքին առթիւ, անոր քաղցր յիշատակին Տիկին Վրէժուհի Սարաֆեանի կը նուիրէ.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 25 |
| Այծեմնիկ Հանգստ. Տան | 25 |
| Հայկ. Ընթերցասրահին | 25 |
| "Յուսաբեր"ին | 25 |
| "Արեւ"ին | 25 |
| "Ջահակիր"ին | 25 |

(Բոլոր նուիրատուութիւնները ստացանք "Արեւ"էն)

Տիկին Աստղիկ Գալէմեան և Տիար Լեւոն Իպիշեան իրենց շատ սիրելի եղբօր ողբ. Սուրէն Իպիշեանի մահուան քառասունքին առթիւ կը նուիրեն.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 50 |
| Եկեղեցւոյ Տիկնանց Խնամակալութեան | 50 |
| Գերեզ. Բարեզարդման | 50 |
| Գահիրէի Աղքատախնամին | 50 |
| Հ. Կ. Խաչին | 50 |
| "Արեւ"ին | 50 |
| "Յուսաբեր"ին | 50 |
| "Ջահակիր"ին | 50 |

(Ստացանք Գահիրէի Ազգային Առաջնորդարանէն)

Ողբ. Պետրոս Տնկճեանի կսկծալի մահուան տխուր առթիւ, վասն ցաւակցութեան Պետրոս և Աւետիս Մովսէսեան եղբարք կը նուիրեն

| | |
|---|---|
| Հայկ. Ընթերցասրահին | 10 |
| "Ջահակիր"ին | 10 |

## ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ "Հ.Մ.Ը.Մ.-ՆՈՒՊԱՐ"ԻՆ

ՊՊ. Արթօ և Կարօ Թօսունեան եղբայրներու BABY CECIL SHOES հաստատութեան բացման ուրախ առթիւ, փոխան ծաղկեպսակի կը նուիրեն.

| | |
|---|---|
| Տէր և Տիկին Գէորգ Փիլիկեան | 25 |
| Տէր և Տիկին Կարօ Անուրեան | 25 |
| Պր. Պերճ Փալանճեան | 25 |
| Տիկին Սոնա Գուրգնուեան և ընտանիք | 20 |

## ՍՏԱՑՈՒԱԾ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Շնորհակալութեամբ ստացանք ՊՐ. ՓԱՐԱՄԱԶ ՏՕՆԻԿԵԱՆԷ (Պէյրութէն) 10 ամերիկեան տոլար փոխան բաժանորդագինի 1994 և 1995 տարիներու:

## ՏԽՐՈՒՆԻ

Տեարք Յովհաննէս և Նուպար Տնկճեաններ, Տէր և Տիկին Խոսրով Ջաքարեան և զաւակը՝ Վաղարշ, Տէր և Տիկին Թովմաս Ջաքարեան և զաւակները, այրի Տիկին Լիւսի Պէզազեան և զաւակները՝ Յովհաննէս, Ժանէթ և Ալիս (Ֆրէզնօ), այրի Տիկին Զարուհի Շափշափեան և զաւակները՝ Թէրէզ և Սոնա (Գալիֆորնիա), Տէր և Տիկին Եդուարդ և Աստղիկ Ապանեան և զաւակը՝ Արամ (Գալիֆորնիա), ինչպէս նաեւ Մենկուշեան, Թոքաթլեան, Աշնեան, Քէօսէեան, Նաճառեան, Ջաքարեան, Թէրզեան, Պասրալեան, Շափեան ընտանիքները և համայն սգակիր պարագաները ցաւ ի սիրտ կը ծանուցանեն կսկծալի մահը իրենց սիրեցեալ եղբօր, քրոջ զաւկին և ազգականին, Ողբ.

### ՊԵՏՐՈՍ ՏՆԿՃԵԱՆԻ

որ տեղի ունեցաւ Երեքշաբթի, 13 Փետրուար 1996-ի երեկոյեան, "Իտալական հիւանդանոց"ին մէջ, յետ երկարատեւ հիւանդութեան:

Յուղարկաւորութեան տխուր արարողութիւնը կատարուեցաւ յաջորդ օր՝ Չորեքշաբթի 14 Փետրուարին կէսօրէ ետք ժամը 3-ին, Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց Ազգային գերեզմանատան մատրան մէջ և հանգուցեալին մարմինը ամփոփուեցաւ ընտանեկան դամբարանին մէջ:

*Այս տխուր առթիւ "Ջահակիր" իր խորազգաց ցաւակցութիւնները կը յայտնէ ողբացեալին եղբայրներուն՝ Տեարք Յովհաննէս և Նուպար Տնկճեաններուն և սգակիր բոլոր պարագաներուն:*

## ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ "ՋԱՀԱԿԻՐ" ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Տէր և Տիկին Պերճ Արթինեան (Գահիրէ) մէկ տարուան "Ջահակիր" կը նուիրեն (օդային փոստով) իրենց աներձագին և եղբօր՝ Արժ. Տ. Զաւէն Քհնյ. Արզումանեանի (Ֆլորիտա):

Տէր և Տիկին Վահան Տ. Ալեքսանեան (Աղեքսանդրիա) մէկ տարուան "Ջահակիր" կը նուիրեն (օդային փոստով) Տիկին Սիրան Ճիշմանեանի (Սիտնի):

Ընկ.հի Զարուհի Զօրայեան (Գահիրէ) մէկ տարուան "Ջահակիր" կը նուիրէ (օդային փոստով) իր զաւկին և հարսին Տէր և Տիկին Ժիրայր Զօրայեանի (Թորոնթօ):

Տէր և Տիկին Անդրանիկ Մեսրոպեան (Գահիրէ) մէկ տարուան "Ջահակիր" կը նուիրեն Պր. Յարութիւն Էժտահարեանի (Երեւան):

Պր. Ժան Այրասեան (Գահիրէ) մէկ տարուան "Ջահակիր" կը նուիրէ (օդային փոստով) իր եղբօր՝ Տէր և Տիկին Սարգիս Այրասեանի (Լուկանօ-Զուիցերիա):

Տէր և Տիկ. Օննիկ Կարիպեան (Գահիրէ) մէկ տարուան "Ջահակիր" կը նուիրեն (օդային փոստով) Տիկին Արմինէ Կարիպեանի (Սիտնի):

Տէր և Տիկին Մարտիկ Պալեան (Գահիրէ) մէկ տարուան "Ջահակիր" կը նուիրեն (օդային փոստով) Պր. Ռիչըրտ Զօրայեանի (Ֆրանսա):

Ընկ. Վրէժ Սէֆէրեան (Աղեք.) մէկ տարուան "Ջահակիր" կը նուիրէ (օդային փոստով) Պր. Սարգիս Թանագի (Սէն Լորան - Գանատա):

Տէր և Տիկին Պերճ Թուլումպաճեան (Գահիրէ) մէկ տարուան "Ջահակիր" կը նուիրեն (օդային փոստով) Տիկին Սեւանոյշ Պետրոսեանի (Զուիցերիա):

Պր. Մինաս Պանտոյեան (Աղեքսանդրիա) մէկ տարուան "Ջահակիր" կը նուիրէ.-

Արժ. Տ. Յովսէփ Խչկր. Քհնյ. Հալաճեանի, Կրէտէ (Յունաստան)

Պր. Հրայր Յարութիւնեանի (Երեւան)

Տիկին Մարիէթա Մկրտիչեանի (Հայաստան):

## ԾԱՆՈՒՑՈՒՄ

Տոքթ. Հենրի Բետերեան, վերադարձած ըլլալով տարեկան իր արձակուրդէն, ներկայիս կը ծանուցանէ իր հիւանդներուն, թէ իր դարմանատունը բաց է սովորական ժամերուն:

## ՍՏԱՑԱՆՔ

Շնորհակալութեամբ ստացանք Հ.Բ.Ը.Մ. Միութեան Գահիրէի մասնաժողովէն, Մոհամմէտ Ռէֆաաթ էլ Իմամի՝ "ՀԱՅԵՐԸ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ 19-րդ ԴԱՐՈՒՆ" գիրքէն հինգ օրինակ: 500 էջնոց սոյն բովանդակալից արաբերէն լեզուով գործը, տպագրութիւնն է "Նուպար Տպագրատան" :



دار شرشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B. P. 2111 Le Caire (R.A.E.) Tél. 3914908
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo

Հիմնուած 1948

ԹԻՒ 1329 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 29 ՓԵՏՐՈՒԱՐ 1996 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 25 Եգ. Դհկ. عدد رقم ١٣٢٩ - الخميس ٢٩ فبراير ١٩٩٦

## ՅԱՒԻՏԵՆԱԿԱՆ ՊԱՏԳԱՄԸ ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

Տարի մը եւս անցաւ պատմութեան եւ 20րդ դարը շուտով կը հասնի իր լրումին: 21րդ դարու սեմին Հայ ժողովուրդը կը դիմագրաւէ նոր խնդիրներ ու տագնապներ եւ անցեալի դառն ճակատագրի հետքերով՝ նոր յոյզերով եւ տենչերով է որ կը թեւակոխէ նոր հազարամեակ: Հազարամեակներու տարեգրութիւնը, իր փառահեղ եւ անկումային էջերով, կերտած են ժողովուրդի մը ազգային դիմագիծը, կոփած անոր նկարագիրը եւ ձեւաւորած անոր առանձնայատուկ գիծերը. դարաշրջանները՝ որքան համայն մարդկութեան, նոյնքան եւ Հայ ժողովուրդին վրայ ձգած են անջնջելի հետքեր, ազդած անոր բարոյական եւ հոգեկան կերտուածքին եւ ինչպէս մարդը, այնպէս ալ Հայը կրած է ազդեցութիւնը եւ հետեւանքը մարդկութեան պատմութեան ելեւէջներուն, վերիվայրումներուն եւ փոթորկալի անցուդարձերուն: Ըլլալով մասնակից պատմութեան եւ քաղաքակրթութեան դժուարին երթին, դեռ հազարամեակներ առաջ, Հայը ունեցած է իր դերն ու խօսքը պատմութեան թատերաբեմին վրայ եւ ինքզինք դրսեւորած ու հաստատած որպէս ինքնուրոյն ժողովուրդ իր իւրայատուկ գիծերով, խառնուածքով ու կերտուածքով:

Հայ ժողովուրդի դարաւոր պատմութեան էջերը, լի են իմաստալից եւ ուսանելի դրուագներով. եթէ թշնամին ասպատակած է եւ ոտնակոխած հայրենի բնօրրանը եւ պապենական շէն օճախը, Հայը ենթարկուած հալածանքի ու գաղթի, ապա՝ այդ մութ եւ սեւ օրերու կողքին կը նկատենք հերոսական եւ դիւցազնական խոյանքներ, գերմարդկային մաքառումներ եւ վճռական գուպարներ: Հայոց պատմութիւնը իր ամբողջութեանը մէջ, գոյակռիւ մըն է հզօր եւ վիթխարի ուժերու դէմ՝ յանուն ֆիզիքական գոյութեան պահպանման, լինելութեան երբ մը՝ տարբեր մշակոյթներու, քաղաքակրթութեանց եւ դաւանանքներու դէմ՝ ի խնդիր ինքնութեան եւ ինքնագիտակցութեան հաստատման: Եւ ալեկոծումներուն եւ հողմերուն ընդմէջէն, գոյապայքարի ամեհի եւ ահեղ ճակատումներու ընդմէջէն վերապրելով, Հայ ժողովուրդը շուտով կը թեւակոխէ 21րդ դարը, իր առջեւ ունենալով յստակ առաջադրանքներ ու տենչեր, որոնց առանցքը անփոխարինելի հասկացողութիւն մըն է, որն է՝ հայրենիքը:

Արդարեւ, հայրենի հողը կը մնայ գրաւականը մեր լինելութեան եւ մեր պայքարներուն վերջնական նպատակէտը: Ազատագրուած հայրենիքի կողքին, բռնագրաւեալ հողերուն վերատիրանալը, կը մնայ սերունդներու առջեւ ծառացած գերխնդիր մը: Համոզուած ենք, որ մեր բնօրրանը լքած ենք ստիպողաբար, հարկադրուած կերպով եւ ան ինչպէս անցեալին, այսօր եւ ընդմիշտ կը պատկանի իր իսկական իրաւատիրոջ՝ Հայ ժողովուրդին: Մեր ազգային տենչերուն առաջին տեղը կը գրաւէ, անկասկած, մեր նախնիներուն ապրած եւ ստեղծագործած երկիրը՝ Հայաստանը: Տենչ մը, որ նաեւ ոգի եւ աւիւն կը ներարկէ մեր էութեան. կու տայ ուժ եւ կորով մեր գոյապայքարին. կը դառնայ մեկ բռունցք եւ մէկ միտք, որովհետեւ՝ այդ նուիրական պայքարին մէջ, բոլորս անխտիր, ունինք մէկ ճա-

( Շար. տեսնել էջ 2 )

ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐ

## ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ՀԱՅՐԱՊԵՏ ԳԱՐԵԳԻՆ Ա. ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ՓԱՍԱՏԻՆԱՅԻ Հ.Մ.Մ.-Ի ԿԵԴՐՈՆԸ



*Վեհափառ Հայրապետը Հ.Մ.Մ.-ի կեդրոնի մուտքին ծաղիկով և բարի գալուստի խօսքերով կը դիմաւորուի*

Շաբաթ, 3 Փետրուարի կէսօրէ ետք ժամը 5:30-ին Ամենայն Հայոց Հայրապետ Ն.Ս.Օ. Տ.Տ. Գարեգին Ա. Կաթողիկոս, այցելութիւն մը տուաւ Հ.Մ.Մ.ի կեդրոնը, ուր կը գտնուին նաեւ Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան գրասենեակները և "Մասիս" շաբաթաթերթի խմբագրատունը:

Վեհափառին կ'ընկերանային Հիւսիսային Ամերիկայի Արեւմտեան Թեմի Առաջնորդ Գերշ. Տ. Վաչէ Արք. Յովսէփեան, Գանատայի Հայոց Առաջնորդ Գերշ. Տ. Յովնան Արք. Տէրտէրեան և գաւազանակիր Արտակ Աբեղայ Տիգրանեան:

Վեհափառը դիմաւորուեցաւ որոտընդոստ ծափերով և ծաղկեփունջերով և ապա առաջնորդուեցաւ ՀՄՄ-ի Տան հիւրասրահը, ուր արժանացաւ բացառիկ և ջերմ ընդունելութեան:

Ընկ. Գաբրիէլ Մոլոյեան վեհին ներկայացուց ՍԴՀԿ-ի կեդրոնի և Արեւմտեան Ամերիկայի Վարիչ Մարմնի պատասխանատու ընկերները, ինչպէս նաեւ Հ.Մ.Մ.ի, Նոր Սերունդ Մշակութային Միութեան, "Կայծ" Երիտասարդական Միութեան, "Մասիս" Շաբաթաթերթի, "Նոր Սերունդ Հեռուստաժամ"ի և այլ ենթակազմակերպութեանց բաժնի ընկերներն ու վարիչները:

Ողջոյնի սրտաբուխ խօսքով հանդէս եկաւ Ս.Դ.Հ.Կ. Վարիչ Մարմնի ատենապետ ընկ. Տիրան Ճէրէճեան:

Իր պատասխան խօսքին մէջ Ամենայն Հայոց Հայրապետ Գարեգին Ա. պարզեց մեր եկեղեցին և ժողովուրդը յուզող հարցերը, շեշտը դնելով հայութեան միասնականութեան անհրաժեշտութեան վրայ:

ԹՂԹԱԿԻՑ

## ԹԵՄԻՍ ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆ Ս. ԷՋՄԻԱԾԻՆ ՄԵԿՆԵՑԱՒ

Եգիպտահայոց բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան անցեալ Երեքշաբթի 27 Փետրուարի առաւօտեան Ս. Էջմիածին մեկնեցաւ ներկայ գտնուելու համար Գերագոյն Հոգեւոր Խորհուրդի նստաշրջանին:

Յիշենք թէ անցեալ Օգոստոս 1995-ին, Ամենայն Հայոց Կաթողիկոս Գարեգին Ա., Խորհուրդի լիազօր անդամ նշանակած էր արտասահմանէն չորս թեմակալ առաջնորդներ, որոնցմէ՝ Միջին Արեւելքէն նշանակուած էր Եգիպտահայոց Առաջնորդ Սրբազան Հայրը:

Բարի երթ և բարի վերադարձ կը մաղթենք Գերաշնորհ Սրբազան Հօր:

## ԾԱՆՈՒՑՈՒՄ

Հոգեւոր ուրախութեամբ կը ծանուցանենք մեր հաւատացեալ ժողովուրդին թէ Մեծի Տանն Կիլիկիոյ Շնորհազարդ Վեհափառ, Ն.Ս.Օ.Տ.Տ. Արամ Ա. Կաթողիկոս շնորհաբեր այցելութեամբ Գահիրէ կը ժամանէ Երեքշաբթի 5 Մարտ 1996-ի երեկոյեան ժամը 5.30-ին Իճիփթ-Էր 705 թռիչքով Լիբանանէն:

Վեհափառը կը ժամանէ ընկերակցութեամբ իր շքախումբի անդամներուն: Բերիոյ Թեմին Առաջնորդ Գերշ. Տ. Սուրէն Արքեպսկ. Գաթարոյեան: Գերապատիւ Տ. Սեպուհ Ծ. Վրդ. Սարգիսեան, գաւազանակիր Վրոյր Աբղ. Տէմիրճեան: Իսկ ժողովականներէն, Մեթր Խաչիկ Պապիկեան և Լիբանանի մէջ ներկայիս նախարար Մեթր Շահէ Պարսումեան:

Վեհափառը օդանաւակայանէն ինքնաշարժերու շարասիւնով կ'առաջնորդուի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճար, ուր տեղի կ'ունենայ Հրաշափառ և կանոնական աղօթք:

Ապա Վեհափառը կ'օրհնէ ներկայ ժողովուրդը:

Կը հրաւիրենք հաւատացեալ ժողովուրդը, որպէսզի Վեհափառին օրհնութիւնները ստանայ:

ԴԻՒԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## ՎԱՐԴԱՆԱՆՑ ՈԳԵԿՈՉՈՒՄԸ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ

Ինչպէս ամէն տարի, այս տարի եւս գահիրէաբնակ հայ հասարակութիւնը ոգեկոչեց յիշատակը Վարդանանց Ճակատամարտին: Հետեւաբար Հինգշաբթի 15 Փետրուար 1996-ի առաւօտեան, Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ հանդիսաւոր Ս. Պատարագ մատուցուեցաւ թեմիս բարեխնամ առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանին կողմէ, ուր տուաւ յաւուր պատշաճի քարոզ մը: Նոյն առթիւ տօնուեցաւ նաեւ անուանակոչութիւնը Վեհափառ Տ.Տ. Գարեգին Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսի: Ապա կատարուեցաւ Հայրապետական Մաղթանք:

***

Նոյն օրը, երեկոյեան ժամը 9.30ին Հայ Գեղ. Միութեան «Թէքէեան Սրահ»ին մէջ, նշուեցաւ Վարդանանց Տօնը կազմակերպութեամբ Հ.Գ.Մ.-ի, Կոկանեան Սրահի և Հայկական Ընթերցասրահի վարչութեանց միասնականութեամբ: Հանդիսութիւնը կը հովանաւորէր թեմիս առաջնորդ Սրբազան Հայրը, ուր ներկայ էին նաեւ Գահիրէի Թեմական Ժողովի ատենապետ Պր. Անդրա-

( Շար. տեսնել էջ 3 )

# ՋԱՀԱԿԻՐ

29 ՓԵՏՐ. 1996


**ՋԵԿՈՅՑ**

## ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԻՒՆ 1996-1997 ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԱԿԱՆ ԿՐԹԱԹՈՇԱԿՆԵՐ

1. Գալուստ Կիւլպէնկեան հիմնարկութիւնը 1996-1997 ուսումնական տարեշրջանին համար, վերանորոգելի կրթաթոշակներէն զատ, պիտի յատկացնէ նաեւ՝ որոշ թիւով նոր կրթաթոշակներ արժանաւոր ուսանողներու:

2. Հիմնարկութեան ներկայ ծրագիրը կը վերաբերի միմիայն 32 տարեկան չբոլորած ա՛յն ուսանողներուն, որոնք համալսարանական լրիւ մակարդակ ունեցող ուսումնական հաստատութեան մը մէջ են՝ ՊԻՏԻ ՅԱՃԱԽԵՆ ԿԱՆՈՆԱՒՈՐԱԲԱՐ ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐՈՒԱՆ ՄԱՍՆԱԳԻՏԱԿԱՆ ԴԱՍԸՆԹԱՑՔՆԵՐԸ: Գիշերային, մասնակի կամ ոչ ակադեմական դասընթացքներ մաս չեն կազմեր ներկայ ծրագրին: Կրթանպաստի մը տեւողութիւնը առաւելագոյնը ակադեմական երեք տարի է:

3. Կրթաթոշակներու յատկացումը կը կատարուի ընտրութեամբ, հայկական ծագում ունեցող ուսանողներու՝ որոնք բարձրագոյն ուսման հետեւելու համար զուրկ են նիւթական անհրաժեշտ միջոցներէն: Հիմնարկութիւնը չի քաջալերեր ուսանողներ որոնք իրենց ուսումը կ'ուզեն շարունակել իրենց երկրէն դուրս գտնուող համալսարաններու մէջ: Արտասահման ուսանելու փափաքողներու պարագային, թեկնածութիւն մը նկատի կ'առնուի՝ երբ ուսանողը արդէն իսկ պաշտօնապէս կեցութիւն հաստատած ըլլայ իր ուսումը կատարելիք երկրին մէջ:

4. Թեկնածուները պարտին ունենալ ուսումնական բարձր մակարդակ, լրացնել անհրաժեշտ բոլոր պայմանները, ընդունուած ըլլալ նուազագոյն "Sophomore" դասարանը ամերիկեան համալսարաններու մէջ, կամ համապատասխան դասարան մը այլ համալսարաններու պարագային, և պարտին ՅԱՋՈՂՈՒԹԵԱՄԲ ԱՒԱՐՏԱԾ ԸԼԼԱԼ ԱՌԱՋԻՆ ՏԱՐՈՒԱՆ ԴԱՍԸՆԹԱՑՔՆԵՐԸ:

5. Ներկայացող թեկնածուներէն կ'ընտրուին Հիմնարկութեան դատողութեամբ արժանաւորագոյն նկատուածները միայն: Միեւնոյն ընտանիքին պատկանող երկու անդամներ միաժամանակ չեն կրնար օգտուիլ Հիմնարկութեան ներկայ ծրագրէն: Նախընտրութիւնը կը տրուի արժանաւոր ա՛յն ուսանողներուն, որոնց ընտանեկան անմիջական պարագաներուն մէջ օգտուող չէ եղած անցեալին Հիմնարկութեան համալսարանական կրթաթոշակներէն:

6. Բոլոր թեկնածուները, ուր ալ բնակին անոնք, իրենց դիմումնագիրը պէտք է ներկայացուցած ըլլան ստորեւ նշուած հասցէին 1 Փետրուարէն մինչեւ 15 Ապրիլ 1996 ամենէն ուշ, Հարաւային Ամերիկայի երկիրներուն, ինչպէս նաեւ Աւստրալիոյ համար այս թուականները պիտի ըլլան 1 Սեպտեմբերէն ամենէն ուշ մինչեւ 15 Նոյեմբեր 1996:

FONDATION CALOUST GULBENKIAN
Service des Communautes Armeniennes
Avenida de Berna, 45-A
P-1067 Lisbonne, Codex
Portugal

Կարեւոր

Ա. Դիմումները պարտադրօրէն պէտք է կատարուին թեկնածուներու կողմէ անձնապէս:

Բ. Իր ուղարկած դիմումնագրի թուղթին ու պահարանին վրայ՝ թեկնածուները պարտին յստակօրէն նշել իրենց ինքնութիւնն ու հասցէն լատինատառ:

Գ. Կը խնդրուի նկատի առնել նաեւ որեւէ թղթատարական ուշացում, կամ կորսուած նամակներ թեկնածուներէն, Հիմնարկութիւնը ինքզինք պատասխանատու չի նկատեր:

Դ. Դիմումնագրին մէջ, դիմող-ուսանողը պարտի մանրամասն տեղեկութիւններ տալ ուսման ընթացքի ու տեւողութեան մասին հակիրճ կենսագրականով մը:

ՎԵՐՈՅԻՇԵԱԼ ԿԷՏԵՐԸ ՉՅԱՐԳՈՂ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐՈՒ ԴԻՄՈՒՄՆԵՐԸ ՆԿԱՏԻ ՉԵՆ ԱՌՆՈՒԻՐ:

Առ ի պատասխան՝ թեկնածուներուն կը ղրկուին հարկ եղած տեղեկութիւնները, հարցաթերթիկներն ու կանոնագիրը:

ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԻՒՆ
Լիզպոն, 1 Յունուար 1996

## ՊԱՇՏՕՆԱԿԱՆՔ

(Շար. Գ. էջէն)

Իսկ Տոքթ. Քոնրատ խօսք առնելով պատմեց Ե. Հ. խորհուրդի ընդարձակ գործունէութեան մասին և նուիրեց հաստատութեան հրատարակած մէկ սիրուն գիրքը:

Տիկնանց Խնամակալութեան պատրաստած հիւրասիրութենէն ետք, ներկաները այցելեցին Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճար և դիտեցին Հայկական ճարտարապետութեան ամենասիրուն մէկ արտայայտութիւնը եղող սոյն հիանալի Տաճարը և ապա լուսանկարուելէ ետք, հրաժեշտ առին:

Տոքթ. Քոնրատ տեսակցութիւն ունեցաւ նաեւ երկրիս նախագահին և այլ կրօնական պետերու հետ:

ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Տիար Տիգրան-Հայկ Գուբնուեան իր շատ սիրելի եղբօր՝ ողբ. Ալպէռ Գուբնուեանի մահուան քառասունքին առթիւ կը նուիրէ.

| | |
|---|---|
| Ս. Պօղոս-Պետրոս Եկեղեցւոյ Պայծառութեան | 100 |
| Աղեքս. Աղքատախնամին | 100 |
| "Տիգրան Երկաթ"ին | 100 |
| Աղեքս. ՀՄԸՄ "Նուպար"ին | 100 |
| "Յառաջդիմասէր"ին | 100 |
| "Կամք"ին | 100 |
| Աղեքս. ՀԲԸՄ-ին | 100 |
| "Յուսաբեր"ին | 100 |
| "Արեւ"ին | 100 |
| "Ջահակիր"ին | 100 |

Ողբ. Պետրոս Տընկնեանի մահուան տխուր առթիւ, Տէր և Տիկ. Խոսրով Ջաֆարեան՝ և ընտանիք կը նուիրեն.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 50 |
| Հայ Կ. Խաչին | 50 |
| "Այծեմնիկ"ին | 50 |
| Աղքատախնամին | 50 |
| "Յուսաբեր"ին | 50 |
| "Արեւ"ին | 50 |
| "Ջահակիր"ին | 50 |

(Ստանալ "Յուսաբեր"էն)

Նոյն տխուր առթիւ, Տէր և Տիկին Մարտիկ Պալեան կը նուիրեն.

| | |
|---|---|
| Հայկական Ընթերցասրահին | 10 |
| "Ջահակիր"ին | 10 |

## ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ...

(Շար. Բ. էջէն)

մանքը, ըստ Ասատուրեանի, վկայում է այն մասին, որ Հայաստանում քրիստոնէութեան որպէս պետական կրօն ընդունման 1700-ամեակի նշանակովի իրադարձութիւնը դուրս է գալիս նեղ կրօնական շրջանակներից:

1997 թուին նախատեսւում է բանաձեւի շրջանակներում ԵՈՒՆԵՍՔՕ-ի հովանու ներքոյ Հայաստանում կազմակերպել մեծ միջազգային գոնֆերանս "Հայաստանը քրիստոնեայ արեւելքում" խորագրով: Ծրագրում է նաեւ աշխարհի տարբեր երկրներում ԵՈՒՆԵՍՔՕ-ի հովանու ներքոյ կազմակերպել ցուցահանդէսներ:

Գոնֆերանսում ձեռք բերուած միւս կարեւոր յաջթանակը, ըստ Վ. Ասատուրեանի, ԵՈՒՆԵՍՔՕ-ի "Համաշխարհային ժառանգութեան մշակութային տասնամեակ" կոմիտէում Հայաստանի ընտրուելն է: Այսուհետեւ Հայաստանի ներկայացուցիչը մշտապէս կը մասնակցի կոմիտէի աշխատանքների: Նշելով, որ այս ԵՈՒՆԵՍՔՕ-ի առաջին կառոյցն է, որին կանդամակցի Հայաստանը:

## ՍՏԱՑԱՆՔ

- Շնորհակալութեամբ ստացանք "ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ" հայագիտական ուսումնաթերթը, Յունուարէն Դեկտեմբեր 1995-ի թիւը: Վիեննա՝ Մխիթարեան տպարան:
- Հ. Գէորգ Վրդ. Աբգարեանի "ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆՆԵՐ..." գրքոյկը: Մխիթար մատենաշար թիւ 18: Տպագրութիւն Վիեննա 1987:
- Հ. Գէորգ Վրդ. Աբգարեանի "ԵՐԻՏԱՍԱՐԴԸ - ԿԵԱՆՔԻՆ ԴԻՄԱՑ" գրքոյկը: Մխիթար մատենաշար թիւ 27: Տպագրութիւն Վիեննա 1991:

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Մեծ Պահոց շրջանին, ամէն Հինգշաբթի երեկոյեան ժամը 5-ին, Հելիոպոլսոյ Մերճանեան Մանկապարտէզի աղօթատեղիին մէջ Եշ. 29 Փետր. 1996-էն սկսեալ տեղի պիտի ունենայ խաղաղական ժամու կամ եկեսցէի արարողութիւն:

Իսկ ամէն Ուրբաթ առաւօտ ժամը 9.30-ին, Արեւագալի արարողութիւն: Ինչպէս նաեւ ամէն Կիրակի Ս. Պատարագէն ետք պիտի կատարուի Արեւագալի արարողութիւն:

Ուրբաթ երեկոյեան ժամը 5-ին, խաղաղական ժամու կամ եկեսցէի արարողութիւն պիտի կատարուի, Ազգային Վարժարաններու աշակերտութեան մասնակցութեամբ, Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ:

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

## ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

Հինգշաբթի, 7 Մարտ 1996, երեկոյեան ժամը 6.30-ին

ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

**"ՄՏՔԻ ԵՐԵԿՈՅ"**

**ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ՇԱՐՔ**

Ա) "ՀԱՅԵՐԷՆ ԼԵԶՈՒԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԴԱՐԵՐՈՒ ԸՆԹԱՑՔԻՆ ԵՒ ԱՊԱԳԱՅԻ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ..."

Կը դասախօսէ

**ՓՐՈՖ. ՊԱՐԳԵՒ ՇԱՀՊԱԶԵԱՆ**

*Սիրալիր հրաւէր բոլորին*

## Հ.Ա.Հ. ԿՈԿԱՆԵԱՆ ՍՐԱՀ

Հինգշաբթի 14 Մարտ 1996, երեկոյեան ժամը 9-ին

**ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ**

ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ

**ՊՐ. ՄԱՐՏԻԿ ԹԷՐՁԻՊԱՇԵԱՆԻ ԿՈՂՄԷ**



ԱԴԱՄԱՆԴԻ

ԳԱՂՏՆԻՔՆԵՐԸ

խիստ հետաքրքրական նիւթին շուրջ

Սիրալիր հրաւէր բոլորին

*Կը խնդրուի ճշդապահ ըլլալ*

## ՃՇԴՈՒՄ

Անցեալ՝ 15 Փետրուար 1996-ի թիւին մէջ, 4-րդ էջին վրայ, Գահիրէի Ազգային Իշխանութեան կողմէ ղրկուած «ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԵԱՆ» մէջ, վերջին տողը կարդալ՝ *«Բաշխած ենք հարիւր տասը հազար յաւելեալ Եգիպտական ոսկի, ի ՔԱՋԱԼԵՐՈՒԹԻՒՆ»:*

Մեր ընթերցողներուն ներողամտութիւնը կը հայցենք այս առթիւ:


## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

| | Պարզ փոստ | Օդային փոստ |
|---|---|---|
| Եգիպտոսի բաժանորդներէն | 6 Ե.Ո. | — |
| Արաբական երկիրներ | — | 5 տոլար |
| Եւրոպայի, Ամերիկայի, Գանատայի, Աւստրալիոյ և այլ երկիրներու բաժանորդներէն | 15 տոլար | 30 տոլար |





دار شوشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص. ب ٢١١١ بالقاهرة ج.ع.م - ت ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B. P. 2111 Le Caire (R.A.E.) Tél. 3914908
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 1332 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 11 ԱՊՐԻԼ 1996 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 25 Եգ. Դհկ. ١٩٩٦ الخميس ١١ أبريل - ١٣٣٢ عدد رقم


## ՀՀ Նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեան Կ'ընդունի Հնչակեան Կուսակցութեան Ներկայացուցիչները

Երկուշաբթի, Մարտ 4-ին, ՀՀ նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանը նախագահական պալատում ընդունել է Ս.Դ.Հ.Կ. կենտրոնական վարչութեան նախագահ ընկ. Վահրին Ճէրէճեանին և փոխ նախագահ՝ Եղիա Նաճարեանին:

Հնչակեան ղեկավարները մի անգամ եւս ՀՀ նախագահի հաւաստել են Ս.Դ.Հ.Կ.ի զօրակցութիւնը անկախ պետականութեան ամրապնդման իր և ՀՀ իշխանութիւնների ջանքերին, նաեւ հաղորդել կենտրոնական վարչութեան որոշումը՝ առաջիկայ նախագահական ընտրութիւններում իր թեկնածութեանը առաջադրելու նախաձեռնութիւնը վերցնող քաղաքական ուժերի կողքին կանգնելու:

ՀՀ նախագահը շնորհակալութիւն է յայտնել Ս.Դ.Հ.Կ. հայրենասիրական դիրքորոշումների համար:

Անկեղծ և գործարար զրոյց է ծաւալուել հայրենիք-սփիւռք փոխյարաբերութիւնների, Հայաստանում Հնչակեան կուսակցութեան օրըստօրէ ծաւալուող տեղի ու դերի շուրջ:

★

Մարտ 2-ին, Շաբաթ օր, Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան կուսակցութեան Արմաւիրի քաղաքային գրասենեակում անսովոր եռուզեռ էր: Մարզի Հնչակեանների հիւրն էին Ս.Դ.Հ.Կ. կենտրոնական վարչութեան նախագահ Վահրին Ճէրէճեանը, Հայաստանի Հնչակեանների ղեկավար Եղիա Նաճարեանը և Ս.Դ.Հ.Կ. Հայաստանի կենտրոնական վարչութեան պատասխանատուներ:

Առիթը՝ մարզի տարբեր բնակավայրերից շուրջ յիսուն երիտասարդ-երիտասարդուհիների կուսակցական երդման արարողութիւնն էր: Ս.Դ.Հ.Կ. Հայաստանի կազմակերպութեան շարքերի համալրման հանդիսաւոր հաւաքում յաւուր պատշաճի ելոյթներ ունեցան ընկերներ՝ Վահրին Ճէրէճեանը և Եղիա Նաճարեանը, Ս.Դ.Հ.Կ. Հայաստանի կենտրոնական վարչութեան ատենապետ ընկեր Ալեքսան Խաչատրեանը և Արմաւիրի մարզի կուսակցական կազմակերպութեան պատասխանատու ընկեր Վարուժան Մխիթարեանը: Երդման արարողութիւնից յետոյ Արմաւիր քաղաքի "Զագս"ի դահլիճում կազմակերպուեց ընդունելութիւն, որի ժամանակ Արմաւիր քաղաքից, Բաղրամեանի շրջանից և Ակնալճից բազմաթիւ նորագիրներ հաւաստեցին, որ ջանք չեն խնայի մարզում Ս.Դ.Հ.Կ.ի ազգային-քաղաքական և ընկերային - տնտեսական հիմնադրոյթները տարածելու և ժողովրդին համախմբելու դրանց գործնականացման նպատակի շուրջ:

Ընկերներ Վ. Ճէրէճեանը, Ե. Նաճարեանը և Ա. Խաչատրեանը քաղաքավարական այց տուեցին Արմաւիրի քաղաքապետ, ԱԺ պատգամաւոր Ա. Մնոյեանին և գործակիցներին, Հայոց Համազգային Շարժում կուսակցութեան տեղական պատասխանատուներին:

★

Ս.Դ.Հ.Կ. Հայաստանի կազմակերպութեան կենտրոնական գրասենեակում Մարտի առաջին շաբաթը անցկացուեցին խորհրդակցական ժողովներ, որոնց կեդրոնական վարչութեան անդամների հետ մասնակցեցին Երեւանի և շրջանների մասնաճիւղերի բազմաթիւ պատասխանատու ընկերներ: Քննարկուեցին աշնանային նախագահական և տեղական ինքնակառավարման մարմինների ընտրութիւնների պատրաստուելու, գործող մասնաճիւղերի կազմակերպական կառոյցները ամրապնդելու և մի շարք շրջաններում առկայ բջիջների հիմքի վրայ նոր մասնաճիւղեր ստեղծելու, երիտասարդութեան շրջանում աշխատանքները աշխուժացնելու, "Հնչակ Հայաստանի"ի հրատարակութիւնը կարգաւորելու և այլ հարցեր:

## ՀՀ Եւրոպական Խորհուրդի՝ Լիիրաւ Անդամ Դառնալու Դիմում

Եւրոպական Խորհրդի և Հայաստանի Հանրապետութեան միջեւ քաղաքական երկխօսութիւն սկսելու նպատակով Ստրասպուրկ կատարած այցելութեան շրջանակներում ՀՀ ԱԳ նախարար Վահան Փափազեանը Մարտ 8ին հանդիպում է ունեցել ԵԽ գլխաւոր քարտուղար Դանիէլ Տարշիսի հետ և նրան է յանձնել ԵԽ լիիրաւ անդամ դառնալու Հայաստանի պաշտօնական դիմումը:

Ձեռք է բերուել համաձայնութիւն, ըստ որի՝ մինչեւ անդամակցութեան մասին որոշում ընդունելը Հայաստանի ներկայացուցիչները կը մասնակցեն Եւրոպայի Խորհրդի միջկառավարական զանազան կոմիտէների աշխատանքներին:

## ՄԻՒՌՈՆՕՐՀՆԷՔ Ի Մայր Աթոռ Ս. Էջմիածին

Ուրախութեամբ յայտնում ենք մեր ողջ հայ ժողովրդին, որ յառաջիկայ Սեպտեմբեր ամսի 8-ին (1996) Ամենայն Հայոց Կաթողիկոս Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. Վեհափառ Հայրապետը կատարելու է իր առաջին Միւռոնօրհնութիւնը Մայր Աթոռ Ս. Էջմիածնում:

Յանուն Վեհափառ Հօր՝ կոչ ենք անում մեր հաւատացեալ ժողովրդին Մայր Հայաստանում և արտասահմանում, որ հոգեպէս պատրաստուեն այդ հոգեպարար մեծ արարողութեանը համար, ներկայ գտնուեն որպէս հաւատաւոր և հաւատարիմ ուխտաւորներ և զօրանան Ս. Հոգու շնորհների կենարար ներգործութեամբը:

ԴԻՒԱՆ ՄԱՅՐ ԱԹՈՌԻ

12 Մարտի, 1996

## ՀՀ Արդիւնաբերութեան Նախարարին այցը Եգիպտոս Հայ-եգիպտական տնտեսական համագործակցութեանը՝ Խոստմնալից ապագայ

Ամսոյս առաջին օրերուն Եգիպտոս կը գտնուէր ՀՀ արդիւնաբերութեան նախարարութեան պատուիրակութիւնը՝ արդիւնաբերութեան նախարար, հայ-եգիպտական միջկառավարական տնտեսական յանձնաժողովի համանախագահ Աշոտ Սաֆարեանի գլխաւորութեամբ: Պատուիրակութեան մաս կը կազմէին ՀՀ Ազգային ժողովի պատգամաւոր, Հրազդանմեքենայ ձեռնարկութեան տնօրէն Թելման Տէր-Պետրոսեան, ՀՀ արդիւնաբերութեան նախարարի խորհրդական Գրիգոր Կարապետեան, Հայէլեկտրամեքենայ ձեռնարկութեան տնօրէն Կարէն Տէմիրճեան, Երեւանի հաստոցաշինական գործարանի տնօրէն Ալպերտ Յովհաննիսեան և Հայաշարժիչ ձեռնարկութեան տնօրէն Կառլոս Պետրոսեան: Այցելութեան ընթացքին պատուիրակութեանը կ'ընկերակցէր Եգիպտոս մօտ ՀՀ արտակարգ և լիազօր դեսպան Էտուարտ Նալպանտեան:



Պահ մը ՀՀ դեսպանութեան կազմակերպած ընդունելութենէն: Մամտուհ Սապէթ Մեքքին և Թելման Տէր-Պետրոսեան կը ստորագրեն արձանագրութիւն մը, Եգիպտոսի և Հայաստանի արդիւնաբերողներու միութիւններու միջև համագործակցութեան մասին: Երկրորդ շարքին ձախէն աջ՝ Եգիպտոսի արդիւնաբերութեան և հանքային հարստութիւններու նախարար Սուլէյման Ռետա, Եգիպտոսի մօտ ՀՀ դեսպան Դոկտ. Էտուարտ Նալպանտեան և Հայաստանի արդիւնաբերութեան նախարար Աշոտ Սաֆարեան:

Այցը կայացաւ Եգիպտոսի Հանրապետութեան նախարար Սուլէյման Ռետայի հրաւէրի համաձայն և կարեւոր իրադարձութիւն հանդիսացաւ հայեգիպտական առեւտրա-տնտեսական և արդիւնաբերական համագործակցութեան ամրապնդման ճանապարհին:

Պատուիրակութիւնը հանդիպումներ ունեցաւ Եգիպտոսի Հանրապետութեան արդիւնաբերութեան, էքոնոմիքայի, առեւտուրի, մթերումներու և մի քանի այլ նախարարնելու հետ: Անոնց հետ քննարկուեցան հայ-եգիպտական տնտեսական համագործակցութեան մինչ այժմ եղած ձեռքբերումները և հեռանկարները: Երկխօսութիւնը շարունակելու նպատակով Պր. Ա. Սաֆարեան վերոյիշեալ եգիպտացի նախարարներուն հրաւիրեց պատասխան այց կատարել Հայաստան: Կը սպասուի, որ առաջինը Հայաստան


( Շար. տեսնել էջ Գ. )


## Եգիպտոս - Հայաստան Համագործակցութիւն Ելեկտրական Սարքերու Արդիւնաբերութեան Մէջ

Զինուորական արտադրութեանց և պետական գործերու Եգիպտոսի նախարար Դոկտ. Մոհամէտ Էլ Շամրաուի Երկուշաբթի 1 Ապրիլին տեսակցած է օրերս Եգիպտոս գործուղղուած Հայաստանի արդիւնաբերութեան նախարար Աշոտ Սաֆարեանի և իր պատուիրակութեան հետ:

Միասին քննարկած են միջ - պետական գործակցութեան յարաբերութիւնները տարբեր բնագաւառներու մէջ: Խօսակցութեան ընթացքին յատուկ հետաքրքրութեան նիւթ դարձած է մանաւանդ էլէկտրոնիկ և շահարկման արտադրութիւններու համագործակցութեան կարելիութիւնները ի շահ երկու կողմերու ազգային տնտեսութեան զարգացման:

"ԱԼ ԱՀՐԱՄ"

## Հայաստան՝ Գահիրէի Միջազգային Ցուցահանդէսին

Մարտ 29-ին փակուեցաւ Գահիրէի միջազգային արդիւնաբերական 29-րդ ցուցահանդէսը: Եգիպտոսի առեւտուրի և մթերումներու նախարար Ահմէտ Կուէյլի Հայաստանի պատուիրակութեան յանձնեց՝ ցուցահանդէսին յաջող մասնակցութեան գնահատանքի յուշամետալ:

Ինչպէս արդէն հաղորդուած էր, Հայաստան երկրորդ անգամ կը մասնակցէր Գահիրէի միջազգային ցուցահանդէսին: Այդ առթիւ Երեւանէն ժամանած էր 26 հոգիէ բաղկացած պատուիրակութիւն՝ ՀՀ արդիւնաբերութեան փոխնախարար Հ. Մուրատեանի գլխաւորութեամբ: Պատուիրակութեան մաս կը կազմէին արդիւնաբերութեան նախարարութեան պատասխանատուներ, հանրապետութեան արտադրական մեծ ձեռնարկութիւններու տնօրէններ, գործարարներ: Ցուցահանդէսին առթիւ Գահիրէ կը գտնուէր նաեւ ՀՀ առեւտուրի, սպասարկութիւններու և զբօսաշրջութեան փոխնախարար Ա. Գալստեան:

Ցուցահանդէսը, որ իր տեսակին մէջ մեծագոյնն ու ամենահեղինակաւորն է շրջանին մէջ, և որուն կը մասնակցէին մօտ 50 երկիրներ և համաշխարհային հռչակ ունեցող բազմաթիւ ընկերութիւններ, մեր գործարարներուն համար կարողութիւններու իւրայատուկ քննութիւն էր:


( Շար. տեսնել էջ Բ. )

## Արամ Ա. Կաթողիկոսին Մօտ Հանդիպում Ազգային Երեք Կուսակցութեանց Վերին Մարմիններու Ներկայացուցիչներուն

Հրաւէրով Ն.Ս.Օ.Տ.Տ. Արամ Ա. Կաթողիկոսին Մեծի Տանն Կիլիկիոյ, Երկուշաբթի, 25 Մարտ, կէսօրէ ետք Անթիլիասի Մայրավանքի վեհարանին մէջ տեղի ունեցաւ խորհրդակցական հանդիպում մը՝ Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան, Հայ Յեղափոխական Դաշնակցութեան և Ռամկավար Ազատական Կուսակցութեան վերին մարմիններու ներկայացուցիչներուն միջեւ:

Վեհափառ Հայրապետը ընդհանուր գիծերով ներկայացուց հայ ժողովուրդի կեանքի ներկայ հանգրուանը իր գլխաւոր երեսներով: Շեշտեց Հայաստանի Հանրապետութեան հզօրացման ու Արցախեան պայքարին զօրավիգ կանգնելու հրամայականը, ինչպէս նաեւ ազգային միասնականութիւնը ամրապնդելու կենսական անհրաժեշտութիւնը՝ Հայաստան-Սփիւռք, Ս. Էջմիածին-Անթիլիաս փոխադարձ գործակցութեամբ: Վեհափառը անդրադառնալէ յետոյ այս գծով երեք կուսակցութիւններուն կարեւոր դերակատարութեան, թելադրեց, որ երկխօսութեան, փոխադարձ հասկացողութեան ու գործակցութեան ճամբով իրենց կարեւոր նպաստը բերեն վերեւ յիշուած նպատակներուն ու առաջնահերթութիւններու կենսագործման:

Ապա տեղի ունեցաւ սրտբաց խօսակցութիւն մեր ժողովուրդը յուզող հիմնահարցերու շուրջ՝ ընդգրկելով նաեւ Ապրիլ 24-ը համազգային տարողութեամբ ոգեկոչելու անհրաժեշտութիւնը: Երեք կուսակցութեանց ներկայացուցիչները որոշեցին սկսուած խորհրդակցութիւնները շարունակել:

## Գահիրէի Քաղաքական Ժողովի Նորընտիր Կազմը

Երեքշաբթի 2 Ապրիլ 1996-ի երեկոյեան, Գահիրէի Թեմական ժողովը նիստ մը գումարեց, Ազգային առաջնորդարանի դահլիճին մէջ, նախագահութեամբ Թեմիս առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի և ատենապետութեամբ Պր. Անդրանիկ Մեսրոպեանի, օրակարգի միակ հարց ունենալով՝ ընտրութիւն քաղաքական ժողովի անդամներու: Ժողովը գաղտնի քուէարկութեամբ ընտրեց անդամները, որոնք առանձնանալով գումարեցին իրենց Ա. նիստը կազմելու համար իրենց դիւանը: Հետեւաբար ներկայացուեցաւ դիւանը հետեւեալ կերպով.-

Պր. Հրաչ Սիմոնեան — Ատենապետ
Պր. Բարսեղ Գըզըլեան — Փոխ ատենապետ
Տք. Էտի Գասապեան — Ատենադպիր
Պր. Նորայր Տէօվլէթեան — Գանձապահ
Տք. Գէորգ Մագլումեան — Խորհրդական
Պր. Պետրոս Մխտիկեան — ,,
Պր. Միսաք Չէչճէնեան — ,,

*Խմբագրութիւնս կը շնորհաւորէ նորընտիր կազմը, յաջողութեան մաղթանքներով:*

"Ջ."

## "ՀԱՅԱՍՏԱՆ" ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ՀԻՄՆԱԴՐԱՄ

### Անանուն Բարերարը Հիմնադրամի Աջակից Անդամ

Սփիւռքահայ մի բարերար, որը խնդրեց չհրապարակել իր անունը, պատրաստակամութիւն է յայտնել "Հայաստան" Համահայկական Հիմնադրամի միջոցով ֆինանսաւորել Վանաձորի "Տարօն-3" թաղամասի անաւարտ դպրոցի շինարարութիւնը:

Այս նպատակով նա Հիմնադրամին է յատկացրել 300 հազար ԱՄՆ տոլար:

Այսպիսով անանուն բարերարը դառնում է "Հայաստանի" Հիմնադրամի աջակից անդամ:

Պատուաւոր այս կոչումը շնորհւում է այն կազմակերպութիւններին ու անհատներին, որոնք 250 հազար և աւելի ԱՄՆ տոլարի յատկացում են անում Հիմնադրամի ծրագրերին՝ ադպիսով մասնակցելով Հայրենիքի զօրացման գործին:

### "Հայաստան" Հիմնադրամը Պուլղարիայում

Պուլղարիայի Հայ Առաքելական եկեղեցին, կազմակերպութիւններն ու մամուլը անվերապահօրէն օժանդակում են Հիմնադրամի բոլոր ձեռնարկումներին: Ինչպէս տեղեկացնում է Պուլղարիայի "Երեւան" թերթը, առաջինն իր ազգային տուրքը վճարել է 80-ամեայ արհեստաւոր Օննիկ Թաշճեանը: Նա Սոֆիայի եկեղեցական վարչութեանն է յանձնել 3000 լեւ գումար:

Վերջերս Պուլղարահայ գաղութը բաւականին միասնական է գործում գրեթէ բոլոր ազգային խնդիրների լուծման ուղղութեամբ,- հաղորդել է Պուլղարիայում ՀՀ գործերի ժամանակաւոր հաւատարմատար Տիկ. Սեւդա Սեւանը, միաժամանակ յայտնելով, որ Արեւելեան Եւրոպայի երկրներից առաջին Պուլղարիայում սկսել է գործել "Հայաստան" Հիմնադրամի տեղական յանձնախումբը:

## ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ

## ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԻՒՆ-1700 ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ՄՐՑՈՅԹ

Մայր Աթոռ Ս. Էջմիածնում աւարտուեց Հայաստանում Քրիստոնէութիւնը պետական կրօն հռչակելու 1700-ամեակի տօնակատարութեան հայ եկեղեցու կենտրոնական յանձնախմբի գործադիր մարմնի ժողովը՝ եօթ հերթական նիստերով:

Ժողովի բացմանը և փակմանը նախագահեց և իր հայրապետական խօսքն ասաց Ամենայն Հայոց Գարեգին Ա. Կաթողիկոսը:

Անցած Սեպտեմբերի վերջին կայացած Սեպտեմբերի վերջին կայացած նախորդ ժողովի ընթացքում կենտրոնական յանձնախումբը գործադիր մարմնին յանձնարարել էր Եւրոպայում կազմակերպել խորհրդակցական մի ժողով՝ հրաւիրելով օտար գիտնականների՝ լսելու նրանց առաջարկները 1700-ամեակի կապակցութեամբ: Այդ առիթով գործադիր մարմինը որոշեց 1996 թուականի Յունիս 14-16ը Փարիզում հրաւիրել աւելի քան 30 անուանի հայագէտների՝ լսելու այդ առաջարկները: Այնուհետեւ որոշուեց մամուլով յայտարարել համահայկական մրցոյթ երեք հիմնական թեմաներով, սահմանելով մրցանակներն ու ժամկէտները:

Պատրաստուելու է եռամաս ֆիլմ, հարթաքանդակներ են դրուելու Խոր Վիրապում և 1700-ամեակը մարմնաւորող կոթող՝ Ս. Էջմիածնում:

Ժողովը որոշեց մրցոյթի յայտարարումը հրապարակել իսկ մրցոյթթի ժամկէտը աւարտուած համարել Սեպտեմբեր 30-ը ներառեալ:

Գործադիր մարմինը քննեց օրակարգի բոլոր հարցերը և որոշեց իր յաջորդ նիստը գումարել սոյն թուականի Յունիս 16ին, Փարիզում:

Գործադիր մարմինը Երեւանում հանդիպում ունեցաւ Հայաստանում Քրիստոնէութիւնը պետական կրօն հռչակման 1700-ամեակի պետական յանձնախմբի նախագահ Գագիկ Յարութիւնեանի և յանձնախմբի գործադիր մարմնի անդամ փրոֆ. Սեն Արեւշատեանի հետ, ի ներկայութեան Ամենայն Հայոց Կաթողիկոսի:

## Հայաստան՝ Գահիրէի Միջազգային Ցուցահանդէսին

(Շար. Ա. Էջէն)

Ինչպէս նշեց Եգիպտոսի մօտ ՀՀ դեսպան Է. Նալպանտեան, այս տարի Հայաստանի մասնակցութիւնը անհամեմատ աւելի ներկայանալի էր և արդիւնաւէտ: Հայկական տաղաւարը թէեւ առաջին նայուածքէն համեստ կը թուէր, սակայն արժանացաւ այցելուներու զգալի ուշադրութեան: Ցուցահանդէսի օրերուն տեղի ունեցան բազմաթիւ գործնական հանդիպումներ թէ եգիպտացի և թէ աշխարհի տարբեր անկիւններէն ժամանած այլ գործարարներու հետ: Եղան արդիւնաբերութեան տարբեր բնագաւառներէն ներս համագործակցութեան հետաքրքրական առաջարկներ, ձեռք ձգուեցան խոստմնալից պայմանաւորուածութիւններ: Հայ գործարարները հայրենիք վերադարձան Գահիրէի ամենամեայ արդիւնաբերական ցուցահանդէսին իրենց մասնակցութիւնը աւանդական դարձնելու անհրաժեշտութեան համոզուածութեամբ:

## ՄՈՆԹՐԷԱԼ

## ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ Ի Պատիւ Գանատայի Մօտ Հայաստանի Դեսպան Պրն. Գառնիկ Նանագուլեանի

Կիրակի, Մարտ 17-ին, Տէր և Տիկին Շանթ Պալաեանները իրենց տան մէջ, հիւրասիրութիւն-ընդունելութիւն մը կազմակերպեցին, ի պատիւ Գանատայի մօտ Հայաստանի դեսպան՝ Պրն. Գառնիկ Նանագուլեանի, իր լիազօր դեսպան անուանուելու առթիւ: Օթթաուայի դեսպանատունը, մօտ մէկ տարիէ ի վեր կը գործէր, հաւատարմատար ունենալով դեսպան Նանագուլեանը:

Բացառիկ բծախնդրութեամբ կազմակերպուած ընդունելութիւնը սկսաւ Պրն. Շանթ Պալաեանի ողջոյնի խօսքերով, ուղղուած դեսպան Գառնիկ Նանագուլեանի, Տիկին Կարինէ Նանագուլեանի և ներկաներուն, ան յիշեց իր հանգուցեալ հայրը, և ըսաւ թէ ան շատ ուրախ պիտի ըլլար այդ օրը, և մանաւանդ եթէ դեսպանատան բացումը տեսած ըլլար:

Պրն. Պալաեան յայտնեց թէ Գանատահայոց Առաջնորդ՝ Գերշ. Յովնան Արք. Սրբազանը դժբախտաբար ներկայ չէր կրցած ըլլալ ընդունելութեան, քաղաքէն դուրս ըլլալուն պատճառաւ, սակայն ան իր յորդորը ղրկած էր:



Ձախէն աջ՝ Տէր և Տիկին Մկօ Մալխասեաններ, Տիկին Կարինէ Նանագուլեան, դեսպան Պրն. Գառնիկ Նանագուլեան, Պրն. Շանթ Պալաեան, Պրն. Կարօ Նշանեան, Տիկին Քրիսթիան Պալաեան և Տիկին Նշանեան:

Ընդունելութիւնը սկսաւ "Մեր Հայրենիք, Ազատ Անկախ."-ով, որմէ ետք օրուան հանդիսավար Պրն. Կարօ Նշանեան կարդաց Սրբազան Հօր նամակը, ուր ան կը շնորհաւորէր Պալաեան ամոլը իրենց ցուցաբերած հայրենասիրութեան համար և կը շեշտէր, հայկական դեսպանատան կարեւոր դերը Օթթաուայի մէջ: Պրն. Նշանեան անդրադարձաւ դեսպանատան նիւթապէս նեցուկ կանգնելու կարեւորութեան մասին, և շեշտեց թէ անյապաղ պէտք է փութացնել այդ օգնութիւնը:

Ճաշի՛ հիւրասիրութենէն՛ ետք, խօսք՛ առա՛ւ նաեւ Պրն. Մկօ Մալխասեան, որ անդրադարձաւ Պալաեան ընտանիքի տարիներէ ի վեր սատարած բարոյական և նիւթական օժանդակութիւններուն մասին, դէպի հայրենիքը և հայ ազգը: Պրն. Մալխասեան Տէր և Տիկին Պալաեաններու յանձնեց գեղեցիկ մանրանկարչական յուշանուէր մը, որ պատրաստուած էր Հայաստան, արուեստագէտ Պալաեանի կողմէ, մականուններու զուգադիպութիւնը տեղին էր:

Հրաւիրուեցաւ դեսպան Գառնիկ Նանագուլեան իր սրտի խօսքը կատարելու: Յարգարժան դեսպանը սկսաւ յատուկ շնորհակալութիւն յայտնել, Տէր և Տիկին Շանթ և Քրիսթիան Պալաեաններու այդ օրուան գեղեցիկ հիւրասիրութեան և ջերմ ընդունելութեան համար, ապա շնորհակալութիւն յայտնեց նաեւ ներկաներուն և բոլոր անոնց որոնք դեսպանատան նեցուկ կանգնեցան առաջին օրէն իսկ: Դեսպանին կողմէ յատուկ յուշագրեր ստացան Պրն. Մկօ Մալխասեան և Պրն. Կարօ Նշանեան իրենց տարած աշխատանքներու համար, ի նպաստ դեսպանատան: Դեսպան Նանագուլեան հակիրճ ձեւով խօսեցաւ դեսպանատան աշխատանքներու մասին և դրական արտայայտութիւններով խանդավառեց ներկաները:

Հ. Հ.

## ՄԱՐԶԱԿԱՆ

### Հայաստանի Ջրագնդակի Պատանիների Հաւաքականը Կը Մասնակցի Եւրոպայի Առաջնութեան Նախնական Հանդիպումներին

Գերմանիայում տեղի ունեցաւ լողի միջազգային ֆետերացիայի ջրագնդակի արտահերթ գոնկրեսում անցկացուած ջրագնդակի Եւրոպայի առաջնութեան վիճակահանութեան համաձայն, մարզաձեւի Հայաստանի պատանեկան հաւաքականը հանդէս կը գայ 2-րդ ենթախմբում:

Այստեղ ընդգրկուած են նաեւ Չեխիայի, Ֆրանսայի, Մեծն Բրիտանիայի և Փորթուկալիայի հաւաքականները:

Ըստ ՀՀ Սբորտվարչութեան լրատուական կենտրոնի, Եւրոպայի առաջնութեան նախնական հանդիպումները կ'անցկացուեն Մայիս 8-12ին Չեխիայում, իսկ եզրափակիչ հանդիպումները կը կայանան Օգոստոս 17-25ին:

Առաջին ենթախմբի հանդիպումները վարելու իրաւունք է ստացել միջազգային կարգի մրցավար Ռուբէն Եսաեանը:

ՋԱՀԱԿԻՐ

# ՆԵՂ ՕՐԵՐՈՒ ՀԵՐՈՍՆԵՐ

Այո՛, հերոսներ կը ծնին պատերազմի ճակատներուն վրայ: Բայց արդեօք հերոսներ չկա՞ն ճակատներէ հեռու: Կեանքը համընդհանուր ճակատ մը չէ՞ միթէ:

Մեր օրերուն, մեր աչքերուն առջեւ, Հայաստանը հասաւ իր անկախութեան: Ոմանք կը կարծեն, թէ այս անկախութիւնը եկաւ ինքն իրեն, եկաւ ժամանակի պատրաստրանքով: Այդպէս մտածողները չարաչար կը սխալին:

Այսօրուան մեր անկախութիւնը արդիւնքն է ոչ միայն Խորհրդային Միութեան փլուզումին, որուն Կորպաչով կոչեցեալ մենատէրը խանութ փակելու պէս, սեփական խանութը փակելու պէս վերջ տուաւ իր իսկ ղեկավարած կուսակցութեան, այլ արդիւնքն է մեր ժողովուրդի 600է աւելի տարիներու երկարատեւ պայքարին, որուն ճամբուն վրայ առաջին փորձ մը՝ Սարդարապատով տուաւ իր արդիւնքը:

Ուրեմն,այս անկախութիւնը, որ 600 տարիներու պայքարի արդիւնք էր պատմականօրէն գլխաւորեցին Ղարաբաղեան շարժման տղաքը:

Հիմա, ոմանք շեշտը կը դնեն այս տղոց սխալներուն վրայ: Այդպէս մտածող մարդոց մենք մեր կարգին հարց կու տանք.- Յիշեցէք աշխարհի վրայ մէկ շարժում, որեւէ ժողովուրդի կեանքէն, ուր շարժում մը իր սխալները ունեցած չըլլայ:

Մինչ անհրաժեշտ է շեշտը դնել իրողութեան մը վրայ, որ այսօր, մենք ունինք պետութիւններու կողմէ ճանչցուած Անկախ Հանրապետութիւն, որ եղաւ 4 տարեկան:

Շրջափակումի մէջ ծնած պետութիւն մը, որուն վիզին փաթթեցին նաեւ մեծածախս պատերազմ մը:

Երբ երկիրդ վտանգի մէջ է, օգնե՞լն է ճիշդ, թէ կռնակ դարձնելը: Եւ առ հասարակ ի՞նչ անունով կ'ուզէիք, որ կոչուէին կռնակ դարձնողները:

Այս պարագային դուք ըսէք, ի՞նչ անուն տանք երկիրը չլքող մեր հայրենակիցներուն, որոնց թիւը միշտ շատ աւելի մեծ պիտի ըլլայ քան լքողներուն թիւը: Այո՛, ի՞նչ անուն տանք երկրի մութին ու ցուրտին տակ ապրող մեր ժողովուրդին, քան նեղ օրերու հերոս անունը:

Չէինք գիտեր, բայց Ապու Լալա Էլ Մահարին գրած է այսպէս.- «Տէ՛ր, կարիճի պէս մի ըներ զիս որ զիս ծնող մայրս չխայթեմ»:

Այո, բոլոր անոնք, որոնք նեղ կացութեան մատնուած իրենց մօր կը մերժեն օժանդակել, իրենց մայրը խայթող կարիճի դերը կատարած կ'ըլլան:

Իսկ մեր մայրը, Հայաստան աշխարհը, միշտ ալ ծնած է բազէներ, ծնած է արեւորդիներ, որոնք և երկրին մէջ են և երկրէն դուրս, տիւ ու գիշեր աշխատելով պիտի իրագործեն այս պետութիւնը, նոյնիսկ ի հեճուկս անոնց, որոնք օգնութեան ձեռք չեն մեկներ իրեն:

Միշտ ալ պիտի գտնուին Մոնթէներ, որոնք դուրսէն ետ գալով պիտի իրենց կեանքը դնեն երկրին զոհասեղանին վրայ, միշտ ալ պիտի գտնուին գիտնականներ ու քաղաքագէտներ, որոնք լքելով իրենց հանգիստ կեանքը արտասահմանի մէջ, պիտի երթան նուիրուիլ երկիրի վերաշինութեան և ամրացման աշխատանքին:

Իսկ երկրին ժողովուրդը, գոտին սեղմած, ցոյց պիտի տայ հերոսական տոկունութիւն և իրագործէ իր պետութիւնը, որուն արժանի է:

Ես ձեր ցաւը տանիմ տոկացող հայաստանցիներ:

(Շար. տեսնել էջ 4)

## ՀՀ Արդիւնաբերութեան Նախարարին այցը Եգիպտոս

( Շար. Ա. էջէն )

կ'այցելէ էքոնոմիքայի նախարար Տիկին Նաւալ Ալ-Թաթաուին, որ ըլլալով հայեգիպտական միջկառավարական տնտեսական յանձնաժողովի համանախագահ, կը մասնակցի այդ յանձնաժողովին Երեւանի մէջ գումարուելիք նիստին: Կը նախատեսուի որ այդ նիստի ընթացքին կը ստորագրուին մի շարք միջկառավարական փաստաթուղթեր: Անոնց նախագիծերն արդէն պատրաստ են և արժանացած երկու կողմերու հաւանութեանը:

Հայաստանէն ժամանած հիւրերն եղան Գահիրէի, Աղեքսանդրիոյ և Աշէր Մըն Ռամատանի մի շարք արդիւնաբերական ձեռնարկութիւններու, որոնց ղեկավարութեան հետ հանդիպումներու ընթացքին ի յայտ եկան համատեղ ծրագիրներ իրականացնելու հնարաւորութիւններ, փոխշահաւէտ համագործակցութեան եզրեր, ձեռք բերուեցան քոնքրէդ պայմանաւորուածութիւններ: Այս հիանալի առիթ էր, որպէսզի հայ և եգիպտացի գործարարները մօտէն ճանչնային իրար, պատկերացում կազմէին միմեանց հնարաւորութիւններու, ձգտումներու ու կարողութիւններու մասին:

Հանդիպում տեղի ունեցաւ նաեւ Եգիպտոսի արդիւնաբերողներու միութեան կեդրոնական գրասենեակին մէջ: Այստեղ ստորագրուեցաւ արձանագրութիւն՝ Հայաստանի և Եգիպտոսի արդիւնաբերողներու միութիւններու միջեւ առեւտրա-տնտեսական համագործակցութեան մասին: Հայկական կողմէն ստորագրեց Պր. Թ. Տէր-Պետրոսեանը,իսկ եգիպտական կողմէն՝ Եգիպտոսի Հանրապետութեան արդիւնաբերողներու միութեան փոխնախագահ Մամտուհ Սապէթ Մեքքին: Ի դէպ, այս Հայաստանի արդիւնաբերողներու նորաստեղծ միութեան առաջին փաստաթուղթն էր՝ ստորագրուած որեւէ օտարերկրեայ զուգահեռ կազմակերպութեան հետ: Այդ արձանագրութեամբ կողմերը պայմանաւորուեցան պարբերաբար ինֆորմացիա փոխանակել առեւտրատնտեսական նուաճումներու, շուկաներու, իրաւական հարցերու շուրջ, տարեկան հանդիպումներ կազմակերպել Հայաստանի և Եգիպտոսի մէջ, նպաստել գործարար բնոյթի շփումներու ակտիւացմանը, միմեանց օժանդակել իրենց երկիրներուն մէջ կազմակերպուող ցուցահանդէսներու, տօնավաճառներու, համաժողովներու ժամանակ, համատեղ աշխատանք տանիլ փոխ-շահաւէտ համագործակցութեան ձեւերը կատարելագործելու ուղղութեամբ և այլն:

## ՇԱԽՄԱՏԻ ԵՐԵՒԱՆԵԱՆ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՕԼԻՄՊԱՏԱՆ ԿԸ ԼԻՆԻ ԼԱՒԱԳՈՅՆՆԵՐԻՑ ՄԷԿԸ

Երեւանում Սեպտեմբերին անցկացուելիք շախմատի համաշխարհային օլիմպիատայի նախապատրաստութեան հարցերին էր նուիրուած Փետրուար 29-ին սպորտվարչութիւնում կայացած մամուլի ասուլիսը, որը վարում էին օլիմպատայի կազմկոմիտէի նախագահ Վանիկ Զաքարեանը և պատասխանատու քարտուղար Գագիկ Յովհաննիսեանը: Լրագրողներին ներկայացնելով նախապատրաստական աշխատանքների ընթացքը, նրանք նշեցին, որ կազմկոմիտէին պետպիւճէից յատկացուել է 3,5 միլիոն դրամ (նաեւ 50 հազար տոլար առանձին կարգով):

( Շար. տեսնել էջ 4. )

## Հայաստանը Նուաճեց Մէկ Պրոնզէ Մետալ

Կիրակի Մարտ 10ին, Սթոքհոլմում աւարտուած Եւրոպայի թեթեւ աթլեթիկայի դահլիճների առաջնութիւնում Հայաստանցի մարզիկ Արմէն Մարտիրոսեանը գրաւեց երրորդ տեղը եռացատկում: Նրա արդիւնքն էր 16,74 մեթր (առաջին և երկրորդ տեղի գրաւած մարզիկների արդիւնքներն են՝ համապատասխանաբար, 16,97 և 16,93 մեթր):

Նախկին ԽՍՀՄ երկրներից միայն եօթի ներկայացուցիչներ են շահել առաջնութեան մետալներ: Դրանք են՝ Ռուսաստանը, Ուգրաինան, Լատւիան, Պելոռուսը, Էստոնիան, Հայաստանը և Մոլտովան:

Վերջին չորսը նուաճել են մէկական մետալներ, ընդ որում, Պելոռուսի և Էստոնիայի մետալները ոսկի են, Հայաստանինը և Մոլտովայինը՝ պրոնզէ:

Առաջնութիւնում բոլորից շատ մետալ՝ 11 նուաճել է Ռուսաստանը, թէեւ դրանցից միայն մէկն է ոսկի: Գերմանիան և Սպանիան ունենայ 4-ական ոսկէ մետալ, Ֆրանսան, Լատւիան և Փորթուկալիան՝ 2-ական:

<u>ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐ</u>

## ՀՀ Տեղեկատուութեան Նախարար Հ. Թամրազեանի Ներկայութեան ՓԱՅԼՈՒՆ ՇՈՒՔՈՎ ՆՇՈՒԵՑԱՒ "ՄԱՍԻՍ"Ի 15-ԱՄԵԱԿԸ

Շաբաթ, 16 Մարտին, պատշաճ շուքով նշուեցաւ "Մասիս" շաբաթաթերթի հիմնադրման 15րդ տարեդարձը: Փասատինայի Աղաճանեան սրահին մէջ այս առթիւ տեղի ունեցած ճաշկերոյթին ներկայ էր Հայաստանի Հանրապետութեան տեղեկատուութեան նախարար Հրաչ Թամրազեան: Ներկայ էին նաեւ Հայաստանի Լոս Անճելըսի աւագ հիւպատոս Տէր և Տիկ. Արմէն Բայբուրդեան, հիւրաբար Լոս Անճելըս գտնուող Հայաստանի նախագահի անձնակազմի վարիչ Ժոզէֆ Աւետիսեան, Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական վարչութեան ընկերներ Հէրի Տիրամերեան, Պետրոս Մուշեան և Սեդրակ Աճէմեան, Լոս Անճելըսահայ կազմակերպութիւններու և մամուլի ներկայացուցիչներ և շուրջ 600 "Մասիս"ի բարեկամներ ու համակիրներ:

Հանդիսութիւնը սկսաւ Հայաստանի քայլերգի ունկընդրութեամբ, կատարողութեամբ Ատիս Հարմանտեանի:

"Մասիս" շաբաթաթերթի խօսքը փոխանցեց ընկ. Գրիգոր Խոտանեան, յայտնելով որ 1981 թուականի Յունուարին "Մասիս" ճամբայ ելաւ յստակ առաքելութեամբ մը, որպէս գաղափարական մամուլ տարածելու Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան ազգային ու հայրենասիրական խօսքը:

Ողջոյնի խօսքով հանդէս եկաւ աւագ հիւպատոս Արմէն Բայբուրդեան, որ շնորհաւորելէ ետք "Մասիս"ի տարեդարձը, գնահատեց Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան կեցուածքը՝ հայրենի պետականութեան կողքին: Ան բարձր գնահատեց նաեւ "Մասիս"ի բովանդակութիւնն ու որդեգրած առողջ ուղին, նորանոր յաջողութիւններ մաղթելով խմբագրական կազմին:

Ելոյթ ունեցաւ նաեւ Հայաստանի Հայրենակցական Միութիւններու Խորհուրդի նախագահ և հանրապետութեան նախագահի օգնական Պր. Ժոզէֆ Աւետիսեան: Ան յատկապէս ըսաւ. "Նշելով Մասիսի 15-ամեակի շնորհաւորանքը, նրա սկզբունքայնութիւնը, նրա դիրքորոշումը ընդհանրապէս Հնչակեան Կուսակցութեան գաղափարախօսութեան զարգացումը: Առաջին հերթին ամէն մէկ հայի համար կարեւոր էր Հնչակեան Կուսակցութեան մուտքը Հայաստան: "Մասիս"ը Հայաստանում նաեւ կատարեց շատ կարեւոր մի աշխատանք կազմակերպեց, խթանեց նիւթապէս ու նաեւ բարոյապէս "Հնչակ Հայաստանի"ի հրատարակութեան":

Տոքթ. Յարութիւն Սաղրեան ներկայացուց օրուայ պատուոյ հիւրը, Հայաստանի Տեղեկատուութեան նախարար Տիար Հրաչ Թամրազեանն ու իրեն ընկերակցող պատուիրակութիւնը:

Ընկ. Սաղրեան իր խօսքին մէջ ըսաւ.

Այսօր, անձնապէս ես հպարտ եմ և հոգեպէս լիացած, որ եղած եմ "Մասիս"ի կողքին անցնող 15 տարիներու ընթացքին, և կը խոստանամ մնալ այնքան ժամանակ որ իմ պայմանները կը ներեն:

Յարգելի նախարարը յարգելի հիւպատոս Արմէն Բայբուրդեանին հետ կը ներկայացնեն Հայաստանի կառավարութիւնը մեր մէջ, հայրենի պետականութիւնը մեր մէջ, և մենք հպարտ և երջանիկ ենք այս իրողութեան համար":

Վերջին խօսք առնողը եղաւ նախարար Հ. Թամրազեան, որ անդրադարձաւ սփիւռքահայ ու հայրենական մամուլի դերին ու կարեւորութեան:

Հանդիսութեան ընթացքին կատարուեցաւ 15-ամեակի կարկանդակի մոմավառութիւն, որուն մասնակցեցան օրուայ հիւրերը ու "Մասիս"ի բարերարներ:

Երեկոյի ընթացքին եղան բազմաթիւ նուիրատուութիւններ:

*"Ջահակիր"ի խմբագրութիւնը եւս կը շնորհաւորէ "Մասիս" շաբաթաթերթի 15-ամեակը, մաղթելով յարատեւութիւն իր տարած ազգօգուտ գործունէութեան համար:*

Եգիպտոսի արդիւնաբերութեան նախարարութեան պատասխանատուներու հետ քննարկուեցան նաեւ Երեւանի մէջ տեղակայուած եգիպտական առեւտրա-արդիւնաբերական խրախուսման կեդրոնի աշխատանքներու աշխուժացման և բարելաւման հետ կապուած հարցերը: Կողմերը հաւանութիւն տուին Եգիպտոսի կողմէն կեդրոնի մշտական տնօրէն նշանակելու որոշմանը և Գահիրէի մէջ նմանատիպ հայկական կեդրոն բանալու մասին առաջարկին: Այդ կապակցութեամբ եգիպտացիները պատրաստակամութիւն յայտնեցին համապատասխան տարածք տրամադրել:

Գահիրէի Հայոց առաջնորդարանին մէջ պատուիրակութիւնը հանդիպում ունեցաւ հայ համայնքի ներկայացուցիչներուն հետ: Հիւրերը ներկաներուն պատմեցին Հայաստանի տնտեսական ծրագիրներու և բարեփոխումներու ընթացքի մասին:

Վերջին օրը տեղի ունեցաւ ՀՀ դեսպանութեան կազմակերպած ընդունելութիւնը, որուն ներկայ էին Եգիպտոսի Հանրապետութեան արդիւնաբերութեան նախարար Սոլէյման Ռետան, Եգիպտոսի Հանրապետութեան արտաքին գործերու և տնտեսական ոլորտի նախարարութիւններու բարձրաստիճան պաշտօնեաներ, եգիպտացի խոշոր գործարարներ և ձեռնարկատէրեր:

ՀՀ արդիւնաբերութեան նախարարութեան պատուիրակութեան այցը լայնօրէն լուսաբանուեցաւ Եգիպտոսի ռատիո-հեռուստատեսութեան և մամուլի կողմէն: Ինչպէս նշեց ՀՀ դեսպան Էտուարտ Նալպանտեանը, ՀՀ արդիւնաբերութեան նախարար Աշոտ Սաֆարեանի և անոր ուղեկցող պատուիրակութեան այցը յաջող էր, իսկ արդիւնքները՝ գոհացուցիչ և խոստմնալից թէ հայկական և թէ եգիպտական կողմի համար: Այն եւս մէկ անգամ ապացուցեց, որ գոյութիւն ունին բոլոր նախադրեալները հայ-եգիպտական տնտեսական համագործակցութիւնն ինդենսիվ զարգացնելու համար:

## ՔԻՉ ՄԸ ԾԻԾԱՂ

Մարդուն մէկը կը հարցնէ իր բարեկամին թէ ե՞րբ պիտի վերադարձնէ առած պարտքը:

— Երբ որ քեռիս վերադառնայ Եգիպտոսէն:

— Ե՞րբ պիտի վերադառնայ քեռիդ...

— Երբ որ ճանապարհածախսը իրեն ուղարկեմ:

★

— Բժի՛շկ, աջ ոտքս կը ցաւի:

— Տարիքն է պատճառը, տարիքը...:

— Տարօրինակ է, ձախ ոտքս ալ նոյն տարիքը ունի, բայց չի ցաւիր...:

★

— Ինչո՞ւ համար հայրիկիդ ընել տուիր պարտականութիւնդ:

— Պարոն, որովհետեւ մայրիկը տունը չէր:

★

— Ջայնասփիւռը արակա՞ն է, թէ իգական:

— Իգական է պարոն:

— Եւ ինչո՞ւ...:

— Որովհետեւ անվերջ կը խօսի:

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B. P. 2111 Le Caire (R.A.E.) Tél. 3914908
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 1333 -ՀԻՆԳՇԱԲԹԻ 25 ԱՊՐԻԼ 1996 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 25 Եգ. Դհկ. ١٩٩٦ الخميس ٢٥ أبريل عدد رقم ١٣٣٣


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## Վասն Յաւերժութեան Ազգիս Հայոց

*Այսօր՝ 81 տարի ետք իրապաշտօրէն կը փնտռենք այն երեւոյթները, որոնք մեզ կը մղեն մտածելու թէ 1915-ով սկիզբ առած հայասպանութեան դատապարտելի աքթը դեռ եւս կը պահէ իր շարունակականութիւնը, տարբեր դրսեւորումներով: Այսօր այդ նոյն թուրքերն են, որ կը ջանան շեղեցնել արցախութեան պայքարի նիզակը իր թիրախէն: Այդ նոյն դարաւոր թշնամին է որ Հայաստանի դէմ տնտեսական շրջափակում կատարելով կը փորձէ տկարացնել հայ ժողովուրդի դիմադրողական տոկունութիւնը, համբերութեան կարողութիւնը և յաղթելու վճռակամութիւնը: Նոյն դաւադիր ոգին է որ կը տիրէ այսօր. դաւադիր և ամսեղուկ ռազմավարութիւնը առկայ է ու կը գործէ միշտ ծրագրուած պետական լայն միջոցներով օժտուած և հետեւողականութեամբ: Այցելուներ կ'ընդունի Հայաստանի Հանրապետութենէն, այցելութիւններ կու տայ անոր, սակայն հիմնականին մէջ հետապնդելով երկու գլխաւոր նպատակ:*

*Առաջինը, ապահովութիւն ստանալ հայրենի ներկայ վարիչներէն, որ հրաժարին Արեւմտա - հայաստանէն, փոխան բարի դրացնութեան և տնտեսական կապերու փոխ-յարաբերութեան ստեղծումին: Երկրորդ՝ անմիաբանութիւն սերմանել հայրենի արդի պետականութեան և սփիւռքահայութեան մտքին միջեւ:*

*Սակայն ինչպէս կրնայ յաջողիլ պատեհապաշտ թուրքը իր նպատակներուն մէջ, եթէ այնտեղ՝ Հայաստանի մէջ կայ այսօր աւելի զգօն և հաւասարակշռուած արտաքին քաղաքականութիւն մը, գլխաւորութեամբ ՀՀ նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանի: Ներկայ հայրենի ղեկավարները լաւ գիտեն թէ ե՞րբ պիտի հնչէ հատուցումի ժամը, ինչպէս և գիտեն որ երկու պետութիւններու միջև մնայուն բարեկամութիւններ չկան այլ կան մնայուն շահեր: Հաւաքական, մասնագիտական և կեդրոնացեալ պայքարի մէջ է ուժը:*

*Արդ, ներկայ հանգրուանին անհրաժեշտ է ցեղասպանութեան միջազգային անվերապահ ճանաչումը: Արդարեւ հայկական ցեղասպանութիւնը բովանդակ հայութեան համար անխտիր, առաջնահերթ հարց է այն իմաստով, որ հայրենիքի թէ արտերկրի մէջ կը մնայ հարցերու հարցը, հայութեան լինելիութեան հարցը: Հայութեան բոլոր հատուածները պահանջատէր Արցախէն մինչեւ սփիւռքեան փոքրաթիւ գաղութները կը գիտակցին հայկական դատի հետապնդման անհրաժեշտութիւնը:*

*Ո՛չ հայ ժողովուրդը և ո՛չ ալ Հայաստանի իշխանութիւնը այսօր մոռցած է մեր բիւրաւոր նահատակներու յիշատակը և Արեւմտահայ հողերու ազատագրման սրբազան պահանջքը: Սխալ քայլ մը կամ սխալ որոշում մը կրնայ ճակատագրական ըլլալ ոչ միայն հայրենի ժողովուրդին այլեւ համայն հայութեան: Ահա թէ ինչու ժամանակն է, որ հայութիւնը ամբողջ որպէս մէկ ազգ, մէկ դատի տէր, միասնական սրտէն անցնելով դառնայ միասնական միտք:*

*Համագործակցութիւնը կ'իրագործուի իրար հասկացողութեամբ, երկխօսութեամբ, առանց գերակայութեան կամ ստորակայութեան բարդոյթներու: Համագործակցութիւնը կ'իրագործուի ՄԻԱՅՆ հայութեան գերագոյն շահերուն ծառայելու հրամայականով:*

*Ըլլանք իրապաշտ և ըլլանք շրջահայեաց, միացնենք մեր ձայները, համադրենք մեր աշխատանքները և աշխատինք մեր հայրենիքի վերակառուցման ու վերածաղկման դժուարին գործին: Այն ատեն արժանի եղած կ'ըլլանք արեւուն տակ պատուով և փառքով ապրելու և գոյատեւելու: Ապա միացեալ մէկ բռունցքով, որպէս մէկ ժողովուրդ և մէկ հայրենիք ներկայանանք աշխարհին ու պայքարինք տիրանալու մեր անժամանցելի արդար իրաւունքներուն:*

*Հայ դատ կը նշանակէ հայկական ցեղասպանութիւն, դատարկուած և բռնագրաւեալ հայրենիք, սփիւռքացած ժողովուրդ, իսկ հայ դատի արդար լուծումը կը պահանջէ ցեղասպանութեան հատուցում և բռնագրաւեալ հայրենիքի ազատագրում: Այս հիմնական իրողութիւններուն գիտակցելով և զանոնք ընդունելով է, որ իւրաքանչիւր հայ անհատ տէր պիտի կանգնի իր դատին և ազգային իրաւունքներուն:*

*Վստահաբար այս ձեւով է որ յաջողած պիտի ըլլանք մեր բիւրաւոր նահատակներուն գոյատեւման ուխտը վերանորոգելու, վասն յաւերժութեան ազգիս հայոց:*

*Յարգա՛նք բոլոր անոնց յիշատակին, որոնք նահատակուեցան հայ ժողովուրդի արդար դատի ճանապարհին:*

## ՀԱՅԿԱԿԱՆ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՈԳԵԿՈՉՈՒՄ ԳՈՆԿՐԷՍԻՆ ՄԷՋ

ՄԻԱՑ. ՆԱՀԱՆԳՆԵՐ.- Կը տեղեկանանք, որ Չորեքշաբթի 24 Ապրիլին, Միաց. Նահանգներու Ներկայացուցիչներու Տան անդամները որոշած են ոգեկոչել Հայկական Ցեղասպանութիւնը:

Ոգեկոչումը ձեռնարկած են Գոնկրէսի Հայկական Խմբաւորումի նախագահները՝ Ֆրէնք Փալոն և Ճան Փորթըր: Իսկ Յանձնախումբի տնօրէնն է Արամ Համբարեան: Երկու գոնկրէսմէնները հովանաւորողներն են ցեղասպանութեան բանաձեւին, որ ծանօթ է որպէս H.Con. Res. 47:

Ֆ. Փալոն և Ճ. Փորթըր իրենց ուղղած նամակին մէջ շեշտած են, թէ, "Հայկական ցեղասպանութիւնը պատմական փաստ մըն է, որ անուրանալի է: Իսկ ուրացումի պատճառով, ցեղասպանութեան ճշմարտութիւնը պէտք է բացայայտուի, որպէսզի ապագայի սերունդները գիտնան, թէ ինչեր պատահեցաւ անցեալին":

## "Ազգային Տուրքի Մարաթոն"ի Առաջին Օրերուն Հանգանակուած է 8 Միլիոն Դրամ

Մօտաւորապէս 8 միլիոն դրամ հանգանակուած է "Հայաստան" Համահայկական Հիմնադրամի կազմակերպած "Ստեփանակերտ - Երեւան -Լոս Անճելըս" ազգային տուրքի մարաթոն"ի առաջին երկու օրերուն:

Մեծագոյն նուիրատուն եղած է հայկական եկեղեցին, որ նուիրած է 4 միլիոն 200 հազար դրամ: Ամենայն Հայոց Կաթողիկոս Գարեգին Ա. իր ողջոյնի խօսքին մէջ յայտնած է, որ այդ թիւը խորհրդանշական է և կը համապատասխանէ ԼՂՀի 4,200 հազար քառ, քմ. մակերեսին:

Մարտ 24ին, Ստեփանակերտի մարզադաշտին վրայ հաւաքուած աւելի քան 20 հազար ժողովուրդի ներկայութեան տեղի ունեցաւ "Մարաթոն"ի պաշտօնական բացումը:"Նախկինում այս հողի վրայ արեան սրբազան կաթիլներ էին հեղւում, իսկ այժմ, պարզապէս որպէսզի վերածնուի այս հողի վրայ պէտք է թափուեն իր որդիների քրտինքի սրբազան կաթիլները" այս խօսքերով Վեհափառ Հայրապետը օրհնեց ներկաներուն:

"Մարաթոն"ի հիւրերուն և մասնակիցներուն ողջունեց Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան Վարչապետ Լէոնարտ Պետրոսեան: Ան "Հայաստան" Համահայկական Հիմնադրամի գլխաւոր խնդիրը նկատեց Արցախի վերականգնման ծրագիրի համար միջոցներու հանգանակումը, որուն առաջնահերթ նպատակը Գորիս-Ստեփանակերտ ճանապարհի շինարարութիւնն է: Ան դիտել տուաւ, որ այն ամէն ինչ որ կը կատարուի Հիմնադրամի կողմէ, Հայ ժողովուրդի բարօրութեան ուղղուած է:

( Շար. տեսնել էջ Բ. )

## Թուրքիա Պատրաստ է Բանալու Հայ-Թրքական Սահմանը

Ուրբաթ, Մարտ 22ին Թուրքհայկական սահմանը կատարած այցելութեան ընթացքին, Թուրքիոյ վարչապետ Մեսուտ Ելմազ ըսած է,որ եթէ Հայաստանը և Ատրպէյճանը հասնին Լեռնային Ղարաբաղի հարցով որոշ հասկացողութեան, Թուրքիա կը բանայ իր սահմանը Հայաստանի հետ՝ առեւտուրի նպատակով:

"Անմիջապէս որ համաձայնութիւնը կայանայ, մեր կառավարութիւնը որոշած է բանալ սահմանի Ալիջան դուռը: Ես վստահ եմ, որ եթէ համաձանութիւնը ձեռք ձգուի, ղարաբաղեան հակամարտութիւնը շատ կարճ ժամանակի մէջ ամբողջութեամբ կը կարգաւորուի" ըսած է Ելմազ:

"Մենք պէտք չունինք սպասելու համաձայնագիրի վերջնական ստորագրման: Անմիջապէս որ նկատենք յստակ յառաջխաղացք, Թուրքիոյ նպաստը խաղաղութեան, պիտի ըլլայ սահմաններու բացումը", աւելցուցած է Ելմազ:

Թուրքիոյ վարչապետը նաեւ յայտնած է, որ իր երկիրը պատրաստ է ելեկտրականութիւն մատակարարելու Հայաստանին:

## Հայ-Ֆրանսական Յարաբերութիւնները Կը Զարգանան Նոր Ատոմակայանի Մը Կառուցման Ծրագիր

ՀՀ վարչապետի Ֆրանսիա կատարած այցելութիւնը երկու հիմնական նպատակ էր հետապնդում. Նանտ քաղաքում "Հայաստան, ակունքներից մինչև 4-րդ դար" ցուցահանդէսի բացման հանդիսաւոր արարողութեան մասնակցելը և Ֆրանսիայի վարչապետ Ալէն Ժիւպէի, գործարար աշխարհի հետ հանդիպումները: Ֆրանսիայի վարչապետ Ա. Ժիւպէի հետ ՀՀ վարչապետ Հրանտ Բագրատեանի հանդիպման ընթացքում կարեւորուեցին Հայաստանում ֆրանսիական խոշոր ներդրումներն ապահովող մեխանիզմների ստեղծման աշխատանքները:

Քննարկուած կարեւորագոյն հարցը վերաբերում էր ատոմային էներժետիկային: Խօսք գնաց հայկական ատոմակայանի ապահովութեան աստիճանը բարձրացնելու մասին:

Ֆրանսիական կառավարութեան կողմից հաւանութեան արժանացան նոր ատոմակայանի կառուցման վերաբերեալ ուսումնասիրութիւնները սկսելու ծրագրերը, որոնց ուղղութեամբ աշխատանքները մեր կառավարութիւնում սկսուել են դեռեւս չորս ամիս առաջ: Ատոմակայանը մի քանի միլիարդ տոլարների ներդրում պահանջող օբյեկտ է, և մէկ-երկու տարի կը պահանջուի, որպէսզի ապահովուեն նրա ֆինանսական, կազմակերպչական, նախագծային, տեխնիկական, թէքնոլոժիական նորմերը, կարգաւորուեն գատրային խնդիրները: Ինչպէս հաւաստիացրեց վարչապետ Հ. Բագրատեանը, առնուազն տաս տարի յետոյ պէտք է գործի նոր ատոմակայանը: Հայաստանն ունի ատոմային թէքնոլոժիա և պէտք է շարունակի զարգացնել ու ընդլայնել այն, - մեր զրոյցի ժամանակ ընդգծեց ՀՀ վարչապետ:

Դրական քաղաքական որոշում էր, ըստ որի "Էրկազ Տէ Ֆրանս"ը մասնակցելու է Հայաստանում գործող կազատարների սեփականաշնորհմանը, ինչպէս նաեւ՝ Իրան-Հայաստան կազամուղի շինարարութեանը:

ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## 24 ԱՊՐԻԼ 1915-Ի ՄԵԾ ԵՂԵՌՆԻ ՆԱՀԱՏԱԿՆԵՐՈՒՆ
## 81-րդ ՏԱՐԵԼԻՑԻՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ

Հովանաւորութեամբ՝
**ԵԳԻՊՏԱՀԱՅ ՀՈԳԵՒՈՐ ՊԵՏԻՆ**
Նախաձեռնութեամբ՝
**ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ**
Մասնակցութեամբ՝
**ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԵՒ ԲԱՐԵՍԻՐԱԿԱՆ**
**ԲՈԼՈՐ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ**
Տեղի պիտի ունենայ Կիրակի, 28 Ապրիլ 1996-ին
**Ս. ՊՕՂՈՍ-ՊԵՏՐՈՍ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՄԷՋ**
Այս առթիւ պիտի պատարագէ
**ԵԳԻՊՏԱՀԱՅՈՑ ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ**
**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆ**
Պիտի մատուցուի հոգեհանգստեան պաշտօն
Եղեռնի Յուշարձանին առջեւ
**ՕՐՈՒԱՆ ՊԱՏԳԱՄԱԽՕՍ**
Գահիրէէն Յատկապէս Հրաւիրուած
Ուսումնապետ
**ՏԻԱՐ ՊԱՐԳԵՒ ՇԱՀՊԱԶԵԱՆ**
Ելոյթ կ'ունենան
**ՌՔԱԼ ԵՒ ԼԱՐԱՅԻՆ ՔԱՌԵԱԿՆԵՐԸ,**
**ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ**
**ԲԱԶՄԱՁԱՅՆ ՀՈԳԵՒՈՐ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ**
Ցուցահանդէսի Գեղարուեստական Ղեկավար
Երաժշտապետ
**ՀՐԱՆԴ ԱՂԱՃԱՆԵԱՆ**

Ցուցահանդէսի աւարտին, ներկայ հասարակութիւնը հրաւիրուած է Մելգոնեան Մանկապարտէզի հանդիսասրահը, մասնակցելու Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութեան կազմակերպած Համազգային Հոգեհանգիստին:

ՏԵՂԵԿԵՏՈՒ ԴԻՒԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ



## "ՋԱՀԱԿԻՐ"-ԻՆ

Ողբ. Հրանդ Զիթճեանի դառնակսկիծ մահուան առթիւ (Նիւ-Եորք), փոխան ցաւակցական հեռագրի, Մոնթրէալէն Տէր և Տիկին Զաւէն և Լիւսի Պալաեաններ կը նուիրեն 50

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Զատկական տօներու առթիւ Տիկին Լիւսի Մանուկեան կը նուիրէ.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 150 |
| Ս. Եկեղեցեաց Տիկնանց Խնամակալութեան | 150 |
| Գահիրէի Աղքատաց Հոգաբարձութեան | 150 |
| Այծեմնիկ Հանգստ. Տան | 150 |
| Հայ Կարմիր Խաչին | 100 |
| "Յուսաբեր"ին | 100 |
| "Արեւ"ին | 100 |
| "Ջահակիր"ին | 50 |
| Գերեզմանատան բարեզարդման համար | 50 |

(Ստանալ Գահիրէի Ազգային Առաջնորդարանէն)

Պր. Գէորգ Կոտոլոշեանի ընդ Օր. Թալին Զիմէնեանի ամուսնութեան ուրախ առթիւ, վասն շնորհաւորութեան Տէր և Տիկին Նակիփ Արթինեան կը նուիրեն.

| | |
|---|---|
| "Արեւ"ին | 25 |
| "Ջահակիր"ին | 25 |

Ս. Զատկուայ տօնին առթիւ, իր շատ սիրելի մօր և տիկնոջ՝ Էմմայի Fաղցր և անմոռանալի յիշատակին Տիար Ներսէս Խանճեան (ԱՄՆ) կը նուիրէ.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 75 |
| Եկեղեցւոյ Տիկնանց Խնամակալութեան | 75 |
| "Այծեմնիկ" Հանգստ. Տան | 75 |
| Գահիրէի Աղքատախնամին | 75 |
| Հայ Կարմիր Խաչին | 75 |
| Հ.Մ.Ը.Մ.-Նուպարին (Հելփ.) | 75 |
| "Արեւ"ին | 70 |
| "Յուսաբեր"ին | 70 |
| "Ջահակիր"ին | 70 |

(Ստանալ "Տեպեքօ" հաստատութենէն)

## Հայկական Ցեղասպանութեան Ոգեկոչման Թանգարան Լոս Անճելըսի Մէջ

( Շար. Գ. էջէն )

Գեղակերտ պուրակի մը կեդրոնը կանգնած ըլլալով, Յուշարձան-կոթողը պիտի շրջապատուի խաչքարերով և ցայտաղբիւրներով, որոնք պիտի խորհրդանշեն հայ ժողովուրդին վերապրումի ու գոյատեւման հզօր կամքը, ինչպէս նաեւ անոր կարողութիւնը, անցեալի եղերական ժառանգութեան ու փորձառութիւններու վրայ հիմնաւորուելով նոր փայլուն ապագայ կերտելու:

Նման լայնածաւալ նախաձեռնութեան մը իրականացումին մէջ իրենց կարեւոր ներդրումը ունին ականաւոր անձնաւորութիւններ, որոնք մաս կը կազմեն թանգարանի պատուոյ Վարչական Խորհուրդին, որոնց շարքին են՝ Գալիֆորնիոյ կառավարիչ Փիթ Ուիլսըն, Իլինոյի կառավարիչ՝ Ճիմ Էկըր, Մեսէչուսէթսի կառավարիչ՝ Ճան Էնկլըր, Նիւ Ճըրսիի կառավարիչ՝ Քրիսթին Թատ Ուիթմըն, Ծերակուտականներ՝ Պիլ Պրէտլի ու Փօլ Սայմըն և այլ ներկայացուցչական դէմքեր:

ԹՂԹԱԿԻՑ

ԳԱՀԻՐԷ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

28 Ապրիլ 1996-ին, Յինանց չորրորդ Կիրակին, Կարմիր Կիրակի կը կոչուի:

**ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԱԶԳԸՆՏԻՐ ԵՒ ՎԵՀԱՓԱՌ ՀԱՅՐԱՊԵՏ,**
**Ն.Ս.Օ.Տ.Տ. ԳԱՐԵԳԻՆ Ա. ԿԱԹՈՂԻԿՈՍԻ**

ընտրութեան և գահակալութեան առաջին տարեդարձին առիթով, Սուրբ Պատարագի ընթացքին Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ մէջ պիտի կատարուի Հայրապետական մաղթանք, Ամենայն Հայոց Սրբազնագոյն Կաթողիկոսի կենաց և արեւշատութեան համար:

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

## ՄԱՀԱԶԴ

Խոր ցաւով տեղեկացանք, որ Կիրակի 14 Ապրիլ 1996-ի երեկոյեան, "Այծեմնիկ" Հանգստեան Տան մէջ, իր մահկանացուն կնքած է

**ՄԱՐԿՐԻԹ ՊԱՊԻԿԵԱՆ**
**(ԾՆԵԱԼ ՊԱՐՈՒԹԵԱՆ)**

Յուղարկաւորութեան տխուր արարողութիւնը տեղի ունեցաւ յաջորդ օր՝ Երկուշաբթի 15 Ապրիլին, Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց գերեզմանատան մէջ:

*Այս տխուր առթիւ "Ջահակիր" իր զգացուած ցաւակցութիւնները կը յայտնէ հանգուցեալին զաւկին՝ Պր. Հրայր Պապիկեանի ինչպէս նաեւ սգակիր բոլոր պարագաներուն:*

ՆԻՒ - ԵՈՐՔ

## ՏԽՐՈՒՆԻ

Այրի Տիկին Արուսեակ Զիթճեան (ծնեալ Բաթրիկեան), Տէր և Տիկին Տիգրան Զիթճեան և դստերը, Տիար Վարուժան Զիթճեան և դուստրը, Մանուկեան, Հայկեչեան, Քիրոլոս, Մորսի, Գալէմքերեան, Պալաեան ընտանիքները և համայն սգակիր պարագաները ցաւ ի սիրտ կը ծանուցանեն մահը իրենց սիրեցեալ ամուսնոյն, հօր, մեծօր և ազգականին ողբ.

**ՀՐԱՆԴ ԶԻԹՃԵԱՆԻ**

որ հանգեաւ ի Տէր, Չորեքշաբթի 7 Փետրուար 1996, կ. ե. ժամը 8ին, "Սենթ Ճօնս" հիւանդանոցին մէջ:

Յուղարկաւորութեան տխուր արարողութիւնը տեղի ունեցաւ Ուրբաթ, 9 Փետրուար 1994, կէսօրուայ ժամը 1ին:

*Այս տխուր առթիւ "Ջահակիր" իր զգածուած ցաւակցութիւնները կը յայտնէ հանգուցեալի այրիին՝ Տիկին Արուսեակ Զիթճեանի, զաւակներուն, թոռներուն ինչպէս նաեւ ընտանեկան սգակիր բոլոր պարագաներուն:*

(Յապաղած)

## ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

**ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ**
Շաբաթ, 18 Մայիս 1996, երեկոյեան ժամը 8-ին
**"ՄՏՔԻ ԵՐԵԿՈՅ"**
**դասախօսութիւններու շարք**
**Ե.ԿՈՄԻՏԱՍԻ ԿԵԱՆՔԻ ԵՒ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ՇՈՒՐՋ**
**ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՑԱՅՏԱԳՐՈՎ ԿԸ ԶՐՈՒՑԷ**
**ԵՐԵՒԱՆԻ ԿՈՄԻՏԱՍԻ ԱՆՈՒԱՆ ԵՐԱԺՇՏԱՆՈՑԻ**
**Դոցենտ Դաւիթ Ջալեան**
Սիրալիր Հրաւէր Բոլորին

**ԳՐԱՒՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆՆԵՐ**
Հինգշաբթի 23 և Ուրբաթ 24 Մայիս 1996
**ԹԱՏԵՐԱԿԱՆ ՋԵՌՆԱՐԿ**

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.ع.م - ت ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B. P. 2111 Le Caire (R.A.E.) Tél. 3914908
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ – ԹԻՒ 1334 – ՀԻՆԳՇԱԲԹԻ 16 ՄԱՅԻՍ 1996 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 25 Եգ. Դհկ. ١٩٩٦ مايو ١٦ الخميس - ١٣٣٤ عدد رقم


## ՀԱՅՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՕՍՔ

## ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹԵԱՆ ԵՒ ԳՆԱՀԱՏԱՆՔԻ ՈՒՂՂՈՒԱԾ ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ԹԵՄԵՐՈՒՆ

Ինչպէս տեղեկացուցած էինք իր ատենին, ասկէ քանի մը ամիսներ առաջ, Ամենայն Հայոց Կաթողիկոս Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. հովուապետական այցելութեամբ, Միացեալ Նահանգներ և Գանատա մեկնած էր, ուր հանդիպումներ ունեցաւ տեղւոյն ամերիկահայութեան և գանատահայութեան հետ: Ս. Էջմիածին՝ Իր վերադարձին, Վեհափառ Հայրապետը շնորհակալութեան և գնահատանքի բովանդակալից խօսք յայտնած է, ուղղուած ամերիկահայ թեմերուն, այցելութեան հետ առընչուած անցուդարձերուն մասին:

Ստորեւ կու տանք քանի մը հասընտիր հատուածներ իմաստալից այդ Հովուապետական Թուղթէն, իր շահեկանութեան համար:

ԽՄԲ.

"Մենք երջանկութիւնը ունեցանք հաղորդակցութեան մէջ գալու մեր եկեղեցւոյ հաւատացեալներուն ամբողջութեանը հետ, առանց խտրութեան: Մեզ դիմաւորող հոգեւորականներուն և աշխարհական բազմութիւններուն մէջ ողջունեցինք ներկայութիւնը վերջին չորս տասնամեակներուն Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոսութեան հոգեւոր խնամքը վայելող եկեղեցական պատասխանատուներուն և հաւատացեալներուն: Թէ՛ Միացեալ Նահանգներու և թէ Գանատայի մէջ, անձամբ այցելեցինք շարք մը եկեղեցիներ, որոնք հոգեւորապէս կը մատակարարուին Կիլիկեան Աթոռին կողմէ և որոնք սիրալիր ընդառաջումով ընդունեցին մեզ: Տեղեկացանք որ վերջին տարիներուն գործակցութեան աւելի լայն դռներ են բացուած: Ձենք կրնար մոռնալ մանաւանդ երիտասարդ սերունդին մօտ զօրացած և օրէ օր առաւել եւս շեշտուած և շեշտուող ցանկութիւնը Հիւսիսային Ամերիկայի մէջ ստեղծուած մեր եկեղեցւոյ անբնական կացութեան վերջ տալու, մէկ թեմի շուրջ համախմբուելու, Ամենայն Հայոց Կաթողիկոսութեան իրաւասութեան ներքոյ. մէկ խօսքով՝ աստիճանաբար վերստեղծուա՛ծ տեսնելու այն բնականոն կացութիւնը, որ կը տիրէր նախքան բաժանումը. կացութիւն՝ որուն մէջ մեր եկեղեցին կը գործէր որպէս մէկ թեմ և ուր ոչ մէկ խտրութիւն կը դրուէր Նուիրապետական Աթոռներու պատկանող հոգեւորականներու ծառայութեան համար: Այսօր ալ այդ բնականոն վիճակը ստեղծելու բոլոր հնարաւորութիւնները կան. կը մնայ զանոնք կեանքի վերածել արի կեցուածքով, լայնախոհ մօտեցումով, փոխադարձ վստահութեան սկզբունքով":

"Հիւսիսային Ամերիկայի տարածքին վրայ հայրական ջերմ զգացումներով ու Հայրապետական ընդհանրական մեր պարտաւորութեան նախանձախնդրութեամբ՝ կը յորդորենք որ առաւել ոյժ տաք վերամիութեան շարժումին, երկխօսութեան անկեղծ ընթացքով, գործակցութեան լայն ճանապարհով, եղբայրական սիրոյ վերաբերումով թէ՛ եկեղեցական հոգեւոր և թէ՛ ազգային-աշխարհական կեանքի մակարդակներու վրայ, այս բոլորով և այս բոլորին մէջէն որպէս սեւեռակէտ ունենալով մեր եկեղեցւոյ թեմական միութեան վերաստեղծումը և այդ միութեան մէջէն մեր եկեղեցւոյ և ազգի զօրացումը:

Քաջ իմացէք, որ այ՛դ ընթացքով և այ՛դ գոյավիճակի վերականգնումով նաեւ պատիւ և առաւել յարգանք պիտի շահինք յաչս Ամերիկայի և Գանատայի ժողովուրդին և պետական շրջանակներուն ու օտար եկեղեցական իշխանութիւններուն և պիտի արժանանանք գալիք սերունդներու երախտագիտութեան: Այդ գործընթացով է որ **"Մէկ եկեղեցի, մէկ ազգ և մէկ հայրենիք"** նշանաբանը առաւել շօշափելի, պերճախօս և օգտառատ արդիւնքներով պիտի արժեւորուի ձեր կեանքին մէջ ինչպէս ողջ Հայոց. Եկեղեցւոյ և հայ ազգի կեանքին մէջ":

"Որպէս Կաթողիկոս Ամենայն Հայոց այստեղ Մայր Աթոռ Ս. Էջմիածնի մէջ, մեր Մայր Հայաստանի, ժողովուրդին, կեանքին ու ջանքին, ցաւին և ուրախութեան հետ խառնուած ըլլալով կեանքս, մինչեւ վերջին շունչս խառնուած պահելու ցանկալի ու բախտաւոր ճակատագրով, Հովուապետական այցելութեան ընթացքին բազմիցս խօսելու առիթ ունեցայ ձեզի՝ կրօնական, հոգեւոր, կրթական, մշակութային, ընկերային, ազգային ընդհանրական արժէքներուն և անոնց մշակումին և զարգացումին անհրաժեշտութեան առընթեր՝ մեր պապենական երկրի վերանորոգեալ և վերանկախացեալ այս վճռական ժամանակներուն, Հայաստանի անկախ Հանրապետութեան այս նորաբաց դարաշրջանի արշալոյսին մասին: Սա **մե՛ր** հողն է, **մե՛ր** հայրերու ժա-

( Շար. տեսնել էջ Բ. )

## ՓՈԽԱՆԱԿՈՒԹԻՒՆ ՌԱԶՄԱԳԵՐԻՆԵՐՈՒ

Ջորեգշաբթի 8 Մայիսին, Ատրպէյճան այցելած է Ռուսիոյ արտաքին գործոց նախարար Եւկենի Բրիմաքով և հանդիպում ունեցած նախագահ Հէյտար Ալիեւի հետ և այդ առիթով Ալիեւ պաշտօնապէս յայտարարած է թէ, իր երկիրը պատրաստ է ազատ արձակելու 39 հայ ռազմագերիները որոնք կը գտնուին ատրպէյճանական արգելարաններու մէջ: Նոյն օրը երեկոյան Երեւան այցելելով Բրիմաքով, Հայաստանի կառավարութեան առաջարկած է, հայ ռազմագերիներու հետ փոխանակուին ատրպէյճանցի 69 ռալմագերինները, որոնք ինկած էին Լեռնային Ղարաբաղի հակամարտութիւններու տեւողութեան:

**ԳԱՀԻՐԷ**

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՅՈՒՇԱՏՕՆ
### Մեծ եղեռնի 81-րդ Տարելիցին Առթիւ

Ապրիլեան եղեռնի 81-րդ տարելիցին առթիւ, համազգային յուշատօնը տեղի ունեցաւ Ջորեքշաբթի 24 Ապրիլ 1996-ի երեկոյեան, Հելիոպոլսոյ Նուպարեան Ազգ. վրժ.ի "Պըլըքտանեան" հանդիսասրահին մէջ, հովանաւորութեամբ եգիպտահայ հոգեւոր պետերուն, նախաձեռնութեամբ Գահիրէի Ազգ. Իշխանութեան, մասնակցութեամբ մշակութային, մարզական և բարեսիրական բոլոր կազմակերպութիւններուն:

Ներկայ էին՝ թեմիս առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան, հայ կաթողիկէ համայնքի վիճակաւոր Գերպ. Տ. Պետրոս Եպս. Թարմունի, Հայաստանի Հանրապետութեան դեսպան Դր. Էտուարտ Նալպանտեան և տիկինը, Գահիրէի Թեմական և Քաղաքական ժողովներու ատենապետներ՝ ՊՊ. Անդրանիկ Մեսրոպեան և Հրաչ Սիմոնեան և իրենց տիկինները, Արժ. Տ. Գալուստ Խչկ. Քհնյ. Դարբինեան, Հայր Ժիրայր Անանեան, Ազգ. իշխանութեան անդամներ, վարժարաններու տնօրէններ, մշակութային, բարեսիրական և մարզական միութիւններու պատասխանատուներ, մամուլի ներկայացուցիչներ և հոծ թիւով բազմութիւն մը:

Յանուն կարգադիր յանձնախումբի՝ բացման խօսքը կատարեց Պր. Գրիգոր Մարգարեան, որ ներկաները հրաւիրեց եգիպտական և հայկական

( Շար. տեսնել էջ Բ. )

## Հ.Բ.Ը. ՄԻՈՒԹԵԱՆ 90-ԱՄԵԱԿԸ ԵՒ "Հայաստանի Փոքրիկ Երգիչներ"ու Փառահեղ Ելոյթը

Անցեալ կիրակի, 12 Մայիսի երեկոյեան, Հելիոպոլսոյ "Պըլըքտանեան" Հանդիսասրահին մէջ տեղի ունեցաւ Հ.Բ.Ը. Միութեան հիմնադրութեան 90-ամեակին առթիւ արժանավայել հանդիսութիւն մը, հովանաւորութեամբ եգիպտահայ յարանուանութեանց հոգեւոր պետերուն:

Այս առթիւ հայրենիքէն յատկապէս հրաւիրուած էր "Հայաստանի Փոքրիկ Երգիչներ" երգչախումբը, խմբավարութեամբ գեղարուեստական ղեկավար Մօ. Տիգրան Հէքէքեանի, որ փառաւոր ելոյթ մը ունեցաւ: Նոյն առթիւ Պէյրութէն հրաւիրուած էր բանախօսելու Հ.Բ.Ը.Մ.-ի Յովակիմեան - Մանուկեան երկրորդական վարժարանի տնօրէն՝ Պր. Ժիրայր Դանիէլեան: Տեղի ունեցաւ նաեւ վերերաններու վկայականներու տուչութիւն: Մանրամասնութեանց պիտի անդրադառնանք յաջորդիւ:

Եգիպտոսում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւնը սիրով տեղեկացնում է, որ վերանորոգման աշխատանքներն աւարտելուց յետոյ, դեսպանութիւնը տեղափոխուել է նոր նստավայր և ս.թ. Ապրիլի 19-ից գործում է 20 Մոհամէտ Մազհար, Զամալէք, Գահիրէ հասցէով: Հեռախօս 342.41.57: Ֆաքս, 342.41.58, հիւպատոսական բաժին՝ 342.41.59:

ԵԳԻՊՏՈՍՈՒՄ ՀՀ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ

## ՀԱՄԱՁԱՅՆԱԳԻՐ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԵՒՐՈՊԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ՄԻՋԵՒ

Ապրիլ 22ին Լիւքսեմպուրգում տեղակայուած Եւրոպական Խորհրդարանի շէնքում Անդրկովկասի երեք երկրների արտաքին գործերի նախարարներն ստորագրեցին իրենց երկրների հետ Եւրոպական Միութեան Գործընկերութեան և համագործակցութեան համաձայնագիրը:

Նոյն օրը, մինչ համաձայնագրի ստորագրումը, նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանը կարճատեւ հանդիպում էր ունեցել Լիւքսեմպուրգի Մեծ Դուքս Ժանի հետ:

### ՀԱՆԴԻՊՈՒՄ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆ - ԱԼԻԵՒԻ

Եւրոպական Միութեան հետ Գործընկերութեան և Համագործակցութեան համաձայնագրեր ստորագրելու առիթով Լիւքսեմպուրգում գտնուող Հայաստանի և Ատրպէյճանի նախագահները Լեւոն Տէր Պետրոսեան և Հէյտար Ալիեւի միջեւ տեղի ունեցաւ հանդիպում, որն անցաւ անկեղծ ու կառուցողական մթնոլորտում:

Լեւոն Տէր Պետրոսեանը և Հէյտար Ալիեւը վերահաստատեցին Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան խաղաղ լուծում գտնելու և շուրջ երկու տարի տեւող հրադադարի պահպանման իրենց հաւատարմութիւնը ընդհուպ՝ մինչև քաղաքական համաձայնագրի ստորագրումը:

Բացի այդ, երկու նախագահները համաձայնեցին, որ հակամարտութեան կարգաւորումը պէտք է հենուի դրա շուրջ ընդունուած միջազգայնօրէն ճանաչուած սկըզբունքների և նորմերի վրայ, որ ԵԱՀԿ Մինսքի խմբի շրջանակներում ընթացող բանակցութիւնները պէտք է շարունակուեն քաղաքական համաձայնագիրն ստորագրելու նպատակով և որ կողմերի միջեւ ուղիղ երկխօսութիւնը պէտք է խթանել՝ դիւրացնելու համար հակամարտութեան համակողմանի կարգաւորումը:

Նախագահներ Տէր Պետրոսեանը և Ալիեւը համաձայնեցին, որ հակամարտութեան կարգաւորումը նշանակելիօրէն կը նպաստի նաեւ տարածաշըրջանի կայունութեան և անվտանգութեանը և բնակչութեան տնտեսական և սոցիալական զարգացմանը:

Երկու նախագահների տեսակէտները համընկան մարդասիրական հարցերը շուտափոյթ կարգաւորելու խնդրում, առաջին հերթին, մասնաւորապէս, ընդգծելով պատանդների և ռազմագերիների անյապաղ և

( Շար. տեսնել էջ 4. )

# ՄԱՐԴԿԱՅԻՆ ԱՀԱՒՈՐ ՈՂԲԵՐԳՈՒԹԻՒՆՆԵՐԷՆ ՄԻՆ

## (24 ԱՊՐԻԼ 1915)

ՄԿՐՏԻՉ ԱՆԴՐԱՆԻԿ

Բոլո՛ր ժամանակներու մարդկային հրէշութիւններէն մին է, 1915-ին թուրք կառավարութեան, նախապէս ծրագրած և գործադրած, Հայոց Ցեղասպանութիւնը:

81 տարիէ ի վեր թուրք կառավարութիւնը կ'ուրանայ իր գործած մեծ ոճիրը: Եւ կը ջանայ նենգափոխել պատմութիւնը:

Մարդկութեան գրեթէ մեծ մասը տեղեակ է հայոց զանգուածային դաժան ջարդերուն: Արեւմտեան մեծ պետութիւններն ալ գիտեն ցեղասպանութեան անժխտելի իրողութիւնը որովհետեւ իրենց յայտնի եւ՛ գաղտնի արխիւները կը յորդին փաստաթուղթերով:

Սակայն... Արեւմտեանները ցարդ *անտարբեր ու անգէտ կը ձեւանան* մարդկութեան ալ դէմ գործուած, 1915-ի ճիւաղային ոճիրին հանդէպ: Անշուշտ իրենց մեծ շահերէն թելադրուած:

Շա՛տ ուշ - աւելի քան վեց-եօթ տասնամեակներ ետք- Սթրազպուրկի եւրոպական ժողովը ընդունեց, որ ցեղասպանութիւն կատարած են թուրքերը 1915-ին: Նաեւ Ֆրանսայի նախորդ նախագահը, հանգուցեալ Ֆրանսուա Միթերան յայտարարեց, որ 1915-ին ցեղասպանութիւն կատարուած է հայութեան դէմ: 1995-ին Ռուսիոյ խորհրդարանը միաձայնութեամբ ճանչցաւ հայոց դէմ կատարուած ցեղասպանութիւնը, որուն հետեւեցաւ Պուլկարիոյ խորհրդարանը: Տարիներու ընթացքին այլ մեծ ու փոքր պետութիւններ հետզհետէ պիտի վկայեն հայոց ցեղասպանութիւնը:

Թո՛ղ թուրքերը շարունակեն ուրանալ կա՛մ փորձեն նենգափոխել իրենց բացայայտ մեծ ոճիրը:

Հայութիւնը երբե՛ք չի կրնար մոռնալ, այս նենգամիտ և վատագոյն արարքը:

Մէկ ու կէս միլիոն անմեղ հայեր երեւակայելի և աներեւակայելի չարչարանքներով յօշոտուած են: Եւ դիւրին մահով չեն մեռած: *Այսինքն...* փամփուշտով, սրախողխող կամ կախաղանով: Վերոյիշեալ մահերը յարաբերաբար դիւրին մահ կրնան նկատուիլ, բաղդատմամբ չարչարալից մահերու:

Նախատակներուն յիսնամեակէն ետք, հայ մամուլին մէջ արծարծուեցաւ, բոլո՛րը միասնաբար Սուրբ հռչակել: Առարկութիւններ եղան և մնաց... հարցը առկախ:

Միթէ Ապրիլ 24-ի զոհերը նուա՞զ տառապալից մահերով բնաջնջուեցան քան Հռոմի կրկէսներուն մէջ առիւծներուն, վագրերուն և այլ վայրի գազաններուն բզքտումին ու յօշոտումին ենթարկուած առաջին քրիստոնեաները:

Ոչ: Երբե՛ք: 20-րդ դարու թուրքիոյ մարդ գազանները գերազանցեցին ու գլեցին անցան վայրի գազանները:

Ուրեմն՝ դեռ ինչո՞ւ կը յապաղի Հայաստանեայց սուրբ եկեղեցին, 1915-ի բոլոր նահատակները հաւաքաբար, Սուրբ հռչակելու:

Կը բողոքեմ եւ Պարոյր Սեւակեան խօսքով՝
*" Խնդրելու ձեւով կը պահանջեմ":*

★

Մեծե՛ր Արեւմտեան Աշխարհի, անժամանցելի է մեր նուիրական և սրբազան դատը:

Գիտենք, որ արդարութիւն և իրաւունք բառերը ձեր բառարաններուն մէջ գոյութիւն չունին:

Սակայն... կը պահանջենք մեր արդար իրաւունքը:

*Աղեքսանդրիա, Ապրիլ 1996*

# Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆԸ Միշտ Հայաստանի Կողքին

## (ՄԻՈՒԹԵԱՆ 90-ԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ)

15 Ապրիլ 1996-ին Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութիւնը բոլորեց իր 90-րդ տարեդարձը: Իսկապէս համազգային կազմակերպութիւն մըն է, հիմնուած հայրենասէր հայորդիներու կողմէ, նախաձեռնութեամբ Պօղոս Նուպար Փաշայի, որուն հիմնական նպատակը եղած է օժանդակել հայ ժողովուրդին ու հայրենիքին, տնտեսական և բարոյական զարգացման:

Արդարեւ 90 տարի շարունակ հաւատարիմ իր հիմնական նպատակին, Հ.Բ.Ը. Միութիւնը անսակարկ նուիրումով լծուած է հայապահպանումի նուիրական գործին: Այս առընչութեամբ եթէ տեսնենք Գահիրէի մէջ 1 Մայիս 1906-ի հիմնական կանոնագրի յօդուած 1-ի տրամադրութիւնները, պիտի կարդանք հետեւեալը.

*ա) Բնագաւառի հայ ժողովուրդին մտաւոր և բարոյական զարգացման նպաստել.*

*բ) Անոր նիւթական և տնտեսական կացութիւնը բարւոքելու աշխատիլ.*

*գ) Այս արդիւնքը յառաջ բերելու ծառայող որեւէ ձեռնարկ կամ հրատարակութիւն քաջալերել:*

Հետեւաբար Հ.Բ.Ը.Մ.ը ծնաւ ազգին ցաւէն ու տարապանքէն: Հայոց ցեղասպանութենէն մօտաւորապէս 10 տարիներ առաջ:

1909-էն սկսեալ Միութիւնը մայր Հայրենիքի ծրագրերու իր նիւթական օժանդակութիւնը բերած է: Նախ շինած է Նուպարաշէն աւանը ապա Երեւանի մէջ բնակելի շէնք մը կառուցած է, ինչպէս և ակնաբուժարան, մայրանոց, ակադեմական ու բժշկական հաստատութիւններ և գիւղատնտեսական կեդրոններ: Իրաւամբ մեծապէս սատարեց 1918ին զինադադարէն ետք և յաջորդ քանի մը տարիներուն, հաստատելով որբանոցներ, այրիանոցներ,

հանդերձատուներ, հիւանդանոցներ, դարմանատուներ,Մերսինի, Դամասկոսի, Մուսուլի, Գահիրէի, Աթէնքի, Երուսաղէմի և Պէյրութի մէջ, նահատակ հայ ժողովուրդին վերապրումը ապահովելու համար:

Յիշենք նաեւ թէ Բարեգործականը մեծ աշխատանք տարած է հայրենադարձի տարիներուն նիւթապէս ու բարոյապէս և իր դրական օժանդակութիւնը բերած է ներգաղթի առթիւ եղած հանգանակութիւններուն, նաեւ կազմակերպչական աշխատանքներուն:

Ապա իր իրապաշտ ուղին շարունակելով, Միութիւնը ծլարձակեց գործունէութիւնը դէպի նոր հորիզոններ: Սփիւռքի զանազան գաղութներու մէջ բազմատեսակ կառոյցներով նպաստեց կրթական, մշակութային, ընկերային, մարզական, կրօնական և այլ մարդասիրական օժանդակութիւններով:

Հետեւաբար շատ մը ազգայիններ վստահելով հաստատութեան հայանպաստ գործունէութեան, առատաձեռն նուիրատուութիւններով զօրացուցին ու հասցուցին Միութիւնը այսօրուան նախանձնամական դիրքին: Բնականաբար բարերարները վստահած են իրենց հարստութիւնները, շնորհիւ Հ.Բ.Ը. Միութեան իմաստուն առաջնորդներուն, հիմնադիր-նախագահ Պօղոս Նուպար Փաշայէն մինչեւ ցկեանս պատուակալ նախագահ Ալեք Մանուկեանի և այժմու նախագահ Լուիզ Մանուկեան Սիմոնի, որոնք հայրենասիրական խորունկ գիտակցութեամբ և հոգածութեամբ մատակարարած են ու կը մատակարարեն Միութեան կողմէ ընդունուած բոլոր կտակներն ու նուիրատուութիւնները:

Անշուշտ երբ խօսքը կ'ըլլայ բարերարի մասին չենք կրնար չյիշել անզուգական բարերար Ալեք Մանուկեանը, որ իր նուիրատուութեանց ընդհանուր գումարը կ'անցնի 80 միլիոն տոլարը: 95 տարեկան այս հեռատես մարդը, իր բարի օրինակով, գուրգուրացած ու բազմապատկած է Միութեան դրամագլուխը և յատկապէս վարկը:

Այսօր Միութիւնը կը մատակարարէ 50 վարժարաններ, կեդրոններ և գրասենեակներ, 21 երկիրներու մէջ: (27 նախակրթարան, երկրորդական, նախապատրաստական և շաբաթօրեայ վարժարաններ 6775 ուսանողներով: Իսկ Հայաստանի Ամերիկեան Համալսարան, 800 ուսանողներ): Միայն 1994-ին համագումար պիւտճէն եղած է 24 միլիոն տոլար: Իսկ անդամներուն թիւը 23.000ը կ'անցնի:

Արդ, այս առագընթաց վերերքը կը պարտինք նաեւ իր դուստրին, արդարամիտ հայուհի Տիկին Լուիզին: Ան 1989 Օգոստոսին պաշտօնապէս նախագահ ընտրուելէ ետք բազմապիսի ծառայութիւններ մատուցանեց Միութեան, յատկապէս Հայաստանին: Ան համոզուած է որ Հայրենիքի վերապրումը գլխաւոր հրամայականն է այսօր: 1988ի սոսկալի երկրաշարժի առթիւ Միութիւնը աւելի քան 8 միլիոն տոլարի հասնող ձեռնարկներ կատարած է Հայաստանի մէջ, բժշկական, սննդամթերքի, շինարարական, կրթական և այլ մարզերու մէջ: Եւ ինչպէս ըսած է հայրենասէր նախագահուհին. *"Երկրաշարժի ապա պատերազմի և շրջափակման տագնապի այս շրջանին, նախ պէտք է ամոքել անցումային այս տարիներու ցաւերը ժողովուրդի այն դասակարգին, որ ինքզինք կորսնցուցած է այս նոր ժամանակաշրջանին մէջ": "Աւելի քան երբեք այսօր ոսկիէ առիթ մը ունինք միանալու Հայաստանի ժողովուրդին, կառուցանելու համար ազատ, անկախ և աշխոյժ երկիր մը, Հայաստան մը որ անցեալին մեր ամենէն վառ երեւակայութեան մէջ չէինք կրնար պատկերացնել": "Այսօր հինգ նախապատուութիւններ ունինք.- Տնտեսական ներդրում, ժամանակակից կրթութիւն, բարելաւուած առողջապահական միջոցներ, մշակութային նեցուկ և մարդասիրական օգնութիւն":*

Հ.Բ.Ը.Մ.ը վերջին քանի մը տարիներուն Հայաստանի Ամերիկեան Համալսարանի հիմնադրութեան, իր դրական, կարեւոր նպաստը բերաւ, նաեւ՝

Գեղագիտական և վերականգնական վիրաբուժական կեդրոնին, Հայաստանի Ֆիլհարմոնիք Նուագախումբին, Գիւմրիի Երաժշտական և Արուեստի կեդրոնին, Նորք, Արաբկիր և Մալաթիա մանկական կեդրոններուն, Սեւան Աստուածաբանական Ընծայարանին, Գիւմրիի Սննդամթերքի Սառցարանին, և Երեւանի, Սեւանի, Հրազդանի և Էջմիածնի Ապուրի Խոհանոցներուն:

Դժուար թէ այս սահմանափակ տողերով կարելի ըլլար նշել Միութեան արտերկրի մէջ տարած հայապահպանման բոլոր բազմակողմանի գործունէութիւնները: Առ այդ, սոյն յօդուածով կեդրոնացանք Միութեան իրագործած 90 տարիներու ընթացքին ծրագիրները Հայրենիքէն ներս:

Ուրախ ենք որ բարեգործականը կը շարունակէ իր ազգաշէն առաքելութիւնը հայրենիքէն ներս, որովհետեւ համոզուած ենք որ ամենէն նուիրա-

( Շար. տեսնել էջ 4 )

# ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՅՈՒՇԱՏՕՆ

( Շար. Բ. էջէն )

*զաւակներու ինքնապաշտպանական հերոսական մարտերով. Վանի, Շապին Գարահիսարի, Մուշի, Սասունի, Մուսա Լերան, Ուրֆայի, Հաճընի և այլ քաղաքներու մէջ ու լեռներու վրայ, դաժան ճակատագիրի դէմ աննկարագրելի աննձնազոհողութեամբ կը մարտընչէին մեր պանծալի աննման ֆետայիները, մահու և կենաց կռիւ մղելով":*

Ինչ կը վերաբերի այսօր հայերուս, յարգելի բանախօսը կարեւորեց ըսելով,- *"Այսօր մեզմէ ամէն մէկը իւրովսանն, իր սրբազան պարտքը պէտք է համարէ հնարաւոր բոլոր միջոցներով անվհատ, միջազգային հանրութեան ծանօթացնել զանգուածային այն ոճիրը, որ չորս տարի շարունակ, որպէս ոճիր մը ամբողջ մարդկութեան դէմ, ընդհանուր քրիստոնէութեան դէմ, բոլոր ազգերու մտաւորականութեան դէմ, քաղաքակրթութեան դէմ: Եւ դժբախտաբար տակաւին չէ արժանացած միջազգային ճանաչման, թէեւ քանիցս ապացուցուած է հարիւրաւոր փաստաթուղթերով, վաւերագրերով, լուսանկարներով, գիրքերով":*

Գալով Հայ Դատի հետապնդման յանձնաժողովին, հեռատես բանախօսը դիտել տուաւ, որ հետապնդումը պէտք է շարունակել, սակայն մեծ զգուշութեամբ և խելամըտութեամբ, առանց քաղաքական արկածախնդրութեանց մէջ նետուիլ փորձելու:

Ան եզրակացուց յայտնելով որ՝ *"Մարդկութեան դէմ գործուած ոճիրները անժամանցելի են: Մեր յոյսը մենք ենք և մէյ մըն ալ աշխարհի մարդասէրները: Մարդասիրութիւնը քաղաքականութիւն չէ անշուշտ, բայց մարդկութիւնը աւելի մարդասէր կը դառնայ օրէ օր, հաւատացէք":* Ապա անդրադառնալով սիրոյ և ճշմարտութեան մասին ըսաւ. *"Մենք կը հաւատանք, որ կու գայ ժամանակ, երբ Հայաստանը կը դառնայ նաեւ մարդկութեան սէրը, այն երկիրը, Խորենացիի բացատրութեամբ՝ այն փոքրիկ ածուն, որ իր պատմութեան ամբողջ ընթացքին եղած է մարտակիցը ճշմարտութեան և արդարութեան":* Իսկ վրէժխնդրութեան մասին Պր. Շահպազեան շեշտեց. *"Պէտք է հրաժարինք փոխվրէժի գաղափարէն, որ կրնայ յղի ըլլալ մեզի համար նոր և աւելի ահաւոր չարիքներով: Մենք մեր փոխվրէժը պէտք է փոխադրենք, մարդկային գետնի վրայ, ստեղծելով, կառուցանելով, բազմանալով ու նաեւ զօրանալով: Ամրացնել Հայաստանի նորանկախ հանրապետութիւնը, օր աւուր մեր մտքի և ձեռքի գործերով շէնցնել ու ծաղկեցնել զայն: Ամէն հայ, ուր որ ալ ըլլայ, պէտք է գիտակցի որ ինքը կոչուած է իր համեստ բաժինը բերելու, սատարելու անոր վերաշինութեան ու վերելքին: Այսպէսով միայն մենք կանգնեցուցած կ'ըլլանք անշիրիմ մնացած մեր զոհերու յիշատակը խորհրդանշող ամենաշքեղ յուշարձանը":*

Ապա յարգելի բանախօսը եզրափակեց իր բովանդակալից խօսքը այսպէս *"Փա՛ռք և յարգանք քեզի երէկ նահատակուած բայց այսօր հրաշափառապէս յարութիւն առած և վերածնութեան ու անկախութեան փրկարար ճանապարհը գտած իմ հայ ժողովուրդ և Հայոց Աշխարհ":*

Նուիրական այս ձեռնարկի գեղարուեստական յայտագրին վերջին բաժինը յատկացուած էր դարձեալ նորակազմ երգչախումբի մը ելոյթին: Այդ՝ անուանակոչուած էր "Եգիպտահայ Զուարթնոց Երգչախումբ", որուն մաս կը կազմեն գրեթէ ամէն տարիքի և կողմի պատկանող սիրող (ամաթէոր) երգիչներ: Այս առթիւ, խումբի ղեկավար Դոցենտ Դ. Զալեան խնդրեց Առաջնորդ Սրբազան Հօրմէն, որ օրհնէ նորակազմ քառաձայն երգչախումբը: Ելոյթը սկսաւ "Տէր Ողորմեա"յի երգեցողութեամբ, Տիկ. Լիզա Քրէտեանի և Պր. Ռաֆֆի Չէչճէնեանի քաղցրահնչիւն զուգերգով, "Հիմի էլ լռենք" երգը թնդացուց հանդիսասրահը, ապա "Ով հայոց աշխարհ"ը երգուեցաւ ճարտարօրէն: Հայրապետական մաղթանք"ը՝ հոգեշունչ երգը կատարուեցաւ ջերմ զգացումով, իսկ վերջինը "Ազգ իմ փառապանծ"ը՝ երգչախումբը երգեց նոր ձեւով, որուն մեներգով իր գագաթնակէտին հասցուց Տիկ. Շ. Յովակիմեան, արժանանալով հանդիսականներուն "պիս"երուն: Մեզի կը մնայ նորանոր յաջողութիւններ մաղթել նորակազմ երգչախումբերուն և անոնց խմբավարին՝ Դտ. Դ. Զալեանին, որ իր ունեցած բոլոր գեղարուեստական կարողութիւնները կարենայ ցոլարձակել երգչախումբերուն միջոցաւ:

Եզրափակիչ խօսքով բեմ բարձրացաւ Առաջնորդ Սրբազան Հայրը, որ կարեւորեց նոր սերունդի հայեցի դաստիարակութեան հրամայականը և լաւատեսութեամբ արտայայտուեցաւ նորանկախ հայրենիքի դերին և անոր շուրջ համախմբուելու անհրաժեշտութեան մասին, ապա յաջողութեան մաղթանքներով եզրափակեց իր իմաստալից խօսքը:

Յուշատօնը փակուեցաւ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի և վիճակաւոր Գերպ. Տ. Պետրոս Եպս. Թարմունիի արտասանուած պահպանիչով:

Տ.

# ՋԱՀԱԿԻՐ

16 ՄԱՅԻՍ 1996


## ԲԱՐՁՐ ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

## Ն. Գ. ՏԻԿԻՆ ՍՈՒԶԱՆ ՄՈՒԲԱՐԱՔԻ

ՄՇԱԿՈՅԹԻ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ, ԱԶԳԱՅԻՆ ՄՇԱԿ. ԿԵՆՏՐՈՆԸ, ԳԱՀԻՐԷԻ ՕՊԵՐԱՅԻ ԹԱՏՐՈՆԸ

ԳԱՀԻՐԷՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ

Ներկայացնում են

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՓՈՔՐԻԿ ԵՐԳԻՉՆԵՐ- ին

Գեղարուեստական Ղեկավար

## ՏԻԳՐԱՆ ՀԷՔԷՔԵԱՆ

**Հայաստանից Քառասուն Պատանիներ Ներկայացնում են**

ԴԱՍԱԿԱՆ, ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ԵՒ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ

**Հիասքանչ Նմոյշներ**

Շաբաթ, Մայիսի 18, 1996 թ. երեկոյեան ժամը 8-ին

**ԳԱՀԻՐԷԻ ՕՊԵՐԱՅԻ ՄԵԾ ՍՐԱՀՈՒՄ**

**ՕԺԱՆԴԱԿՈՒԹԵԱՄԲ**

ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ

**ԾԱՆՕԹ.**– Տոմսերի համար դիմել
Տիկ. Զապէլ Տեփոյեանի (հեռ. 2919571 բ., 3912345գ.),
Տիկ. Կասիա Ծղալեանի (հեռ. 5741481գ.)
և Տիկ. Սոսէ Կրպոյեանի (հեռ. 2590201բ.)

## ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ
Կիրակի, 19 Մայիս 1996, երեկոյեան ժամը 8-ին

"ՄՏՔԻ ԵՐԵԿՈՅ"

**դասախօսութիւններու շարք**

**Ե.ԿՈՄԻՏԱՍԻ ԿԵԱՆՔԻ ԵՒ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ՇՈՒՐՋ**

**ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՅԱՅՏԱԳՐՈՎ ԿԸ ԶՐՈՒՑԷ**

**ԵՐԵՒԱՆԻ ԿՈՄԻՏԱՍԻ ԱՆՈՒԱՆ ԵՐԱԺՇՏԱՆՈՑԻ**

## Դոցենտ Դաւիթ Ջալեան

Սիրալիր Հրաւէր Բոլորին

## ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆԻ

## ԱՇԱԿԵՐՏՈՒԹԻՒՆԸ

Կը Ներկայացնէ

Վա(Գ)ր-ի

## ԴԱՒԻԹ

և

## ԽԱՒԱՐԻ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

Կատակերգութիւնը



ԲԵմադրութիւն՝ Թ. ԶԱՔԱՐԵԱՆԻ

**Հինգշաբթի 23 և Ուրբաթ 24 Մայիս, 1996**

**"Պըլըքտանեան" Սրահին մէջ, կ.ե. ժամը 8-ին**

## "ՋԱՀԱԿԻՐ"ԻՆ

Ողբ. Յակոբ Տէօվլէթեանի կսկծալի մահուան և քառասունքին առթիւ վասն ցաւակցութեան, Տէր և Տիկին Մարտիկ Պալաեան կը նուիրեն 20

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Ի յիշատակ 1915 Ապրիլեան Մեծ Եղեռնի իր գերդաստանին և Հայ ազգային համայն զոհերուն Տիկին Աշխէն Թաժոյեան – Իշխանեան կը նուիրէ.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 300 |
| "Այծեմնիկ" Հանգստ. Տան | 300 |
| "Արեւ"ին | 20 |
| "Յուսաբեր"ին | 20 |
| "Ջահակիր"ին | 20 |

(Ստանալ "Արեւ"էն)

Իրենց շատ սիրելի ամուսնոյն և քեռայրին՝ Ողբ. Յակոբ Տէօվլէթեանի մահուան քառասունքին առթիւ, այրի Տիկին Շուշան Տէօվլէթեան և Տիար Արթօ Սարաֆեան կը նուիրեն.

| | |
|---|---|
| "Յուսաբեր"ին | 100 |
| "Արեւ"ին | 100 |
| "Ջահակիր"ին | 100 |
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 100 |
| Հ.Կ. Խաչին | 100 |
| Աղքատախնամին | 50 |
| "Այծեմնիկ"ին | 50 |

Իրենց սիրելի եղբօր, Ողբ. Պետրոս Տնկճեանի մահուան քառասունքին և անոր քաղցր յիշատակին Տեարք Յովհաննէս և Նուպար Տնկճեան կը նուիրեն.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 20 |
| Գալուստեան Ազգ. Վարժ.ին | 20 |
| "Արեւ"ին | 20 |
| "Յուսաբեր"ին | 20 |
| "Ջահակիր"ին | 20 |

(Ստանալ "Արեւ"էն)

Իրենց շատ սիրելի զաւակաց՝ Տէր և Տիկին Սեպուհ և Լիզա Կապէեանի անդրանիկ մանչ զաւակով մը՝ Վաչէ, բախտաւորուելուն ուրախ առթիւ, Տէր և Տիկ. Սարգիս Կապէեան կը նուիրեն.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 10 |
| Հ.Կ.Խաչին | 10 |
| "Յուսաբեր"ին | 10 |
| "Ջահակիր"ին | 10 |

(Ստանալ "Յուսաբեր"էն)

## ՍՏԱՑԱՆՔ

Շնորհակալութեամբ ստացանք Շէն - Մահի՝ "ԱՐՋԱԳԱՆԳՈՒՆ ՄԵՂԵԴԻՆԵՐ" (անձնական մեկնութիւններ): Տպարան՝ Ս. Յակոբեանց, Երուսաղէմ, 1995:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆ – ԱԼԻԵՒ

(Շար. Ա. էջէն)

առանց նախապայմաններու ազատ արձակման անհրաժեշտութիւնը:

Նախագահներ Տէր Պետրոսեանը և Ալիեւը պայմանաւորուեցին շարունակել շփումները:

## Հ. Բ. Ը. ՄԻՈՒԹԻՒՆԸ

(Շար. Գ. էջէն)

կանը Մայր Հայրենիքի՝ կեդրոնի գոյութիւնն է, և առանց վերապրած հայրենիքի, հայութիւնը կը կորսնցնէ պետականութեան ամէն հնարաւորութիւն:

Ջերմօրէն կը շնորհաւորենք Հ.Բ.Ը. Միութեան պանծալի 90-ամեակը, մաղթելով նորանոր նուաճումներ և յարատեւութիւն իր հայրենասիրական ուղեգիծին, մինչեւ հայութեան իղձերուն վերջնական իրականացումը:

ԱՒԵՏԻՍ ՄՈՎՍԷՍԵԱՆ

ԳԱՀԻՐԷ

## Ս. ՊԱՏԱՐԱԳ ԵՒ ՀՈԳԵՀԱՆԳՍՏԵԱՆ ՄԱՂԹԱՆՔ

Յառաջիկայ Կիրակի, 19 Մայիս 1996-ին, Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյս մէջ, ի ժամ Ս. Պատարագի, պիտի ոգեկոչուի յիշատակը՝

## ՍԱՐՏԱՐԱՊԱՏԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻ ՔԱՋԱՐԻ ՀԵՐՈՍՆԵՐՈՒՆ,

որոնց անունը և հերոսական խոյանքը պիտի յիշուի:

Յաւարտ Ս. Պատարագի պիտի կատարուի մասնաւոր հոգեհանգստեան պաշտօն:

Թող Տէրը լուսաւորէ ազգասէր ու հայրենանուէր բոլոր այն հերոսներուն հոգիները որոնք ինկան, ազգային, ազատագրական բուռն պայքարի ճանապարհին, կերտելով լուսաւոր էջ Հայոց նոր շրջանի պատմութեան մէջ:

ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

## Ծ Ն Ո Ւ Ն Դ

Ուրախութեամբ տեղեկացանք, որ Տէր և Տիկին Սեպուհ և Լիզա Կապէեաններ, 23 Ապրիլ 1996-ին, բախտաւորուած են առջինեկ մանչ զաւակով մը, զոր անուանակոչած են Վաչէ:

Այս ուրախ առթիւ խմբագրութիւնս կը շնորհաւորէ նորածինին ծնողքը, մեծ ծնողները՝ Տէր և Տիկին Սարգիս Կապէեանները ու Տէր և Տիկին Գարեգին Պօյաճեանները նաեւ մեծ-մեծ ծնողները՝ Տէր և Տիկին Աւետիս Գնանեանները ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաները, մաղթելով նորածին մանկան երջանիկ և երկար կեանք:

## Շ Ն Ո Ր Հ Ա Կ Ա Լ Ի Ք

Այրի Տիկին Շուշան Տէօվլէթեան և Պր. Արթօ Սարաֆեան ներկայիս կու գան իրենց խորին շնորհակալութիւնները յայտնելու թեմիս բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի և Արժ. Տ. Գալուստ Քհնյ. Դարբինեանի ինչպէս նաեւ բոլոր անոնց, որոնք անձամբ ներկայ գտնուելով, ծաղկեպսակ ղրկելով, հեռագիրով, հեռախօսով, նամակով, և զանազան հաստատութիւններու նուիրատուութիւններ կատարելով ցաւակցութիւն յայտնեցին իրենց սիրեցեալ ամուսնոյն և քեռայրին՝

## ՈՂԲ. ՅԱԿՈԲ ՏԷՕՎԼԷԹԵԱՆԻ

մահուան և քառասունքին առթիւ:

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

Ուրբաթ 17 Մայիս 1996 կ.ե. ժամը 7-ին

## ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶԻ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

Հովանաւորութեամբ

## ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ

Բարեխնամ Առաջնորդ Եգիպտոսի Հայոց

Նախագահութեամբ

## ԴՐ. ԵՒ ՏԻԿ. ԱՐՄԷՆ ՄԵԼՔՈՆԵԱՆԻ

Հայաստանի Հանրապետութեան Դեսպանութեան Խորհրդական

Տեղի պիտի ունենայ նաեւ

ԱՇԱԿԵՐՏԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ

**Գծագրութեանց Եւ Ձեռային Աշխատանքներու**

Սիրալիր հրաւէր բոլորին

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

## ՄԵՐՃԱՆԵԱՆ ԱԶԳ. ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ (ՀԵԼ.)

կիրակի, 26 Մայիս 1996 կէսօրէ ժամը 6-ին

## ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

Հովանաւորութեամբ

## ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ

Բարեխնամ Առաջնորդ Եգիպտոսի Հայոց

Նախագահութեամբ՝

## ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՄԱՐՏԻԿ ԹԷՐՁԻՊԱՇԵԱՆԻ

Սիրալիր հրաւէր բոլորին

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ




دار شرقية للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

جاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B. P. 2111 Le Caire (R.A.E.) Tél. 3914908
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 1335 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 30 ՄԱՅԻՍ 1996 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 25 Եգ. Դհկ. عدد رقم ١٣٣٥ - الخميس ٣٠ مايو ١٩٩٦


## ԻՆՔՆԱՃԱՆԱՉՄԱՆ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԻՆՔՆԱՍՐԲԱԳՐՄԱՆ ԽԻՂՃԱԽՈՒԹԻՒՆԸ

Անսխալական կատարեալ անհատ, հաւաքականութիւն կամ կազմակերպութիւն չկայ և չի կրնար ըլլալ, կեանքի և պատմութեան հոլովոյթի ընթացքին սայթաքումները անխուսափելի են, խարխափումները պատահական և ապակողմնորոշումները յաճախական: Անսխալական ըլլալու յաւակնոտ և ինքնասիրահարուած ենթադրութիւնները, բնականաբար ծիծաղ կը յառաջացնեն անոնց մօտ, որոնք հեռուէն կամ սառնասրտօրէն կը դիտեն կազմակերպութեան մը արարքները, գործունէութիւնը, նոյնպէս անհատական կեանքի մէջ ողորմելի են անոնք, որոնք կը կարծեն թէ իրենք ամենանճիշդն են, ամենակարողն ու կատարեալը:

Մեր դասագիրքերուն մէջ, պատմութեան գրականութեան հատորներուն մէջ, յատուկ ճիգ կը նկատենք Հայ ժողովուրդին բարեմասնութիւնները վեր առնող, հայը գովաբանող և մեծարող. յատուկ աշխատանք կարելի է տեսնել հայուն առաքինութիւնները շեշտող և ընդգծող, ինչպիսի՛ մակդիրներ և որակաւորումներ կը տրուին հայուն, որ յաճախ կը զարմանանք ու կ'ապշահարինք: Սակայն, իրականութիւնը երբ տեսնենք, շօշափենք իրերը իրենց իսկութեամբ, կը հաստատենք թէ այդ որակաւորումները տրուած են քարոզչական-դաստիարակչական մտահոգութիւններէ մղուած, փքուն և ուռուցիկ խօսքերը շռայլուած հայուն՝ հայու կողմէ նպատակ ունեցած է սերունդները դաստիարակել որոշակի ուղղուածութեամբ:

Հպանցիկ ակնարկ մը իսկ մեր կեանքին վրայ, դժուար չըլլար հաստատել, որ հայը այն չէ, ինչ որ կը կարդանք գիրքերու մէջ, կամ՝ սկսած է հեռանալ իր իսկական էութենէն, դիմափոխուիլ և այլափոխուիլ անթոյլատրելի չափանիշներով: Մեր հաւաքական-ազգային կեանքը սկսած է արձանագրել ահաւոր նահանջ:

Արդեօ՞ք դարաշրջանին պահանջքն է այս, արդեօ՞ք ժամանակակից պայմաններուն պարտադրանքն է այս անկումը: Կարեւորը արդիւնքն է, որ վիրաւորական է և մտահոգիչ:

Մինչ, մենք մեզի կը յորջորջենք մշակութասէր, գիրի ու մշակոյթի ջատագով, արուեստի երկրպագու, անդին՝ ականատես կ'ըլլանք մշակութային մակարդակի ահաւոր կործանման, մակերեսային և թեթեւ մշակոյթի ներխուժման հայ կեանքէն ներս մինչ, մենք մեզի կ'որակենք ազգասէր, հողին կառչած, ինքնութեան համար պայքարող, անդին՝ ականատես կ'ըլլանք ահաւոր արտագաղթի հայրենիքէն. մինչ, մենք մեզի կ'անուանենք ծայրայեղական, հայրենասէր ու նահապետական, անդին՝ կը նկատենք օտարամոլութիւն մը վարակիչ, ուծացման և ձուլման հոսք մը՝ քանդիչ ու կործանարար: Հետեւաբար, ինչ որ կը պարզուի մեր շուրջ, ինչ որ կ'արձանագրուի մեր կեանքէն ներս, ճիշդ հակառակն է այն պատկերացումներուն, որ մենք շինած ենք մեր մասին, անոր տուած գոյն ու զարդարանք: Իրապաշտ և անաչառ մօտեցում մը բաւարար է բացայայտելու մեր էութիւնը, որ շպարած ենք ինքնախաբէութեամբ և բռնազբօսիկ կերպով:

Սակայն, ողբերգութեան հիմնական կէտը, հայ անհատ-հայ հաւաքականութիւն փոխ-յարաբերութեան հարցն է: Հաւաքական կեանք ստեղծած մեր համայնքը, ինչքա՞ն ճիշդ և առողջ հիմքերու վրայ դրած է անհատ-հաւաքականութիւն փոխ-յարաբերութիւնը: Առ երեւոյթ կազմակերպուած, բայց խորքին մէջ փտած հայ ազգային կեանքը, արդեօ՞ք իր կառավարչական, կառոյցը գործի լծած է ճիշդ ուղղութեամբ, քանի՞ անհատներ իրենք զիրենք կը նկատեն յանձնառու հաւաքականութեան նկատմամբ, կամ, որ կազմակերպութիւնը լիուլի հոգատարութիւն կը ցուցաբերէ անհատի մը հանդէպ: Միթէ՞ բազմաթիւ ու անհամա՛ր անհատներ չկան, որոնք իրենք զիրենք կը նկատեն թողլքուած հաւաքականութենէն, ազգային իշխանութիւններէն: Ահա այժմէական ու հրատապ հարց մը, որ կը յուզէ ե՛ւ անհատը ե՛ւ հաւաքականութիւնը:

Արդարեւ, անհրաժեշտութիւն մըն է այսօր ազգային մեր կեանքին ինքնաճանաչումը, հաւաքական մեր առօրեային ինքնաքննարկում, իսկ շատ աւելի կարեւոր՝ ինքնասրբագրման խիզախութիւնն ու համարձակութիւնը: Որովհետեւ՝ ինչքան ալ փորձ կատարուի խուսափիլ իրականութիւններէն, գոյութիւն ունի փաստն ու ճշմարտութիւնը:

Մեր ազգային կեանքը ունի ինքնասրբագրման կարօտ շատ խնդիրներ, լուծման անհրաժեշտ բազում հանգոյցներ և խճճուած թնճուկներ: Բա՛ւ է ինքնախաբէութեան պատրանքները, խուսափողական տրամադրութիւնները: Փորձենք սրբագրել հաւաքական մեր կեանքին թերիները, որոնք օրէ օր սկսած են կուտակուիլ և դառնալ տարողունակ: Պահ մը փորձենք ճարտասանութենէ անցնիլ գործնականի, խօսքէն՝ գործի: Այլեւս, անհան-

( Շար. տեսնել էջ Գ. )

## ՀՀ ՆԱԽԱԳԱՀ ԼԵՒՈՆ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ Վրաստան Պիտի Այցելէ

ԵՐԵՒԱՆ.- Երեքշաբթի 4 Յունիսին, ՀՀ նախագահ Լեւոն Տէր Պետրոսեան պաշտօնական այցելութեամբ Վրաստան պիտի ժամանէ: Իր այցելութեան ընթացքին, նախագահը տեսակցութիւն մը պիտի ունենայ Վրաստանի նախագահ Էտուարտ Շեւարտնածէի հետ: Բանակցութիւններ պիտի կայանան հայկական և վրացական պատուիրակութիւններու միջեւ, որոնցմէ ետք երկկողմանի համագործակցութեան շարք մը համաձայնագիրներ պիտի ստորագրուին:

## Գնդակոծում Նախիջեւանի Սահմանին Վրայ

Անցեալ Կիրակի 26 Մայիսին, ատրպէյճանական զինեալ ուժերը Նախիջեւանի Օրդուբադի շրջանին, հրաձգային զէնքերով, մօտ կէս ժամուայ տեւողութեամբ գնդակոծած են Սիւնիքի մարզի Ծիրանաձոր վայրը:

ՀՀ պաշտպանութեան նախարարութենէն նաեւ տեղեկացուցին, թէ յաջորդ օրը՝ 27 Մայիսի գիշեր, մինչեւ առաւօտեան ժամը 7-ը, ատրպէյճանական կողմը գնդացիրներով և հրաձգային տարատեսակ զէնքերով պարբերաբար գնդակոծած է Սիւնիքի մարզի Խաշլիպիկ բարձունքի պաշտպանական դիրքերը: Հայաստանի զինեալ ուժերու ստորաբաժանումները հակառակորդին հարկադրած են դադրեցնել կրակը:

## Հ. Բ. Ը. Միութեան 90-ամեակն և "Հայաստանի Փոքրիկ Երգիչներ"ու Փառահեղ Ելոյթը

Ուրախ ենք Հ.Բ.Ը.Մ.-ը որ Եգիպտոսի մէջ ծնունդ առած է ասկէ 90 տարիներ առաջ ոչ միայն կանգուն է մինչեւ այսօր, այլ մեծ արդիւնաւորութեամբ կը շարունակէ իր առաքելութիւնը:



Արդարեւ Կիրակի 12 Մայիսի երեկոյեան, Հելիոպոլսոյ "Պըլըքտանեան" հանդիսասրահին մէջ, հոծ բազմութեան մը ներկայութեան Հ.Բ.Ը.Մ.-ի հիմնադրութեան 90-ամեակին առթիւ, տեղի ունեցաւ արժանավայել հանդիսութիւն մը, հովանաւորութեամբ եգիպտահայ յարանուանութեանց հոգեւոր պետերուն: Ներկայ էին եգիպտահայոց առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան, կաթողիկէ հայոց վիճակաւոր Գերպ. Տ. Պետրոս Եպս. Թարմունի, Եգիպտոսի մօտ ՀՀ Դեսպան Դր. Էտուարտ Նալպանտեան և իր ազնիւ տիկինը, արժանապատիւ Տէր Հայրեր, Գահիրէի Թեմական և Քաղաքական ժողովներու ատենապետները, համայնքիս ներկայացուցչական հանգամանաւոր դէմքեր, ՀՀ դեսպանութեան անձնակազմը, յիշեալ Միութեան վարչականներ գըլխաւորութեամբ Հ.Բ.Ը.Մ.-ի

( Շար. տեսնել էջ Բ. )

## Սարդարապատի և Հայաստանի Առաջին Հանրապետութեան Նուիրուած Հանդիսութիւն

*Կիրակի, Մայիս 26ին, յատուկ հանդիսութեամբ նշուեցաւ Սարդարապատի ճակատամարտի և Հայաստանի առաջին Հանրապետութեան 78-րդ տարեդարձները, Արմաւիրի մարզի Սարդարապատի յուշահամալիրին մէջ:*

*Այս առթիւ կատարուեցաւ օծումը յուշահամալիրին մէջ զետեղուած զոհուած ազատա- մարտիկներու խաչքարին: Ապա Արմաւիրի մարզի աշա- կերտները ներկայացուցին ազ- գային աւանդական ծէսեր, ինչպէս Վարդավառ, Համբար- ձում կամ հարսնեկան արարողութիւններ: Այնուհետեւ տեղի ունեցաւ ձեռային աշխատանքներու ցուցահանդէսվաճառք:*

*Արմաւիրի մարզպետարանի հովանաւորութեամբ և ի ներկայութեան ՀՀ գիտութեան և կրթութեան նախարար Վարդգէս Գնունիի, նոյն օրը յուշահամալիրի ազգագրական թանգարանին մէջ*

( Շար. տեսնել էջ Բ. )

## ԼԻՆՍԻ ՀԻՄՆԱՐԿԸ ԿԸ ԿՐԿՆԱՊԱՏԿԷ

"Հայաստան" Հիմնադրամի Արեւմտեան Ամերիկայի գրասենեակէն կ'իմանանք, թէ գնահատելով "Հայաստան" Համահայկական Հիմնադրամի հայրենաշինական աշխատանքները և անոր կազմակերպած Ազգային տուրքի մարաթոնի ստեղծած միասնականութեան ոգին, Լինսի Հիմնարկութիւնը որոշած է կրկնապատկել թելեթոնի միջոցով Միացեալ Նահանգներու ամբողջ տարածքին հաւաքուած բոլոր գումարները:

## "ՀԱՅԵՐԸ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ" ժապաւէնի Ցուցադրութիւնը

Եգիպտական մամուլէն տեղեկանալով, կը յայտնենք թէ "Արձանագրական Ֆիլմերու Ազգային Փառատօնին, հովանաւորութեամբ մշակոյթի նախարարութեան, Երկուշաբթի 3 Յունիս 1996, կէսօրուան ժամը 12-ին, քաղաքիս կեդրոնը գտնուող Սինեմա Միամիի մէջ, պիտի ցուցադրուի 15 վայրկեան տեւողութեամբ՝ "ՀԱՅԵՐԸ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ" ժապաւէնը, բեմադրութեամբ Նապիլ Էզզաթի: Նաեւ մինչեւ ժամը 1.30 պիտի ցուցադրուին այլ հինգ ժապաւէններ:

## "Հայաստանի Փոքրիկ Երգիչների" Փայլուն Ելոյթը Գահիրէում

Մայիսի 18-ին Գահիրէի Օփերայի տան մեծ դահլիճում Եգիպտոսի առաջին Տիկին Սիւզան Մուպարաքի հովանաւորութեամբ և Գահիրէում ՀՀ դեսպանութեան, ԵԱՀ մշակոյթի նախարարութեան և եգիպտական ազգային մշակութային կենտրոնի կազմակերպութեամբ տեղի ունեցաւ "Հայաստանի փոքրիկ երգիչները" երգչախմբի ելոյթը: ՀՀ դեսպանութեան մամլոյ կենտրոնից երախտագիտութեամբ յայտնեցին, որ Գահիրէի Հ.Բ.Ը.Մ. մասնաճիւղը նիւթական աջակցութիւն է ցուցաբերել ձեռնարկի անցկացման համար:

Օփերայի 1200 տեղանոց դահլիճը լեփ-լեցուն էր: Ներկայ էին Գահիրէում հաւատարմագրուած աւելի քան 30 երկրների դեսպաններ, ԵԱՀ արտաքին գործերի, մշակոյթի, կրթութեան, էկոնոմիկայի, միջազգային համագործակցութեան և այլ նախարարութիւնների բարձրաստիճան պաշտօնեաներ, հոգեւորականներ, մշակոյթի գործիչներ, երաժըշտագէտներ, արուեստասէր լայն հասարակայնութիւն, եգիպտահայ համայնքի ներկայացուցիչներ:

Երգչախումբը, որի ղեկավարն է միջազգային մրցոյթների դափնեկիր, Երեւանի կոնսերվատորիայի դոցենտ Տիգրան Հէքէքեանը, յաւուր պատշաճի ներկայացրեց հարուստ ու բազմաժանր երգացանկ, հիացմունք պատճառեց ներկաներին իր կատարողական բարձր մակարդակով: Հնչեցին Կոմիտասի, Ռ. Ամիրխանեանի, Ա. Ոսկանեանի, Ռ. Պետրոսեանի, Լ. Միրզոյեանի, Մ. Վարդազարեանի, Պախի, Մոցարդի, Ռոսինիի, Պուլենկի և այլ կոմպոզիտորների ստեղծագործութիւնները: Եգիպտացի ունկընդիրների համար հաճելի անակընկալ էր ժողովրդականութիւն վայելող արաբական երգի կատարումը: Իսկ համերգը եզրափակուեց 15-ամեայ Մարինէ Մարգարեանի "Խաղաղութիւն աշխարհին" ոգեշունչ երգով, որը դահլիճը դիմաւորեց յոտընկայս բուռն ծափահարութիւններով:

Երգչախմբի ելոյթը բարձր գնահատանքի արժանացաւ տեղական մամուլում, Գահիրէի հեռուստատեսութեան կենտրոնական ծրագրերով հեռարձակուեցին համերգից հատուածներ, ինչպէս նաեւ՝ այդ կապակցութեամբ Գահիրէում ՀՀ դեսպան Է. Նալբանդեանի և մայեստրո Տիգրան Հէքէքեանի հարցազրոյցները:

Գահիրէում դեռ թարմ են յիշողութիւնները Արամ Խաչատրեանի 90-ամեակի կապակցութեամբ օփերայի նոյն դահլիճում ՀՀ դեսպանութեան կազմակերպած անուանի հայ երաժիշտների մասնակցութեամբ յոբելեանական երեկոյից, որը եգիպտական մամուլի բնորոշմամբ վերածուել էր հայ մշակոյթի իսկական տօնի: Երկրորդ մի այդպիսի տօն դարձաւ տաղանդաշատ հայ պատանի երգիչների փայլուն ելոյթը Գահիրէում:

## ԻՐԱՆ-ԹՈՒՐՔՄԵՆՍՏԱՆ ԵՐԿԱԹԳԻԾԸ ԲԱՑՈՒԵՑ

ԵՐԵՒԱՆ, ՄԱՅԻՍ 13, ԱՐՄԷՆՓՐԵՍ

Մաշհադ-Սարախս-Թաջան երկաթուղին ճանապարհ է դէպի ապագայ:

Այսպիսի համընդհանուր կարծիք յայտնեցին Իրանի Մաշհադ և Թուրքմենստանի Թաջան քաղաքները միացնող երկաթուղու բացման արարողութեանը մասնակցելու նպատակով 60 երկրներից ժամանած պատուիրակութիւնների ղեկավարները:

"Անցեալ տարի ես մասնակցեցի Բանդարաբաս նաւահանգստի բացմանը և այսօր երկաթուղու շահագործումը գնահատում եմ իբրեւ այդ ընդհանուր կառոյցի յաջորդ փուլը", օդանաւակայանում լրագրողների համար արած յայտարարութեան մէջ ասաց ՀՀ նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանը:

Նշելով կառոյցի քաղաքական և տնտեսական նշանակութիւնը, Հայաստանի նախագահն ասաց, որ այն կարող է խաղաղութեան գործօն հանդիսանալ տարածաշրջանում:

Երկաթգիծն ունի 295 քիլոմեթր ընդհանուր երկարութիւն, որից 130ը Թուրքմենստանի, 195ը Իրանի տարածքում:

Իրանի ղեկավարութիւնը գտնում, է, որ ապագայում, երբ երկաթգիծը ձգուի դէպի Չինաստան, կը գցուի "Մետաքսի ճանապարհին" փոխարինող ուղին:

## *Արցախի Բնակչութեան Աճը Վերջին Տարիներուն*

ՍՏԵՓԱՆԱԿԵՐՏ ("Նոյեան Տապան").- Ըստ Արցախի Վիճակագրութեան պետական վարչութեան, 1995ին Հանրապետութեան բնակչութեան թիւը 600ով բարձրացած է:

Պաշտօնական այս տուեալներուն համաձայն, անցեալ տարուան առաջին 10 ամիսներու ընթացքին պաշտօնապէս արձանագրուած ծնունդներու թիւը հասած է 1651ի, իսկ մահուան դէպքերը՝ 1063ի:

1987-1989 տարիներու ընթացքին Արցախի մէջ ծնած են տարին աւելի քան 4000 երեխաներ: Իսկ բնական աճը միջին հաշուով հասած է 3000ի: Անշուշտ պէտք չէ մոռնանք, որ այդ տարիներուն Արցախի բնակչութեան որոշ տոկոսը Ատրպէյճանի քաղաքացիներ էին:

Արցախեան պատերազմի տարիներուն, նորածիններու թիւը պակսած է 2,5 անգամով, իսկ մահացողներու պարագան կրկնապատկուած է: 1994ին ծնունդներու և մահացողներու թիւը գրեթէ հաւասար եղած է:

1987-89 տարիներու համեմատութեամբ, մահացողներու թիւը 1995ին նուազած է 25% ով, իսկ 1994ի համեմատութեամբ՝ 40% ով:

Արցախի վիճակագրական կեդրոնը սկսած է հաշուարկել նաեւ ամուսնութիւններու և ամուսնալուծումներու պարագաները: Այսպէս, անցեալ տարուան առաջին 10 ամիսներու ընթացքին Արցախի մէջ պաշտօնապէս արձանագրուած են 738 ամուսնութիւններ և 115 ամուսնալուծումներ:

## ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ ԱՐՁԱԿՈՒՐԴ Է

Դպրոցական աշակերտները շատ ուրախ են, իսկ անոնց մայրերը շատ ուրախ չեն:

Ամառնային արձակուրդը, որ մօտաւորապէս երեք ամսուայ վրայ երկարող տեւողութիւն մը ունի, կարելի չէ թեթեւի առնել և լրջօրէն չմտածել, թէ ինչպէ՞ս պէտք է դասաւորել ու ծրագրաւորել այն 15 շաբաթները, որոնք մեր զաւակներուն ամառնային արձակուրդը կը կազմէ:

Ծնողները՝ մանաւանդ մայրերը, իրաւունք ունին "սարսափելու" թէ արդեօք ինչպէ՞ս պիտի կարենան գլուխ ելլել այսօրուայ նոր սերունդ նկատուող այս անկարգ, ըմբոստ, նոյնիսկ անկիրթ զաւակներուն հետ: Բայց մայրերը լաւ պէտք է գիտնան, թէ այդպիսի "արուրուած " նկարագրի կազմութեան մէջ իրենք ալ կարեւոր բաժին մը ունին:

Մանկավարժական բնոյթով "դասախօսութիւն"ներ շատ տրուած են այս սիւնակներէն ուր մատնանշած ենք դպրոցներու և մանաւանդ ծնողներու դերը նոր սերունդի դաստիարակութեան յոյժ կարեւոր գործընթացին մէջ:

Բայց այսօր պիտի ուզենք տալ կարգ մը ցուցմունքներ, որոնց գործադրութեան ճանապարհը պիտի առաջնորդէ մեր ծնողները հաճելի ու օգտակար ամառնային արձակուրդ մը ունենալու "երազ"ին:

- Առաջնորդել երեխաները դէպի մատիտ ու տետրակի գործածութեան և գունաւոր պատկերազարդ գիրքերու աշխարհը:
- Գիրքերէ առնուած պատմութիւններ պատմելու մասնաւոր պահեր տրամադրել:
- Ծնողներ պէտք է ինքզինքնին տրամադրեն զաւակներու ժամանցին, բծախնդրօրէն հետեւելով անոնց խաղալիքներու աշխարհին, մասնակցելով անոնց խաղերուն և բացատրութիւններ տալով իւրաքանչիւր խաղալիքի մասին:
- Մայրեր և հայրեր հաւասար բաժիններ ունին իրենց զաւակներու ժամանցները դասաւորելու պարտաւորութեան մէջ: Եթէ նոյնիսկ հայրեր ջղային ու յոգնած վերադարձած են տուն, շատ աւելի հանդարտեցուցիչ է զաւակներով զբաղուելու հաճոյքը քան՝ թղթախաղի սեղանը կամ պարզապէս տունէն դուրս "փախչելու" դիւրին ճամբան:
- Հարց-զրոյցի պահեր ստեղծելով զարգացնել անոնց մտածողութիւնը, ընկերային դատողութիւնը և "ճիշդ"ի ու "սխալ"ի նկատմամբ անձնական տրամաբանութեան մշակումը:
- Ժամանցները և պտոյտները լրջօրէն հսկուած պէտք է ըլլան ծնողներու կողմէ: Զարմանալի կը գտնենք այն ծնողներու խելքը, որոնք իրենց հինգ, վեց, եօթը տարեկան զաւակը հինգ, վեց, եօթը ժամ կը յանձնեն ուեւէ մէկու մը ընկերակցութեան, որեւէ ժամանցի մը պատրուակով:
- Նախընտրելի են բացօթեայ պտոյտներ՝ զարգացնող խօսակցութիւններու ընկերակցութեամբ:
- Բծախնդրութեամբ հետեւիլ կենցաղային կարգապահութեան, թէ՝ ամէն զբաղում իր յատուկ ժամը ունի:

( Շար. տեսնել էջ 4 )

## Արմէն Տատուրի "ՀԱՄԱՆՈՒԱԳ"ը

ՄԿՐՏԻՉ ԱՆԴՐԱՆԻԿ

Գրող Արմէն Տատուրէն ստացայ իր "Համանուագ" ստուար հատորը, 627 էջ: Գեղեցիկ կողքով է և մաքուր տպագրութեամբ:

Հետեւեալ բաժանումներէ կը բաղկանայ. պատմուածք, գեղջկական պատկերներ, գրական փորձեր, գրական գնահատանք, յուշագրական, ուղեւորական, օրագրութիւն, մեր նոր կեանքէն խոհեր և վկայութիւններ: Այս բազմամաս գիրքը իսկապէս համանուագ մըն է: Այլ վերնագիր պատշաճ և պերճախօս պիտի չըլլար:

Ընթերցումը գրական վայելք է ու շահեկան: Կեանքը ուսումնասիրած և լիովին ըմբռնած հայ գրողի ապրումներ են: Կարելի չէ մէկ օրէն և մէկ շունչով կարդալ բոլորը: Սակայն... սկսելէ ետքն ալ կարելի չէ՛ օրերով յետաձգել շարունակումը:

"Համանուագ"ը մտածման առագաստը լայն բացած է: Ամբողջական և անմնացորդ: Զգացումներով գեղուն խորհրդածութիւններ, հոգեբանական վերլուծումներու վերծանումներ են: Մէջբերումներ կատարել անկարելի է, որովհետեւ "Ջահակիր"ին սիւնակները չեն թոյլատրեր:

*Արմէն Տատուր թշնամի է սուտի և կեղծիքի: Ցանդունգ ճշմարտութիւններ յաճախ կը ժայթքին: Նմոյշ մը.*

*"Անմշակ միտքով մարդն է իսկական աղքատը, որքան ալ նիւթապէս ըլլայ **"կարեւոր"** անձնաւորութիւն":*

Վերջին հաշուով ճշմարտութեան խոշոր բաժին չկա՞յ այ՛ս տարազին մէջ: Ա. Տատուրի ամենէն ակնառու գիծն է ճշմարիտին ձգտումը: Իր յատկանիշն ինքնատպութիւնը, ոճի յստակութիւնը, տրամաբանութիւնը: Շատ գրութիւններու մէջ երեւան կու գայ հայրենասիրութիւնը, նաեւ՝ մարդկայինը: Նիւթերը առատ են ու այլազան:

Արմէն Տատուր ըսելիք ունի. տալիք շատ բան ունի և կը գրէ պարզին վսեմովը, իր մաքրամաքուր հոգիով: Ատակ է աննշան կարծուած բաներ նշմարելու և վերլուծելով յուզելու: Ամենակարճ պատմուածքներու մենաշնորհը ունի հայ գրողներուն մէջ: Եւ երբեմն փայլատակող սրամտութիւններուն նրբերանգները կը համեմեն գրածները: Իր "խոհեր"էն մի քանի նմոյշներ.

*"Անիմաստ է մարդուն լուսին և երկնային այլ մոլորակներ նուաճելու փորձը, երբ ինք անզօր է տակաւին յաղթահարելու աշխարհի ցաւերուն:*

*"Արդեօք պիտի գա՞յ օր մը, որ Բաբելոնեան արդի աշտարակ ՄԱԿ-ը... : Յոգնած եմ երազելէն և անբացատրելի խոր տխրութեամբ համակուած, յոյժ կը կասկածիմ... :*

*"Մի՛ փնտռէք որեւ է **"բարոյական"** արդի քաղաքակրթութեան և քաղաքականութեան մէջ:*

*"Մեծագոյն գբօսաշրջիկը այն է, որ գիրք կը կարդայ":*

Տաղանդաւոր արձակագիր Արմէն Տատուրի **"Համանուագ"**ը իր մխիթարանքը և յոյսը պիտի ըլլայ:

Շատ հաւանօրէն այս հատորը հետք կը ձգէ հայ գրականութեան ադամանդեայ ոսկեայ և արծաթեայ գանձարան ովկէանին մէջ:

*Աղեքսանդրիա, Մայիս 1996*

## Գալուստեան Ազգ. Մանկապարտէզի Յաջող Ամավերջի Հանդէսը ...

( Շար. Գ. էջէն )

*գործեր: Ուրախ ենք որ արհեստավարժ մակարդակ ցուցաբերող, վարժարանի աշակերտութեան ձեռամբ պատրաստուած այս գործերը, կը պարտին իրենց գծագրութեան և ձեռային աշխատանքի ուսուցչուհի՝ Տիկ. Հոտա Թալաաթի և ձեռագործի ու ձեւագիտութեան ուսուցչուհի՝ Տիկ. Գոհար Գազազեանի անոնց արուեստի գծով ունեցած կարողութիւններուն:*

*Շնորհաւորելի են բոլորը: Հանդիսութեան վերջաւորութեան ներկաները հիւրասիրուեցան քաղցրաւենիներով:*

*Ա. Մ.*

## ԻՆՔՆԱՃԱՆԱՉՄԱՆ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԻՆՔՆԱՍՐԲԱԳՐՄԱՆ ԽԻԶԱԽՈՒԹԻՒՆԸ

( Շար. Ա. էջէն )

դուրժելի դարձած է հայ ազգային կեանքին ճապաղութիւնը, միօրինակութիւնը: Վերափոխութիւնն ու յեղաշրջումը դարձած են հրամայականներ:

Այնուամենայնի, հայ անհատ-հայ հաւաքականութիւն յարաբերութիւնները ճիշդ հունաւորելու համար պէտք է սրբագրուին այն թերիները և յոռի կողմերը, որոնք այսօր ցցուած են այդ յարաբերութեանց մէջ: Այդ ծիրէն ներս, անհրաժեշտ է անհատին գիտակցութիւնը, իսկ հաւաքականութեան կազմակերպուածութիւնը: Օրինակ, քանի՞ անհատ հայեր իրենք զիրենք պարտաւոր կը զգան օժանդակել ազգային այս կամ այն հաստատութեան, կամ՝ հայրենիքին, մինչ՝ անհատներ իրենց անձնական հաճոյքին և զեխ կեանքին համար կը մսխեն ահաւոր գումարներ: Քանի՞ անհատներ կը գործեն հաւաքականութեան բարօրութեան և յառաջդիմութեան համար, մինչ՝ անձնական նախաձեռնութիւն մը յաջողցնելու համար չեն զլանար ոչ մէկ բան:

Ուստի, այսօր իւրաքանչիւր անհատ, հաւաքականութիւն թէ կազմակերպութիւն պէտք է ունենայ ինքնաճանաչման համարձակութիւնը և ապա անցնի ինքնասրբագրման, որովհետեւ՝ ոչ ոք անսխալական է, իսկ սխալը շրջանցել, կը նշանակէ իյնալ նոր սխալի մէջ, աւելի ծանրակշիռ յանցանքի մէջ...:

Արդարեւ, ինքնաճանաչումը առաքինութիւն է, իսկ ինքնասրբագրումը՝ առաքինութեանց մայրը:

ԱՒԵՏԻՍ ՌԱԶՄԻԿ

ՋԱՀԱԿԻՐ
30 ՄԱՅԻՍ 1996

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ
### Ուսումնական Յաջողութիւն

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան և ազնիւ ծնողներուն որ Վարժարանիս 1995-1996 ուսումնական տարեշրջանի Գ.Նախակրթարանի և Ե. Նախակրթարանի Պետական քննութեանց արդիւնքները եղած են հարիւր առ հարիւր յաջողութեամբ:

Ստորեւ կուտանք ցանկը համապատասխան նիշերով:

| Գ. Նախակրթարան | Առ հարիւր |
|---|---|
| Թալին Ժորժ Թահթապրունեան | 100 |
| Կարապետ Հրայր Շահրոզեան | 100 |
| Շանթ Վաչէ Արապաէզեան | 100 |
| Լորա Օհաննէս Վարդուկեան | 99 |
| Հայկ Արեգ Օհաննէսեան | 98 |
| Ժորժ Եագուպ Կիւրիւնեան | 96 |
| Րոժէ Ժորժ Թադոսեան | 96 |
| Բիբըր Նակիպ Եագուպ | 94 |
| Րամզի Գամալ Րամզի | 94 |
| Րաֆֆի Սեպուհ Եսայեան | 92 |

| Ե. Նախակրթարան | 350-էն | Առ հարիւր |
|---|---|---|
| Տորիս Ակոբ Ժան | 329 | 94 |
| Թալին Մարգպետ Արթինեան | 328 | 93.7 |
| Տիանա Միլատ Քալտաս | 298 | 85 |
| Արամ Սեպուհ Եսայեան | 273 | 78 |
| Սամուէլ Գաբրիէլ Պալեան | 256 | 73.1 |
| | 300-էն | |
| Րուպինա Ֆուատ Եուսէֆ | 219 | 73 |

Տնօրէնութիւնս և ուսուցչաց կազմը կը շնորհաւորեն յարգելի ծնողները և յաջողած աշակերտները յառաջիկայ նորանոր նուաճումներու մաղթանքներով:

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

★

*Խմբագրութիւնս եւս կը շնորհաւորէ զիրենք, իրենց ծնողները, վարժարանի տնօրէնութիւնն ու ուսուցչական կազմը և կը մաղթէ նորանոր յաջողութիւններ:*

## ԸՆՏՐԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Ի գիտութիւն Աղեքսանդրիոյ մեր համայնքի Եգիպտահպատակ անդամ-անդամուհիներուն, ներկայիւս կը տեղեկացնենք թէ ըստ Եգիպտահայոց Կազմական Կանոնագրի 23-րդ յօդուածին, Թեմական Ժողովին մասնակի ընտրութիւն պիտի կատարուի յառաջիկայ Նոյեմբեր ամսու 10-ին:

Ուստի բոլոր անոնք, մանչ կամ աղջիկ, որոնք 21 տարեկանը լրացուցած են, պարտին ներկայանալ Ազգային Առաջնորդարան, իրենց հետ ունենալով պըթաա Շախսիյէ կամ հօր հպատակութեան թուղթը և փոքր լուսանկար, մինչեւ յառաջիկայ Օգոստոս ամսուն մէկը, իրենց անունը արձանագրել տալու համար ըստ Կանոնագրի 10-12 յօդուածներու տրամադրութեան:

Կը տեղեկացնենք նաեւ թէ Աղեքսանդրիոյ մէջ առաջին անգամ ըլլալով համայնքի եգպտահպատակ հայ կիները արտօնուած են քուէարկելու, ուրեմն ընտրելու և ընտրուելու Թեմական Ժողովի անդամ, եթէ վերջացուցած են 30 տարեկան:

ԸՆՏՐՈՂԱԿԱՆ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ

## Յ Ա Յ Տ Ա Ր Ա Ր Ո Ւ Թ Ի Ւ Ն

Գահիրէի Ազգային Իշխանութիւնը հաճոյքով կը տեղեկացնէ բոլորին թէ նշանակուած է յատուկ Յանձնախումբ, նախապատրաստական աշխատանքներ կատարելու համար, Եգիպտահայ Ազգային Վարժարաններու շրջանաւարտներու, 1997 Սեպտ. 11-էն սկսեալ համահաւաք հանդիպումը կայացնելու համար Գահիրէի մէջ:

Ուրեմն Գալուստեան, Նուպարեան, Պօղոսեան Ազգային Վարժարաններու շրջանաւարտից համաշխարհային չորրորդ համահաւաք հանդիպումը տեղի կ'ունենայ Գահիրէի մէջ 1997 Սեպտ. 11-էն սկսեալ:

ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳ. ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ



## Հ. Բ. Ը. Միութեան 90-ամեակ

(Շար. Բ. էջէն)

յօգուտ Հ.Բ.Ը.Մ.-ին, Սփիւռքահայութեան և հայրենիքին:

Կարճ դադարէ մը ետք գործադրուեցաւ գեղարուեստական փառաւոր յայտագիրը, ուր հայրենիքէն յատկապէս հրաւիրուած էր "Հայաստանի Փոքրիկ Երգիչներ"՝ 40 երկսեռ պատանիներէ բաղկացած երգչախումբը, խմբավարութեամբ՝ գեղարուեստական ղեկավար Տիգրան Հէքէքեանի: Անաչառօրէն ըսենք թէ աննախընթաց պատեհութիւն մըն էր ականատես ըլլալ հայեցիութիւն բուրող, այդ մատղաշ երախաներուն, որոնք կորովալից ու ներդաշնակ իրենց երգերով կը թնդացնէին հանդիսասրահը, առինքնելով հանդիսականները, հոգեպարար հպարտութեան առիթներ ընծայելով բոլորին:

Յատկապէս Կոմիտասեան մեղեդիները ու մեր գեղջկական երգերը երբ կը հնչէին խոր հասկացողութեամբ և անսայթաք կատարումով, այդ փոքրերու շրթներէն, այնքան հիացական տպաւորութիւն կը գործէր, որ կը ոգեշնչուէինք այն մտքով, թէ հայը ուր ալ գտնուի, ինչ դժուարութիւններու ալ մատնուի, կը դրսեւորէ իր տաղանդը, պատիւ բերելով իր հայրենիքին:

Գալով հմուտ խմբավար՝ Տ. Հէքէքեանին, համբաստադէմ երաժշտագէտին, իր խրոխտ կեցուածքով, երբ վարպետ ղեկավարի խոյանքին ուշադիր, այդ Փոքրիկ Երգիչները, քաղցրալուր ձայներով և աղօթքով նըրբութեամբ "Սուրբ-Սուրբ"ն կամ "Մանկական աղօթք"ը կ'երգէին, դաշնակի ընկերակցութեամբ դեռատի Մարինէ Մարգարեանի, խիստ արտայայտչական էր ու սրտառուչ, որ մեզի կը մնար ըսել **"Կեցցէ՛ք ով պատուաբեր հայ զաւակներ և խմբավար Տիգրան Հէքէքեան"**:

Պր. Պերճ Թէրզեանի շնորհակալական խօսքերով վերջ գտաւ յոբելենական այս փառահեղ հանդիսութիւնը:

Կը շնորհաւորենք Հ.Բ.Ը.Մ.-ի հիմնադրութեան 90-ամեակը, մաղթելով յաջողութիւն և յարատեւութիւն, բոլոր անոնց որոնք ամբողջական նուիրումով կը սատարեն այս մեծ Միութեան:

Պ. Մ.

## ՅԱՋՈՐԴ ԹԻՒՈՎ՝

Տեղի սղութեան պատճառով, Կոմիտասի կեանքի և գործունէութեան շուրջ, երաժշտական յայտագրով զրոյցը, որ ներկայացուց Դոցենտ Դաւիթ Ջալեան, պիտի տանք յաջորդ թիւով:

Նոյնպէս յաջորդիւ պիտի անդրադառնանք Վագրի՝ "Դաւիթ և Խաւարի Թագաւորութիւնը" կատակերգութեան նկարագրականը:



## Տ Խ Ր Ո Ւ Ն Ի

Տէր և Տիկին Լեւոն Գաղթացեան, Տէր և Տիկին Հայկ Գաղթացեան և զաւակունք (Աւստրալիա), Օրդ. Սոնիա և Նորա Գաղթացեաններ (Գանատա), Օր. Մատլէն Յովակիմեան (Գանատա) և համայն ազակիր պարագաները ցաւ ի սիրտ կը ծանուցանեն իրենց շատ սիրելի մօր, մեծմօր, քրոջ և ազգականին, ողբացեալ՝

### ԷԼՄՈՆ ԳԱՂԹԱՑԵԱՆԻ
### (ԾՆԵԱԼ ՅՈՎԱԿԻՄԵԱՆ)

մահը, որ տեղի ունեցաւ ի Գանատա, յետ երկարատեւ հիւանդութեան:

Յուղարկաւորութեան արարողութիւնը և թաղումը կատարուեցաւ Հինգշաբթի, 23 Մայիս 1996-ին, Մոնթրէալի մէջ:

*Այս տխուր առթիւ, "Ջահակիր" իր զգացուած խոր ցաւակցութիւնները կը յայտնէ հանգուցեալին զաւկին՝ Տէր և Տիկ. Լեւոն Գաղթացեանին ինչպէս նաեւ հարազատներուն և ազակիր բոլոր պարագաներուն:*

## Կ Ո Չ

### Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարի "ՇՆՈՐՀԱԼԻ" Երգչախումբի Նախկին Անդամներուն

Ընդառաջելով եգիպտահայոց Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի առաջարկին, յանձնառու եղանք պատրաստելու Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարի "ՇՆՈՐՀԱԼԻ" բազմավաստակ երգչախումբի պատկերազարդ ալպոմը, պատմական յետադարձ ակնարկով մը վեր առնելով անոր աւելի քան վաթսունամեայ եկեղեցանուէր ու մշակութանուէր գործունէութիւնը:

Տարապարհակ այս աշխատանքին բարեյաջող ընթացքը ապահովելու համար, խղճի պարտք մըն է՝ ոչ ոք և ոչինչ չմոռնալու գիտակցութեամբ, կոչ ընել արտասահմանի և Մայր Հայրենիքի մէջ գտնուող "ՇՆՈՐՀԱԼԻ" երգչախումբի նախկին անդամ-անդամուհիներուն, մենակատարներուն և երգեհոնահարներուն որպէսզի բարեհաճին առժամապէս մեզի տրամադրել իրենց մօտ հաւանաբար գտնուող լուսանկարները, յայտագիրները կամ այլ՝ յիշատակելի նիւթեր, որոնք աղերս ունին երգչախումբին անցեալի՝ յատկապէս 1928-1960 ժամանակաշրջանի, բազմաբեղուն գործունէութեան հետ: Բնական, է, ղրկուած բոլոր նիւթերը՝ յետ օգտագործման, պիտի վերադարձուին իրենց տէրերուն:

Կանխայայտ Շնորհակալութեամբ՝

ՄՕ. ԵԴՈՒԱՐԴ ՅԱԿՈԲԵԱՆ

**20 Մայիս, 1996**

Հասցէ —
Edward Hagopian
2, Soliman El Halabi st., 2nd Floor
Cairo, Egypt

ԾԱՆՕԹ. —

Արտասահմանի և մայր հայրենիքի մամուլէն կը խնդրուի արտատպել ներկայ կոչը:

ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Ս. Պօղոս-Պետրոս Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը կու գայ ծանուցանելու Աղեքսանդրիոյ մեր բարեպաշտ ժողովրդեան, թէ 7 Յունիս 1996-էն սկսեալ ուրբաթօրեայ ժամերգութիւնները կը վերսկսին Շաթպիի Ազգային Գերեզմանատան Ս. Գէորգ Մատրան մէջ, ըստ առաջնոյն: Իսկ այն ազգայինները, որոնք կը փափաքին իրենց ննջեցեալներուն գերեզմանօրհնէքը կատարել, կրնան դիմել ժամարար քահանայ հօր:

Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 10-ին:

ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ
Ս. ՊՕՂՈՍ-ՊԵՏՐՈՍ ԵԿԵՂԵՑԻՈՅ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ ԱՐՁԱԿՈՒՐԴ Է

(Շար. Գ. էջէն)

– Ձմեռնային աշխատանքի առաջնորդել երեխան, երբ պատանի է՝ արդէն 12-էն 15 տարեկան, կարելի է զինք հետաքըրքըրող գործի մը առաջնորդել: Իսկ փոքրերը անպայման պէտք է զբաղ պահել ձեռային աշխատանքով:

– Ցաւալի երեւոյթ մը գոյութիւն ունի ներկայիս, մեր աղջիկ զաւակները ասեղ բռնելու վարժութիւն չեն ունենար ո՛չ դպրոցի մէջ՝ ո՛չ ալ տան մէջ: Ինչո՞ւ գոնէ ամառուայ արձակուրդին մենք չի սորվեցնենք մեր աղջիկ զաւակներուն կար կարել, կոճակ կարել, ձեռագործ և ասեղնագործ վարժեցնել և բուրդէ հիւսք յաջողցնել:

– Վերոյիշեալ բոլոր զբաղումի տեսակները կարելի է համեմել երաժշտութեամբ, մանաւանդ հայկականով:

"ԱՐԱՐԱՏ"

ԱԶՆԻՒ ԿԻՏՈՒՐԵԱՆ

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

جاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B. P. 2111 Le Caire (R.A.E.) Tél. 3914908
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ | ԹԻՒ 1336 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 13 ՅՈՒՆԻՍ 1996 | ՀԱՏԸ ՋԵՌՔԷ 25 Եգ. Դհկ. | عدد رقم ١٣٣٦ - الخميس ١٣ يونيو ١٩٩٦


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## ՔՍԱՆ ԱՆՄԱՀՆԵՐՈՒ ՍԽՐԱՆՔԸ

81 տարիներ առաջ քսան տիտաններ հայրենի հողը պաշտպանելու անհրաժեշտ վճռակամութեամբ, Հայաստանի անկախութիւնը երազելու առաջադրանքով, իրենց շուները փչեցին Կ. Պոլսոյ Սուլթան Պայազիտի հրապարակին վրայ… :

Հայ ժողովուրդի քսան ընտրանի զաւակներ կը բարձրանային կախաղան, իրենց մտասեւեռումը ունենալով ազատագրուած և Ամբողջական Հայաստանը: Արդարեւ Հնչակեան կուսակցութիւնը իր ծննդեան առաջին իսկ օրէն, երդուեց՝ որ ըլլայ մատաղը հայութեան, զոհաբերումի անշահախնդիր և անսակարկ ծառայութեամբ: Եւ ինչ էր քսան Հնչակեան հերոսներու խոյանքը, եթէ ոչ՝ զսպել և կանխել հայ ժողովուրդի Ցեղասպանութիւնը:

Հայութիւնը իր 1918 թուի Սարտարապատը պիտի մղէր 1915ի նախօրէին: Թշնամիին դէմ պիտի կազմէր միացեալ ճակատ, պայքարիլ անոնց դէմ համազգային միութեամբ, ամէն բանէ վեր դասելով հայրենիքին շահերը: Պէտք էր գետին տապալել այն անձերը, ինչպէս՝ Էնուէր, Թալաաթ կամ Ճէմալ, որոնց ափերուն մէջ կը գտնուէին ոճիրներու գործադրման հրահանգները: Սակայն գազանի ոստիկանութիւնը կարողացած էր ձեռք անցընել հայ յեղափոխականներուն անուանացանկերը, շնորհիւ Արթիւր Եսայեան անունով լրտեսի մը, որ դիւրացուց "ախտ"ին մասնակից անձերը բանտարկելու գործը:

Քսանները պիտի գործադրէին Հնչակեան կուսակցութեան 7-րդ պատգամաւորական ժողովին որոշումները, որոնք առնուած էին Քէօսթէնճէի մէջ (Ռումանիա) 1913-ին. որոշուած էր հարուածել Իթթիհատի պարագլուխները, հայ ժողովուրդը պատրաստել ինքնապաշտպանութեան, ստեղծել ինքնավար Հայաստան: Ուրեմն հայ ժողովուրդի Ցեղասպանութիւնն ու Քսաններու ճակատագիրը անքակտելիօրէն առնչուած են իրարու և տասնամեակներու թաւալումի ընթացքին առաւել եւս յստակ կը դառնայ քսաններու զոհաբերման խորհուրդը և հայ ժողովուրդի յաւերժութեան գաղափարը:

Ահա թէ ինչու ցեղասպանը իր առաջին նպատակը դարձուց անձահարել հայ ժողովուրդի խիզախ բազուկը՝ Հնչակեան կուսակցութիւնը: Փարամազ և իր ընկերները այդ կախաղաններուն վրայ երբ կը նահատակուէին 15 Յունիս 1915-ին, այդ օր կանչ մըն էր բոլոր յառաջիկայ սերունդներուն համար ազատասիրութեան և հայրենասիրութեան: Անոնք իրենց էութիւնն ու տեսլականը դարձուցած էին ծառայութիւն՝ հայ ժողովուրդին, պայքար՝ յանուն հայրենիքին ու անփոխարինելի հողին: Քսան կախաղանները փաստօրէն կը դառնային նահատակները հանուր հայութեան: Քանզի կուսակցութիւնը իր գաղափարականով, ղեկավար մարմիններով և շարքով նուիրուեցաւ մէկ ու յստակ առաջադրանքի կենսագործման ի խնդիր, որն էր Հայաստանի ազատագրութիւնը: Բանտը, աքսորը, ժանտ շղթան և կախաղաններու ձողափայտերը չկարողացան դոյզն անգամ սարսափեցնել Հնչակեան գաղափարական-քաղաքական միտքն ու բազուկը, որոնց համադրումով՝ կուսակցութիւնը ցոյց տուաւ իր տեղը հայ ժողովուրդի պատմութեան մէջ, որ անկասկած պատուանդանի վրայ է, բարձր ու վսեմ:

Ո՞վ կրնայ արդար և անաչառ գնահատականը կատարել քսան Հնչակեան ռահվիրաններուն սխրանքին, եթէ ոչ՝ պատմութիւնը, որ վեր կրնայ հանել մութն ու պայծառը, դրականն ու ժխտականը:

Հայ պայքարի տարեգրութեան մէջ քսան անմահները առ այսօր, մեզի յեղափոխականութեան գաղափարականը ոգեշնչող տիպարներն են, որ սերունդէ սերունդ կը ժառանգուի անպայման:

Կախաղաններուն վրայ ճօճուող անոնց դիակները, մեզի կենդանութիւն պարգեւող, ոգի ներշնչող ջահակիրները կը մնան, որովհետեւ անոնք կախաղաններուն վրայէն տեսան ներկայ Հայաստանը. աւետեցին հայ ժողովուրդի և հայրենիքի լուսաշող առաւօտը:

Անկախ Հայաստանի վերածնունդը իրականացած է այսօր: Անոր գոյառումը լուսաշող արեւով կը ջերմացնէ մեր հոգիները, անոր մէջ տեսնելով նաեւ մեր դարաւոր ազգային դատի ամբողջական և արդար լուծման գրաւականը: Քսաններու և բոլոր ֆետայիներու թափած արիւնին պտուղն է այսօրուայ Հայաստանը, որ անվիճելիօրէն բռնած է անկախութեան և ազատութեան ճանապարհը:

Քսանները կը մնան պարծանքը հայութեան և Հնչակեան կուսակցութեան, որոնց միացան քսան հազարներ և դեռ եւս պիտի միանան մինչեւ՝ Ամբողջական Հայաստանի գոյառումը:

Բիւր յարգանք Քսաններու անթառամ յիշատակին:

## Նախագահ Լեւոն Տէր Պետրոսեան կ'ընդունի Նաուալ Էլ Թաքաուիի

ՀՀ նախագահ Լեւոն Տէր Պետրոսեան, Յունիս 7-ին ընդունեց Եգիպտոսի պաշտօնական պատուիրակութիւնը, գլխաւորութեամբ՝ Եգիպտոսի տնտեսական և միջազգային համագործակցութեան նախարար Տիկին Նաուալ Էլ Թաքաուիի:

Տիկին Թաքաուի ՀՀ նախագահին յանձնեց Եգիպտոսի նախագահ Հոսնի Մուպարագի ուղերձը: Ապա զրոյցի ընթացքին, անոնք անդրադարձան հայ-եգիպտական տնտեսական համագործակցութեան, տարածաշրջանային կայուն խաղաղութեան գործօններու շուրջ:

Հանդիպումին ներկայ էին ՀՀ նախագահի գլխաւոր խորհրդական Ժիրայր Լիպարիտեան, ՀՀ արդիւնաբերութեան նախարար Աշոտ Սաֆարեան, Եգիպտոսի մօտ ՀՀ դեսպան Դր. Էտուարտ Նալպանտեան և Հայաստանի մօտ Եգիպտոսի ժամանակաւոր հաւատարմատար Ահմէտ Ֆուատ Րասլան:

## Ալիեւ կը կրկնէ իր "Լայն Կարգավիճակի" առաջարկը

"Ատրպէյճանի նախագահ Հայտար Ալիեւ անգամ մը եւս շեշտած է, որ "Ատրպէյճանը պատրաստ է ինքնավարութեան ամենալայն կարգավիճակ շնորհելու Ղարաբաղի - որպէս մաս Ատրպէյճանի հողային տարածութեան - ամենալայն՝ միջազգային առումով: Իր կարգին, հակազդելով Ալիեւի առաջարկին, նախագահ Լեւոն Տէր Պետրոսեան ըսած է. "Կը հաւատամ որ այս առաջարկը մեզի պէտք չէ ուղղուի, այլ Ղարաբաղի: Ինչ լուծում որ ընդունելի կ'ըլ-լայ Լեռնային Ղարաբաղի հա- մար, ընդունելու պիտի ըլլայ նաեւ մեզի համար":

## ԽՈՍՏՈՒՄՆԱԼԻՑ ԱՊԱԳԱՅ ՀԱՅ-ԵԳԻՊՏԱԿԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹԵԱՆ

Յունիսի 7-9-ը Երեւանում անց է կացուելու Հայ-եգիպտական միջ-կառավարական տնտեսական յանձնաժողովի անդրանիկ նիստը: Այդ կապակցութեամբ Հայաստան է ժամանելու եգիպտական բարձրաստիճան պատուիրակութիւնը՝ ԵԱՀ էկոնոմիկայի և միջազգային համագործակցութեան նախարար, Հայ-եգիպտական միջկառավարական տնտեսական յանձնաժողովի համանախագահ Տիկին Նաուալ Էլ-Թաթաուիի գլխաւորութեամբ: Պատուիրակութեան կազմում են էկոնոմիկայի, արդիւնաբերութեան, ֆինանսների, առեւտրի, էներգետիկայի, առողջապահութեան, գիտական, հետազօտութիւնների և մի քանի այլ նախարարութիւնների ու գերատեսչութիւնների ներկայացուցիչներ, ինչպէս նաեւ գործարար մարդիկ: Հայաստանի կողմից յանձնաժողովի համանախագահն է արդիւնաբերութեան նախարար Աշոտ Սաֆարեանը, հայկական պատուիրակութիւնը նոյնպէս ներկայացուած է լինելու տնտեսական բնոյթի տարբեր նախարարութիւններով:

Նախատեսւում է, որ յանձնաժողովը կը քննարկի Հայ-եգիպտական տնտեսական համագործակցութեան արդի վիճակը և զարգացման հեռանկարները, կը ճշգրտի այն հիմնական ուղղութիւններն ու բնագաւառները, ուր կարելի է փոխշահաւէտ և արդիւնաւէտ համատեղ աշխատանք տանել: Կը ստորագրուեն մի շարք միջկառավարական փաստաթղթեր, որոնց նախագծերն արդէն պատրաստ են և արժանացած երկու կողմերի հաւանութեանը:

Եգիպտոսի պատուիրակութեան այցը նախապատրաստելու, քննարկուելիք հարցերի շրջանակները ճշտելու նպատակով Գահիրէում ՀՀ արտակարգ և լիազօր դեսպան Եդուարդ Նալպանտեանը հանդիպումներ է ունեցել Եգիպտոսի էկոնոմիկայի և միջազգային համագործակցութեան, արդիւնաբերութեան և հանքային հարստութիւնների ֆինանսների, առողջապահութեան, առեւտրի և մթերումների նախարարների հետ, բանակցութիւններ է վարել նաեւ ԵԱՀ արտաքին գործերի և գիւղատնտեսութեան նախարարութիւնների, քաղաքացիական աւիացիայի վարչութեան, ներդրողների միութեան և մի քանի այլ գերատեսչութիւնների և կազմակերպութիւնների հետ: Կարեւոր է, որ յանձնաժողովի աշխատանքին նախորդել են տարբեր մակարդակի շփումներ և փոխադարձ այցելութիւններ: Դեռ 1992 թ. Հայաստան այցելեց եգիպտացի գործարարների մի մեծ խումբ՝ ներկայիս վարչապետ Քամալ էլ-Կանզուրիի գլխաւորութեամբ: Հայ-եգիպտական տնտեսական կապերի ամրապնդման

( Շար. տեսնել էջ 4 )

## ԵԼՑԻՆ, ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ, ԱԼԻԵՒ ԵՒ ՇՎԱՐՆԱՑԷ ՄԻԱՑԵԱԼ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Քիսլովոտսքի մէջ շուրջ քառասուն վայրկեան տեւած գերաստիճան հանդիպումէ մը ետք, Ռուսիոյ, Ատրպէյճանի, Հայաստանի և Վրաստանի նախագահները որդեգրեցին "Կովկասի մէջ ազգամիջեան համախոհութեան և տնտեսական ու մշակութային գործակցութեան համար" Յայտարարութիւնը: Փաստաթուղթին հեղինակները կոչ կ'ընեն միացնելու իրենց ճիգերը ի խնդիր գոյութիւն ունեցող հակամարտութիւններու ամբողջական կարգադրութեան մը՝ Պետութիւններու հողային ամբողջականութեան, սահմաններու անբռնաբարելիութեան, մարդու և մասնաւորաբար ազգային փոքրամասնութիւններու իրաւունքներու ու հիմնական ազատութիւններու պահպանումի սկզբունքներու հիման վրայ: Միացեալ Յայտարարութիւնը վեր կ'առ-

( Շար. տեսնել էջ Բ. )

## ԸՆԿԵՐ ՏԻԳՐԱՆ ՍԱՐԱՖԵԱՆ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ

Անցեալ Ուրբաթ 7 Յունիսի երեկոյեան հաճոյքը ունեցանք ընդունելու Հ.Մ.Մ.-ի Կեդրոնական վարչութեան կորովի ատենապետ ընկեր Տիգրան Սարաֆեան:

Հանդիպումի ընթացքին, որուն ներկայ գտնուեցան Հ.Մ.Մ.-ի և "Ջահակիր"ի պատասխանատու ղեկավարներ ու անդամներ, յարգելի ընկերը անդրադարձաւ մասնաւորապէս Հ.Մ.Մ.ի հիմնադրութեան 75-ամեակի առիթով տեղի ունենալիք նախաձեռնութիւններուն: Ան լայն տեղեկութիւններ տուաւ նաեւ Հ.Մ.Մ.-ի ծիրէն ներս տարուած ազգօգուտ աշխատանքներուն մասին, սփիւռքի զանազան երկիրներու մէջ, ինչպէս՝ Սուրիոյ, Լիբանանի, Ֆրանսայի, Անգլիայի, Քուէյթի, Գանատայի, Ուրուկուայի, Պոսթընի, Լոս Անճելըսի շրջանի և այլ երկիրներու մէջ: Շահեկան իր զրոյցի ընթացքին, սիրելի հիւրը ընդգծեց Հայաստանի մէջ վերջին շրջանին տարուած աշխատանքներու գործընթացի մասին:

Ներկաներուն կողմէ ուղղուած բոլոր հարցումներուն գոհացում տալէ ետք, սիրելի ընկերը Հ.Մ.Մ.-ի 75-ամեակի առթիւ գեղեցիկ յուշանուէր մը նուիրեց տեղւոյս Հ.Մ.Մ.-ի կազմին:

Յաջողութեան մաղթանքներով հրաժեշտ առինք մեր սիրելի ընկեր Տ. Սարաֆեանէն, որ նոյն գիշեր օդի ճամբով մեկնեցաւ Միացեալ Նահանգներ:

ԼԻԲԱՆԱՆ

## ՇՆՈՐՀԱՒՈՐԱԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

Ս.Դ. Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութեան ներկայացուցիչ ընկերներ՝ Վահրիճ Ճէրէճեան և Պէպօ Սիմոնեան 5 Յունիսին պաշտօնական այցելութիւն մը տուին Լիբանանի մօտ Հայաստանի Դեսպանատուն՝ շնորհաւորելու համար Պր. Երուանդ Մելքոնեանը՝ արտակարգ և լիազօր դեսպան նշանակումին առիթով Հայաստանի Հանրապետութեան Նախագահի յատուկ հրամանագրով:

Ս.Դ.Հ.Կ. Կեդրոնական Վարչութեան ղեկավար ընկերները միաժամանակ մաղթեցին որ Պր. Եր. Մելքոնեանին վստահուած դիւանագիտական բարձր պաշտօնը նպաստէ ընդհանրապէս Հայաստան-Լիբանան յարաբերութիւններու զարգացումին ու ամրապնդումին, և մասնաւորաբար լիբանանահայութեան և Մայր Հայրենիքի միջեւ կապերու տակաւ սերտացումին:

ԳԱՀԻՐԷ

## ԴՈՑԵՆՏ ԴԱՒԻԹ ՋԱԼԵԱՆԻ Զրոյցը Կոմիտասի Մասին

"ՄԵՆՔ ՔԻՉ ԵՆՔ ՍԱԿԱՅՆ ԵԳԻՊՏԱՏԱՑ ԵՆՔ": Կ'ենթադրենք որ եթէ բանաստեղծ մը գտնուէր համայնքէս ներս, այսպէս պիտի սկսէր իր քերթուածը: Արդարեւ պէտք է յայտնենք թէ այս տարուայ ձմեռնային եղանակը, այնքան լեցուն էր զանազան ձեռնարկներով, ըլլայ ան՝ մշակութային, գեղարուեստական, մարզական, աշակերտական եւայլն, որոնց համար թուականները զիրար կը հրմշտկէին, որ դուրսէն դիտողին համար զարմանք պիտի պատճառէ վստահաբար: Պիտի զարմանայ, որ այս ի՞նչ եռուզեռ կը տիրէ համայնքէն ներս, եթէ գաղութը քանի մը հազար կը հաշուէ միայն:

Այս երփներանգ ձեռնարկներուն մէջ իր տեղը գտաւ "ՄՏՔԻ ԵՐԵԿՈՅ" դասախօսութիւններու շարքը, որոնք տեղի ունեցան Նուպարեան Ազգ. վարժարանի՝ "Պըլըքտանեան Սրահ"ին մէջ: Զանազան հետաքրքրական նիւթերու շուրջ, սոյն շահեկան դասախօսութիւններու շարքի առաջին երկու երեկոներուն ելոյթ ունեցաւ ուսումնապետ Փրոֆ. Պարգեւ Շահպազեան, երրորդը՝ Դոկտ. Վարուժան Գազանճեան և չորրորդ ելոյթը ունեցաւ Տիկին Արմին Քրէտեան-Երանոսեան: Իրապէս բոլոր դասախօսութիւններն ալ մէկը միւսին կը գերազանցէին, հակառակ անոր որ նօսր թիւով ներկաներ կը գտնուէին: Խօսողները գոհ էին, քանի որ այդ ներկաներուն մեծամասնութիւնը որոշ մակարդակ մը կը ներկայացնէին:

Գալով հինգերորդ և վերջին ելոյթին՝ բնոյթը որոշ չափով կը փոխուէր և հանդիսութեան հանգամանք մը առնելով, Կիրակի 19 Մայիսի երեկոյեան, հոծ բազմութեան մը ներկայութեան տեղի կ'ունենար երաժշտական երեկոյ մը: Կոմիտասի կեանքի և գործունէութեան շուրջ, երաժշտական յայտագրով զրոյց կ'ունենար Երեւանի Կոմիտասի անուան երաժշտանոցի դոցենտ Դաւիթ Ջալեան:

Ներկայ էին Թեմիս առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան, Գահիրէի Թեմական և Քաղաքական ժողովներու ատենապետները, համայնքիս ներկայացուցչական դէմքեր և երաժշտասէր հասարակութիւն մը: Ելոյթին բացումը կատարեց նոյն վարժարանի հայերէն լեզուի ուսուցիչ Պր. Թովմաս Զաքարեան, որ թռուցիկ ակնարկ մը նետելէ ետք յիշեալ "Մտքի Երեկոյ"ներու կարեւորութեան վրայ, հրաւիրեց օրուան դասախօսը:

Դոտ. Դ. Ջալեան իր կուռ և համապարփակ դասախօսութեան մէջ, նախ ամփոփ կերպով անդրադարձաւ Կոմիտասի կենսագրութեան: Ապա լուսարձակի տակ առաւ անոր երաժշտական գծով տարած ընդարձակ աշխատանքը: Յարգելի զրուցողը հմտօրէն ծանօթացուց Կոմիտաս վարդապետի արժէքն՝ որպէս անձ և որպէս տաղանդ:

Երաժշտագէտ Դ. Ջալեան իր զրոյցը առաւել մատչելի դարձնելու միտումով, մերթ ընդ մերթ հրաւիրեց նորակազմ Զուարթնոց Երգչախումբ"ի անդամներէն մեներգողներ, որոնք զրոյցի ընթացքին ներկայացուցին Կոմիտասի տարբեր և բազմատեսակ յօրինումներէն և դաշնաւորումներէն փունջ մը:

Նախ փոքրիկն Ալիս Մագլումեան իր անուշիկ ձայնով մեներգեց "Սար սար"ը: Տիկ. Լիզա Քրէտեան զգացումով երգեց "Քէլէ քէլէ"ն: Օր. Արփի Ծանիկեան "Ալաքեազ"ը (ըսենք թէ Օր. Արփին առաջին անգամն էր որ հասարակութեան առջեւ կը մեներգէր: Իր մեղմ ձայնը կ'իմանայինք եկեղեցիին վերնայարկէն միայն. իր պարզ երգելու ոճը հաղորդական է): Տիկ. Սիլվա Թէրզիպաշեան գեղեցիկ իր ձայնով մեներգեց "Լուսնակն անոյշ"ը:

Ապա Օր. Արփին խոր հասկացողութեամբ դաշնակի վրայ մեկնաբանեց "Կիլիկիա"ն և "Կուժն արա"ն: Նոյնպէս Տիկ. Ս. Թէրզիպաշեան այս անգամ գեղգեղեց "Ախ Մալալ ճան"ը: Կրկին Օր. Ա. Ծանիկեան ճգրտութեամբ մեներգեց "Սուրբ, Սուրբ"ը: Պր. Ռաֆֆի Ջէչճէնեան իր հրապուրիչ ձայնով երգեց "Կալի երգ"ը: Կրկին Օր. Արփին՝ "Գարուն ա"ն՝ ծանօթ ժողովրդական երգը: Նոյնպէս Տիկ. Լ. Քրէտեան այս անգամ խոր ապրումով մեներգեց "Կռունկ"ը, յուզիչ երգը: Ապա հմայիչ էր նոյնինքն դասախօսին ձայնով ունկնդրել "Հօռովել" մը:

"Երեկոն" իր ամբողջականութեան հասաւ, երբ "Զուարթնոց" քառաձայն երգչախումբը իր ներկայութեամբ, Կոմիտասէն քանի մը խմբերգներ երգելով, մեծապէս խանդավառեց ներկայ հասարակութիւնը: Երգչախումբը ղեկավարութեամբ խմբավար Դաւիթ Ջալեանի և դաշնակի ընկերակցութեամբ իր տաղանդաւոր տիկնոջ՝ Իրինայի երգեցին "Կալի երգ"ը (մենակատարութիւնը՝ իր դաշն ձայնով Պր. Սերճ Սէտէֆճեան), ապա "Գարուն ա"ն և փակեցին "Անձրեւ եկաւ" երգով:

Ներկաներուն բուռն ծափերով վերջ գտաւ սոյն յաջող երեկոյթը:

Ա. Մ.

## ԱՊԱՔԻՆՈՒՄԻ ՄԱՂԹԱՆՔ

Տեղեկացանք որ մեր բարեկամներէն՝ Պր. Պերճ Փիլիպպոսեան, ասկէ երկու շաբաթ առաջ, տագնապի մը հետեւանքով հիւանդանոց փոխադրուած է, ուր լուրջ խնամքի տակ գտնուած է:

Բարեբախտաբար առաջքը առնելով որեւէ բարդութեանց, ան քանի մը օրէ ի վեր վերադարձած է իր բնակարանը, ուր ապաքինման շրջան մը կը բոլորէ:

Շուտափոյթ և կատարեալ ապաքինում կը մաղթենք մեր սիրելի բարեկամին:

## Մեծամօրի հիւլէակայանը Պիտի Չգործէ Ամրան

Ամրան ամիսներուն, Մեծամօրի հիւլէակայանը պիտի դադրի գործելէ, տարեկան կանոնաւոր քննութիւններ կատարելու և կայանին ապահովութիւնը երաշխաւորելու համար: Սոյն կասեցումը կրնայ տեւել մինչեւ երեք ամիս: Ներկայիս, Մեծամօրը հանրապետութեան տարածքին սպառած ելեկտրականութեան կէսը կ'արտադրէ:

Մեծամօրի հիւլէականի տնօրէն՝ Սուրէն Ազատեան յայտարարեց, թէ մտահոգուելու որեւէ պատճառ չկայ այս առթիւ: Ապա շեշտեց, թէ դադրեցումը թեքնիք պատճառներով է և կայանի շահագործման անվտանգութեան սպառնացող հարցեր գոյութիւն չեն ունեցած ատոմակայանի վերագործարկումէն ասդին:

## Օգնութիւն Դասագրքերու Պատրաստութեան

Համաձայն կրթութեան և գիտութեան փոխ-նախարար Աշոտ Բլէեանի, համաձայնութիւն մը գոյացած է Միջազգային Դրամատան և Հայաստանի կառավարութեան միջեւ, ըստ որուն, World Bank-ը 1997-էն 2002 թուականը վարկեր պիտի տրամադրէ Հայաստանի, դասագիրքերու պատրաստութեան համար: Սոյն դասագրքերու տարածման համար նոր դրութիւն մը պիտի ստեղծուի, որուն համաձայն ծնողները մէկ տարուան համար պիտի "վարձեն" դասագիրքերը որոշ վճարումի մը փոխարէն:

## ԵԼՑԻՆ, ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ, ԱԼԻԵՒ ԵՒ ՇՎԱՐՆԱՑԷ ՄԻԱՑԵԱԼ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

( Շար. Ա. էջէն )

նէ խաղաղարար այն կարեւոր դերը զոր կը խաղայ Ռուսիա Կովկասի մէջ:

Չորս պետութիւններուն ղեկավարները կը մերժեն յարձակունակ անջատողականութիւնը, ազգի մը մենատիրական արտայայտութիւնները, միջ-դաւանանքային մրցակցութիւնները և կրօնական ծայրայեղութիւնը: Անոնք կը դատապարտեն ահաբեկչութեան բոլոր ձեւերը և կը հաւաստիացնեն որ վճռած են ներդաշնակել իրենց ճիգերը դիմագրաւելու համար զա-նոնք:

Եւ վերջապէս, Ռուսիոյ, Ատրպէյճանի, Հայաստանի և Վրաստանի նախագահները կ'արտայայտեն իրենց դիտաւորութիւնը ստեղծելու տնտեսական հասարակաց տարածաշրջան մը:

## Ուսումնական Յաջողութիւններ

### ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

Ուրախութեամբ կը յայտնենք կրթասէր մեր հասարակութեան և ծնողներուն, թէ Նուպարեան Ազգ. Վարժարանի 1995-1996 կրթական տարշրջանին Գ. և Ե. նախակրթարանի ամավերջի պետական քննութիւններուն արդիւնքները եղած են հարիւր առ հարիւր և աշակերտները ձեռք ձգած են հետեւեալ նիշերը:

| Ե. ՆԱԽԱԿՐԹԱՐԱՆ | | Առ հարիւր |
|---|---|---|
| Գասապեան Լիւսի | 342 | 97,7 |
| Սոմպաթի Ալէն | 337 | 96,2 |
| Բերլոշեան Ժանօ | 327 | 93,4 |
| Օզիրիս Քրիսթինա | 327 | 93,4 |
| Ասլանեան Ալին | 323 | 92,2 |
| Աւետիսեան Մանուէլ | 314 | 89,7 |
| Յակոբեան Յակոբ | 313 | 89,4 |
| Պէնեան Մարկօ | 310 | 88,5 |
| Գազազեան Ալէն | 309 | 88,2 |
| Պալաեան Մարալ | 309 | 88,2 |
| Սիրքէճեան Նաթալի | 299 | 85,4 |
| Տեփոյեան Սիմոն | 289 | 82,5 |
| Յակոբեան Մարալ | 280 | 80 |
| Թագա Քրիսթին | 264 | 75,4 |
| Թումայեանց Վարդան | 256 | 73,1 |

| Գ. ՆԱԽԱԿՐԹԱՐԱՆ | Առ հարիւր |
|---|---|
| Նորք Զաքարեան | 98 |
| Նաթալի Քոշունեան | 95 |
| Ժոզէֆին Թագա | 95 |
| Աստղիկ Երանոսեան | 93 |
| Մելանի Սիրքէճեան | 91 |
| Ռէմոն Սոմպաթի | 87 |
| Սիլվա Պօյաճեան | 86 |
| Ալան Օհաննէսեան | 81 |

Տնօրէնութիւնը և ուսուցչաց կազմը շնորհաւորեն յարգելի ծնողները և յաջողած աշակերտները:

### ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք մեր կրթասէր հասարակութեան, որ Վարժարանիս 95-96 ուսումնական տարեշրջանի նախակրթարանի (էպքէտաէեան) պետական քննութեան արդիւնքները եղած են հետեւեալները.

| | Առ հարիւր |
|---|---|
| Հուրի Պալթաեան | 94.86 |
| Քրիստափոր Խանչեան | 93.14 |
| Մարի Պալեան | 90.- |
| Դանեա Արթինեան | 75.43 |
| Գարօլին Փոլատեան | 75.14 |
| Շողիկ Վարդեան | 72.- |
| Լեւոն Թովմասեան | 65.71 |

*Խմբագրութիւնս եւս կը շնորհաւորէ զիրենք, իրենց ծնողները, վարժարաններու տնօրէնութիւններն ու ուսուցչական կազմերը և կը մաղթէ նորանոր յաջողութիւններ:*

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Եգիպտոսում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւնը յայտնում է, որ ՀՀ Կրթութեան և Գիտութեան Նախարարութիւնը 1996-97 ուսումնական տարուայ համար Եգիպտոսի հայկական համայնքին յատկացրել է մէկ պետական կրթաթոշակ՝ հումանիտար մասնագիտութիւնների գծով (հայոց լեզու և գրականութիւն, ժուռնալիստիկա, պատմութիւն, հոգեբանութիւն և այլն) Երեւանի պետական համալսարանում:*

*Յաւակնորդները պէտք է ունենան միջնակարգ կրթութիւն: Բակալավրի (պաքալորիա) աստիճան ունեցող անձանց համար կարող է կազմակերպուել անհատական ծրագրով ուսուցում:*

*Ընդունելութիւնն իրականացւում է մրցոյթի կարգով, որի ժամանակ հաշուի է առնւում առաջադիմութիւնը, քննութիւնների արդիւնքները, հանրակրթական մակարդակը, մասնագիտական գիտելիքները, ինչպէս նաեւ ներկայացուած երաշխաւորագրերը:*

*Յաւակնորդներից պահանջւում է մինչեւ ս.թ. Յունիսի 20-ը դեսպանութիւն ներկայացնել հետեւեալ փաստաթղթերը.*

*1. Դիմում հասցէագրուած ՀՀ Կրթութեան և Գիտութեան նախարարութեանը, որի մէջ պէտք է նշուի ընտրուած մասնագիտութիւնը:*

*2. Երաշխաւորագիր Եգիպտոսի Հայոց Առաջնորդարանի կողմից:*

*3. Ինքնակենսագրութիւն:*

*4. Կրթութեան վկայականի պատճէնը, հաստատուած նոտարի կողմից:*

*5. Բժշկական տեղեկանք տրուած պետական բուժական հաստատութեան կողմից:*

*6. Ծննդեան վկայականի պատճէնը, հաստատուած նոտարի կողմից:*

*7. Լուսանկար (4×5 սմ., 6 հատ):*

*8. Տեղեկանք լեզուների իմացութեան մասին:*

*Լրացուցիչ տեղեկութիւնների համար զանգահարել՝ 342.41.57 կամ 342.41.59, ամէն օր ժամը 11.00-14.00-ը, բացառութեամբ Ուրբաթ և Շաբաթ օրերի:*

*ԵԳԻՊՏՈՍՈՒՄ ՀՀ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ*

ԳԱՐԵԳԻՆ Ա. ԿԱԹՈՂԻԿՈՍ—

# ՀՆՉԱԿԵԱՆ ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ԿՏԱԿԸ ՀԵՐՈՍՈՒԹԵԱՄԲ ԱՊՐԵԼԻՔ ՍԵՐՈՒՆԴԻՆ

Բովանդակալից և քաղաքներու խորհուրդին հարազատ արտայայտիչ հանդիսացող գրութիւն մըն է այս, որ թէեւ արտասանուած է 25 Յունիս 1989ին, այն ատեն Կիլիկիոյ Գարեգին Բ. Կաթողիկոսի կողմէ, այժմ Ամենայն Հայոց Գարեգին Ա. Կաթողիկոս, և սակայն կը պահէ իր այժմէութիւնը մանաւանդ պատգամը:

Անշուշտ դժուար թէ բոլոր գրութիւնը ամբողջութեամբ հրատարակէինք: Ուրեմն, ստորեւ կու տանք հատուած մը, այդ շահեկան արտասանութենէն:

ԽՄԲ.

"Սիրելիներ, մարդերու շարքին և բացառիկներու կարգին կը դասուին այն քաջ հոգիները, որոնք 1915-ի Յունիսեան օր մը, վերջին անգամ նայեցան այս արեւ ու լոյսին և այդ լոյսին մէջ տեսան տախտակէ ձողերէն կախուած պարանները օղակ-օղակ, երբ պարաններուն նայեցան, Պոլսոյ Պայազիտ հրապարակին վրայ, այդ պարաններուն օղակներուն մէջէն մահը չտեսան, այդ օղակներուն մէջէն իրենց մահը ստոյգ ընդունելով հանդերձ, մահէն անդին՝ տեսան իրենց ժողովուրդի կեանքը, իրենց գաղափարին յաղթանակը, իրենց հայրենիքին ազատութիւնը և կամաւորապէս իրենք զիրենք ընծայեցին այդ օղակներուն, և անոնցմէ ո՛չ ոք ընկրկեցաւ այդ մահուան փորձաքարին դիմաց:

Անոնցմէ մէկը Մեղրեցի էր, միւս Խարբերդցի, մէկը՝ Արաբկիրցի, ուրիշ մէկը Եվերեկցի, մէկը կուգար Վանա աշխարհէն, միւսը՝ Մուշ ու Տարօնէն, մէկը՝ Պարտիզակցի էր, մէկը՝ Շապին Գարահիսարցի, մէկը՝ Քիլիսցի, միւսը Ակնցի, մէկը՝ Կիրասոնցի էր և միւսը՝ Իզմիթցի, մէկը Չմշկածագցի և նոյնիսկ մէկը կամ երկուքը՝ Պոլսեցի: Մանրանկար Հայաստանի պատկերին...: Արեւմտեան Հայաստանի այս գաւառներէն հաւաքուած կարծէք թէ իրենց երկիրն էր որ իրենց հետ կախաղան կը բարձրացուէր:

Մէկուն անունն էր Փարամազ, միւսինը՝ Վանիկ, մէկը կը կոչուէր Տոքթ. Պեննէ, և միւսը Աչքփաշ Արամ, մէկը՝ Թովմաս էր, ուրիշ մէկը Ռուբէն էր, մէկը՝ Հրանդ, միւսը՝ Երուանդ, ուրիշ մէկը՝ Յովհաննէս, այլ մէկը՝ Յակոբ, մէկը, Արմենակ, միւսը՝ Սմբատ, մէկը՝ Մուրատ, մէկը՝ Գառնիկ, մէկը Գարեգին, մէկը՝ Աբրահամ, մէկը Մկրտիչ, միւսը՝ Մինաս էր: Անուննե՛ր, անուննե՛ր... հայ ժողովրդի մանրանկարը, որ կախաղան կը բարձրացուէր...: Բոլորը սակայն այդ մասնաւորութիւններով, այդ առանձնայատկութիւններով, այդ եսերով միասին մէ՛կ էին, մէ՛կ գաղափարի հաւատացող էին, մէ՛կ հայրենիքի նուիրումով համախմբուած, հոգիները միազանգուած էին, միաշաղախուած էին, մէկ տեսիլք ունէին՝ իրենց հայրենիքի ազատութիւնը, մարդկային իրաւունքներու ընկերվարական հասկացողութեամբ իրագործումին ազգային տեսիլքը:

Կը պատկանէին Հնչակեան Կուսակցութեան, բայց կուսակցութենէն աւելի վեր և անդին՝ բոլոր կուսակցութիւններուն և բոլոր հայութիւնը բաղկացնող տարրերուն ընդհանրական արժէքին, ամբողջական հայութեան յաղթանակին և հայրենիքին համար զոհ գացին:

Կախաղաններուն դիմաց կեցած՝ Փարամազը խօսք մը ըսաւ, այդ խօսքը պէտք է որ այսօր ձեր բոլորի սրտերուն մէջ արձանագրուի՝ անգիր բայց աւելի խոր ներկայութեամբ. "ԴՈՒՔ ՄԵՐ ՄԱՐՄԻՆՆԵՐԸ ՄԻԱՅՆ ԿՐՆԱՔ ԿԱԽԵԼ, ԲԱՅՑ ԳԱՂԱՓԱՐԸ՝ ՈՉ": Կարծէք թէ Աւետարանի քրիստոսաշունչ ճշմարտութիւնն էր որ իր բերնով և իր բառերով կ'արտայայտուէր. "Մի՛ երկնչիք յայնցանէ որք սպանանեն զմարմին և զոգի ոչ կարեն սպանանել":

Մեր ժողովուրդի հոգեխառնութեան մէջ, ամբողջ կեանքի ըմբռնողութեան մէջ, ապրուած կենսափիլիսոփայութեան մէջ քրիստոնէական հաւատքը այնպէս է խորացած, տարրացած ինչպէս արիւնին կարմիր գոյնը, ինչպէս մորթին գոյնը, ինչպէս կ'ըսէ 5-րդ դարու մատենագիր՝ Եղիշէն: Ու Փարամազը՝ ինք Գէորգեան Ճեմարանի սան, հայոց պատմութեան, հայոց եկեղեցիին, հայոց մշակոյթի արժէքներուն հետ հաղորդուած անձ, մահուան տեսարանին դիմաց կեցած, իր ժողովուրդի հերոսական հոգիին իբրեւ մասնիկը, խօսնակը, վկան, կ'ըսէ.- դուք միայն սա նիւթեղէն մարմինը կրնաք կախել, բայց այն գաղափարը որ կեանք կուտայ այդ մարմնին, չէք կրնար զայն խափանել...:

Սիրելինե՛ր, ոչ թէ քաջերը, այլ քաջերուն հետ նաեւ հարիւրաւորներ, որոնք ձերբակալուած էին և որոնք տեսակ տեսակ մահերու ենթարկուեցան, բոլորը այդ օրերուն տեսակ մը նախադուռն էին, նախաբանը կը կազմէին այն մեծ աղէտին, որ պիտի իյնար հայ ժողովուրդին վրայ: 1915-ի Մեծ Եղեռնը, շուրջ երկու միլիոն հայ ժողովուրդի զաւակներուն ջարդը:

Այնքան որքան պատմութիւնը կարդացած եմ, այնքան որքան տեղեակ եմ, կը խորհիմ որ անոնք իմաստութիւնը ունեցան առաջին իսկ վայրկեանին ըմբռնելու թէ ազատութեան անունով ազատութիւն խոստացող Երիտասարդ Թուրքերու, "Իթթիհատ"ի տուած հաւաստիքները փուճ էին. թէ՝ անոնց մտքին մէջ հայ ժողովուրդի բնաջնջումը անոնց գոյութեան կարծէք թէ պատճառն էր, "raison d'etre"ը, ինչպէս կ'ըսեն, եւ անոնք չկրցան հաշտուիլ անոնց հետ եղբայրանալու կամ անոնց հետ գործակցելու գաղափարին հետ: Հայ ժողովրդի դիմադրութեան ոգին արտայայտիչները եղան, և ատոր համար յարգանքի արժանի են համայն հայ ժողովուրդին կողմէ, Մայր Հայաստան և ի սփիւռս աշխարհի":

> "Հոն՝ ուր կախաղաններն են ճօճում, Ազատութիւնն է ման գալիս, հոն՝ ուր մեռելներն են ննջում, Յարութիւնն է մօտալուտ":
>
> ՓԱՐԱՄԱԶ

# "...ՄԱՀ ԻՄԱՑԵԱԼ ԱՆՄԱՀՈՒԹԻՒՆ Է"

ՅՈՎՍԷՓ ՆԱԼՊԱՆՏԵԱՆ

*Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան դերը Հայ ազգային-ազատագրական շարժման պատմութեան մէջ եղած է հաստատապէս վիթխարի: Իսկ անմահ քսանները Հնչակեան տարեգրութեան մէջ օրինակելի են իրենց մեծ Հայրենասիրութեամբ, գաղափարապաշտութեամբ, գերագոյն զոհաբերութեամբ, խիզախութեամբ և կամքի ուժով, ազգասիրութեամբ:*

*81 տարիներ առաջ, Թուրքիոյ դատարանի պատերազմական ատեանը 1915 Յունիս 15-ին վճիռ կ'արձակէր՝ քսան Հնչակեան աննկուն գործիչները բարձրացնել կախաղան.. Սուլթան Պայազիտ Հրապարակին վրայ:*

*Հայ իրականութեան մէջ վերջին տարիներուն քսաններու հաւաքական սէգ ու խրոխտ զոհողութիւնը իւրայատուկ է և պանծալի: Անոնք չմնացին պատմութեան մուժ անկիւնը, այլեւ այսօր 81 տարիներ յետոյ Փարամազի և իր ընկերներուն անունը կը փայլատակի, որպէս անմահանուն գաղափարական դաստիարակներ, իրենց իմացեալ մահի բացառիկ և անկրկնելի վախճանով:*

*Անոնց դաւանանքը եղած է.*

*- Ծառայել ժողովուրդին, Հայ մարդու արժանապատուութեան և անոր բարձր դերի նկատմամբ բուռն, աներեր հաւատի մէջ:*

*- Ծառայել Հայրենիքին, անոնց համար անշահախնդիր Հայրենասիրութիւնը Հայրենիքէն անբաժանելիութեան գիտակցումն է, Հայրենիքի բարօրութիւնը, համոզուածութեամբ Հայրենիքի երջանիկ ու դժբախտ օրերը անոր հետ միասին անբաժանելիօրէն վերապրիլը:*

*- Ծառայել արդարութեան, յանուն Հայրենիքի և Հողի, անոնք պայքարեցան մինչեւ իրենց կեանքի վերջը արդարութեան ի խնդիր, քանի որ համոզուած էին, որ պետութիւններու անսասան հիմքը արդարութիւնն է, և բռնութեան շղթաներէն ազատագրումը արդարամիտ հսկայ գործ:*

*- Ծառայել նպատակին և գաղափարին. անոնք երջանիկ էին, քանի իրենց առջեւ դրած էին մեծ նպատակներ և յանուն այդ գաղափարապաշտ նպատակներու իրականացման իրենց անվեհեր խիզախութեամբ և բոլոր ուժերով պայքարեցան իրականացնելու զայն:*

*- Ծառայել մարդկութեան, ծառայելով և սիրելով իրենց ազգը և ի գործ դնելով վեհ գաղափարներ (ազատութեան, հաւասարութեան, բարեկամութեան), համայն մարդկութեան երջանկութեան համար ծառայած եղած:*

*- Պայքարիլ ազատութեան ի խնդիր, քսանները հաւատացած էին, որ հասարակական լիիրաւ ազատութիւնը կ'իրագործուի, երբ բոլորի համար, իսկական ազատութիւն կայ, արդարացի ու հաւասար հասարակական օրէնքներու ճշգրիտ գործադրում կ'ըլլայ:*

*- Ծառայել ճշմարտութեան, անոնք իրենց անսակարկ նուիրումով և ճշմարտասէր կեցուածքով պատիւ բերին թէ Հայութեան և թէ իրենց պատկանած կուսակցութեան:*

*- Քսաններու սեփական կամքը ահաւոր ուժ էր, իսկ անոնց հաւաքական ինքնահաստատման կամքը օրինակելի, անհողդողդ և հուժկու:*

*- Ինքնամոռաց խիզախութիւնը անոնց հոգիի մեծ յատկութիւնն էր. հերոս խիզախութեամբ անոնք դիմաւորեցին մահը անվրդով, բաց աչքերով:*

*Անոնք ապրած են և դեռ պիտի ապրին սերունդներու յիշողութեան, մէջ, քանի որ իրենց զոհաբերութիւնը ունի խորհուրդ:*

*Հայրենիքի և գաղափարի նահատակները, ազգին գինուորագրեալները, օրինակելի տիպարներ են իրենց աներեր և աներկիւղ հաւատքով, յանուն Հայրենիքի և գաղափարի զոհողութեամբ անոնք մարտի-*

( Շար. տեսնել էջ 4. )

## ՔՍԱՆ ԿԱԽԱՂԱՆՆԵՐԷՆ

ԱՆՏԻՊ ՆԿԱՐ ՄԸ



Սոյն նկարը 1915 Յունիս 15ին առնուած է Մ. Նահանգաց Թուրքիոյ Դեսպան Հ. Մօրկընթաւէ Ամերիկացի նաւաստիներէն մէկուն կողմէ, կը ներկայացնէ Քսան կախաղաններու շարքը, շրջապատուած՝ ոստիկաններով և ամբոխով:

## ՊԱՅԱԶԻՏ, 1915, ՅՈՒՆԻՍ 15

ԳԱՌՆԻԿ ԱԴԴԱՐԵԱՆ

Կարծես այնտեղ էի ես՝ Պայազիտի բարձունքին,
— Հրապարակ չէր ան, ո՛չ, այլ բարձունք մը լուսաւոր,
Կարծես այնտեղ էի ես այդ առաւօտ ու լրիւ
Տեսայ ծագի՛լն արեւին՝ մինչ դեռ մո՛ւթ էր ամէն կողմ:

Դեռ հեռուէն լսեցին քայլերն անոնց երկաթէ՝
Ժամանակի ժայռին դէմ յաւերժօրէ՛ն քանդակուող,
Ապա տեսայ թէ ինչպէս անոնք, ելան դէպի վեր՝
Հորիզոնին դէմ անբիծ դէմքե՛րն իրենց գծելով:

Կարծես այնտեղ էի ես ... Անոնք կանգնած էին մեծ
Բանակի՛ մը պէս անյաղթ՝ զրահուած լոկ ոգիով,
Քսա՞ն էին - ո՛չ, հազար, անթի՛ւ էին ու կարծես
Կը բազմանար անընդհատ՝ այդ բանակը գրոհող:

Անպատմելի ժպիտ մը կար շրթներուն անոնց
— Ցա՞ւ էր, կարօ՞տ, տառապա՞նք, մնաք բարո՞վ մը վերջին.
Թէ վաղն իր մէջ պարփակող ամեն երա՛զ մը բոսոր,
Երազի պէս թեւածող՝ յաղթութեան ե՛րգ մը անգիր:

Նայուածքներուն մէջ անոնք՝ նահանջի դող չտեսայ,
Հպարտութիւնը այնտեղ առկայծող բո՛ց էր անշէջ,
Միայն ոմանց կոպերուն տակ կար արցո՛ւնք քարացած,
— Ջահել էին ա՛խ այնքան, ու կեանքը քա՛ղցր էր այնպէս:

Աղջամուղջին մէջ ինծի՝ կախաղանները գուժկան՝
Լոյսէ սիւնե՛ր թուեցան՝ դէպի երկինք խոյացող,
Կախաղաններն այդ պահուն երկնքին դէմ ծառացան,
Դարձան պահա՛նջ հատուցման, ու բռնութեա՛ն դէմ բողոք:

Կարծես այնտեղ էի ես ... Այն ինչ անլոյս հրաշքով
Արեւն յանկարծ ծագեցաւ, մինչ մթութիւն էր չորս դին,
— Քսան աստղեր լուծուեցան աստղաբոյլի՛ն մէջ Հայոց՝
Ծառագայթեն որպէսզի ամէ՛ն գիշեր վերստին:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B. P. 2111 Le Caire (R.A.E.) Tél. 3914908
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 1337 -- ՀԻՆԳՇԱԲԹԻ 27 ՅՈՒՆԻՍ 1996 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 25 Եգ. Դհկ. ١٩٩٦ عدد رقم ١٣٣٧ - الخميس ٢٧يونيو


## ՅԱՋՈՂՈՒԹԵԱՄԲ ԱՒԱՐՏԵՑԱՒ ԱՐԱԲԱԿԱՆ ՊԵՏՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԳԱԳԱԹԱԺՈՂՈՎԸ

Անցեալ Շաբաթ 22 Յունիսին, Գահիրէի Նասր արուարձանի Միջազգային Համագումարներու կեդրոնատեղին մէջ, արաբական 21 պետութիւններու նախագահներու, վարչապետներու և ներկայացուցիչներու մասնակցութեամբ գումարուեցաւ գագաթաժողովը նախագահ Հոսնի Մուպարաքի նախագահութեամբ և այդ առթիւ Նախագահը ճառ մը արտասանեց, նախ բարի գալուստ մաղթելով արաբ ղեկավարներուն և շարունակելով իր խօսքը ըսաւ թէ, ներկայ քաղաքական փափուկ կացութեան, անհրաժեշտ էր նման գագաթաժողով մը գումարելը որ երկար տարիներէ ի վեր չէր գումարուած:



Նախագահ՝ Հոսնի Մուպարաք. ետեւը ձախէն աջ՝ վարչապետ Դր. Գամալ էլ Կանզուրի, նախագահի քաղաքական հարցերու խորհրդատու՝ Ուսամա էլ Պազ, արտաքին գործոց նախարար՝ Ամր Մուսա :

Կիրակի առաւօտեան գագաթաժողովը զբաղեցաւ այլ հարցերու քննարկմամբ և աւարտեց կէսօրին: Յետոյ միացեալ հաղորդակցութիւն մը հրապարակուեցաւ մասնակից արաբ ղեկավարներու կողմէ գագաթաժողովի արդիւնքներուն մասին, որ հետեւեալն է.

Արաբական պետութիւնները կը փափաքին խաղաղութեան բանակցութիւնները շարունակել Իսրայէլի հետ նախընթաց

( Շար. տեսնել էջ 2 )

## ԵԳԻՊՏՈՍԻ ԷՔՈՆՈՄԻՔԱՅԻ ՆԱԽԱՐԱՐԸ ԵՒ ՀՀ ԴԵՍՊԱՆԸ ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՆ ԵԳԻՊՏԱԿԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԵԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ ԿԱՏԱՐԱԾ ԱՅՑԵԼՈՒԹԵԱՆ ԱՐԴԻՒՆՔՆԵՐԸ

Եգիպտոսում ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Էտուարտ Նալպանտեանը Յունիսի 24-ին հանդիպեց Եգիպտոսի էքոնոմիքայի նախարար Տիկին Նաուալ Թաքաուիի հետ: Քննարկուեցին նախարարի գլխաւորած եգիպտական տնտեսական պատուիրակութեան Հայաստան կատարած այցելութեան արդիւնքները եւ հայ-եգիպտական համագործակցութեան ամրապնդման համար անհրաժեշտ հետագայ անելիքները:

Տիկին Նաուալ Թաքաուին գոհունակութիւն է յայտնել Երեւանում կայացած հայ-եգիպտական միջկառավարական տնտեսական յանձնաժողովի աշխատանքից եւ իր ունեցած հանդիպումների ընթացքում ձեռքբերուած պայմանաւորուածութիւններից: Նա յատկապէս բարձր է գնահատել հանդիպումը ՀՀ նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի հետ, որին յանձնել է նախագահ Հոսնի Մուպարաքի ուղերձը: Հայաստանի նախագահը վերահաստատել է իր հրաւէրը Եգիպտոսի նախագահին այցելելու Երեւան՝ շեշտելով Եգիպտոսի դերն ու հեղինակութիւնը միջազգային քաղաքական ասպարէզում: Տիկին Նաուալ Թաքաուիի գնահատմամբ արդիւնաւէտ եւ օգտակար են եղել հանդիպումները ՀՀ վարչապետի, արտաքին գործերի, էքոնոմիքայի, արդիւնաբերութեան, առողջապահութեան, գիւղատնտեսութեան, շինարարութեան նախարարների, հայ արդիւնաբերողների եւ գործարարների հետ: Պատուիրակութիւնը հնարաւորութիւն է ունեցել մօտիկից ծանօթանալու Հայաստանի գիտա-տեխնիքական եւ տնտեսական ներուժին՝ այցելելով Գիտութիւնների ակադեմիա, Բիւրականի աստղադիտարան եւ մի շարք արդիւնաբերական ձեռնարկութիւններ: Նաուալ Թաքաուին համոզմունք է արտայայտել հայ-եգիպտական փոխշահաւէտ տնտեսական համագործակցութեան բոլոր անհրաժեշտ նախադրեալների առկայութեան մասին եւ հաւաստիացրել իր երկրի պատրաստակամութիւնը՝ այդ ուղղութեամբ դիմելու գործնական քայլերի:

Նա տեղեկացրել է, որ Եգիպտոսի Արաբական Հանրապետութեան կառավարութեան համակարգում ստեղծուել է յատուկ յանձնաժողով՝ Երեւանում ընդունուած որոշումների կատարման ընթացքը վերահսկելու նպատակով:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ԹԵԿՆԱԾՈՒԹԻՒՆՆ ԱՆՑԱՒ ՄԻԱՁԱՅՆ

Յունիսի 8-ին տեղի ունեցած Հայոց Համազգային Շարժման (ՀՀՇ) 8-րդ արտահերթ համագումարում 1996 թ.-ի Սեպտեմբերին կայանալիք նախագահական ընտրութիւններում, ՀՀ նախագահի թեկնածու առաջադրուեց ՀՀ նախագահ, ՀՀՇ վարչութեան անդամ Լեւոն Տէր Պետրոսեանը: ՀՀ նախագահի, որպէս ՀՀՇ-ի կողմից նախագահի միակ թեկնածուի, գործունէութեան և Հայաստանի Հանրապետութեան ներկայ իշխանութիւնների վարած 5 տարիների քաղաքականութեան մասին ելոյթներով հանդէս եկան ՀՀՇ վարչութեան նախագահ Տէր Յուսիկ Լազարեանը, ՀՀ վարչապետ, ՀՀՇ վարչութեան անդամ Հրանտ Բագրատեանը և ՀՀ Ազգային Ժողովի պատգամաւոր, ՀՀՇ վարչութեան անդամ Բաբկէն Արարքցեանը: Այնուհետեւ ելոյթ ունեցաւ ՀՀ նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանը:

( Շար. տեսնել էջ Բ. )

## "Հայերը Եգիպտոսի Մէջ" Ժապաւէնը Առաջնութիւնը շահած է

Ինչպէս որ նախապէս անդրադարձած էինք, որ "Եգիպտական Արձանագրական Ֆիլմերու 2-րդ Փառատօնի"ին ցուցադրուած է նաեւ "Հայերը Եգիպտոսի Մէջ" վաւերագրական ժապաւէնը, որուն բեմադրիչն է Նապիլ Էզզաթ:

Ուրախ ենք յայտնելու թէ յիշեալ կարճամետրաժ ֆիլմը, որ 15 վայրկեան տեւողութիւն ունի առաջնութիւնը շահած է:

Յառաջիկային դեռեւս պիտի անդրադառնանք սոյն ֆիլմին մասին:

## ԳԱՀԻՐԷ

### Քսան Անմահներու Յիշատակի 81-ամեակի Ոգեկոչումը

Կիրակի 16 Յունիս 1996ի առաւօտեան, Ս. Գրիգոր Լուսաւորիչ մայր տաճարին մէջ, նախագահութեամբ Թեմիս բարեխնամ առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեանի, ի յուշ 1915 Յունիս 15-ին, Պոլսոյ Պայազիտ հրապարակին վրայ կախաղան բարձրացուած Քսան Հնչակեան նահատակներու 81-րդ տարելիցին, մատուցուեցաւ Ս. Պատարագ և տեղի ունեցաւ Հոգեհանգիստ, ի ներկայութեան գաղափարի ընկեր ընկերուհիներու և համակիրներու:

Օրուան պատարագիչն էր Արժ. Տ. Գալուստ Քհնյ. Դարբինեան: Այս առթիւ առաջնորդ Սրբազան Հայրը խօսեցաւ յաւուր պատշաճի քարոզ մը և արժանին մատուցանեց Քսան հերոսներուն:

Հոգեհանգստեան արարողութենէն ետք, Ազգային Առաջնորդարանի դահլիճին մէջ հաւաքուեցան ներկաները, ուր Սրբազան Հայրը կրկին վերակոչեց յիշատակը Քսաններուն, ապա խօսքը տուաւ Հայկական Ընթերցասրահի վարչութեան ատենադպիր ընկեր Պետրոս Մովսէսեանի: Յարգելի ընկերը յայտնեց, թէ Հնչակեան Կուսակցութիւնը հրապարակ եկած էր ազատագրելու և պաշտպանելու հայ ժողովուրդի ազգային իրաւունքներն ու սեփական հողերը, որոնք Թրքական եաթաղանին տակ ճզմուած կը մնային: Ապա եզրափակեց իր խօսքը ըսելով, — "Իւրաքանչիւր հայ իր պարտականութիւնը պիտի համարէ իրագործել Քսան նահատակներու կտակը, որ է՝ պաշտպանել հայրենիքը և իրագործել հայութեան երազը՝ Ամբողջական Հայաստանի հաստուցումով":

Ապա Հայկ. Ընթերցասրահի մէջ Ոգեկոչումը շարունակուեցաւ բոլոր գաղափարի ընկեր ընկերուհիներու հանդիպումով:

## ԼՈՍ ԱՆՃԵԼՈՍ

### "ՀԱՅԱՍՏԱՆ" ՀԻՄՆԱԴՐԱՄԻ ԵԶՐԱՓԱԿԻՉ ՄԱՄՈՒԼԻ ԱՍՈՒԼԻՍԻՆ ԹԵԼԵԹՈՆԻ ԱՐԴԻՒՆՔՆԵՐԸ ԿԸ ՆԿԱՏՈՒԻՆ՝ ՅԱՋՈՂ ՍԿԻԶԲ

Ուրբաթ, Մայիս 31ի երեկոյեան Իրանահայ Միութեան Կլենտէյլի կեդրոնէն ներս տեղի ունեցաւ "Հայաստան" Համահայկական Հիմնադրամի հրաւիրած մամուլի ասուլիսը՝ նուիրուած "Երեւան-Ստեփանակերտ-Լոս Անճելըս" Մայիս 27ի թելեթոնի արդիւնքներուն:

Ասուլիսի բացման խօսքը կատարելով Կրէկ Գահուէճեան յայտնեց Հիմնադրամի ղեկավարութեան հրճուանքը՝ ձեռք ձգուած արդիւնքով, զայն նկատելով յաջող սկիզբ մը:

"Հայաստան" Հիմնադրամի Արեւմտեան Ամերիկայի վարչութեան նախագահ իրաւաբան Րաֆֆի Ուրֆալեան իր կարգին յայտնեց, որ թելեթոնի արդիւնքներէն քաջալերուած՝ ուր 5,7 միլիոն տոլար հանգանակուեցաւ ու յատկապէս շուրջ 10 հազար հոգիներու մասնակցութեամբ խանդավառ, կը ծրագրուի թելեթոնը կրկնել եկող մի քանի տարիներուն եւս:

Րաֆֆի Ուրֆալեան տեղեկացուց, որ հանգանակուած գումարներու վերջնական թուանշանները կը յստականան յառաջիկայ մի քանի շաբաթներուն ու կը յանձնուին մամուլին՝ դարձնելու համար ժողովուրդի սեփականութիւնը: Ան յայտնեց, որ թելեթոնի աւարտէն ետք իսկ, Հիմնադրամի գրասենեակը հեռաձայններ կը ստանայ նուիրատուներու կողմէ:

Հիմնադրամի նախագահը կոչ ըրաւ ժողովուրդին, որպէսզի փութացնեն իրենց նուիրատուութիւնները Հիմնադրամի կողմէ ուղարկուած յատուկ պահարաններուն միջոցաւ:

Իրեն տրուած հարցումներուն պատասխանելով, Րաֆֆի Ուրֆալեան յայտնեց, որ Լինսի Հիմնարկութիւնը պիտի կրկնապատկէ գանձուած գումարները միայն, և ոչ թէ խոստումները:

## ԵՒՐՈՊԱԿԱՆ ԵՐԿԻՐՆԵՐՈՒ ՈՏՆԱԳՆԴԱԿԻ




### Աւարտական Մրցումը

Յառաջիկայ Կիրակի 30 Յունիսի երեկոյեան ժամը 9-ին, Լոնտոնի Ուէմպլի դաշտին վրայ, Եւրոպական Երկիրներու Ոտնագնդակի 10-րդ Մրցաշարքին աւարտական մրցումը պիտի խաղան Չեխի և Գերմանիոյ խումբերը:

Նշինք թէ երէկ, Չեխի հաւաքականը յաղթեց Ֆրանսայի 7-6 արդիւնքով (փելանթիներով) և Գերմանիոյ խումբը՝ Անգլիոյ, նոյնպէս 7-6 արդիւնքով (փելանթիներով):

# " ՄԵՐ ՑՈՑՁԵՐՆ ՈՒ ՑՈՑՍԵՐԸ "

## ("ԱՐԵՒ" ՕՐԱԹԵՐԹԻ ԽՄԲԱԳԻՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ ԿԸ ՅՈՒՇԱԳՐԷ)

1995 Սեպտեմբեր ամիսը, սփիւռքահայ մամուլի բազմաթիւ խմբագիրներուն և աշխատակիցներուն համար, եղաւ յատկանշական, որովհետեւ՝ անոնցմէ շատեր մէկտեղուած էին Երեւան "Հայաստան" Համահայկական Հիմնադրամին հրաւէրով: Միեւնոյն ժամանակ, սոյն մամլոյ հաւաքը,



Հատորին հեղինակը՝ Յովհաննէս Տէր Պետրոսեան

առիթ եղաւ որպէսզի տարասփիւռ Հայութեան մամուլի աշխատողները ծանօթանան իրարու հետ, կիսեն իրենց մտահոգութիւնները, լսեն զիրար և ինչու չէ՝ մխիթարեն մէկզմէկու...: Սակայն, հաւաքին կազմակերպիչ Հիմնադրամը, նպատակ ունէր ծանօթացնել իր գործունէութիւնները, աշխատանքներն ու կառուցողական նախաձեռնութիւնները՝ Հայաստանի ու Արցախի տարածքին:

Սփիւռքահայ խմբագիրներն ու մամլոյ աշխատակիցները, հետեւելով կազմակերպիչ Հիմնադրամին յայտագիրին, բազմաթիւ առիթներ ունեցան շփուելու հայրենական զանազան պատասխանատուներու հետ, իրազեկ դառնալու հայրենական իրադարձութիւններուն և նոյնիսկ մասնակցեցան "Հայաստան" Համահայկական Հիմնադրամի Հոգաբարձուներու նիստին: Մեր ընթերցողներուն, տարբեր առիթներով, հաղորդակից պահած ենք այս հետաքրքրաշարժ և յիշարժան երեւոյթին շուրջ:

Հետաքրքիր է նկատել, որ մամլոյ ներկայացուցիչներէն շատեր, վերադառնալով իրենց ծննդավայրը և իրենց աշխատանքներուն, իրենց մամուլի էջերէն յաճախ անդրադարձան սեպտեմբերեան իրադարձութեանց, յուշագրեցին և պատմութեան համար արձանագրեցին իրենց տպաւորութիւնները:Անոնցմէ յիշենք "Մասիս"ը (ԱՄՆ), "Աշխարհ"ը (Փարիզ). "Արեւ"ը (Գահիրէ):

Նորերս, "Արեւ" օրաթերթի խմբագիր՝ Յովհաննէս Տէր Պետրոսեանէն ստացանք "Մեր Ցոյզերն Ու Ցոյսերը" խորագրեալ գրքոյկը,որ յուշագրութիւն մըն է այս յոյժ իմաստալից իրադարձութեանց մասին: Ան, "Արեւ"ի էջերէն, յաջորդական յօդուածներով անդրադառնալէ ետք սեպտեմբերեան այցելութեան, զայն վերածած է գրքոյկի: Արդարեւ, ողջունելի նախաձեռնութիւն մը, մնայուն արժէք մը: Գրքոյկը "Արեւ" օրաթերթի մատենաշարին կը պատկանի և տպագրութիւնն է "Նուպար" Հրատարակչատան: Կը բաղկանայ 68 էջերէ, պատկերազարդ է: Գրքոյկին հեղինակը, նաեւ հեղինակած է պատմագիտական ուսումնասիրութիւններ, ունի հրապարակագրական վաստակ և անմիջական գրիչ, պատմողական ոճ:

Գրքոյկին սկզբնաւորութեան, հեղինակը "Սրբաց խօսք Սփիւռքահայութեան" բաժինով կ'անդրադառնայ "Հայաստան" Հիմնադրամին ծնունդին,առաքելութեան, նպատակներուն, նշելով անոր հայրենաշինութեան առաջադրանքը: Ան կը գրէ. "Սփիւռքահայութեան մէջ ունինք մարդիկ, որոնք ամէն տարի շրջապտոյտներ կը կատարեն Ամերիկա, Եւրոպա, Աւստրալիա, հազարաւոր տոլարներ կը մսխեն ու կը վայելեն կեանքը, սակայն երբ կարգը գայ հայրենպաստ դրամահաւաքին կամ ձեռնարկներուն, դրամ չունին տալիք: Նոյն յանկերգը ունին անոնք, *"Գործերը լաւ ընթացքին մէջ չեն, կորուստով ենք": Կան նաեւ շատ հարուստներ, որոնք իրենց դիզած միլիոններուն համապատասխան գումար չեն տար: Բայց ինչո՞ւ այսքան ժլատութիւն ցուցաբերուի, միթէ հայրենիքը բոլորիս չի՞ պատկանիր"*:

Կան նաեւ մարդիկ, ոչ մէկ ոսկի չտալու տրամադրութիւն ունին: Իրենց "կծծիութիւն"ը պարտկելու համար կը գրպարտեն, իբր թէ "Հայաստան" Համահայկական Հիմնադրամի պատասխանատուները կ'իւրացնեն Սփիւռքէն հասցուած գումարները և կը մսխուին մաֆիային կողմէ: Կան նաեւ այնպիսիներ, որոնք կուսակցական նեղմտութեամբ "պոյքոթ" յայտարարած են Հիմնադրամին դէմ, սա կամ նա պատճառաբանութիւններով:

Այս անբարեացակամ վերաբերմունքը մեղադրելի է, որովհետեւ հայրենիքի հանդէպ մեր պարտքը չկատարելը համազօր է յանցանքի": Ապա ան կ'եզրակացնէ. "Մէկդի դնենք գործուող անախորժութիւնները և մեր հայեացքը ուղղենք դէպի լուսաւոր ապագայ: Հրաժարինք եսական հատուածամոլ միտումներէն և ցոյց տանք հայրենասիրական ոգի, *ինչ որ կու տաք հայրենիքին, այդ ձերն է, իսկ այն ինչ որ կը պահէք, կորուստ է ձեզի:* "Հայաստան" Համահայկական Հիմնադրամը անկուսակցական կառոյց մըն է ու պէտք է անոր ծրագրերուն օժանդակենք յարատեւօրէն:



ՄԵՐ ՑՈՅԶԵՐՆ ՈՒ ՑՈՅՍԵՐԸ

«ՀԱՅԱՍՏԱՆ» ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ՀԻՄՆԱԴՐԱՄԻ ՀՐԱՒԷՐՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԵԱՆ ԱՌԹԻՒ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ

«ԱՐԵՒ» ՕՐԱԹԵՐԹ

ԳԱՀԻՐԷ

1995

Տպագրութիւն «ՆՈՒՊԱՐ» հրատարակչատան

Կուսակցութիւններ հայրենի կառավարութեան հանդէպ կրնան կարգ մը հարցերու շուրջ համակարծիք չըլլալ, սակայն այդ պատճառ պէտք չէ ըլլայ զլանալ ոսկի մը տալու Հիմնադրամին:

ՏԱՆՔ ՀԱՅՐԵՆԱԿԻՑՆԵՐ, ՄԻՇՏ ՏԱՆՔ, ՈՐՊԷՍԶԻ ՀԱՐԸՍՏԱՆԱՆՔ ՄԵՐ ՆԵՐԱՇԽԱՐՀՈՎ":

Հեղինակը ապա կը յուշագրէ Հիմնադրամին կազմակերպած այցելութիւնները Կիւմրի, Վանաձոր, հոն տեղի ունեցած հանդիպումները, մամլոյ ասուլիսները, տեսակցութիւնները: "Ուղեւորութիւն Դէպի Արցախ" բաժինը յատկացուած է Ստեփանակերտ, Շուշի այցելութեան. ան կ'անդրադառնայ Գորիս-Ստեփանակերտ ճանապարհաշինութեան, Լաչինի մէջ տեղի ունեցած հանդիպումին ապա՝ Գորիսի մէջ օթեւանումին և Երեւանի մէջ կազմակերպուած "Հայաստան" Հիմնադրամի Հոգաբարձուներու նիստին: Յովհաննէս Տէր Պետրոսեան կը փոխանցէ այն մամլոյ ասուլիսները, որոնք կազմակերպըւեցան Հիմնադրամին Գործադիր Վարչութեան Տնօրէնուհի՝ Մանուշակ Պետրոսեանի կողմէ: Ապա կու տայ Վարչապետ Հրանդ Բագրատեանի հետ կատարուած հանդիպումին նկարագրականը: Հեղինակը այցելած է նաեւ "Ազգ" օրաթերթ խմբագրատուն և ՀՌԱԿԻ գրասենեակը: Նշենք, որ այդ օրերուն "Ազգ"ը հարցազրոյց մը ունեցած էր գրքոյկին հեղինակին հետ: Ան հանդիպում մը ունեցած է նաեւ Հայ-Եգիպտական Բարեկամութեան Ընկերութեան Վարչութեան անդամներուն հետ:

Հեղինակը նկարագրած է նաեւ Սեպտեմբեր 21ին Հայաստանի անկախութեան չորրորդ տարեդարձին առիթով կազմակերպուած տօնախմբութիւնը, ան կը գրէ. "Անկախութեան չորս տարիներու ընթացքին, համայն հայութիւնը մէկ մարդու պէս կողքին կանգնեցաւ նորանկախ իշխանութեան, գնահատելով ձեռք բերուած անկախութեան արժէքը": Ան կ'աւելցնէ. "Անկախութիւնը խօսքով չէ որ կը պահպանուի և ամէն հայ

( Շար. տեսնել էջ 4 )

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ ( Շար. Բ. էջէն )

Այս առթիւ, Գահիրէի Ազգային Իշխանութիւնս ամենախոր շնորհակալութիւն կը յայտնէ Ամենայն Հայոց Վեհափառ Կաթողիկոս, Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. Հայրապետին, իր հայրական հոգածութեան և հայրախնամ վերաբերումին համար:

ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳ. ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

★

Ուրախ ենք տեղեկացնելու , որ 19 անձերէ բաղկացող խումբը Ս. Էջմիածնէն վերադարձած է Գահիրէ անցեալ Շաբաթ 6 Յուլիսի առաւօտեան:

Լիայոյս ենք թէ մեր աշակերտները վերստին մկրտուեցան հայկական զգացումներով : Գնահատելի ձեռնարկ մը , որ փափաքելի է յառաջիկայ տարիներուն ևս կրկնուի:

Առ այդ , այսօր Հինգշաբթի երեկոյեան , Հելիոպոլսոյ "Պըլըքտանեան" Սրահին մէջ պիտի ներկայացուի տեսերիզ մը սոյն յաջող վեցօրեայ զբօսապտոյտին առթիւ:

"Ջ"

# Հայկական և Օտար Մշակութային Շքեղ Երեկոյթ մը

Զափազանցած պիտի չըլլանք, եթէ ըսենք թէ Կիրակի 15 Յունիս 1996-ի երեկոյեան, Գահիրէի օփերայի փոքր դահլիճին մէջ կայացած հայ և օտար մշակոյթի նուիրուած երեկոյթը, "Գեղարուեստական շքեղ փառատօն" մըն էր՝ անհատական նախաձեռնութեամբ արուեստագիտուհի Շաքէ Յովակիմեանի:



Տիկին Շաքէ Յովակիմեան

Արդարեւ հայկական և տարբեր լեզուներով բազմաժանր գեղարուեստական ճոխ յայտագիր մըն էր, որ կը գործադրուէր այդ երեկոյ, որուն հովանաւորութիւնը կը վայելէր եգիպտահայութեան առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի և նախագահութիւնը՝ Տիկին Վիվիան Սիմոնեանի:

Երեկոյթին գլխաւոր կատարողութիւնը ստանձնած էր Շ. Յովակիմեան: Արուեստագիտուհի մը՝ որ օժտուած է զանազան ձիրքերով: Ունի սոփրանօ անուշ ձայն, ասմունքելու իւրայատուկ ոճ: Եղած է հայկական ժողովրդային պարի աստղ մը և տարիներ շարունակ եղած՝ պարուսոյց: Նոյնպէս ան ունի թատերական յատկութիւն, ուր ստանձնած է գլխաւոր դերեր զանազան ներկայացումներու մէջ:

Մեծ թիւով հայ թէ օտար հասարակութիւնը, որ քանիցս "պիս"երով իր գնահատանքը կը յայտնէր, առիթը ունեցաւ ըմբոշխնելու Շաքէի ձայնով, հայկական զուարթ և ժողովրդային երգեր, ինչպէս՝ "Իմ անուշ տաւիղ", "Կարս" "Գետաշէն", "Ազգ փառապանծ" ևլն., նաեւ՝ ռուսերէն, ֆրանսերէն և արաբերէն լեզուներով, փունջ մը ծանօթ երգեր:

Տպաւորիչ էր ասմունքի բաժինը ևս, որ ելոյթ ունեցաւ Շաքէ Յովակիմեան: Ան մեզի հրամցուց Վ. Դաւիթեանի "Հայերգութիւն"ը, ապա սքանչելիօրէն մեկնաբանեց Վ. Տէրեանէն՝ փունջ մը. իսկ երեկոյթի աւարտին յանդգնօրէն արտասանեց Գ. Էմինի "Սասունցիներու պարը":

Հեզաճկուն հայկական ժողովրդային պարերու բաժինը ևս յաջող էր, իսկ օտար պարերը՝ գոհացուցիչ,որուն իրենց բաժինը բերին Սօսէ Կրպոյեան, Նորա Բարմաքեան, Շաքէ Ասատուրեան, Էտուար Թորոսեան, Արա Քէօհնէլեան, Յակոբ Սայեան, Նորայր Մխտիկեան, Յարութիւն Պալեան և Բենիամին Իրատեան:

Երեկոյթին ամէն մէկ ելոյթը, մէկը միւսէն հմայիչ կատարումով կը ներկայացուէր: *Օրիժինալ* էին բոլոր այն ելոյթները, որոնց մերթ ընդ մերթ կ'ընկերակցէր թէ դաշնակը, թէ ջութակը, կիթարը կամ տհոլը: Յատկապէս մեծ բաժին ունէր դաշնամուրը, որ ներդաշնակօրէն կ'ընկերակցէր Ֆոթինի Իսիտ: Գալով ջութակին, բացառիկ իր նուագածութեամբ խորապէս ոգեւորեց հանդիսականները Գէորգի Յարութիւնեան: Ան "Կռունկ"ի կատարողութեամբ, խլեց ներկաներու երկարատեւ ծափողջոյնները:

Որքան հաճելի էր տհոլը, մանաւանդ հայկական գեղջկական երգերու ընթացքին, մերթ մեղմ, մերթ ուժգին ընկերակցութեամբ, որ վարպետօրէն կատարեց Ռուբէն Թէրզիպաշեան: Իսկ կիթարի բաժինը՝ ոգեւորիչ իր ելոյթներով կ'ընկերակցէր Վալէրի Դիրինի:

Գնահատանքի խօսք ունինք նաեւ երգերով իրենց մասնակցութիւնը բերող արուեստասէրներուն, յանձին Արա Քէօհնէլեանի (ունի թաւ, հրապուրիչ ձայն և մատչելի կերպարանք: Իր յաջող մեներգներով և զուգերգներով աւելի փայլ մը տուաւ ձեռնարկին): Նորա Քէօհնէլեան (դաշն ձայնով ու ապրումով երգելու ոճը հաղորդական է) և Ֆատի Մորիսի, որ ճիգ չէին խնայած լաւագոյնս կատարելու:

Պատուաբեր ձեռնարկ մը անկասկած,որ առաջին առթիւ կը շնորհաւորենք արուեստագիտուհի Շաքէ Յովակիմեանին ապա բոլոր անոնց, որոնք իրենց բաժինը բերին սոյն ձեռնարկին յաջողութեան:

Ա.Մ.

## ԳԱՀԻՐԷ

# "ԱՄԵՆԱՑԽՈՒՐ ՄԱՐԴԸ"

## " Հանակէր"ի Թատերասրահին Մէջ

Անցեալ երկու շաբթուայ ընթացքին, "Էլ Հանակէր" թատրոնի բեմին վրայ, ներկայացուեցաւ հայրենի գրագէտ, ՀՀ մշակոյթի նախկին նախարար՝ Պերճ Զէյթունցեանի "Ամենատխուր Մարդը" կատակերգութիւնը, արաբերէն լեզուով:

Ներկայացման բեմադրիչն էր Ապտէլ Սաթթար Էլ Խոտարի, գլխաւոր դերակատարութեամբ Թաուֆիք Ապտէլ Համիտի, Ազզա Էլ Շարհի և սուրիացի Սամանդա Ալյուպի:

Սոյն թատրերգութեան (որ առաջին անգամ բեմադրուած է 1974-ին Երեւանի տրամաթիքական թատրոնի բեմին վրայ), նիւթը կը վերաբերի մարդու մը, որ բանտ կը դրուի և ան առիթէն օգտուելով հետազօտութիւններ կը կատարէ բանտէն ներս: Գիտնական դարձած, բանտէն կ'արձակուի և Նոպէլեան մրցանակի կ'արժանանայ, սակայն չկարենալով իր շրջապատին հետ ապրիլ, կը նախընտրէ ետ բանտ վերադառնալ:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B. P. 2111 Le Caire (R.A.E.) Tél. 3914908
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1339 -- ՀԻՆԳՇԱԲԹԻ 25 ՅՈՒԼԻՍ 1996 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 25 Եգ. Դհկ. | عدد رقم ١٣٣٩ - الخميس ٢٥ يوليو ١٩٩٦


## ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎԻ ՊԱՏԳԱՄԱՒՈՐ ԷՌՆԵՍՏ ՍՈՂՈՄՈՆԵԱՆԻ ՄԱՄԼՈՅ ԱՍՈՒԼԻՍԸ

Հայաստանի Հանրապետութեան Ազգային Ժողովի պատգամաւոր և Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութեան անդամ ընկ. Էռնեստ Սողոմոնեան Լոս Անճելըս կատարած մէկ շաբթուայ այցելութիւն վերադարձաւ Երեւան:

Կեցութեան ընթացքին, կուսակցական հանդիպումներու կողքին ընկ. Սողոմոնեան այցելեց Հայաստանի Հանրապետութեան Լոս Անճելըսի հիւպատոսարանը, ուր ընդունուեցաւ աւագ հիւպատոս Պր. Արմէն Բայբուրդեանի կողմէ և ծանօթա- ցաւ հիւպատոսարանի աշխատանքներուն, նաեւ հանդիպում ունեցաւ Արեւմտեան թեմի առաջնորդ Վաչէ Արք. Յովսէփեանի հետ, որու ընթացքին քննարկուեցան Ազգային-եկեղեցական տարբեր հարցեր: Կլէնտէյլի քաղաքապետարանէն ներս ընկ. Է. Սողոմոնեան Հայաստանի Հանրապետութեան Ազգային Ժողովի պետական-իրաւական հարցերու մշտական յանձնաժողովի իր հանգամանքով, հանդիպում ունեցաւ Կլէնտէյլի քաղաքապետութեան անդամներէն Պր. Լէրի Զարեանի հետ:



Մամլոյ ասուլիսին ձախէն աջ՝ ընկերներ Էռնեստ Սողոմոնեան և Տոքթ. Յարութիւն Սաղրեան

Հայկական հեռատեսիլի ժամերէն իր ունեցած բազմաթիւ հարցազրոյցներու կողքին, ընկ. Սողոմոնեան Լոս Անճելըսէն մեկնումի նախօրեակին ունեցաւ մամլոյ ասուլիս մը, որ տեղի ունեցաւ Հինգշաբթի, Յունիս 27-ին Կլէնտէյլի Նոր Սերունդ Մշակութային Միութեան կեդրոնէն ներս: Ասուլիսին ներկայ էին "Նոր Օր" եռօրեայի, "Մասիս" շաբաթաթերթի, "Նոր Կեանք" շաբաթաթերթի, "Արմինըն Օպզըրվըր" շաբաթաթերթի, "Քաջ Նազար" ամսագիրի, Հայկական Թելէթայմի, Հայկական 24 ժամեայ հեռատեսիլի "Նոր Սերունդ" հեռատեսիլ ժամի խմբագիրներն ու ներկայացուցիչները:

Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան Արեւմտեան Ամերիկայի Վարիչ Մարմինի մամուլի դիւանի ատենապետ ընկ. Տոքթ. Յարութիւն Սաղրեան կատարեց մամլոյ ասուլիսի բացումը՝ ներկայացնելով օրուայ հիւրի կենսագրական հակիրճ գիծերը:

Ընկ. Սողոմոնեան նախ անդրադարձաւ Հայաստանի ներքին կեանքէն ներս տեղի ունեցող փոփոխութիւններուն, քաղաքական ու տնտեսական իրավիճակին և տարբեր մարզերէ ներս արձանագրուող յաջողութիւններուն, որմէ ետք պատասխանեց լրագրողներու հարցումներուն:

Այն հարցումին, թէ նախագահական ընտրութիւններու առթիւ ինչ միջոցառումներ ձեռք կ՚առնուին, որպէսզի այդ ընտրութիւնները միջազգային դիտորդներու կողմէ նկատուին ե՛ւ ազատ ե՛ւ արդար, ընկ. Սողոմոնեան պատասխանեց.

"Նախ ըսեմ թէ 1990-ի պարլամենտական ընտրութիւնները անցան մի ալիքի վրայ՝ սէր դէպի "Ղարաբաղ Կոմիտէ" դէպի Հայոց Համազգային Շարժում, և զգացական մօտեցումներ շատ եղան, ժողովուրդը միակամ և միահամուռ էր, բնականա- բար հինգ տարիներից յետոյ կարծիքներու բախումներ կարող էին լինել, և ընտրութիւնների ժամանակ բազմակարծիք էր ժողովուրդը: Բայց միջազգային ատեանների դիտորդների այդ ձեւակերպումը մի քիչ անհասկանալի էր: Ի՞նչ է նշանակում ազատ բայց ոչ արդար: Ազատութեան մէջ պարունակւում է այդ արդարութեան էլեմենտը: Ուրեմն կ՚երեւի ինչ-ինչ պատ-


( Շար. տեսնել էջ Բ. )


## ՀՀ ՆԱԽԱԳԱՀ ԼԵՒՈՆ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ ՍԴՀԿ-Ի ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԵԱՆ ՀԵՏ

Յուլիս 3-ին Հայաստանի Հանրապետութեան նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանը Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան համագումարի նախօրէին ընդունեց ՍԴՀԿ-ի պատուիրակութեանը՝ կազմակերպութեան նախագահ Եղիա Նաճարեանի գլխաւորութեամբ:

Զրոյցի ընթացքում հնչակեաններն ընդգծեցին, որ չնայած գաղափարախօսական հակասութիւններին՝ կապուած կուսակցութեան սոցիալիստական ուղղուածութեան հետ, Հայաստանի Հնչակեանութիւնը նպատակայարմար է գտնում առաջիկայ նախագահական ընտրութիւններում առաջադրել և պաշտպանել Լեւոն Տէր Պետրոսեանի թեկնածութիւնը:

Այդ համագործակցութեան հիմքը կը կազմեն նուիրուածութիւնը ժողովրդավարութեան սկզբունքներին, Հայաստանի քաղաքական կեանքում պոլշովիզմի մեթոտոլոգիայի բացառումը և վարուող արտաքին քաղաքականութեան սատարումը:

Հանդիպման ընթացքում նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանը պատասխանեց հիւրերին հետաքրքրող մի շարք հարցերին:

## Ս.Դ.Հ.Կ.-Ի ՆԱԽԱԳԱՀԻ ԹԵԿՆԱԾՈՒՆ ԼԵՒՈՆ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆՆ Է

Հանրապետութիւնում շարունակւում է հասարակական-քաղաքական կազմակերպութիւնների կողմից ՀՀ նախագահի թեկնածուների առաջադրումը: Յուլիս 4-ին կայացաւ Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան Հայաստանի կազմակերպութեան երկրորդ՝ արտահերթ համագումարը:


( Շար. տեսնել էջ Գ. )





*Անցեալ 19 Յուլիսին, Աթլանթայի մէջ փառաւոր բացումը կատարուեցաւ 26-րդ Ողիմպիական խաղերուն, որուն մասնակցեցան 197 երկիրներու՝ 10 հազար և 800 մարզիկ-մարզիկուհիներ և մարզիչներ, ուր բարձրացուցին ողիմպիական աւանդական ջահը:*

*Բացման հանդիսութեան ներկայ էին 84 հազար հոգի, գլխաւորութեամբ Միաց. Նահանգներու նախագահ Պիլ Քլինթընի: Հետաքրքրական է յիշել որ հանդիսութեան տոմսակները սպառած էին արդէն աւելի հինգ ամիսներ առաջ, և որուն համար ծախսուած է 189 միլիոն տոլար: Կ՚ակնկալուի թէ*


( Շար. տեսնել էջ Գ. )


## Հ.Բ.Ը.Մ.-Ի ՊԱՏՈՒՈՅ ՑԿԵԱՆՍ ՆԱԽԱԳԱՀ ԱԼԵՔ ՄԱՆՈՒԿԵԱՆ ՈՉ ԵՒՍ Է

Սրտի անհուն կսկիծով տեղեկացանք, որ Միչիկընի մէջ Չորեքշաբթի 10 Յուլիսին, իր մահկանացուն կնքած է ազգային մեծ բարերար, հանրային վաստակաշատ գործիչ, ծանօթ գործարար, Հ.Բ.Ը.Մ.-ի պատուոյ ցկեանս նախագահ Ալեքս Մանուկեան:

Տան կարգը տեղի ունեցաւ Չորեքշաբթի 17 Յուլիսի երեկոյեան ժամը 7-ին, իսկ յուղարկաւորութիւնը յաջորդ օրը՝ 18 Յուլիսի առաւօտեան ժամը 11-ին, Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, Սաութֆիլտ:

Այս տխուր առթիւ "Ջահակիր" և իր շրջանակը իրենց խորազգաց ցաւակցութիւնները կը յայտնեն հանգուցեալի զաւակներուն՝ Տիկին Լուիզ Մանուկեան Սիմոնի և Պր. Ռիչըրտ Մանուկեանի, Հ.Բ.Ը. Միութեան ինչպէս նաեւ սգակիր բոլոր պարագաներուն:

★

*Նոյն տխուր առթիւ ցաւակցական գիր ղրկուած է հանգուցեալին դստեր՝ Հ.Բ.Ը. Միութեան նախագահուհի Տիկին Լուիզ Մանուկեան Սիմոնի (Միչիկըն), Գահիրէի Հայկական Ընթերցասրահի վարչութեան, Նոր Սերունդ Մշակ. Մարմնի, Հ.Մ.Մ.-ի և Տիկնանց "Մարօ" յանձնախումբի կողմէ:*

## ՍԹՈՔՀՈԼՄԻ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԱՒԱՐՏԵՑԱՆ ԱՌԱՆՑ ՅԱՌԱՋԸՆԹԱՑԻ

ՍԹՈՔՀՈԼՄ, ՅՈՒԼԻՍ 6,

Դիւանագիտական աղբիւրներէ յայտնի դարձաւ, որ Լեռնային Ղարաբաղի հարցի լուծման վերաբերեալ Սթոքհոլմի մէջ կայացած բանակցութիւնները աւարտած են անարդիւնք:

Քննարկումներուն մասնակցող Շուէտի արտաքին գործոց նախարարութեան պաշտօնեայ Ինկրիտ Թերսմըն ըսած է, որ գլխաւոր շահագրգիռ կողմերը՝ ատրպէյճանցիները, Հայաստանի հայերը և Ղարաբաղի հայ անջատողականները չցուցաբերեցին "քաղաքական բարի կամք": Աւելին, "անոնք բոլորը կարծես գոհ են տիրող իրավիճակէն" աւելցուցած է ան:

Ռուսաստանը և Ֆինլանտան՝ որոնք կը հսկէին բանավէճերուն վրայ, չեն կրցած որեւէ ժամկէտ նշանակել քննարկումներու նոր փուլին համար, և որոնք կրնան չվերսկսիլ մինչեւ Սեպտեմբերին տեղի ունենալիք Հայաստանի նախագահական ընտրութիւնները, յայտնած է Թերսմըն:

Ժողովի առաջին երկու օրերը յատկացուած են հակամարտութեան գլխաւոր երկու կողմերուն միջեւ բանակցութիւններուն: Ապա, իրենց միացած են Մինսքի խումբի անդամ 10 երկիրները, որոնց յանձնարարութիւն տրուած է Եւրոպայի Ապահովութեան և Համագործակցութեան Կազմակերպութեան (ԵԱՀԿ) կողմէ, միջնորդի դեր կատարելու:

ԵԱՀԿ-ի ներկայիս նախագահ Գավիօ Կոտտի ԵԱՀԿ-ի խորհրդարանական վեհաժողովին Ուրբաթ, Յուլիս 5-ին կայացած նստաշրջանին յայտարարած է, որ ղարաբաղեան հակամարտութեան կողմերու միջեւ քաղաքական բարի կամեցողութեան բացակայութեան, բացառուած է որեւէ էական յառաջխաղացք:

Ֆինլանտայէն և Ռուսաստանէն բացի Մինսքի խումբէն ներս ընդգրկուած են նաեւ Պելոռուսը, Ֆրանսան, Գերմանիան, Հունգարիան, Իտալիան, Շուէտը, Թուրքիան և Միացեալ Նահանգները:

## ՀՀ ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾՈՑ ՆԱԽԱՐԱՐԻՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

Միւս կողմէ Հելսինքիի ժողովի արդիւնքներու մասին Հայաստանի արտաքին գործոց նախարարին կողմէ տրուած յայտարարութեան մէջ ըսուած է. "Հանդիպման


( Շար. տեսնել էջ 4. )

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٢٩١٤٩٠٨

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B. P. 2111 Le Caire (R.A.E.) Tél. 3914908
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1340 -- ՀԻՆԳՇԱԲԹԻ 15 ՕԳՈՍՏՈՍ 1996 ՀԱՏԸ ԶԵՌՔԷ 25 Եգ. Դհկ. عدد رقم ١٣٤٠ - الخميس ١٥ أغسطس ١٩٩٦


## Ս.Դ.Հ.Կ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՆ ԱՐՏԱՀԵՐԹ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

Հինգշաբթի, Յուլիս 4-ին, ՀՀ Գիտութիւնների Ազգային Ակադեմիայի Հանդիսասրահում իր աշխատանքն սկսեց Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան Հայաստանի կազմակերպութեան երկրորդ (արտահերթ) Համագումարը, որի օրակարգի հիմնական հարցը Հայաստանի Հանրապետութեան նախագահի այս տարուայ Սեպտեմբերին կայանալիք ընտրութիւնների համար թեկնածուի առաջադրումն էր:

Առաւօտեան ժամը 11-ին, Ակադեմիայի Հանդիսասրահի բոլոր աթոռները գրաւուած էին: Դահլիճի աջակողմը զբաղեցրել էին Հայաստանի կուսակցական 22 մասնաճիւղերի, 7 խմբերի և 3 ենթակառոյցների աւելի քան 2500 Հնչակեաններից լիազօրուած շուրջ 110 պատգամաւորներ: Դահլիճի ձախակողմը տրամադրուած էր Հայաստանի տարբեր շրջաններից եկած այն 100 նորագիրներին, որոնք այդ օր իրենց ուխտն էին կատարելու:

Կենտրոնում տեղ էին գրաւել ՀՀ կառավարութեան անդամներ, Ազգային Ժողովի պատգամաւորներ, յայտնի գիտնականներ, գրողներ, դաշնակից կուսակցութիւնների ղեկավարներ, մտաւորականներ, լրագրողներ: Դահլիճում էին նաեւ Ս.Դ.Հ.Կ. Կեդրոնական Վարչութեան անդամները՝ կուսակցութեան նախագահ ընկեր Վահրիճ Ճէրէճեանի գլխաւորութեամբ, սփիւռքից ղեկավար այլ ընկերներ:

Հայաստանի Հանրապետութեան և Հնչակեան Կուսակցութեան քայլերգների կատարումից յետոյ, Հայաստանի Հնչակեանութեան Արտահերթ Համագումարի բացումը կատարեց Հայրենական մեծ պատերազմի վեթերանների "Հայկ Բժշկեանց" մասնաճիւղի լիազօր ատենապետ, աւագագոյն անդամ ընկեր Սուրէն Մարգարեանը: Նա յատկապէս ասաց. "Մեր յաղթանակի ու մեր խաղաղութեան նուաճման գործը ղեկավարեց նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանը: Եւ նրա իշխանութեան յարատեւումը լաւագոյն երաշխիքն է այդ թանկ նուաճումների տեւականացման",- եզրափակեց ընկեր Ս. Մարգարեանը:

Համագումարի աշխատանքները ղեկավարելու պաշտօնին ընտրուեց Ս.Դ.Հ.Կ. Հայաստանի Կազմակերպութեան Կենտրոնական վարչութեան ատենապետ, Ակադեմիայի Արեւելագիտութեան ինստիտուտի բաժնի վարիչ ընկեր Ալեքսան Խաչատրեանը, իսկ քարտուղար՝ Պատմութեան Թանգարանի առաջատար ղեկավարող ընկերուհի Սեդա Գալստեանը:

Նախագահողը այնուհետեւ զեկուցման համար ձայն տուեց Հայաստանի Հնչակեանութեան ղեկավար ընկեր Եղիա Նաճարեանին, որին պատգամաւորները և հիւրերը դիմաւորեցին երկարատեւ ծափահարութիւններով:

Ողջունելով Ս.Դ.Հ.Կ. Կենտրոնական Վարչութեան անդամներին, Համագումարի պատգամաւորներին և ներկայ հիւրերին, ընկեր Նաճարեանը ասաց. "Թոյլ տուէք այսօր հաստատել, որ միայն Հայաստանի անկախութեան հռչակումից յետոյ հայրենիքում ազատ գործունէութեան իրաւունք ստացած մեր կուսակցութիւնը յաջողութեամբ յաղթահարել է կայացման հանգրուանի դժուարութիւնները եւ, հոգ չէ թէ դանդաղ, այլ հաստատաքայլ, աւելի ու աւելի է իր արժանի տեղը գրաւում Հանրապետութեան հասարակական-քաղաքական կեանքում: Ըստ որում մեր կուսակցութիւնը ազգային աւանդականներից միակն է, որը խուսափեց ներքին տագնապներից և երկպառակութիւններից":

Այնուհետեւ ելոյթ ունեցաւ ՀՀ Գիտութիւնների Ազգային Ակադեմիայի ակադեմիկոս Գագիկ Սարգսեանը, որը կարեւորեց Հնչակեան կուսակցութեան սոցիալ-դեմոկրատական բնոյթը, գտաւ, որ այն ազգային հիմնախնդիրների հրամայականներով է առաջնորդւում:

"Հայաստանեան հնչակեաններիս համախմբում է, նաեւ, Հայաստանի Հանրապետութեան անկախութիւնն ու գերիշխանութիւնը պահպանելու, պաշտպանելու և ամրապնդելու գործին նուիրուածութիւնը, Հայաստանը ռազմական, քաղաքական և տնտեսական հողի վրայ համայն հայոց գերհզօր հայրենիք դարձնելու տեսլականը: Այդ գործի յաջողութեան, այդ տեսլականի իրագործման դէպքում, միայն, կարող է երաշխաւորուել "Ազատ, Անկախ, Միացեալ Հայաստան"ի համահայկական երազանքի հեռանկարը:

Հայաստանի Եգտիների հոգեւոր առաջնորդ շէյխ Հասան Հասանեանն իր ելոյթում անդրադարձաւ հայ և եզտի ժողովուրդների ճակատագրակցութեանը, Արեւմտեան Հայաստանի տարածքին թուրքական բռնակալութեան դէմ համատեղ պայքարին, առաջին աշխարհամարտի տարիներին եզտի առաջնորդների և Հնչակեան ղեկավարների համագործակցութեանը և Հայաստանում այդ համագործակցութեան յետագայ զարգացմանը: Նա նաեւ կանգ առաւ Հայաստանի Հանրապետու-


( Շար. տեսնել էջ Բ. )


## ԳԱՐԵԳԻՆ Ա. ՎԵՀԱՓԱՌԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ՀԱՐԱՒԱՅԻՆ ԱՄԵՐԻԿԱ

Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսը Յուլիս 31-ի առաւօտեան ժամանած է Սան Փաոլոյի օդանաւակայան, ընկերակցութեամբ Ֆրանսայի Առաջնորդ Գիւտ Արք. Նագաշեանի և գաւազանակիր Բագրատ Արեղայ Գալստեանի:

Օդակայանին մէջ Պրազիլիոյ Հայոց Առաջնորդ Տաթեւ Արք. Ղարիպեան, նաեւ Արժանթինի Հայոց Առաջնորդ Գիսակ Եպիսկոպոս Մուրատեան, գաղութահայ ներկայացուցիչներ և մեծ թիւով հաւատացեալ հայրենակիցներ դիմաւորած են Վեհափառ Հայրապետին:

Նոյն օրը, Նորին Սրբութիւնը հանդիպում ունեցած է Սան Փաոլոյի կառավարիչ Մարիոֆովսի հետ: Ապա Վեհափառը այցելած է քաղաքապետարան, ուր այս առթիւ քաղաքապետը յատուկ հրամանագրով որոշած է քաղաքի կարեւոր կամուրջներէն մէկը կոչել "Հայաստանի Հանրապետութիւն" անունով:

Այցելելով մայրաքաղաք Պրազիլիա, Վեհափառ Հայրապետը շատ կարեւոր հանդիպում մը ունեցած է Հանրապետութեան նախագահ Ֆերնանտօ Էնրիքէ Քարտոզոյի, արտգործնախարարի և կառավարիչի հետ: Այս առթիւ կառավարիչի մասնաւոր հրամանագրով հող կը տրամադրուի քաղաքին մէջ Հայաստանի Հանրապետութեան դեսպանատան շէնքի շինութեան համար:

Ամենայն Հայոց Կաթողիկոսի անդրանիկ այցելութիւնը


( Շար. տեսնել էջ Գ. )


## ԱԹԼԱՆԹԱՅԻ ՈՂԻՄՊԻԱԿԱՆ ԽԱՂԵՐՈՒ ԱՒԱՐՏԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ՝ 1 ՈՍԿԻ, 1 ԱՐԾԱԹ

Աթլանթայի ողիմպիական մարզախաղերը հասան իրենց աւարտին Կիրակի 4 Օգոստոսին, երեկոյեան տեղի ունեցած փառաշուք հանդիսութեամբ մը, որուն ընթացքին ողիմպիական խաղերու դրօշը յանձնուեցաւ Աւստրալիական Սիտնի քաղաքի քաղաքապետին, ուր տեղի պիտի ունենան յաջորդ՝ 2000 թուականի մարզախաղերը:

Այս խաղերուն Հայաստան ապահովեց երկու մետալ՝ մէկ ոսկի և մէկ արծաթ: Յունահռոմէական ըմբշամարտի մրցումներուն Արմէն Նազարեան տիրացաւ ոսկի մետալի, իսկ ազատ ոճի ըմբշամարտիկ Արմէն Մկրտչեան տիրացաւ արծաթէ մետալի:



Ոսկի մետալի ախոյեան՝ ըմբշ. Արմէն Նազարեան

## ԻՇԽԱՆԱՎԱՅԵԼ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ՄԵԾԱՆՈՒՆ ԲԱՐԵՐԱՐ ԱԼԵՔ ՄԱՆՈՒԿԵԱՆԻՆ

Ինչպէս նախորդ թիւով տեղեկացուցած էինք, Յուլիս 10-ի երեկոյեան Ֆիլատելֆիոյ մէջ իր մահկանացուն կնքեց ազգային բարերար, Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան ցկեանս պատուոյ նախագահ և Հայաստանի Հանրապետութեան Ազգային Հերոս Տիար Ալեք Մանուկեան, 92 տարեկանին:

Մեծանուն բարերարի մահուան բօթը կայծակի արագութեամբ տարածուեցաւ սփիւռքէն մինչեւ Հայաստան, ուր առաջինը արձագանգեցին Հայաստանի Հանրապետութեան նախագահ Լեւոն Տէր Պետրոսեան և Ամենայն Հայոց Կաթողիկոս Գարեգին Ա.ը, յայտնելով իրենց ցաւակցութիւնները ու վեր առնելով հանգուցեալի արժանիքները:

Ցաւակցական հեռագիրներ յղեցին նաեւ Ազգային Ժողովի նախագահ Բաբգէն Արարքցեան, վարչապետ Հրանդ Բագրատեան, Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութիւնը ու բազմաթիւ այլ պետական, եկեղեցական, հասարակական անձնաւորութիւններ և կազմակերպութիւններ:


( Շար. տեսնել էջ Գ. )


## Աշխարհահռչակ գիտնական Վիքթոր Համբարձումեան Ոչ եւս է

Խմբագրութիւնս խոր ցաւով կը գուժէ մահը ՀՀ ազգային հերոս, ՀՀ գիտութիւններու ազգային ակադեմիայի պատուաւոր նախագահ, աշխարհի բազմթիւ ակադեմիաներու անդամ և պատուաւոր անդամ, սոցիալիստական աշխատանքի կրկնակի հերոս, աշխարհահռչակ գիտնական Վիքթոր Համազասպ Համբարձումեանի, որ տեղի ունեցած է անցեալ օր 88 տարեկան հասակին մէջ:

Այս տխուր առթիւ մեր խորզգաց ցաւակցութիւնները կը յայտնենք հանգուցեալին հարազատներուն և մերձաւորներուն:

## ՄԱԿ-Ի ԵՒ ԵՒՐԱԽՈՐՀՐԴԱՐԱՆԻ ԳՆԱՀԱՏՄԱՄԲ ՀԱՅԱՍՏԱՆ ԺՈՂՈՎՐԴԱՎԱՐԱԿԱՆ ԵՐԿԻՐ Է

Հայաստանի Հանրապետութեան Կեդրոնական Ընտրական Յանձնաժողովի նախագահ Խաչատուր Պագիրճեան յայտնեց, որ յառաջիկայ նախագահական ընտրութիւններուն Եւրոպական Խորհրդարանի դիտորդներ պիտի չմասնակցին, քանի որ այդ կազմակերպութիւնը ժողովրդավարական նկատուող երկիրներու մէջ տեղի ունեցող ընտրութիւններուն ընդհանրապէս դիտորդներ չուղարկեր:

Նոյն պատճառաւ Միացեալ Ազգերու Կազմակերպութեան կողմէ շատ քիչ թիւով դիտորդներ պիտի ժամանեն Հայաստան, հետեւելու համար Սեպտեմբեր 22-ին կայանալիք նախագահական ընտրութիւններուն:

### ԱՐՏԱՍԱՀՄԱՆ ԳՏՆՈՒՈՂ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐՈՒ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ

Միւս կողմէ Կեդրոնական Ընտրական Յանձնաժողովը Օգոստոս 6-ի իր նիստին որոշում կայացուց օտար երկիրներու մէջ նախագահական ընտրութեան քուէարկութեան նախապատրաստման և կազմակերպման կապակցութեամբ:

Արտասահմանի մէջ նախագահի ընտրութիւնները պիտի սկսին Սեպտեմբեր 22ին


( Շար. տեսնել էջ Բ. )

# ՍՓԻՒՌՔԵԱՆ ՃԱԿԱՏԻՆ ՎՐԱՅ

**Ջօն՝ Փրոֆ. Վահագն Տատրեանի**

*Սփիւռքը, այսինքն Արեւմըտահայութեան մնացորդացին զաւակներն ու թոռները կը հետապնդեն Հայ Դատը, միջազգային ճանաչումի ենթարկելու մտասեւեռումով:*

*1915-ի ցեղասպանութեան ճշմարիտ իրողութիւնը բացայայտ է հոյակապ փաստերով: Մեծ պետութիւնները և ցեղասպան Թուրքիան կը կարծէին, թէ Հայ Դատը թաղուած է: Տասնամեակներով լռութեան հաստ պատ մը քաշուած էր Հայութեան արդար իրաւունքներուն դէմ:*

*Նահատակներու 50-ամեակէն մինչեւ 75-ամեակ տեւող սփիւռքահայութեան բոլոր ջանքերը ապարդիւն մնացին: Մեր բիւրաւոր բարձր ճիչերը և ամբողջական ճիգերը անզօր մնացին լռութեան պատը ճեղքելու:*

*1975-էն յետոյ երէց մտաւորականի մը* ***սրբազան խենդութեան*** *արարքէն ետք, կորովի և նուիրեալ Հայ երիտասարդներ սկսան "զինեալ պայքար"ի կամ զինեալ քարոզչութեան եւ... լռութեան պատը ամբողջովին քանդուեցաւ:*

★

*Այնուհետեւ Հ.Յ.Դ.-ն, Ս.Դ.Հ.Կ.-ի և Ռ.Ա.Կ.-ի գերագոյն ջանքերով, Հայ դատը յառաջընթաց ուղի մտաւ:*

*Նախ երկու տասնամեակ առաջ Ուրուկուէյի խորհրդարանը ճանչցաւ Հայկական ցեղասպանութիւնը: Ետքը, 1987-ին Եւրոպայի խորհրդարանը ճանչցաւ: 1984-ին Ֆրանսայի նախագահ Ֆրանսուա Միթերան և 1987-ին ալ Բելճիքի* [sic: Բերուի] *Անփոնս նախագահը ճանչցաւ: ՄԱԿ-ի Մարդկային իրաւունաց և կանխարգելումի ենթայանձնախումբն ալ ճանչ-ցաւ, 30-րդ յօդուածով: 1995-ին Ռուսիոյ և Պուլկարիոյ խորհրդարանները միաձայնութեամբ ճանչցան: Եւ այս տարի՝ 1996-ին Յունաստանի խորհրդարանը միաձայնութեամբ ճանչցաւ:*

*Յոյժ հաւանական է, որ հետզհետէ այլ ազգերու խորհրդարանները եւս ճանչնան: Վերոյիշեալները իսկապէս նախերգանքն են գալիքին:*

*Մարդիկ սկսեր են ըսել ճշմարտութիւնը: Կա՛ն դեռ եկեղեցական և աշխարհական կազմակերպութիւններ՝ որոնք կը հետաքրքրուին Հայ Դատով: Ասոնք դրական երեւոյթներ են:*

*Միացեալ Նահանգներու երեք նախագահական թեկնածուներ՝ Ռիկըն, Պուշ և Քլինթըն իրենց ընտրութիւններէն առաջ խոստացած էին ճանչնալ ցեղասպանութիւնը: Սակայն... Պուշ և Քլինթըն չահելու և ռազմական նկատումներով չկրցան յարգել իրենց* ***խոստումները:*** *Իսկ Ռիկըն գործածեց ՀԱՅԿԱԿԱՆ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆ բառերը, թիւ 4836 նախագահական հրովարտակին մէջ, 1981-ին: Թուրքիան ինչո՞վ կրցաւ հակազդել...:*

*Արդ, սրտագին և հոգեւին կոչ կ'ուղղեմ իւրաքանչիւր սփիւռքահայու և մասնաւորապէս իւրաքանչիւր ամերիկահայու, որպէսզի աջակցին սփիւռքահայ երեք դասական կուսակցութիւններուն տեւական, անդուլ ու անվհատ ջանքերուն: Իսկապէս իւրաքանչիւրիս ճիտին պարտքն է սատարել Հայ Դատի գործընթացին: Ներկայ հանգրուանին աւե՛լի չեշտուած կերպով պայքարինք, հասնելու համար մեր վախճանական սուրբ նպատակին:*

*Խարանուած դահիճ Թուրքին աններելի յամառութեամբ ուրացումը կը շարունակուի: Աւելի՛ն, իր պետական հսկայական քարոզչական մեքենան կը գործէ ամենուրեք: Վարձկան օտար "պատմաբան"ներ կը կաշառուին: Միլիոնաւոր տոլարներով կը վարձուին ամերիկեան "Քափիթոլայն" ընկերութիւնը և այլ "լոպինինկ" հաստատութիւններ:*

*Թուրքիոյ մղձաւանջային բազմազան ջանքերը վերջին հաշուով* ***ջուր ծեծել է,*** *որովհետեւ սուտի վրայ հիմնըւած է:*

*Հայ Դատին միջազգային և իրաւական ճանաչումը կը յառաջդիմէ և օր մը* ***արդի*** *Բաբելոն ՄԱԿ-ն ալ պիտի ճանչնայ Հայ Դատը:*

*Ի հեճուկս Թուրքին, անվարան ու վառ հաւատքով զօրաշարժի ենթարկենք մեր Հայու կարելիութիւնները:*

*1896, 1909, 1915, 1918-ին երկու միլիոն անմեղ և սուրբ նահատակներուն արեան կանչը մեզի կը պատգամէ աննահանջ ուխտապահներ մնալու:*

*Ուրեմն՝ նոր և յաւելեալ թափ տանք* ***Հայ պահանջատիրութեան:***

***Մեծ եղեռնի վերապրող՝***

*ՄԿՐՏԻՉ ԱՆԴՐԱՆԻԿ*

Աղեքսանդրիա, Յուլիս 1996

# ԳԱՐԵԳԻՆ Ա. ՎԵՀԱՓԱՌԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ՀԱՐԱՒԱՅԻՆ ԱՄԵՐԻԿԱ

( Տար. Ա. Էջէն )

մեծ խանդավառութիւն ստեղծած է պրազիլահայ գաղութէն ներս: Տեղի ունեցած են յատուկ հանդիպումներ՝ երիտասարդներու և Տիկնանց միութիւններու հետ: Վեհափառ Հայրապետը ի միջի այլոց ըսած է, որ պէտք չէ մնալ անտարբեր հայութեան նկատմամբ, քանի որ մեր երազը իրականացաւ ազատ անկախ Հայաստանի իրականութեամբ:

**ՎԵՀԱՓԱՌ ՀԱՅՐԱՊԵՏԻ ԺԱՄԱՆՈՒՄԸ ՈՒՐՈՒԿՈՒԱՅ**

Օգոստոս 5-ի երեկոյեան Սան Փաուլոյէն Մոնթեվիտէօ ժամանեց Նորին Սրբութիւն Գարեգին Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսը ընկերակցութեամբ գաւազանակիր Բագրատ Արքեպս. Գալստեանի, Ֆրանսայի Հայոց Առաջնորդ Գիւտ Արք. Նագաշեանի և Արժանթինի մէջ Հայաստանի Հանրապետութեան դեսպանութեան երկրորդ քարտուղար Ռուբէն Մոզեանի:

Օդանաւակայանի մէջ Վեհափառին դիմաւորեց Ուրուկուաhայոց Առաջնորդ Յակոբ Եպիսկոպոս Գէլէնճեանը: Ապա Վեհափառը և իրեն ընկերակցող պատուիրակութիւնը տեղափոխուեցան Ս. Ներսէս Շնորհալի եկեղեցին ուր մեծ թիւով հաւատացեալներ դիմաւորեցին Վեհափառին:

# "ՄԻՍՍ - ՀԱՅԱՍՏԱՆԸ" ԿԱՐԻՆԷ ԽԱՉԱՏՐԵԱՆ



Վերջերս, Հայաստանի Ազգային Օփերայի Թատրոնին դահլիճին մէջ, ամփոփուեցան Երեւանի Սենեկային թատրոնին նախաձեռնած "ՄիսսՀայաստան" մրցոյթի արդիւնքները: Ըստ արդիւնքներուն, դատական կազմը, Հայաստանի գեղեցկուհին ընտրած է ("Միսս-Հայաստան") Կարինէ Խաչատրեանը, 2րդը ընտրուած է Անժելիգա Պապաջանեանը, իսկ 3րդը՝ Գաբրիէլլա Տէրմէնճեանը:

Հայաստանի առաջին "Աստղիկ"ը՝ Կարինէ Խաչատրեան 16 տարեկան է, կը զբաղի գեղարւեստական մարմնամարզութեամբ. հասակը 167 սմ. է: Ան Սեպտեմբեր 7ին Հայաստանը պիտի ներկայացնէ Մոսկուայի մէջ "Miss Europe" և Հոկտեմբեր 27ին՝ Թոքիոյի "Miss International"մրցոյթներուն:

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՇՄԱՆԴԱՄ ՄԱՐԶԻԿՆԵՐԸ ՊԻՏԻ ՄԱՍՆԱԿՑԻՆ ԱԹԼԱՆԹԱ ՈՂԻՄՊԻԱԿԱՆԻՆ

Հայաստանի ողիմպիական մարզիկներու խումբ մը, 1996-ի Աթլանթայի Հաշմանդամներու Ողիմպիականին (Atlanta Paralympics) մասնակցելու իրենց ճամբուն վրան պիտի այցելեն Լոս Անճելըս: Չորս հոգիէ բաղկացած նաւարկողներու (Yachting) խումբը և ծանրաբարձութեան ախոյեան մը, պիտի ներկայացնեն Հայաստանը Օգոստոս 12-27-ի Փարալիմփիքի Խաղերուն:

Չորս նաւարկողները Սպիտակէն 17 տարեկան տղաք են, որոնք վիրաւորուած էին 1988-ի Հայաստանի մեծ երկրաշարժին: Մարզիկներէն Կարուշ Դանիէլեան կորսնցուցած է իր ձախ ոտքը, Սդասիք Նազարեան՝ աջ ոտքը, Արմէն Մարտիրոսեան՝ աջ ոտքը և ձախ ձեռքը և Հայկ Աբգարեան՝ ձախ ոտքը: Ծանրաբարձը, 38 տարեկան Գագիկ Գասպարեան, արկածի մը հետեւանքով մէջքէն վար անդամալուծուած է:

Վերջերս Հիւսիսային Գալիֆորնիա անցկացուած փառլիֆթինկի (պառկած դիրքէց ծանրաձողի բարձրացում) աշխարհի առաջնութեան Հայաստանի Հաշմանդամների Մարզական Միութեան անդամ Գագիկ Գասպարեանը (82,5 քկ.) դարձաւ աշխարհի ախոյեան: Ան բարձրացրուց 202,5 քկ. ծանրաձողը և սահմանեց աշխարհի նոր մրցանիշ:



Ծանրաբարձութեան ախոյեան՝ Գագիկ Գասպարեան

Կ'ակնկալուի, որ Գասպարեան Փարալիմփիքի ծանրաբարձութեան մրցանակը շահի: Ան վերջին երկու տարւոյ ընթացքին կը մագուէր Միացեալ Նահանգներու մէջ և ցարդ շարք մը մրցանակներ խլած է ոչ-հաշմանդամ մարզիկներէ:

Յուսահատելու փոխարէն, երիտասարդները միացան Փիւնիկ կոչուող խումբի մը, որ երկրաշարժէն անմիջապէս ետք կազմուած էր, հաշմանդամ երիտասարդութեան ֆիզիքական, հոգեկան և ընկերային պահանջներուն հասնելու համար:

Փիւնիկի մօտ երկու երկվեցեակ հաշուող ամառնային ճամբարները, ուր կը յաճախեն 2,100 երիտասարդներ, ոչ միայն ապաքինումի նպատակին ծառայած են, այլեւ՝ պատրաստած են համաշխարհային մակարդակի մարզիկներ: Անցեալ տարի, չորս պատանիները, որոնք նաւարկել սորված էին Փիւնիկի ճամբարներուն մէջ, Սեւանայ լիճին վրայ, Սպանիա ճամբորդեցին ուր այս տարուայ Աթլանթայի Փարալիմփիքսի մասնակցելու պայմանները ամբողջացուցին:

# ԻՇԽԱՆԱՎԱՅԵԼ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆ

( Տար. Ա. Էջէն )

Հինգշաբթի Յուլիս 18-ին, Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. Ամենայն Հայոց Հայրապետի նախագահութեամբ և ՀՀ Սահմանադրական Դատարանի նախագահ Գագիկ Յարութիւնեանի գլխաւորութեամբ Հայաստանէն ժամանած պետական պատուիրակութեան մասնակցութեամբ, Տիբրոյի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, կատարուեցաւ ազգային բարերար Ալեք Մանուկեանի թաղմանական արարողութիւնը: Խուռներամ ժողովուրդ մը լեցուցած էր եկեղեցին, ուր աչքի կը զարնէին Միշիկընի կառավարիչ Ճոն Էնկլըր, Ֆրանսայէն, Զուիցերիայէն, Արժանթինէն, Ուրուկուէյէն, Պրազիլէն, Աւստրալիայէն, Գանատայէն, ԱՄՆ-էն ժամանած պատուիրակներ, ինչպէս նաեւ տեղւոյն 30 հազարնոց գաղութի բազմահազար ներկայացուցիչներ:

Յուղարկաւորութեան արարողութեան նախագահեց Վեհափառ Հայրապետը, իր կողքին ունենալով Արարատեան Հայրապետական Թեմի առաջնորդական փոխանորդը, Միացեալ Նահանգներու Արեւելեան և Արեւմտեան և Գանատայի թեմերու առաջնորդները, եպիսկոպոսներ, վարդապետներ և քահանայ հայրեր:

Եկեղեցական արարողութեան ընթացքին, դամբանական խօսեցաւ Գարեգին Ա. Կաթողիկոս, որ ընդգծեց մեծանուն հայուն տարած սէրը իր ժողովուրդին, Հայաստանեայց եկեղեցւոյ Հ.Բ.Ը.Մ.ին, ինչպէս նաեւ հայ մշակոյթին նկատմամբ: Վեհափառը, իր դամբանականէն առաջ, աղօթեց այն 230 հոգիներուն համար, որոնք նախորդ օրը մահացած էին TWA ընկերութեան օդանաւի ջախջախումին հետեւանքով:

Երգեցողութիւնը կը ղեկավարուէր խմբավար Խորէն Մէյխանանեանի կողմէ, ընկերակցութեամբ Լուիզ Եարտըմեանի: Յատուկ հեռատեսիլային ցանց մը եկեղեցւոյ արարողութիւնը կը սփռէր կողքի Մշակութային Կեդրոնի սրահին մէջ:

Եկեղեցական արարողութենէն ետք, տեղի ունեցաւ հոգեհաշ, շուրջ 1000 հոգիի մասնակցութեամբ: Խօսք առին հանգուցեալին զաւակները՝ Հ.Բ.Ը.Մ.ի նախագահ Տիկ. Լուիզ Սիմոն-Մանուկեան և Ռիչըրտ Մանուկեան՝ ՄԱՍՔՕ ընկերութեան նախագահը:

Գագիկ Յարութիւնեան փոխանցեց ՀՀ նախագահ Լ. Տ. Պետրոսեանի ցաւակցութիւնները: Ան ըսաւ, թէ ամբողջ հայութիւնը այսօր կը սգայ Ալեք Մանուկեանի մահը, որուն կորուստը միայն հայութեանը չէ. Ալեք Մանուկեան բարեգործութեան նոր իմաստ ու խորք տուաւ և օրինակ հանդիսացաւ ուրիշներուն: Կարդացուեցան նաեւ նախագահներ Պիլ Քլինթընի և Լեւոն Տէր Պետրոսեանի ցաւակցական գիրերը, ինչպէս նաեւ Երուսաղէմի և Պոլսոյ Պատրիարքներու ցաւակցական գիրերը:

Թաղման արարողութիւնը տեղի ունեցաւ Վուտլոն գերեզմանատան մէջ, հոգեհաշէն անմիջապէս ետք, որուն մասնակցեցան միայն ընտանեկան պարագաներ: Թաղումին, հանգուցեալի դագաղին վրայ Հայաստանէն բերուած հող ցանուեցաւ: Հետագային, գերեզմանին վրայ պիտի դրուի խաչքար մը, զոր Հայաստանէն իր հետ բերած էր Գարեգին Ա. Կաթողիկոս:

# ԻՄԱՍՏՈՒՆ ԽՕՍՔԵՐ

— Լաւ է կանգնած մեռնիլ, քան թէ ապրիլ ծնկաչոք:

Դ. ԻՊԱՐՈՒՐԻ

— Հայրենասիրութիւնն այնպիսի բուռն կրակ մըն է, որ մարդըս մոխիր կը դարձնէ:

Պ. ԴՈՒՐԵԱՆ

— Փոքորիկի ատեն քեզ պատսպարող ծառը երբեք մի կտրեր:

Յ. ՊԱՐՈՆԵԱՆ

— Ծուռ փայտին մի՝ յենուիր, դուն ալ կը ծռիս:

ՀԱՅԿԱԿԱՆ ԱՌԱԾ

— Ընկեր չունեցող մարդը անթեւ թռչուն է:

ՀԱՅԿԱԿԱՆ ԱՌԱԾ

— Ընթերցանութիւն՝ ահա լաւագոյն ուսումը....:

Ա. ՊՈՒՇՔԻՆ

# ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք արտասահմանի մեր այն բաժանորդներէն, որոնք ցարդ չեն ղրկած իրենց բաժնեգինը, բարի ըլլան մեզի փութացնելու զայն, դիւրացնելու համար մեր գործը: Չէք կամ մանտա - փոստ ղրկել "M. BALAYAN"ի անունին և ուղարկել փոստարկղ թիւ 2111, Գահիրէ (11511), Եգիպտոս:

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԳԱՀԻՐԷ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Կիրակի, 18 Օգոստոս 1996-ին, ՏՕՆ Է ՎԵՐԱՓՈԽՄԱՆ Ս. ԿՈՅՍ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ:

Այս առիթով, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ տեղի պիտի ունենայ հանդիսաւոր Ս. Պատարագ: Պիտի պատարագէ և քարոզէ

### ՀՈԳՇ. Տ. ԹԱԴԷՈՍ ՎԱՐԴԱՊԵՏ ՋԻՐԻԿԵԱՆՑ

### ՄԻԱԲԱՆ ՄԱՅՐ ԱԹՈՌ Ս. ԷՋՄԻԱԾՆԻ

Ս. Պատարագի երգեցողութիւնները պիտի կատարուին Ս. եկեղեցւոյս երգչախումբին կողմէ, ղեկավարութեամբ բարեշնորհ Նշան Սարկաւագ Վարդեանի և երգեհոնահարութեամբ Օր. Արփի Ճանիկեանի:

Կը հրաւիրենք բարեպաշտ ժողովուրդը ներկայ ըլլալու առաւօտեան ժամերգութեան և Ս. Պատարագին:

| | | |
|---|---|---|
| Սկիզբ ժամերգութեան | առաւօտեան ժամը | 7.45-ին |
| Ս. Պատարագ | առաւօտեան ժամը | 10.-ին |

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

*****************************

## ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

Կիրակի 4 Օգոստոս 1996, երեկոյեան ժամը 8-ին, Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցին լեցուած էր ազգականներու և բարեկամներու հոծ բազմութեամբ մը, որ եկած էին ներկայ գտնուելու պսակադրութիւնը համայնքիս սիրուած երիտասարդներէն՝

### ՊՐՆ. ՎԱՀԱՆ ՈՍԿԵԱՆԻ
### ԸՆԴ
### ՕՐ. ՄԱՐԱԼ ՏԷՕՎԼԷԹԵԱՆԻ

Կնքահայրութեամբ փեսին քեռայրին, Պրն. Պետրոս Թասլագեանի: Եկեղեցական արարողութեան կը նախագահէր թեմիս Բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեան, իր կողքին ունենալով որպէս հիւր, Հայ Կաթողիկէ Վիճակաւոր Գերապայծառ Տ. Պետրոս Եպս. Թարմունին: Ձեռնտուութիւնը կատարեց Գահիրէի Հոգեւոր Հովիւ Արժ. Տ. Գալուստ Խչկ. Քհնյ. Դարբինեան, անոր կողքին՝ Աղեքս. Հոգեւոր Հովիւ Արժ. Տ. Գրիգոր Քհնյ. Մուրատեան և Բրշ. Օննիկ Սրկ. Պօղոսեան: Հոգեպարար երգեցողութիւնը կը կատարէր եկեղեցւոյ երգչախումբը ղեկավարութեամբ Պրն. Նշան Վարդեանի և երգեհոնահարութիւնը՝ Օր. Արփի Ճանիկեան: Ս. Պսակի խորհուրդի աւարտին, Առաջնորդ Սրբազան Հայրը կարդաց ԱՄՆ-ի Արեւմտեան թեմի Առաջնորդ Գերշ. Տ. Վաչէ Արք. Յովսէփեանի պսակեալ զոյգին ուղղուած շնորհաւորական և օրհնութեան գիրը: Ապա եգիպտահայոց առաջնորդ Սրբազան Հայրը դրուատելով նորապսակ ամոլը, իր օրհնութիւններուն ընկերացուց իր յորդորները:

Պրն. Վահան Ոսկեան որդին է Պրն. Մկրտիչ Ոսկեանի և Տիկին Անժէլ Ոսկեանի: Ան ծնած է Գահիրէ և հայեցի կրթութիւնը ստացած է Գալուստեան Ազգ. վարժարանի մէջ, ապա արտագաղթած Միաց. Նահանգներ և իր ծնողաց հետ հաստատուած է Լոս Անճըլըս նահանգը, ուր շարունակած է իր համալսարանական ուսումը: Այժմ նախաձեռնած է իր սեփական աշխատութիւնը: Պր. Վահան Լոս Անճելըսի մէջ իր աշխոյժ մասնակցութիւնը կը բերէ տեղւոյն համայնքային գործունէութեանց:

Օր. Մարալ Տէօվլէթեան, դուստրն է գաղութիս ծանօթ Պատկ. Քաղաքական ժողովի գանձապահ, Տիար Նորայր Տէօվլէթեանի և Եգիպտական ձայնասփիւռի Եւրոպական կայանի Հայկական բաժնի կազմին վարիչ՝ Տիկին Արաքսի Տէօվլէթեանի: Ան հայեցի կրթութիւն ստացած է Գալուստեան Ազգ. Վարժարանի մէջ և երկրորդական ուսումը՝ Ամերիկեան աղջկանց գոլէճին մէջ, որմէ յետոյ իր բարձրագոյն ուսումը ստացած է Երեւանի Խաչատուր Աբովեանի անուան հայկական մանկավարժական ինստիտուտի նախադպրոցական մանկավարժութեան և հոգեբանութեան բաժինին մէջ, զոր աւարտելէ ետք, վերադարձած է Գահիրէ ու ստանձնած հայերէն լեզուի ուսուցչութեան պաշտօնը Նուպարեան Ազգ. վարժարանին մէջ: Օր. Մարալ մեծապէս սատարած է տեղւոյս հայկական մշակութային և գեղարուեստական գործունէութեանց:

Ապա հոծ թիւով հրաւիրեալներ իրենց ուրախութիւնը շարունակեցին Ռամսէս Հիլթընի շքեղ սրահներէն միոյն մէջ, ուր երջանկութեան կենացներ պարպեցին: Ուշ գիշերին կատարուեցաւ կարկանդակը կիսելու արարողութիւնը, ձեռամբ նորապսակ ամոլին: Խրախճանքը շարունակուեցաւ մինչեւ առաւօտեան վաղ ժամերը ու հրաւիրեալները տակաւ առ տակաւ հրաժեշտ առին, անգամ մը եւս շնորհաւորելէ ետք նորապսակ ամոլն ու իրենց ծնողները:

Այս բարեբաստիկ առթիւ "Ջահակիր" ջերմօրէն կը շնորհաւորէ հարսն ու փեսին, մաղթելով անոնց անամպ ու երջանիկ կեանք:

*****************************

## "ՋԱՀԱԿԻՐ"ԻՆ

Առ ի գնահատութիւն թերթիս տարած ազգօգուտ գործունէութեան Տէր և Տիկին Նուպար և Անահիտ Քիւփէլեաններ (Նիւ Եորքէն կը նուիրեն 50 տոլար:

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Ողբ. Արթօ Պըլըքտանեանի մահուան քառասունքին առթիւ կը նուիրեն, այրի Տիկին Այտա Պըլըքտանեան, Տէր և Տիկին Օննիկ և Արշօ Պըլըքտանեան և զաւակները՝ Արթօ և Սարօ, Տոքթ. և Տիկին Վիգէն և Ալին Ճիզմէճեան և դուստրը՝ Ասփէ.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 300 |
| "Արեւ"ին | 200 |
| "Յուսաբեր"ին | 100 |
| "Ջահակիր"ին | 100 |
| Աղքատախնամին(Գահիրէ) | 100 |
| "Այծեմնիկ" Հանգս. Տան | 100 |
| Հայ Կ. Խաչին | 100 |
| Հ.Բ.Ը.Մ.-ին (Գահիրէ) | 100 |
| Հայ Գեղ. Միութեան | 100 |
| Կոկանեան Սրահին | 100 |
| Հ.Մ.Ը.Մ.-Նուպարին (Հելպ.) | 100 |
| Գալուստեան Ազգ. Վարժարանին | 100 |
| Նուպարեան Ազգ. Վարժարանին | 100 |
| Ս. Պօղոս-Պետրոս Եկեղեցւոյ Պայծառութեան | 100 |
| Հ.Բ.Ը.Մ.-ին (Աղեքս.) | 100 |
| "Տիգրան Երկաթ"ին | 100 |
| Հ.Մ.Ը.Մ.-Նուպարին (Աղեքս.) | 100 |

(Ստանալ "Արեւ"էն)

Իրենց վաղամեռիկ հոգեհատորին ողբ. Անի Սուլթանեանի մահուան Ա. տարելիցին առթիւ Տիար Ռէյմոն Սուլ-Թանեան, Տիկ. Աստղիկ Արապ-եան, Տէր և Տիկ. Պերճ Օտա-պաշեան կը նուիրեն.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 200 |
| Եկեղեցւոյ Տիկնանց Խնամակալութեան | 200 |
| Աղքատախնամին | 200 |
| "Այծեմնիկ" Հանգստեան | 200 |
| Հայ Կարիքի Խաչին | 200 |
| "Արեւ"ին | 200 |
| "Յուսաբեր"ին | 200 |
| "Ջահակիր"ին | 200 |

(Ստանալ Գահիրէի Ազգային Առաջնորդարանէն)

Ողբ. Վահան Չէչճէնեանի քաղցր յիշատակին Տիկին Անի Չէչճէնեան և զաւակունք կը նուիրեն.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 25 |
| "Արեւ"ին | 25 |
| "Յուսաբեր"ին | 25 |
| "Ջահակիր"ին | 25 |

Ողբ. Մարի Սօսոյեանի և Հայկ Օհաննէսեանի քաղցր յիշատակին Տիկին Շաքէ Օհաննէսեան կը նուիրէ.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 10 |
| "Արեւ"ին | 10 |
| "Յուսաբեր"ին | 10 |
| "Ջահակիր"ին | 10 |

Իրենց շատ սիրելի մօր՝ Ողբ. Նուարդ Գալփաքճեանի մահուան քառասունքին առթիւ, Տէր և Տիկ. Մանուկ Գալփաքճեան կը նուիրեն.

| | |
|---|---|
| Ս.Պօղոս-Պետրոս Եկեղեցիին | 25 |
| Հայ Աւետ. Եկեղեցիին | 25 |
| Պօղոսեան Ազգ. Վարժ.ին | 25 |
| "Տիգրան Երկաթ"ին | 25 |
| Աղեքս. Հ.Մ.Ը.Մ. "Նուպար"ի | 25 |
| "Յուսաբեր"ին | 25 |
| "Արեւ"ին | 25 |
| "Ջահակիր"ին | 25 |

Տէր և Տիկ. Հայկ Մանուկեան և զաւակը (Գանատա), իրենց շատ սիրելի մօր և մեծմօր՝ Ողբ. Նուարդ Գալփաքճեանի մահուան քառասունքին առթիւ կը նուիրեն.

| | |
|---|---|
| Ս. Պօղոս-Պետրոս Եկեղեցիին | 25 |
| Հայ Աւետ. Եկեղեցիին | 25 |
| Պօղոսեան Ազգ. Վարժ.ին | 25 |
| "Տիգրան Երկաթ"ին | 25 |
| Աղեքս. Հ.Մ.Ը.Մ. "Նուպար"ին | 25 |
| "Յուսաբեր"ին | 25 |
| "Արեւ"ին | 25 |
| "Ջահակիր"ին | 25 |

Տիկին Շաքէ Թօսունեան, Տէր և Տիկ. Սարգիս Թօսունեան, Տոքթ. և Տիկ. Կարօ Թօսունեան, իրենց շատ սիրելի քրոջ և մօրաքրոջ, Ողբ. Նուարդ Գալփաքճեանի մահուան քառասունքին առթիւ կը նուիրեն.

| | |
|---|---|
| Ս.Պօղոս-Պետրոս Եկեղեցիին | 25 |
| Հայ Աւետ. Եկեղեցիին | 25 |
| "Տիգրան Երկաթ"ին | 25 |
| Աղեքս.Հ.Մ.Ը.Մ."Նուպար"ին | 25 |
| "Յուսաբեր"ին | 25 |
| "Արեւ"ին | 25 |
| "Ջահակիր"ին | 25 |

Օր. Մարալ Տէօվլէթեանի ընդ Պրն. Վահան Ոսկեանի ամուսնութեան ուրախ առթիւ, վասն շնորհաւորութեան ընկեր Վրէժ Սէֆէրեան կը նուիրէ.

| | |
|---|---|
| "Արեւ"ին | 25 |
| "Ջահակիր"ին | 25 |

Նոյն ուրախ առթիւ, ընկ.ներ Պետրոս և Աւետիս Մովսէսեան եղբարք կը նուիրեն.

| | |
|---|---|
| "Արեւ"ին | 15 |
| "Ջահակիր"ին | 15 |

ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութիւնը խոր ցաւով կը գուժէ Պատկ. Թեմական ժողովի քառասունամեայ երեսփոխան՝ ողբ. Յակոբ Քէհեայեանի յանկարծական մահը, որ տեղի ունեցաւ Կիրակի, 14 Յուլիսի 1996-ի գիշերը, իր բնակարանին մէջ:

Ազգային յուղարկաւորութեան արարողութիւնը կատարեց Արժ. Տէր Գրիգոր Քհնյ. Մուրատեան, նախագահութեամբ Եգիպտահայ գաղութի Բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեանի և կատարողութեամբ դպրաց դասին, Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցիին մէջ, 15 Յուլիսի 1996-ի կէսօրէ վերջ ժամը 3.00-ին, ուր ժամանած էին Պատկ. Թեմական ժողովի իր ընկերները, Պատ. Հոգաբարձութեան անդամները, մշակութային և մարզական միութիւններու վարչականներն ու անդամները, բարեկամներ և ծանօթներ, իրենց վերջին յարգանքը մատուցանելու ողբացեալին:

Հոծ բազմութեան մը ներկայութեան, Ս. Առաջնորդ Հայրը իր խօսքին մէջ դրուատեց ողբացեալին բարեմասնութիւններն ու յիշեց մասնաւորապէս, մինչ այդ անծանօթ մնացած բոլորին, թէ ինչպիսի հաւատքով և լռութեամբ տարիներու ընթացքին օժանդակած էր վարժարանի կարօտեալ աշակերտներուն:

Արարողութենէն վերջ, յուղարկաւորները մեկնեցան Շաթպիի Ազգային գերեզմանատուն, ուր Ս. Գէորգ մատրան բակին մէջ, Ազգային Իշխանութեան, միութիւններու և բարեկամներու կողմէ ղրկուած ծաղկեպսակներով պարուրուած դագաղին շուրջ բոլորուող ժողովուրդին առջեւ, Պատ. Քաղաքական ժողովի յարգելի ատենապետ՝ Տիար Վահան Ալեքսանեան խօսք առնելով վերյիշեց դպրոցական շրջանը, երբ ճանչցած էր ողբացեալին՝ աշխոյժ, ժրաջան և մանաւանդ բծախնդիր, առաքինութիւններ, զոր տարիներու ընթացքին այնքան հմտօրէն կարողացաւ գործի դնել իբրեւ Պատկ. Թեմական ժողովի անդամ, Եկեղեցւոյ Հոգաբարձութեան անդամ և Աղեքսանդրիոյ Հայ Աղքատախնամ Մարմինի վարչութեան անդամ:

Այնուհետեւ, Ս. Առաջնորդ Հօր, Արժ. Տէր Հօր և դպրաց դասի կողմէ երգուած շարականներով հանգուցեալին մարմինը յամրօրէն իջաւ և հանգչեցաւ ընտանեկան դամբարանին մէջ:

Այս տխուր առթիւ, Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութիւնը անգամ մը եւս կը ցաւակցի իր վշտահար տիկնոջ՝ Տիկ. Նուարդ Քէհեայեանին, զաւակներուն և հարազատներուն:

ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Այտա Պըլըքտանեան, Տէր և Տիկին Օննիկ և Արշօ Պըլըքտանեան և զաւակները՝ Արթօ և Սարօ, Տոքթ. և Տիկին Վիգէն և Ալին Ճիզմէճեան և դուստրը՝ Ասփէ, Այրի Տիկին Արաքսի Ճոնեան և որդին՝ Ժանօ, Տիար Արամ Պըլըքտանեան, Տէր և Տիկին Օննիկ Փիլիպոսեան և զաւակները (Գանատա), Տէր և Տիկին Ժոզէֆ Ուասէֆ և զաւակները, ներկայիւս կու գան իրենց խորին շնորհակալութիւնները յայտնելու Թեմիս Բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տէր Զաւէն Արք. Չինչինեանի, Արժ. Տէր Գալուստ Խ. Քհնյ. Դարբինեանի, Գահիրէի Ազգ. Իշխանութեան պատկառելի անդամներուն, բարեգործական, մշակութային, մարզական բոլոր միութիւններու պատուարժան վարչութիւններուն և հայ երեք թերթերու խմբագրութեանց, ինչպէս նաեւ բոլոր անոնց, որոնք անձամբ, նամակով, հեռագրով, հեռախօսելով, ծաղկեպսակ ղրկելով և կամ հայկական հաստատութիւններու նուիրատուութիւն կատարելով ցաւակցութիւն յայտնեցին իրենց շատ սիրելի ամուսնոյն, հօր, մեծհօր, եղբօր և մօրեղբօր՝

### ՈՂԲ. ԱՐԹՕ ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆԻ

մահուան և քառասունքին առիթներով:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B. P. 2111 Le Caire (R.A.E.) Tél. 3914908
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1341 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 5 ՍԵՊՏԵՄԲԵՐ,1996 | ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 25 Եգ. Դհկ. | ١٩٩٦ الخميس ٥ سبتمبر - ١٣٤١ عدد رقم


## Ս. Միւռոնը Առնչել Կեանքին

### (Ի Պատրաստութիւն Միւռոնօրհնէքի, Ս. Էջմիածնի մէջ)

Կիրակի Սեպտեմբեր 8-ին, Մայր Աթոռ Ս. Էջմիածնի մէջ պիտի կատարուի Ս. Միւռոնի աւանդական օրհնութիւնը: Այս առթիւ կը հրատարակենք Ամենայն Հայոց Կաթողիկոս Գարեգին Ա.ի խորհրդածութիւններու եւ հայրապետական յորդորներու շարքին վերջաբանը, իր շահեկանութեան եւ այժմէականութեան համար:

ԽՄԲ.



Ամենայն Հայոց Կաթողիկոս՝ Գարեգին Ա.

*Միւռոնը որ պիտի օրհնենք Ս. Էջմիածնի մէջ, թող ըլլայ զուտ եկեղեցական, ազգային, սրբական, ծիսական աւանդութիւն: Թող դառնայ կեանքի մէջ թարգմանուող հոգեկան ու ազգային բարեյրջութիւն: Քրիստոս Օծեալը եկաւ և իր Օծուած ըլլալը արտայայտեց աղքատներուն, սրտով բեկուածներուն, գրկեալներուն, գերիներուն, կոյրերուն համար յոյս և լոյս դառնալով, դեղ ու դարման հանդիսանալով, բարիք և փրկութիւն բերելով:*

*Այսպէս և մենք, երբ կը պատրաստուինք Ս. Միւռոնի օրհնութեան, ո՛ւր ալ ըլլանք, Մայր Հայաստանի մէջ թէ Արցախի, Կովկասի մէջ թէ Ռուսաստանի, Եւրոպայի մէջ՝ թէ Արեւելեան թէ՛ Արեւմտեան, Ամերիկայի մէջ՝ թէ՛ Հիւսիսային և թէ՛ Հարաւային, Ծայրագոյն թէ՛ Միջին Արեւելքի մէջ, այս նոր Միւռոնին մէջէն զգանք և տեսնե՛նք մեր ողջ հայութեան հոգեկան վերանորոգումը, վերաբիւրեղացումը: Չարն ու մեղքը մերն են որքան բարին և սրբութիւնը: Մեղանչելը, սայթաքիլը, մոլորիլը, պառակտիլը մեր կեանքն մէջ իրողական տարրեր են: Բայց, մեր բնատիպ ինքնութեան կը պատկանին վերականգնիլը, վերակազմուիլը, վերամբողջանալը, վերառողջանալը, վերստին հարազատանալը մենք մեզ հետ: Հայրենիքն ու հայութիւնը վէրքեր ու ցաւեր դեռ շատ ունին՝ սրտով բեկեալներու թիւը դեռ ստուար է և բազմատեսակ, ամպերը դեռ բոլորովին չեն փարատած, գետերը դեռ չեն վարարած, ծովերը դեռ չեն խաղաղած, դաշտերը դեռ լիովին չեն ակօսուած, գործատեղիներուն մէջ դեռ շատ ժանգ կայ կապած, ղօղանջները դեռ չեն համազանգ ու ներդաշնակ, միտքերը դեռ չեն յստակուած, կամքերը դեռ չեն վերագտած իրենց առհաւական պրկութիւնը, հոգիներուն մէջ դեռ խռովք կայ, սիրտերուն մէջ դեռ վիշտերը չեն ամոքուած, հորիզոնը դեռ չէ այնպէս պարզ ու լուսագիծ:*

*Եւ ահա Միւռոնը այս բոլորին մէջ յոյսի ցոլք է, լոյսի շող է, բալասան է բոլոր անոնց համար, որոնք ազգն ու հայրենիքը, եկեղեցին ու հաւատքը, լեզուն ու մշակոյթը ունին իրենց գոյութեան և կեանքին մէջ ընդելուզուած:*

*Օրէ օր դէպի լոյս ընթացող մեր այս նոր դարաշրջանին, Անկախութեան և Ազատութեան այս յառաջագնաց ճանապարհին վրայ, աղօթենք և զգանք, մտածենք և գործենք այնպէս, որ լոյսի բոցին առաւել կեանք տանք մեր սեփական շունչով: Մանաւանդ ա՛յս օրերուն - ու գալիք տարիներուն - երբ մտած ենք մեր Ս. Եկեղեցւոյ պաշտօնական հիմնադրութեան 1700-ամեակի տօնակատարութեան ընթացքին մէջ: Մեր ուժերը բազմապատկելու և ի գործ արկանելու հրամայականին առջեւ ենք բոլորս, անխտիր:*

*Քրիստոնէական պատմութեան երկրորդ հազարամեակի փակման հանգրուանին վրայ ենք կանգնած: Եկեղեցական կանոնական աւանդութեամբ դիտուած այս Միւռոնօրհնէքը (Սեպտեմբեր 8 1996, ի Ս. Էջմիածին) 20-րդ դարու վերջին Միւռոնօրհնէքը պիտի ըլլայ, երրորդ հազարամեակի արշալոյսին թողնելով յաջորդ Միւռոնի օրհնութիւնը:*

*Եկէ՛ք այնպէս պատրաստուինք, որ այս նորօրհնեալ Միւռոնը դառնայ ո՛չ աւանդութեան Միւռոն, աւանդական սովորոյթ, յաճախ ձեւականութեան պարագայականութեամբ յատկանշուած, այլ դառնայ կեանքի՛ Միւռոն, նո՛ր կեանքին,*

( Շար. տեսնել էջ Բ. )

## ԸՆԿ. ԵՂԻԿ ՃԷՐԷՃԵԱՆ ԼԻԲԱՆԱՆԻ ԽՈՐՀՐԴԱՐԱՆԻ ԱՆԴԱՄ ԸՆՏՐՈՒԱԾ

*Լիբանանի մէջ երեսփոխանական ընտրութիւններուն, Կիրակի, Սեպտեմբեր 1-ին, Ս.Դ. Հնչակեան Կուսակցութեան թեկնածու՝ ընկ. Տոքթ. Եղիկ Ճէրէճեան ընտրուեցաւ խորհրդարանի անդամ՝ Պէյրութի շրջանէն:*

*Պէյրութի շրջանին մէջ հայ առաքելական համայնքին վերապահուած երեք աթոռներուն համար, ընկ. Ճէրէճ-եանի կողքին ընտրուեցան նաեւ Մեթր Խաչիկ Պապիկեան և Յակոբ Տէմիրճեան, Հայ Կաթողիկէ աթոռին՝ ընտրուեցաւ Մեթր Յակոբ Զուխաարեան, իսկ Բողոքական աթոռը շահեցաւ Աբրահամ Տէտէեան:*

*Մեթնի շրջանէն Հայ Առաքելական միակ աթոռը շահեցաւ Տոքթ. Սեպուհ Յովնանեան:*

## Եգիպտահայութեան Մասնակցութիւնը Միւռոնօրհնէքի Արարողութեանց

Անցեալ Ուրբաթ 30 Օգոստոսի առաւօտ Ս. Էջմիածին մեկնեցաւ Եգիպտահայ թեմի առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան, ներկայ գտնուելու սրբալոյս Միւռոնի օրհնութեան, որ տեղի պիտի ունենայ Կիրակի 8 Սեպտ. 1996-ին: Ապա Սրբազան Հայրը Եգիպտահայութեան որդիական և հաւատարմական զգացումները պիտի յայտնէ Վեհափառ Գարեգին Ա. Հայրապետին:

Նոյն առթիւ, յառաջիկայ Ուրբաթ առաւօտ Ս. Էջմիածին պիտի մեկնի Գահիրէի Պատ. Քաղաքական Ժողովի ատենապետ Պր. Հրաչ Սիմոնեան ինչպէս նաեւ համայնքի այլ ազգային անձնաւորութիւններ, միանալու Միւռոնօրհնէքի արարողութեանց:

Բարի ճանապարհ և բարի վերադարձ:

## Համաշխարհային Գիտութեան Դէմքերէն Վիկտոր Համբարձումեան ոչ եւս է

Օգոստոս 15-ին, հայ ժողովուրդը վերջին հրաժեշտը տուաւ մեծանուն և աշխարհահռչակ իր զաւկին՝ Վիկտոր Համբարձումեանին:

Կէսօրէ ետք, թաղման թափորը Բիւրականի աստղադիտարանէն ուղղուեցաւ հանգուցեալին ընտանեկան դամ-

( Շար. տեսնել էջ Գ. )

## ՍՈՒՐԲ ՄԻՒՌՈՆ

Օրհնեալ կաթսայ սուրբ միւռոնով աղեցուն,
Քողասքողեալ վեհ աղաւնի, Սուրբ Հոգի,
Կանգնել է սուրբ, կենդանարար խորանում,
Ուսկից պիտի համայն հայոց բաշխուի:

Միւռո՛ն՝ մասունք հաղորդութեան և դրոշմ
Եկեղեցու աւազանից ծնուողին,
Օժտի՛ր մեզ բիւր շնորհներով երկնային,
Վառի՛ր ճրագն անմար յոյսի մեր հոգում:

Աղաւնակերպ և զերթ լեզու հրեղէն,
Երկնի կամար բարձունքներից շողակաթ
Իջի՛ր, Հոգի՛ իմաստութեան, գիտութեան
Սափորի մէջ եկեղեցու խանդակաթ:

Ծորի՛ր միւռոն, աստուածային ո՛վ շնորհք,
Իջի՛ր, տո՛ւր մեզ իմաստութիւն և հրայրք,
Ծորի՛ր, միւռոն, խորհրդանիշ մաքրութեան,
Բարեզարդի՛ր իմաստնացրո՛ւ ամենքին:

Յուլիս, 1996 — ՆԵՐՍԷՍ ՎԱՆԱԿԱՆ

## Հոգշ. Տ. Թադէոս Ջիրեկեանց Խմբագրատանս Մէջ

Չորեքշաբթի 21 Օգոստոսի երեկոյեան, խմբագրատունս այցելեց Մայր Աթոռ Ս. Էջմիածնի միաբան, Հոգշ. Տ. Թադէոս Վրդ. Ջիրեկեանց, որ Աղեքսանդրիոյ մէջ պիտի ստանձնէ առաջնորդական փոխանորդի պաշտօնը:

Հոգեշնորհ հայր սուրբին հետ ունեցանք հաճելի խօսակցութիւն, գլխաւոր հարց ունենալով համայնքային կեանքն ու փիւռքահայութեան ցաւերը: Ան տեղեկութիւններ տուաւ Ս. Էջմիածնի ճեմարանէն ներս տարուած լայն գործունէութեանց շուրջ: Ապա նիւթին առանցքը առաւ հայ մամուլի անհրաժեշտութիւնը: Յարգելի հիւրը նաեւ հետաքրքրուեցաւ թերթիս գործունէութեամբ և անոր դժուարութիւններուն:

Հակառակ երիտասարդ տարիքին, Հոգշ. հայր սուրբը զարգացած և շրջահայեաց կղերական մըն է, որ լիայոյս ենք թէ ան իր դրական և սատար դերը պիտի ունենայ Եգիպտահայութեան ընդհանրապէս և Աղեքսանդրահայութեան մասնաւորապէս:

Հոգեշնորհ հայր սուրբին կ՚ընկերանար Հայկ. Ընթերցասրահի վարչութեան ատենադպիր՝ Պր. Պետրոս Գոգորեան:

## Արցախի Անկախութեան 5-րդ տարեդարձը

Սեպտեմբեր 2-ը Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան անկախութեան հռչակման 5-րդ տարեդարձն էր, որ մեծ տօնախմբութիւններով նշուեցաւ հանրապետութեան ամբողջ տարածքին:

Ըստ հանրապետութեան փոխ-վարչապետ՝ Ժիրայր Պօղոսեանի, վերանորոգուեցան հանրապետութեան ճանապարհները: Կարգի բերուեցան Ստեփանակերտի օդակաձեւ ջրամատակարարման ցանցը, աշխատանքի սկսաւ Մարտակերտի ելեկտրական հոսանք մատակարարող Վանքի ենթակայանը, ինչպէս նաեւ իր աւարտին հասաւ երկրորդ իջեւանատան շինարարութիւնը: "Հայաստան" հիմնադրամի աջակցութեամբ, նիւթական օգնութիւն տրուեցան զոհուած զինուորներու ընտանիքներուն: Ժողովրդական գրօսայգիներու մէջ ելոյթ ունեցան Հայաստանի և

( Շար. տեսնել էջ Բ. )

## Պրագիլի "Մեծ Խաչ" Շքանշանը Գարեգին Ա. Վեհափառին

Ամենայն Հայոց Գարեգին Ա. Կաթողիկոսը, որ Օգոստոսի առաջին շաբթուան ընթացքին պաշտօնական այցով Պրագիլ կը գտնուէր, արժանացած է տոյն երկրի "Մեծ Խաչ" շքանշանին, զոր իրեն յանձնած է Պրագիլի արտաքին գործոց նախարար Լուիս Ֆելիփէ Լամփեյրան:

Հանդիսաւոր արարողութեան ժամանակ, նախարարը խօսած է երկու երկիրներու ժողովուրդներու բարեկամական կապերուն ամրապնդման մասին: Ան նշած է հայ համայնքի դերը Պրագիլի տնտեսութեան և ժողովրդավարութեան զարգացման գործընթացին մէջ:

Պրագիլի նախագահ Ֆերնանտօ Էնրիքէ Քարտոզոն ընդունած է Ամենայն Հայոց Հայրապետը:

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք Եգիպտահայ հասարակութեան, թէ Ամենայն Հայոց Վեհափառ Հայրապետ Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. Կաթողիկոս, հայրախնամ հոգածութեամբ, Եգիպտոս ղրկած է մեր Թեմին խնդրանքով, Մայր Աթոռ Ս. Էջմիածնի միաբան, Հոգշ. Տ. Թադէոս Վարդապետ Ջիրեկեանը որպէսզի ստանձնէ Առաջնորդական Փոխանորդի պաշտօնը: Հոգեշնորհ հայր սուրբին նստավայրն ու պաշտօնատեղին պիտի ըլլայ Աղեքսանդրիա:

Հոգշ. Տ. Թադէոս զաւակն է նախկին Եգիպտահայերու որոնք ներգաղթած էին Մայր հայրենիք 1947-ին: Իր ուսումը աւարտելէ ետք Մայր Աթոռոյ Ճեմարանին մէջ և Կուսակրօն Քահանայ ձեռնադրուելէ ետք, հայր Թադէոս ղրկուած է Մոսկուա, Աստուածաբանական բարձրագոյն ուսումնառութեան համար: Արդարեւ ան աւարտած է Մոսկուայի մօտ Զակորսկի հաստատութեան Աստուածաբանութեան վարժարանը և ստացած է համապատասխան վկայական որ համազօր է M.A. արեւմտեան համալսարաններու աստիճանին: Հայր Թադէոս վերջին երկու տարիներուն Մայր Աթոռի Ճեմարանին մէջ ուսուցչական պաշտօն կը վարէր:

Ազգային Իշխանութիւնս այս առիթով հրապարակաւ սրտագին շնորհակալութիւն կը յայտնէ ազգընտիր Վեհափառ Հայրապետին:

Միանգամայն բարի գալուստ Հոգեշնորհ Տ. Թադէոս վարդապետ Ջիրեկեանցի:

ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ - ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## ՇԱՀԷ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ԱՃԷՄԵԱՆԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳԱԱ ՊԱՏՈՒԱՒՈՐ ԴՈԿՏՈՐ

Հայաստանի Գիտութիւնների Ազգային ակադեմիայի նախագահ Ֆադէյ Սարգսեանը հանդիսաւոր պայմաններում Երեւանի Համալսարանի աստուածաբանութեան ֆակուլտետի դեկան, փրոֆ. Շահէ Արք. Աճէմեանին յանձնեց ակադեմիայի պատուաւոր դոկտորի վկայական:

Գիտական այդ բարձր աստիճանը Շահէ Աճէմեանը արժանացել է հայագիտութեան մէջ ունեցած մեծ վաստակի համար և ծննդեան 70-ամեակի կապակցութեամբ:

Շնորհաւորելով սրբազան հօրը, նախագահ Ֆադէյ Սարգսեանը ընդգծեց նրա աւանդը հայրենի գիտութեան զարգացման գործում յատկապէս վերջին մի քանի տարիների ընթացքում: Շահէ Աճէմեանը ոչ միայն գիտնական է, այլեւ գիտութեան կազմակերպիչ, հրատարակչական գործի հովանաւորող: Նրա եռանդուն ջանքերի շնորհիւ էր, որ իրականութիւն դարձաւ Երեւանի Համալսարանում աստուածաբանութեան ֆակուլտետի հիմնադրումը: Նրա ջանքերով և նիւթական աջակցութեամբ լոյս են տեսել բազմաթիւ հայագիտական կարեւոր աշխատութիւններ: Դրանց մէջ է նաեւ ղարաբաղեան իրադարձութիւնների ժամանակագրական կարգով կազմուած փաստաթղթերի քառահատոր ժողովածուն: Շուտով լոյս է ընծայելու հերթական հինգերորդ հատորը: Յատկապէս մեծ է եղել նրա աւանդը Մատենադարանի ձեռագրային ֆոնտը լաւագոյն ձեւով պահպանելու գործում:

## Ռուսական Պարգեւատրում Փրոֆ. Վահագն Տատրեանի Վերջին Գիրքին

*Մոսկուայ Հայ-ռուսական կեդրոնը վերջերս մամլոյ հաղորդագրութիւն մը հրապարակած է, ուր կը յայտնէ թէ փրոֆ. Վահագն Տատրեանը արժանացած է կեդրոնի 5.000 տոլար պարգեւին, առ ի գնահատանք ցեղասպանութեան բնագաւառին վերաբերող հարցերու ուսումնասիրութեան մէջ իր ներդրումին համար, ու մանաւանդ իր վերջերս հրատարակած* The History of The Armenian Genocide *հատորին համար:*

*Պարգեւատրումի իր այս որոշման համար, կեդրոնը նկատի առած է Մոսկուայի և Ս. Փեթերսպուրկի ռուս պատմաբաններու դրական կարծիքը գրքին ուսումնասիրական և պատմական վերլուծումի հարուստ բովանդակութեան մասին: Հատորը կեդրոնի պատասխանատուներուն կողմէ աչքառու նկատուած է "իր խորիմաստ բնոյթին, գիտական վիճարկումին և նկատի առած մեծաթիւ փաստաթուղթերուն համար":*

*Նաեւ, կեդրոնը յանձն առած է իր ծախսով հատորը ռուսերէնի թարգմանել, Մոսկուայի մէջ հրատարակել և զայն տարածել Ռուսաստանի և նախկին Խորհրդային Միութեան ռուսախօս ակադեմական շրջանակներուն մէջ:*

## Ապաքինումի Մաղթանք

*Իմացանք որ Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ Տիկնանց Խնամակալութեան նուիրեալ անդամուհիներէն՝ Տիկին Մաքրուհի Արթինեան վերջերս լեղուցի վիրահատութեան մը ենթարկուած է "Իճիփթ Էյր" հիւանդանոցին մէջ: Ուրախ ենք որ գործողութիւնը անցած է յաջող և ան տուն վերադառնալով, ապաքինման շրջան մը կը բոլորէ:*

*Շուտափոյթ և կատարեալ ապաքինում կը մաղթենք մեր յարգելի Տիկ. Մ. Արթինեանին:*

## Արտասահման Աշխատողներէն 100 Միլիոն տոլարի մուտք

Շնորհիւ Հայաստանէն դուրս եկած և այլ երկիրներու մէջ իրենց ընտանիքին ապրուստը վաստկող աշխատաւորներու, տարեկան 100 միլիոն տոլարի յաւելում մը կը կատարուի Հայաստանի տնտեսութեան: Ելեւմուտքի և պիւտճէի յանձնաժողովը պիտի քննարկէ սոյն նկատառելի մուտքին երկրին մէջ շրջագայութեան հարցը, դրամատուներու մէջ խնայողական դրութեան և անոնց ապահովագրումին գծով, ինչպէս նաեւ դրամական փոխադրութիւններու և էլեկտրոնիկ միջոցներով վճարումներ ընելու մասին նոր օրէնքներ ի գործ դնելով:

## Ջրատար Խողովակին Շինութիւնը Կ'ամբողջանայ

*Երեւանի քաղաքային խորհուրդի մամլոյ բանբերին համաձայն, Կաթնաղբիւր-Երեւան ջրատար խողովակին շինութիւնը աւարտեցաւ Սեպտեմբեր 1-ին: Ջրհաններ պիտի չգործածուին այս նոր դրութեան մէջ, պարզապէս պիտի օգտագործուի ջուրին ազատ հոսքէն գոյացած մղումը:*

## Դարձեալ Հայ մը Ռուսաստանի Կառավարութեան մէջ

ՄՈՍԿՈՒԱ - Օգոստոս 15-ին, Ռուսիոյ նախագահ Պորիս Ելցին փոփոխութիւններ կատարեց կառավարութեան կազմին մէջ և նոր դահլիճին մէջ առաւ նաեւ հայազգի նախարար մը՝ Կեննատի Մելիքեան, որ ստանձնած է աշխատանքի և ընկերային ապահովութեան նախարարութիւնը:

## Արցախի Անկախութեան

(Շար. Ա. էջէն)

Արցախի արհեստավարժ ու սիրող արուեստագէտ խումբերը: Ստեփանակերտի մարզադաշտին և մարզական զանազան դահլիճներուն մէջ մրցումներ կազմակերպուեցան, իսկ երեկոյեան, տօնախմբութիւնները իրենց աւարտին հասան տօնական հրավառութեամբ: Փոխ-վարչապետ Ժիրայր Պօղոսեանի համաձայն, Ֆրանսայի մէջ պատրաստուած էր Արցախի անկախութիւնը խորհրդանշող մետալները, իսկ Գերմանիոյ մէջ պատրաստուած էր դրոշմաթուղթերու շարք մը Արցախի քարտէսով, զինանշանով, դրօշով, նախագահական պալատով և այլ պատկերներով, զոր տրուեցան հանգամանաւոր հիւրերու և անձնաւորութիւններու:

## Մահուան Քառասունքին Առիթով

## ԱԼԵՔ ՄԱՆՈՒԿԵԱՆ ՈՂՋ ԵԻՍ Է ԿԱՄ ՏԻՏԱՆԻ ՄԸ ՄԱՀԸ

Քսաներորդ դարը իր ուսերուն շալկած, Ալեք Մանուկեան անունով ճանչցուած մեծ հայն ու մեծ մարդը կը բաժնուի այս աշխարհէն: Յիրաւի ողիմպոսեան տիտան մըն է որ կ'երթայ միանալու փաղանգին անոնց, որոնք վստահօրէն, աշխարհ ղրկուած էին իրենց ցեղակիցներուն յատկապէս և մարդկութեան ընդհանրապէս, ցաւերը ամոքելու, կեանքը դիւրացնելու, կարիքներուն հոգալու: Տիտան ճանչցուած էին անոնք որոնք յունական դիցաբանութեան մէջ հսկայական աստուածութիւններ էին, դէմքեր որոնք ատակ էին մեծ գործերու, որոնք յատկանշուած էին ոյժով և մեծութեամբ:

Զարմանալին սակայն հոն էր որ այս տիտանը, որ իր անձին և անհատականութեան մէջ, տասնամեակներու ընթացքին, ամբարած էր անսահման ոյժ և մեծութիւն, կը դրսեւորէր համեստութեան, բարութեան, մատչելիութեան այնպիսի յատկանիշներ, որոնք կարծես սխալ կը համեմատուէին իր մեծութեան և ոյժին հետ: Դարձեալ զարմանալի կը թուի նաեւ թէ Ալեք Մանուկեան, իր մահուան տխուր և անխուսափելի առիթով, սովորականէն աւելի մեծ անհատականութեան մը տպաւորութիւնը կը թողու:



Տիար Ալեք Մանուկեան

Իր մասին, ողջութեան թէ մահուան առիթներով, մտածելն անգամ սարսուռ կը պատճառէ մարդոց էութեան մէջ, և այդ անհանգստացնող զգացումէն ետք, մարդիկ կը մղէ մտածելու կեանքի և մահուան մասին, երեւոյթներէն անդին գացող մնայուն արժէքներու մասին, և վերջապէս, մտածելու այն մասին թէ արդեօք կարելի է իրմէ օրինակ առնել:

Դարասկիզբին ծնած, 95 տարիներ ապրած, անթիւ-անհամար բարեգործութիւններ ըրած, առասպելական այս հայն ու մարդը այս աշխարհէն ֆիզիքապէս միայն կը մեկնի: 90 միլիոնի հասնող իր բարեգործութիւնները զինք անպայմանօրէն դասած են անմահներու շարքին, անմահներ որոնք ողիմպոսեան աշխարհի յաւիտենական բնակիչներ էին և կը մնան: Անմահութիւնը, իրենց համար, ի վերուստ տրուած արժանիք մը, գոյավիճակ մը ըլլալով հանդերձ, անոնք իրենց կեանքի յարաբերաբար կարճ կամ երկար շրջանին, ամէն ինչ ըրած էին նաեւ արժանանալու այդ անմահութեան, իբրեւ գերագոյն վարձատրութիւն իմաստուն և պտղաբեր կեանքի մը:

Ալեք Մանուկեան 20-րդ դարուն ծնած հայը, անջնջելի դրոշմ մը ձգեց իր ժողովուրդին և զինք շրջապատող ընկերութեան մօտ, դրոշմ որ 20-րդ դարէն շատ աւելի հեռուն կ'երթայ, լուսաւորելու համար ճամբան բոլոր անոնց, որոնք մտահոգուած են սեփական ժողովուրդի ճակատագրով, մարդոց բարօրութեամբ, ֆիզիքական, մտային և հոգեւոր արժէքներու գոյատեւումով:

"Ջահակիր" և իր շրջանակը այս մեծ մարդուն և մեծ հայուն մահուան քառասունքին առթիւ կ'ըսէ. "Օրհնեալ ըլլան ողբացեալ Ալեք Մանուկեանին և անոր նմաններուն յիշատակները և յաւիտենական փառք ու յարգանք անոնց":

Թող իր ոսկորները հանգչին խաղաղութեան մէջ:

"Ջ."

## ՋԵԿՈՅՑ

Յաւէտ Ողբ. Տէր և Տիկին Բարսեղ Ներսէսեան, իրենց վաղամեռիկ և միամօր զաւկին, ողբ. Մատթէոս Ներսէսեանի քաղցր յիշատակին, հաստատած էին, Հիմնադրամ մը:

Ներկայիս գոհունակութեամբ կը տեղեկացնենք թէ, ըստ սոյն Հիմնադրամի կանոնագրին, ընթացիկ տարւոյս տոկոսային եկամուտները պիտի բաշխուին հետեւեալ կերպով.-

| | Եգ. ոսկի |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 433.20 |
| Հայ Աղքատախնամ Ընկերակցութեան | 433.20 |
| Գալուստեան Ազգ. Վարժարանին | 433.20 |
| Նուպարեան Ազգ. Վարժարանին | 433.20 |
| "Այծեմնիկ" Տիկնանց Միութեան | 433.20 |
| Հայ Կարիքի Խաչին | 433.20 |
| Ազգային Առաջնորդարանին | 288.80 |
| Եգ. ոսկի | 2888.- |

ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## Ս. Միւռոնը Առնչել Կեանքին

(Շար. Ա. էջէն)

*Նորացո՛ղ կեանքին, պայծառակերպուո՛ղ կեանքին մեր Հայրենիքին մէջ, մեր անկախ պետականութեան ամրացման և զարգացման հեռանկարով, Մայր Աթոռ Ս. Էջմիածնի "Նորածփետուր զարդարմամբ", և ողջ Հայութեան ու համայն Հայ եկեղեցւոյ պայծառակերպութեան տեսիլքով, ի Մայր Հայաստան և ի ծագս աշխարհի:*

***ԳԱՐԵԳԻՆ Ա.***
***Կաթողիկոս Ամենայն Հայոց***

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

### Ուսումնական Յաջողութիւն

Այսու կը հաղորդենք յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն Վարժարանիս 1995 - 1996 ուսումնական տարեշրջանի երկրորդական բաժինի գիտական ճիւղի արդիւնքը•

Րօպէռ Միլատ Քալտաս 400-էն 258.5 64.6 առ հարիւր

Հին Երկրորդական գրական ճիւղ ներկայացած վարժարանին անունով՝

Հերմին Նատըր Լութֆի Ալպէռ 370-էն 251 67.8 առ հարիւր

Տնօրէնութիւնս եւ ուսուցչաց կազմը կը շնորհաւորեն յարգելի ծնողները եւ յաջողած աշակերտները յառաջիկայ նորանոր նուաճումներու մաղթանքներով:

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

---

«ՊԱՐՄԱՆԻ» ՈՒՍԱՆՈՂԱԿԱՆ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ՀԻՄՆԱԴՐԱՄԻՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ

## ՅԱՄԱՅԱՅԿԱԿԱՆ ՈՒՍԱՆՈՂԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՎԵՅԱԺՈՂՈՎԸ ԱՐՁԱՆԱԳՐԵՑ ՈՒՇԱԳՐԱՒ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ

### ՏԽՐՈՒՆԻԱԿԱՆՆԵՐ ՑՈՒՑԱԲԵՐԵՑԻՆ ԱՇԽՈՅԺ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԻՒՆ

29 Յունուար 1996ին, «Պարմանի» Ուսանողական Համազգային Բարեգործական Հիմնադրամին նախագահը, Ազգային Ժողովի պատգամաւոր եւ ակադեմիկոս՝ Գրիգոր Աւագեան կոչ կ՚ընէր հայրենի եւ սփիւռքահայ ուսանողութեան մասնակցելու համահայկական ուսանողական հաւաքին, որ պիտի կայանար Յուլիս 13-18 Երեւանի մէջ: Սոյն վեհաժողովը կը կրէր «***Հայաստանը համայն հայութեան հայրենիքն է***» նշանախօսքը:

Ընդառաջելով հրաւէրին եւ նկատի առնելով վեհաժողովին կարեւորութիւնն ու համահայկական նշանակութիւնը, Ս.Դ.Հ.Կ. Տխրունի Ուսանողական Երիտասարդական Միութիւնը որոշեց ունենալ աշխոյժ մասնակցութիւն սոյն հանդիպումին: Արդարեւ, պատուիրակութիւնը կը ղեկավարէր Ընկ. Բիւզանդ Տագէսեան, անոր մաս կը կազմէին Ընկ.հի Շողիկ Քէօշկերեան, ընկերներ՝ Աւետիս Ղարիպեան եւ Աւետիս Գազանճեան:

*Տխրունիական Պատուիրակութիւնը*

Սոյն վեհաժողովին կը մասնակցէին Սփիւռքէն 12 տարբեր երկիրներէ շուրջ 55 ներկայացուցիչներ (Լիբանան, Գերմանիա, Արժանթին, Իրան, Գանատա, Շուէտ, Եգիպտոս (Տե՛ս «Զ.» թիւ 1338) Իտալիա, Պելոռուսիա, Վրաստան եւ այլն), ինչպէս նաեւ Հայաստանէն ու Ղարաբաղէն պատուիրակներ՝ շուրջ 60 հոգի: Ան եղաւ իսկական համահայկական վեհաժողով, ուր իրարու ծանօթացած տարբեր շրջանակներու եւ միջավայրի մէջ մեծցած երիտասարդներ եւ ուսանողներ:

Շաբաթ 13 Յուլիսին, տեղի ունեցաւ առաջին լիագումար նիստը եւ բացման պաշտօնական հանդիսութիւնը. ան տեղի ունեցաւ Հայաստանի պետական նիստերու դահլիճին մէջ: Հանդիսութեան բացման խօսքը կատարեց կազմակերպիչ մարմնին ղեկավարը՝ Գրիգոր Աւագեան, որ շնորհակալութիւն յայտնելէ ետք բոլոր մասնակիցներուն, ընդգծեց վեհաժողովին կարեւորութիւնն ու նպատակը: Ապա, Հայաստանի եւ կազմակերպիչ մարմնին քայլերգներէն ետք (խօսք՝ Վահանգն Դաւթեանի «Քո Զաւակներն Ենք»), ներկաները յոտնկայս յարգեցին յիշատակը հայրենիքի համար զոհուած նահատակներուն, որմէ ետք, վեհաժողովին իր պատգամը ուղղեց Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսը, որ շեշտեց վեհաժողովին կարեւորութիւնն ու իմաստը: Ան ողջունեց նոր սերունդի ներկայացուցիչները եւ կոչ ըրաւ հաւաքական աշխատանքի՝ յանուն հայրենի պետականութեան կայացման ու ամրապնդման: Ապա եղաւ ուղերձ մը Հայաստանի վարչապետին ներկայացուցիչին կողմէ (Կարէն Հայրապետեանի), իսկ հայրենի ղեկավարութեան խօսքերը փոխանցեցին Բարձրագոյն Կրթութեան եւ Գիտութեան Նախարարը՝ Վարդգէս Գնունին եւ Մշակոյթի եւ Սպորի Նախարար ՝ Յակոբ Մովսէսը:

Վեհաժողովին իրենց ուղերձները փոխանցեցին զանազան գաղութներէ եկած ուսանողներ եւ կազմակերպութեանց ներկայացուցիչներ, որոնք շեշտեցին հայրենիք-սփիւռք յարաբերութեանց սերտացման կարեւորութիւնը. կեդրոնացան յստակ մէկ գաղափարի վրայ՝ որ հայրենիքը գերագոյն եւ անփոխարինելի հասկացողութիւն է բոլորին համար: Անոնք կարեւորեցին հայ ուսանողութեան նուիրումը հայրենիքի եւ ազգային աշխատանքներու մէջ: Ելոյթ ունեցողները ներկայացուցին նաեւ գործնական առաջարկներ:

Վեհաժողովի նիստերուն կողքին, կազմակերպիչ միութիւնը նախատեսած էր շրջապտոյտներու ընդարձակ ծրագիր մը. այս ծրագիրը առիթ եղաւ, որպէսզի մասնակիցները լաւապէս ծանօթանան իրենց հայրենիքին, այդ ծրագիրը ընդգրկեց հետեւեալ յայտագիրը՝ այցելութիւն Սարդարապատի յուշահամալիր ու թանգարան, այցելութիւն Էջմիածնի տաճար ու թանգարան, ընդունելութիւն Ամենայն Հայոց Կաթողիկոսի մօտ, այցելութիւն Զուարթնոց տաճար, ապա՝ այցելութիւն Մուսա Լեռ՝ յուշակոթողին եւ ապա ընկերային-գեղարուեստական միջոցառում (14 Յուլիսին):

15 Յուլիսին, ուղեւորութիւն դէպի Գառնիի տաճար, ապա՝ Գեղարդավանք, որմէ ետք՝ Ծաղկաձոր, ուր տեղի ունեցաւ այցելութիւններ ու պտոյտներ: Նոյն օրը, վեհաժողովին մասնակիցները գիշերեցին Ծաղկաձոր: Յաջորդ օրը, այցելութիւն Սեւանայ լիճ, Դիլիջան, Վանաձոր (Կիրովական) եւ վերջին հանգրուանը՝ Սպիտակ: Ներկաները ըմբոշխնեցին հայրենի բնաշխարհը, հայրենի հրաշալիքները եւ գեղատեսիլ վայրերը: Սպիտակի «Ռոսիա» ճաշարանին մէջ խնճոյք ի պատիւ սփիւռքահայ ուսանողներուն: Այս խնճոյքին յանուն սփիւռքահայ ուսանողութեան խօսք առաւ Ընկ. Բիւզանդ Տագէսեան, որ շեշտեց Սփիւռքի երիտասարդութեան ցաւն ու մտահոգութիւնը բոլոր աղէտեալներու նկատմամբ, ընկերոջ զօրակցական խօսքը խանդավառութիւն ստեղծեց ներկաներուն մօտ: Ապա, տեղի ունեցաւ այցելութիւն Կիւմրի եւ Կիւմրիի ազգագրական թանգարան:

17 Յուլիսին, այցելութիւն Եռաբլուր եւ ազգային ուխտի վերանորոգում: Իսկ կէսօրէ ետք տեղի ունեցաւ վեհաժողովին 6րդ, 7րդ եւ 8րդ լիագումար նիստերը: Այս նիստերուն խօսք առին քանի մը երիտասարդներ, որոնք վեր առին սփիւռքահայ ուսանողութեան հարցերը եւ ողջունեցին վեհաժողովին գաղափարը: Խօսք առաւ նաեւ Արցախի պատուիրակութեան ներկայացուցիչը, որ առաջարկեց, թէ յառաջիկայ վեհաժողովը կայանայ Արցախի մէջ: Անոր առաջարկը դիմաւորուեցաւ բուռն ծափահարութիւններով:

Խօսք առաւ նաեւ Ընկ. Բ. Տագէսեան, որ անդրադարձաւ Ս.Դ..Հ..Կ. ↳ 4

## ՊՈՒԼԿԱՐԻՈՅ ԵՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԻՋԵՒ ՌԱԶՄԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՁԱՅՆԱԳԻՐ

Սեպտեմբեր 3-ին Երեւանում Բուլղարիայի Պաշտպանութեան նախարար Դիմիտր Պաւլովը եւ ՀՀ Պաշտպանութեան նախարար Վազգէն Սարգսեանը ստորագրել են երկու երկրների ռազմական համագործակցութեան մասին համաձայնագիր: Այն նախատեսում է համատեղ գործունէութեան մեծ շրջանակ, որ ներառում է ռազմատեխնիկական ոլորտը, զատրերի պատրաստումը, գիտահետազօտական մշակումները, Եւրոպայում սպառազինութիւնների հսկողութեանն ուղղուած միջոցառումները եւ այլն:

---

## Արցախի Յայագիտական Կեդրոն

Արցախի Պետական համալսարանը հայագիտական ամբողջական կեդրոն մը դարձնելու համար մեծ աշխատանք կը տարուի: Յամալսարանի վերակառուցման աշխատանքներուն զուգահեռ, կեդրոնի պատմաբան դասախօսները սկսած են հնագիտական պեղումներ կատարել Յանրապետութեան տարածքին: Անոնք, Ասկերանի շրջանի Այգեստան (նախկին Բալուջա) գիւղէն արդէն իսկ յայտնաբերած են պրոնզէ դարէն մնացած քանի մը նմոյշներ: Յայտնենք, թէ Արցախի հնագիտական պեղումներուն օգտակար մասնակցութիւն կը բերեն նաեւ Յայաստանի հնագիտութեան համալիրի աշխատակիցները:

---

## Արկածեալ TWA Օդանաւի Յայ Օդաչուն

Ինչպէս իր ատենին տեղեկացանք. պատկերասփիւռի, ձայնասփիւռի, թէ ամերիկեան մամուլի էջերէն, Յուլիս 17-ին Փարիզ ուղղուող թիւ 800 թռիչքը իր վերջակէտին չհասաւ, քանի ճամբայ ելլելէն քիչ ժամանակ ետք պայթեցաւ օդին մէջ, ցարդ անծանօթ պատճառներով, նաեւ այդ լրատուութեանց մէջ յիշուեցաւ, թէ թռիչքի օդաչուն ամերիկահայ մըն էր, Ռալֆ Գէորգեան անունով:

Դժբախտ Գէորգեանը Գալիֆորնիա կը բնակէր (Garden Cove) եւ 30 տարի ծառայած էր TWA-ի մէջ: Ցարդ ան կատարած էր 18,791 ժամ տեւողութեամբ թռիչքներ, որոնց 5471-ը որպէս օդաչու Boeing 747 օդանաւներու: Յառաջիկայ տարուան ընթացքին ան հանգստեան պիտի կոչուէր:

Ռալֆ Գէորգեան ծնած էր Նիւ Եորք. զաւակը Գեղամ եւ Ֆլորա Գէորգեաններու: Նախապէս կոչուած է Րաֆֆի, սակայն, աւելի վերջ ամերիկանացուցած է անունը: 1945-ին ծնողքին հետ փոխադրուած է Գալիֆորնիա, ուր երկրորդական ուսումնառութեան վերջաւորութեան, պաշտօնի կոչուած է TWA -ի մէջ: Իր հայրը եղած է գրող եւ հրատարակած՝ արձակ եւ բանաստեղծութիւններ, հայերէնով: Անցեալ տարուան Դեկտեմբեր 8-ին, երէց Գէորգեանը կը մահանար 99 տարեկան հասակին: Իսկ Ռալֆ Գէորգեան իր ետին կը թողու մանչ զաւակ մը՝ Տակլըս, որ Նիւ Եորք կը բնակի:

ՆԻՍԻ ՍՓԻՒՌՔԱՅԱՅ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐՈՒ ՅԱՄԱԺՈՂՈՎԻ ԸՆԹԱՑՔԻՆ ԱՐՏԱՍԱՆՈՒԱԾ ԵԼՈՅԹՆԵՐԷՆ՝

## «ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐՈՒ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ»

Դաստիարակութեան պատմութիւնը ընդհանրապէս եւ հայ դաստիարակութեան պատմութիւնը մասնաւորաբար, նաեւ կրթական կեանքի մէջ մեր բոլորին փորձառութիւնը կը հաստատեն, թէ դաստիարակութեան արդիւնաւորութիւնը կը պայմանաւորուի ուսուցիչով:

Դաստիարակութեան հիմնական ազդակը հանդիսացող ուսուցիչը կը սահմանուի իր անհատականութեամբ, դասաւանդած նիւթի մասին իր պաշարով եւ աղբիւրներու ճանաչողութեամբ, իր կոչումի գիտակցութեամբ եւ նուիրումով, մանուկներու նկատմամբ սիրով, մանկավարժական սկզբունքներու ճանաչողութեամբ, մասնագիտական հասունութեամբ, փոխ-յարաբերութիւններու մէջ ճկունութեամբ եւ իր շրջապատի ու դարի շունչին զգացողութեամբ:

Մեկնելով այս երկու հաստատումներէն, կ՚ուզէմ ամփոփ կերպով կողմնորոշող քանի մը մատնանշումներ կատարել մեր աշխատանոցի խորհրդակցութիւններուն համար:

Ուսուցիչներու պատրաստութեան կապակցութեամբ մեր մտահոգութիւնը կու գայ այն իրողութենէն, թէ ներկայիս սփիւռքահայ մեր իրականութեան մէջ հայ լեզուի, գրականութեան, պատմութեան եւ արուեստներուն դասաւանդումին համար ուսուցիչներու պատրաստութեան ծրագրուած աշխատանք եւ կառոյցներ գոյութիւն չունին: Ներկայիս գործող ուժերը տեղածին չեն եւ մանաւանդ Ամերիկայի եւ Եւրոպայի նոր հայահոծ համայնքներուն մէջ, տեղածին ուսուցիչներ պատրաստելու համար տուեալները ձեռնտու չեն թուիր ըլլալ:

-Ընդհանրապէս մեր սփիւռքահայ կեանքէն ներս տակաւին կը պակսի մշակութային մթնոլորտը եւ մակարդակը, որ ատակ ըլլայ բնականօրէն ծնունդ տալու եւ կազմաւորելու հայ դաստիարակութեան աշխատանքը յառաջ տանող ուժեր:

- Մեկնելով ուսուցիչի հասկացողութեան սահմանումէն, ուսուցիչի պատրաստութիւնը կ՚ընդգրկէ քանի մը գլխաւոր մարզեր.

ա) Յայտնաբերում ուսուցչութեան ատակ անհատականութեամբ անձերու,

բ) Հայերէն լեզուի տիրապետում,

գ) Դասաւանդութեան նիւթերու պաշար եւ աղբիւրներու ճանաչում,

դ) Հայեցի դաստիարակութեան սկզբունքներ եւ ծրագիր,

ե) Հայեցի դաստիարակութեան սկզբունքներու եւ ծրագիր դասաւանդումի գործնական միջոցառումներու մշակում,

զ) Դասաւանդութեան յատուկ միաւորներու մշակում յարակից տրուեալներով եւ այդ միաւորներու ծանօթացումին եւ դասաւանդութեան մեթոտներու փոխանցումին համար աշխատանոցներու ծրագիրներ:

է) Միջ-ուսուցչական հանդիպումներ եւ ուսուցիչներու ու փորձառութիւններու փոխանակում:

- Ուսուցիչներու պատրաստութիւնը նաեւ կ՚ընթանայ երկու գլխաւոր ուղղութիւններով,

1.- Ներկայիս հայ դաստիարակութեան մարզին մէջ գործող ուսուցիչներու եւ կարողութիւններու մշակում,

2.- Նոր ուժերու պատրաստութիւն,

Իւրաքանչիւր ուղղութիւն կ՚ենթադրէ համապատասխան միջոցառում: Միջոցառումներու սերտողութիւնը եւ մանրամասնումը մաս պիտի կազմէ աշխատանոցի աշխատանքներուն:

Նոր ուժերու պատրաստութեան առնչութեամբ կը փափաքիմ ներկայացնել արագ պատկերացում մը, որ կը հիմնուի այդ ուղղութեամբ գոյութիւն ունեցող փորձի վրայ:

Հայ դաստիարակութեան նուիրուելու ատակ անձերը պէտք է ընտրուին հայ վարժարաններու շրջանաւարտներէն: Անոնց պատրաստութեան առաջին հանգրուանը պէտք է ընդգրկէ հայ լեզուի տիրապետում եւ շփում հայ մշակոյթի հետ: Այս աշխատանքը պէտք է կատարուի համապատասխան շրջապատի մէջ, նաեւ հայրենիքի մէջ որոշ ժամանակաշրջանի կեցութեան ծրագրով:

Պատրաստութեան ընթացքը պէտք է ամբողջանայ տեղական ↳ 3

---

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## 1 ↳ ՀՀ Անկախացման 5-րդ Տարեդարձը ...

*մնացեալ մարտերը մղելու համար բնակցութիւններու սեղանին շուրջ: Եւ այլ շարք մը յաջողութիւններ:*

*Եւ Ինչպէս երբ ան անցեալ ամսուայ 30 Օգոստոսին, իր նախընտրական ծրագիրը կը ներկայացնէր, կարգախօս ունենալով «ՅԱՂԹԱՆԱԿ, ԿԱՅՈՒՆՈՒԹԻՒՆ, ԱՌԱՋԸԹԱՑ», կարեւորեց անկախութեան վերականգնումը, ներքին կայունութեան պահպանումը, Հայաստանի միջազգային հեղինակութեան նուաճումը, բազմակուսակցական ու խորհրդարանական կեանքի հաստատումը, խօսքի ու մամուլի ազատութեան ապահովումը, տնտեսական արմատական բարեփոխումները, Սահմանադրութեան ընդունումը եւ վերջապէս Լեռնային Ղարաբաղի անկախութեան եւ անվտանգութեան ապահովումը: Ան նաեւ յայտնեց թէ վերջին երեք տարիներու ծանր վիճակով պայմանաւորուած Հայաստանէն արտագաղթը, դադրած է եւ հեռացածները նոյնիսկ սկսած են վերադառնալ: Տէր Պետրոսեան յատուկ կարեւորութեամբ անդրադարձաւ Հայաստան-սփիւռք յարաբերութիւններուն ու շեշտեց, որ անոնց միջեւ յարաբերութիւնները զերծ պէտք է մնան քաղաքական հակասութիւններէն՝ հիմնուելով միմիայն փոխադարձ յարգանքի ու մէկը միւսի գործերուն չմիջամտելու սկզբունքի հիման վրայ:*

*Անկախ պետականութեան կառուցման ճամբուն վրայ երկրի դիմագրաւած ու տակաւին դիմագրաւելիք դժուարութիւններու ընդառաջ, մենք համոզուած ենք որ հայրենի ժողովուրդը շօշափելի արդիւնքներու վրայ հիմնելով իր դատողութիւնը, պիտի ներկայանայ վերընտրելու Լեւոն Տէր Պետրոսեանը, անգամ մը եւս զինք դարձնելով իր ազգընտիրը:*

*Այս առթիւ «Զահակիր» եւ իր շրջանակը պաշտօնական մէկ որոշումով, իրենց զօրակցութիւնը յայտնած են հայրենի իշխանութեան եւ պաշտպանած Լեւոն Տէր Պետրոսեանի թեկնածութիւնը, ամսոյս 22ին տեղի ունենալիք նախագահական ընտրութիւններուն:*

*Հայրենի ժողովուրդին բարգաւաճութիւնը ապահովող միակ ճշմարիտ հայրենասիրութեան ուղին, ներկայիս միասնական եւ ներդաշնակուած աշխատանքով հզօրացնելն է Հայաստանի պետականութիւնը, ապահովելու համար մեր ազատութիւնը:*

*Կ՚եցցէ ազատ, անկախ Հայաստանն ու հայ ժողովուրդը:*

ԶԱՐԹՕՆՔ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## «ՊԱՐՄԱՆԻ» ՈՒՍԱՆՈՂԱԿԱՆ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ՀԻՄՆԱԴՐԱՄԻՆ ...

2

Տխրունի Ուս. Երիտ. Միութեան գործունէութիւններում եւ գաղափարախօսութեան. ան ողջունեց եւ դրուատական խօսքեր ուղղեց վեհաժողովին գաղափարին եւ առաջադրանքներուն. ան հակիրճ ձեւով ներկայացուց Միութեան հիմնադրութեան պայմանները եւ մեծարեց նահատակ, ուսուցիչ Ընկ. Սարգիս Տխրունիի յիշատակը. ընկերը կեդրոնացաւ Միութեան նպատակներուն վրայ, որն է համախմբել հայ երիտասարդութիւնը հայրենիքի շուրջ, հայրենասիրութեան գաղափարին շուրջ, ինչպէս նաեւ` զանոնք մղել արդար պայքարի ու հայրենասիրական գործի: Ընկերը նշեց, թէ Միութիւնը զանազան ձեռնարկներով կը փորձէ միշտ վառ պահել հայ պայքարի ոգին: Ան անդրադարձաւ նաեւ Հայ Դատի պայքարին մէջ Միութեան աշխատանքներուն: Ընկերը նաեւ կատարեց առաջարկ մը, որ դիմաւորուեցաւ ողջոյններով, այն էր` հայրենի ուսանողներուն ժամանումը Պէյրութ եւ բարձրագոյն ուսման հետեւիլը, որ առիթ կ'ընծայէ հայկական միաւորներուն եւ ակումբներուն զօրացումին համալսարաններէ ներս, ինչ որ առիթ կը ստեղծէ հայկական ձեռնարկներու աշխուժացումին եւ հայկական քարոզչութեան յաղթանակին:

Ապա, տեղի ունեցան 9րդ, 10րդ եւ 11րդ լիագումար նիստերը. եւ հոն որդեգրուեցաւ բանաձեւ (Տե՛ս վարը): Որմէ ետք, տեղի ունեցաւ ընդունելութիւն Երեւանի Պետական Համալսարանին մէջ եւ ապա կառավարական ընդունելութիւն, ուր ներկայ էին Հայաստանի Հանրապետութեան Նախագահ` Լեւոն Տէր Պետրոսեան եւ Վարչապետ Հրանդ Բագրատեան: Տեղի ունեցաւ այցելութիւն Եղեռնի յուշարձան ու թանգարան:

Յաջորդ օրը տեղի ունեցաւ մամլոյ ասուլիս, ուր խօսք առաւ նաեւ Ընկ. Բիւզանդ Տագէսեան:

19 Յուլիսին վերջ գտաւ վեհաժողովը:

Արդարեւ, համաուսանողական հաւաքը եղաւ կարեւոր քայլ Հայաստան-Սփիւռք կապերու սերտացումին: Ողջո՜յն անոր կազմակերպիչ մարմնին:

ԹՂԹԱԿԻՑ

### ԲԱՆԱՁԵՒ ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ՈՒՍԱՆՈՂԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՎԵՀԱԺՈՂՈՎԻ

*Առաջնորդուելով* ***"Հայաստանը Համայն Հայութեան Հայրենիքն է"*** *նշանաբանով և նպատակ ունենալով Հայաստանի Հանրապետութեան շուրջ համախմբել հայ ուսանողութեանը, նրանց ներուժն ուղղորդել Հայրենիքի տնտեսական, գիտա-կրթական, մշակութային զարգացմանն ու պետականութեան ամրապնդմանը, նրա միջազգային հեղինակութեան բարձրացմանը, միեւնոյն ժամանակ, նպաստել սփիւռքահայութեան համախմբմանն ու հայապահպանութեան գործին, Համահայկական ուսանողական առաջին վեհաժողովը*

### ՈՐՈՇՈՒՄ Է

*1.- Հայաստանի և սփիւռքահայ ուսանողութեան մշտական և գործուն կապն ապահովելու և յաջորդ վեհաժողովը կազմակերպելու նպատակով, "ՊԱՐՄԱՆԻ" հիմնադրամի կառուցուածքում ստեղծել համակարգիչ-տեղեկատուական կեդրոն` իւրաքանչիւր երկրից ներկայացուցիչների ընդգրկմամբ:*

*2.- Ստեղծել տեղերում աշխատանքները կազմակերպող յանձնախմբեր:*

*3.- Համահայկական ուսանողական վեհաժողովները հրաւիրել տարին մէկ անգամ, քաղաք Երեւանում, Յուլիս ամսին:*

*4.- Համակարգիչ-տեղեկատուական կեդրոնին յանձնարարել` մշակել և յաջորդ վեհաժողովի հաստատմանը ներկայացնել "Համահայկական ուսանողական վեհաժողովի կանոնակարգի" նախագիծը:*

*5.- Հիմք ընդունելով առաջին վեհաժողովի ընթացքում ձեւաւորուած յանձնախմբերի առաջարկները, վեհաժողովին առընթեր ստեղծել տարբեր մասնագիտական ուղղութիւններով ուսանողական աշխատանքային խմբեր:*

(Քաղաք Երեւան, 18 Յուլիսի 1996)

### ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

Աղեքսանդրիոյ Ընտրական Յանձնախումբը կը տեղեկացնէ յարգարժան հասարակութեան, թէ 10 Նոյեմբեր 1996-ին տեղի ունենալիք Պատկ. Թեմական Ժողովի մասնակի ընտրութեան մասնակցող ազգայիններու անուանացանկերը փակցուած են Աղեքսանդրիոյ Առաջնորդարանի սրահի ցուցատախտակին վրայ:

Ընտրելու իրաւունք ունեցող բոլոր ազգայինները կրնան իրենց առարկութիւններն ու բողոքները գրաւոր ներկայացնել Ընտրական Յանձնախումբին, մինչեւ 1 Հոկտեմբեր 1996:

ԸՆՏՐԱԿԱՆ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ



### ԱՊԱՔԻՆՈՒՄԻ ՄԱՂԹԱՆՔ

Ուրախութեամբ տեղեկացանք, որ մեր բարեկամներէն` ՊՊ. Անդրօ Վարժապետեան եւ Գրիգոր Փարթամեան վերջերս` նոյն օրուան մէջ, աչքի *Քաթարաքթ*-ի գործողութեան մը ենթարկուած են «Էլ Հայա» հիւանդանոցին մէջ:

Ուրախ ենք որ գործողութիւնները անցած են յաջող եւ անոնք յաջորդ օրն իսկ տուն վերադառնալով, ապաքինման շրջան մը կը բոլորեն:

Կատարեալ ապաքինում կը մաղթենք մեր սիրելի բարեկամներուն:

### «ԶԱՐԹՕՆՔ»ԻՆ

Որբ. Արաքսի Գէորգեանի մահուան տխուր առթիւ ընկ.ներ Պետրոս եւ Աւետիս Մովսէսեան եղբարք կը նուիրեն 15

## Պատմութիւնը Կերտեցին Մարտնչելով

3

50 օրեր անաչառօրէն դիմադրող հայերուն նախ փրկութեան կու գան Սեպտեմբերի 10-ին "Կիշէն" և "Տեզեֆս" յածանաւերը, ապա Սեպտեմբեր 13-15 միջոցին Ֆրանսական "Ժան Տ'Արք" և այլ նաւեր. կը փոխադրուին 4000-է աւելի հայեր, և կը հասնին Եգիպտոսի Փոր-Սայիտ նաւահանգիստը: Մուսա Լերան կատարին կը ձգեն հերոս 18 հայ մարտիկներ:

Մուսա Լերան հերոսամարտը խորքին մէջ տեւած է 50 օր, բայց հանրայայտ գրող հասարակական գործիչ, գերմանացի` ծագումով հրեայ Ֆրանց Վէրֆէլի գրիչով կը հրատարակուի հռչակաւոր "Մուսա Լերան 40 օրերը" խորագրով վէպը, որ թարգմանուած է ցարդ բազում լեզուներով:

Երբ այս տողերը կը գրենք նուազագոյն մեր պարտքը կատարած ըլլալու պարկեշտ գոհունակութեամբ, Հայրենիքի մէջ ամէն տարի Սեպտեմբերի երրորդ Կիրակին Երեւան-Էջմիածին ճանապարհին Մուսա Լեռ փոքրիկ գիւղը կայ, որմէ քիչ անդին կը գտնուի Մուսա Լեռ Յուշակոթողը թանգարանով և շրջապատուած Մուսա Լեռցիներու ձեռքով տնկուած գեղեցիկ և տպաւորիչ անտառով մը: Ահա հոն ամէն տարի կը նշեն հեռացած Մուսալեռցիներու յիշատակը, անոնց գոյապայքարի անվեհեր կեցուածքը, առնական խոյանքը, այդ տօնական օրը 100-է աւելի մեծ կաթսաներու մէջ եփելէ ետք հերիսան, կը հիւրընկալեն բազմահազար հայութեան:

Արդ, ազատութիւն չի տրուեցաւ անոնց, քանի որ չէին խնդրած զայն, այլեւ ազատութիւնը ծնաւ պայքարի բոցերուն մէջ, բազում տառապանքներով, այդ ազատութիւնը աստուածներու շնորհքը չէր` այլ արեամբ ողողուած, ողջմիտ միասնականութեամբ և յամառ կամքով յաղթանակած:

Բիւր փառք ու պատիւ Մուսա Լերան քաջորդիներուն:

1- Մարտիրոս Գուշագճեան "Մուսա Լերան Հայկական գաղթօճախը" Պէյրութ 1988, էջ 18:

2 - Անդ, էջ 42:

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ

**ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ 5-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ԱՌԹԻՒ**

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ 25 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1996-Ի Յ. Մ. ԺԱՄԸ 8.30-ԻՆ ՀԵԼԻՈՊՈԼՍՈՅ ՊԼԸՔՏԱՆԵԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ**

**ՔՈՔԹԷՅԼ - ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ**

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ
ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ
ՀՈՎԱՆՈՒՈՐՈՒԹԵԱՄԲ
ԹԵՄԱԿԱԼ ԱՌԱՋՆՈՐԴ
**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ԱՐՔ. ՃԻՆՃԻՆԵԱՆԻ**
ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ
ՀՀ ԼԻԱԶՕՐ ԴԵՍՊԱՆ
**Ն. Վ. ԷՏՈՒԱՐՏ ՆԱԼՊԱՏԵԱՆԻ**
ՍԻՐԱԼԻՐ ՀՐԱՒԷՐ ԲՈԼՈՐԻ

#### ԳԱՀԻՐԷ

Կիրակի, 22 Սեպտեմբեր 1996, ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ հռչակման առթիւ յընթացս Ս. Պատարագի տեղի պիտի ունենայ Գոհաբանական Մաղթանք մայր հայրենիքի խաղաղութեան, անսասանութեան և բարգաւաճութեան համար: Կը հրաւիրենք մեր համայնքի հաւատացեալները ներկայ ըլլալու արարողութեաց, աղօթելու համար մեր հայրենիքի անկախութեան ամրապնդման եւ մեր ժողովուրդի բարօրութեան համար:

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

**ԳԱՀԻՐԷԻ ԱՂՔԱՏԱՑ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

Շաբաթ, 28 Դեկտեմբեր 1996 երեկոյեան ժամը 9-ին

**«ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՍՐԱՀ»ԻՆ ՄԷՋ**

**ՏԱՐԵԿԱՆ ԱՒԱՆԴԱԿԱՆ ԱՆՈՒՇԱՊՈՒՐԱՍԵՂԱՆ**

Մանրամասնութիւնները մօտ ապագային

1 **Ճատրակի 32-րդ Ողիմպիական Բացումը**

քարեան: Ապա խօսք առաւ Հրանդ Բագրատեան: Ողջոյնի իր խօսքով, մարզախաղերու պաշտօնական բացումը յայտարարեց ՀՀ նախագահ Լեւոն Տէր Պետրոսեան:

Ապա ճատրակի թագուորն ու թագուհին ներկայացնող զոյգ մարզիկներ, Ողիմպիական ջահը փոխանցեցին ՀՀ նախագահին, որ ան իր կարգին փոխանցեց զայն Կարի Գասպարովին: Ան ալ բոցավառեց զայն, ապա խօսք առաւ:

Մրցումներուն կը մասնակցին մանչերու 127 եւ աղջկանց 87 խումբեր: Նշենք թէ Եգիպտոս եւս մասնակցած է մրցումներուն 6 մարզիկներով եւ երկու պատասխանատուներով, գլխաւորութեամբ Լէուա Մոհամէտ Անուար Ապտէլ Ղանի:

Տեղի անբաւարարութեան պատճառով, յաջորդ թիւով պիտի տանք արդիւնքները եւ հայրենի մարզիկներուն նուաճումները:

1 **ԳԱԼՈՒՍՏԵԱՆ - ՆՈՒՊԱՐԵԱՆ - ՊՕՂՈՍԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ**

հանրապետութիւնը կը հզօրանայ և դպրոցաշինութեան հարցերը կը լուծուի ինքնիրեն:

Մեր պետութեան հիմքը դպրոցն է: Խորին շնորհակալութիւն իմ գործընկերներին, ուսուցչական կոլեկտիւին որը ծանր և դժուարին պայմաններում չլքեց դպրոցը, իր խաչը կրեց քաջութեամբ:

Գուցէ Ձեզի համար խորթ հնչի նոր անուանակոչումը: Բայց մենք կը պահպանենք թիւ 8 դպրոցի լաւագոյն աւանդոյթները:

Խորին շնորհակալութիւն Եգիպտոսից, Աւստրալիայից ժամանած մեծարգոյ հիւրերին, Գալուստեան-Նուպարեան-Պօղոսեան վարժարանների նախկին շրջանաւարտներուն այս մարդասիրական, հայրենասիրական օգնութեան, ՍՈՒՐԲ գործին համար:

Սիրելի աշակերտներ, թող այս նոր Կրթարանը Ձեզ բերի նորանոր յաջողութիւններ: Ձեզ բոլորիդ կապոյտ երկինք և կանանչ ճանապարհ:

Բարին Ձեզ հետ:

Առաջնորդ Սրբազաններուն, հիւր ներկայացուցիչներուն բաժնուեցան նուէրներ:

Այս առիթով պատրաստել տրուած հսկայ կարկանդակը կտրուեցաւ և բաշխուեցաւ ապա նորոգուած վարժարանի մուտքի ժապաւէնը կտրուեցաւ և հիւրերը այցելեցին վարժարանի դասարաններն ու մասնաշէնքերը:

Վարժարանի ճակատին սեւ խորքի վրայ ոսկեգոյն արձանագրուած էր Գալուստեան-Նուպարեան-Պօղոսեան վարժարան:

Կէսօրին հիւրերը առաջնորդուեցան հացկերոյթի: Ճաշասեղանին վրայ խօսուեցան բազմաթիւ բաժակաճառեր:

Հայրենասիրական և օգտակար գործ մը կատարած ըլլալու գոհունակութեամբ հիւրերը վերադարձան Երեւան:

ԶԱՒԷՆ ԱՐՔԵՊՍԿ. ՃԻՆՃԻՆԵԱՆ

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

Հիմնուած 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 3914908, Fax:(202)4530327
E-mail: emarco@ritsec3.com.eg

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1343 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 3 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1996 | ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 25 Եգ. Դհկ. | عدد رقم ١٣٤٣ - الخميس ٣ أكتوبر ١٩٩٦


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## ԴԷՊԻ 21-ՐԴ ԴԱՐ

*Սեպտեմբեր 21-ին Հայաստանի ժողովուրդը իր միահամուռ ԱՅՈ-ն ըսաւ ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ ու ծնունդ առաւ Անկախ Հայոց Հայրենիք՝ Հայաստանի Հանրապետութիւնը, որ անցնող հինգ տարիներուն առաւել ամրապնդուելով այսօր ինքնավստահօրէն ու լաւատեսութեամբ իր հայեացքը կ'ուղղէ դէպի 21-րդ դար, որու նախաշէմին կը գտնուի ամբողջ մարդկութիւնը:*

*20-րդ դարը բախտորոշ եղաւ հայ ժողովուրդի համար, որու ընթացքին կերտուեցան երեք հանրապետութիւններ: Առաջինը 1918 թուականի պարտադրուած անկախութիւնն էր, որ ունեցաւ կարճատեւ կեանք մը ու անփառունակ վախճան:, Երկրորդը՝ ծնունդ առած առաջին բեկորներուն վրայ, հայ ժողովուրդը թէեւ զրկեց իր բացարձակ անկախութենէն, սակայն երաշխաւորեց անոր ֆիզիքական ապահովութիւնը ու ճամբայ հարթեց դէպի երրորդը՝ այսօրուայ Ազատ ու Անկախ Հանրապետութիւնը, որ անցնող հինգ տարիներուն իր ձեռքբերումներով Հայաստանը դրական պատկերով դրաւ միջազգային քարտէսին վրայ:*

*Երկար է շարքը այն նուաճումներուն, որ երրորդ Հանրապետութիւնը արձանագրեց իր գոյութեան այս կարճ սակայն բեղուն ժամանակաշրջանին: Անկախութեան վերականգնումին նախորդող ներքին քաոսը կտրուկ շրջադարձով վերածուեցաւ ներքին կայունութեան, որ պահպանուեցաւ առանց ընդմիջումի, բան մը որ հզօր Ռուսաստանը անգամ չկրցաւ ապահովել իր ժողովուրդին: Քաղաքական ու մարդկային ազատութիւնները այնքան խոր արմատներ նետեցին, որ Հայաստանը սկսաւ նկատուիլ ժողովրդավարութեան փարոս ամբողջ տարածաշրջանէն ներս: Երկրի միջ-պետական հեղինակութիւնը բարձրացաւ պատշաճ մակարդակի ու Հայաստանը արժանացաւ միջազգային հանրութեան յարգանքին: Ստեղծուեցաւ ու ձեւաւորուեցաւ ազգային մարտունակ բանակ, որ ոչ միայն հանդիսացաւ երաշխիքը Հայաստանի սահմաններու անձեռնմխելիութեան, այլ նաեւ ապահովեց Արցախի ժողովուրդի անվտանգութիւնը ու դէպի անկախութեան արդար ձգտումներուն մասնակի յաջողութիւնը:*

*Կայսրութեան փլուզումը խորհրդային բոլոր հանրապետութիւնները դրաւ տնտեսական ճգնաժամի առջեւ: Հայաստան եւս զերծ չմնաց ցնցումներէ, յատկապէս ընկերային մարզէն ներս, ուր արձանագրուած էր ամենակտրուկ բեկումը: Սակայն, բոլոր տուեալները կը մատնանշեն, որ այս մարզէն ներս երկուքը կ'ըլլայ կարճատեւ ու յառաջիկայ մի քանի տարիներուն կը յաղթահարուին այդ դժուարութիւնները եւս:*

*Անկախութեան հնգամեակի տօնախմբութեան այս պահուն Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութիւնը եզակի ուրախութեան մէջ է ու արդար հպարտութեամբ լեցուած: Հայրենական ու սփիւռքեան թեւերով, ան առաջին օրէն կեցաւ Հայաստանի Հանրապետութեան կողքին, սատարեց անոր պետական կառոյցներու ամրապնդման գործին, օժանդակեց տնտեսական դժուարութիւններու յաղթահարման, նպաստեց սփիւռքահայութիւնը հայրենիքի շուրջ համախմբելու ու ճիշդ կողմնորոշուելու աշխատանքներուն եւ այս ուղղութեամբ ստանձնեց առաջատարի դերը:*

*Հոն ուր ձախողեցան ազգային այլ կազմակերպութիւններ, Հնչակեան Կուսակցութիւնը յաջողեցաւ, `քանի ան կարողացաւ ձեռբազատուիլ կուսակցական նեղ հաշիւներէ, ազգի ու հայրենիքի շահերը գերադաս նկատելով, զինուեցաւ այն բարձրութեան վրայ, որ իր հիմնադրութեան առաջին օրէն սկսեալ վերապահուած էր Մայր Կուսակցութեան:*

*Հայաստանի Հանրապետութեան անկախացման 5-րդ տարեդարձի սեմին, եւ նախագահական ընտրութեանց՝ Լեւոն Տէր Պետրոսեանի ձեռք բերած յաղթանակէն ետք, հայ ժողովուրդը վերանորոգ լաւատեսութեամբ ու* ⇨ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԼԵՒՈՆ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ՎԵՐԸՆՏՐՈՒԱԾ Է ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՆԱԽԱԳԱՀ

*Սեպտեմբերի 29-ին Կենտրոնական ընտրական յանձնաժողովի հրապարակած ՀՀ նախագահի ընտրութեան արդիւնքների համաձայն Հայաստանի Հանրապետութեան Նախագահ է վերընտրուել Լեւոն Տէր Պետրոսեանը, որի օգտին է քուէարկել ընտրութեան մասնակիցների 51,75 տոկոսը: Նրա գլխաւոր մրցակից Վազգէն Մանուկեանը հաւաքել է ձայների 41,29 տոկոսը: Միւս թեկնածուները՝ Սերգէյ Բադալեանը եւ Աշոտ Մանուչարեանը ստացել են համապատասխանաբար 6,34 եւ 0.6 տոկոս:*

*Ինչպէս յայտնի է, ընտրութիւնները կայացել են նաեւ արտասահմանեան այն երկրներում, որտեղ կան ՀՀ դեսպանատներ: Մասնաւորապէս, Եգիպտոսում գտնուող 34 ՀՀ քաղաքացիներից Գահիրէի ՀՀ դեսպանութիւնում ընտրութեանը մասնակցել են 25 հոգի, որից 24-ը քուէարկել են Լեւոն Տէր Պետրոսեանի, իսկ մէկը՝ Վազգէն Մանուկեանի օգտին:*

## ԳԱՐԵԳԻՆ Ա. ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ՁԵՌԱՄԲ ՕՐՀՆՈՒԵՑԱՒ «ՎԵՐԱԾՆՈՒԹԵԱՆ ՄԻՒՌՈՆ»Ը

Սեպտեմբեր 8-ին Մայր Աթոռ Ս. Էջմիածնի Մայր Տաճարում մատուցւած սուրբ պատարագից յետոյ, առաւօտեան ժամը 11-ին, Մայրավանքի մուտքի մօտ տեղադրուած բեմահարթակի վրայ, ի տես հաւատացեալ եւ ուխտաւոր ժողովրդի, բարձրաստիճան պետական ու հոգեւոր հայրերի, հիւրերի, սկսուեց Սրբալոյս Միւռոնի օրհնութեան արարողութիւնը:

Մայրավանքի զանգերի եւ «Խորհուրդ խորին» շարականի մեղեդիների ուղեկցութեամբ Վեհարանից, դանդաղաքայլ, Գարեգին Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսի գլխաւորութեամբ, դէպի Մայր Տաճար է ուղւում տօնականօրէն հանդերձաւորուած շքախումբը:

Վեհափառ Հայրապետն ուղեկցութեամբ տասներկու եպիսկոպոսների, որոնք խորհրդանշում են Յիսուսի 12 առաքեալներին, բարձրանում է բեմահարթակ, որ տեղ դրուած է Միւռոնի կաթսան: Սրբազանները Ս. Գրքից ընթերցում են համապատասխան հատուածներ՝ Միւռոնի պատրաստութեան, նրա աստուածային նշանակութեան եւ գործածութեան մասին: Ապա վեհափառ Հայրապետը կարդում է Միւռոնօրհնէքի գլխաւոր աղօթքը: Ընթերցւում են Միւռոնօրհնութեան երկրորդ եւ երրորդ աղօթքները:

Մայր Տաճարի լուսարարապետ Յուսիկ Արք. Սանթուրեանի հրաւէրով կաթսան բացւում է Միւռոնօրհնութեան կնքահայրը: Վեհափառ Հայրապետը հանդիսաւոր կերպով կաթսայի մէջ է լցնում 40 տեսակի ծաղիկների ⇨ 4

ԳԱՀԻՐԷ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԱՆՁՆԱԳՐԵՐ ՀԻՆԳ ԵԳԻՊՏԱՀԱՅԵՐՈՒ

Հայաստանի Հանրապետութեան Նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանի որոշմամբ ՀՀ կացութեան յատուկ կարգավիճակի անձնագրեր են շնորհուել Հայոց ցեղասպանութիւնը վերապրած եւս հինգ եգիպտահայերի՝ Աշխէն Թաժոյեանին, Օհաննէս Թովմասեանին, Զապէլ Լագումեանին, Խաչիկ Ծերունեանին, Նելլի Պետրոսեանին: Այդ առիթով «Կարապետ Աղա Աբիկեան» Հանգստեան Տանը, ուր բնակւում են վերոյիշեալ անձինք, տեղի ունեցաւ հանդիսաւոր արարողութիւն: Անձնագրերը յանձնելու համար Հանգստեան Տուն այցելեց Գահիրէում Հայաստանի Հանրապետութեան դեսպան Դոկտ. Էտուարտ Նալպանտեանը՝ ուղեկցութեամբ դեսպանութեան պաշտօնեաների:

Աննկարագրելի է այն յուզմունքն ու երջանկութեան պահը, որ ապրեցին այդ տարեց մարդիկ՝ իրականացուած տեսնելով երկար տարիների իրենց երազանքը: Յուզիչ էր նաեւ պրն. Խաչիկ Ծերունեանի արարքը, ոգեշնչուած եղելութեամբ նա իր խնայողութիւններից 14,750 Ե.Ո. նուիրաբերեց Հայաստանի Հանրապետութեան Արտաքին քաղաքականութեան հիմնադրամին:

Դոկտ. Է. Նալպանտեանը ջերմօրէն շնորհաւորեց Հայաստանի նոր անձնագրեր ստացած անձանց եւ մաղթեց նրանց բարօրութիւն եւ քաջառողջութիւն: Նա ներկաներին պատմեց Հայաստանի արդի իրավիճակի, այնտեղ ընթացող ժողովրդավարական բարեփոխումների, օրեցօր տեղի ունեցող առաջընթացի մասին: Այնուհետեւ դեսպանը, «Այծեմնիկ» միութեան ատենապետ Տիկին Մարի Գըզըլեանի եւ վարչութեան անդամների ուղեկցութեամբ սենեակ առ սենեակ շրջեց Հանգստեան Տանը եւ ծանօթացաւ այստեղ հանգրուանած մարդկանց, տեղեկացաւ նրանց ոդիսութեանը:

ԵՐԵՒԱՆ

## Պետական Յեղաշրջման Ձախողուած Փորձ

Արմենփրէս-Սեպտեմբերի 25-ին, ժ. 19,30-ի սահմաններում նախագահի թեկնածու Վազգէն Մանուկեանի կողմնակիցները, վերջինիս գլխաւորութեամբ եւ ԱԺ պատգամաւորներ Արշակ Սադոյեանի, Դաւիթ Վարդանեանի եւ նախկին պատգամաւոր Կիմ Բալայեանի մասնակցութեամբ, գրոհեցին Ազգային Ժողովի շէնքը: 4-5 հազարանոց ամբոխը, ջարդելով երկաթեայ դարպասները, ներխուժեց շէնք եւ առեւանգեց Ազգային Ժողովի նախագահ Բաբգէն Արարքցեանին եւ փոխնախագահ Արա Սահակեանին: Ճշտուած է, որ առեւանգողների խումբը գլխաւորել են Արշակ Սադոյեանը եւ Կիմ Բալայեանը:

Ստեղծուած իրավիճակում, նպատակ ունենալով ցրել հասարակակարգութիւնից դուրս եկած ամբոխը, որն արդէն սկսել էր աւերել շէնքը, հասարակական կարգի պահպանման ուժերը դիմեցին համապատասխան միջոցների: Միայն օդ կրակելուց յետոյ յաջողուեց դադարեցնել բռնութիւնների ալիքը եւ ամբոխը դուրս բերել Ազգային Ժողովի շէնքից:

Հակաօրինական գործողութիւնների հետեւանքով մարմնական ծանր վնասուածքներ են ստացել Ազգային Ժողովի նախագահ Բաբգէն Արարքցեանը եւ փոխնախագահ Արա Սահակեանը, որոնց ցոյց է տրուել անհրաժեշտ բժշկական օգնութիւն: Նրանց կեանքին այժմ վնաս չի սպառնում:

Հ ա ս ա ր ա կ ա կ ա ն ⇨ 3

## ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

ԼՂՀ-ի ղեկավարութիւնը գնահատում է վերջին օրերին Երեւանում տեղի ունեցող իրադարձութիւնները որպէս Հանրապետութեան անվտանգութեանն ուղղուած սպառնալիք եւ ազգային շահերի դաւաճանութիւն:

Ընտրութիւնների արդիւնքների ուժային փոխոխութիւնների միջոցով կատարուած յեղաշրջման փորձն անթոյլատրելի է եւ պէտք է խստորեն կանխուի:

ԼՂՀ-ի ղեկավարութիւնը պաշտպանում է օրէնքով ընտրուած ՀՀ իշխանութիւններին եւ զգուշացնում անկարգութիւնների կազմակերպիչներին՝ իրավիճակի ապակայունացման եւ դրա հետեւանքների համար նրանց պատասխանատուութեան վերաբերեալ:

ՋԱՀԱԿԻՐ

ԼԻԲԱՆԱՆ

## ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ Ի ՊԱՏԻՒ ԸՆԿԵՐ ՏՈՔԹ. ԵՂԻԿ ՃԵՐԷՃԵԱՆԻ ԽՈՐՀՐԴԱՐԱՆԻ ԱՆԴԱՄ ՎԵՐԸՆՏՐՈՒԹԵԱՆ

Պէյրութի ընտրաշրջանի, Կիրակի 1 Սեպտեմբեր ընտրական արդիւնքները պաշտօնապէս յայտարարուելէն անմիջապէս ետք Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան կուսակցութեան Լիբանանի Շրջանի Վարչի Մարմինը ի պատիւ վերընտրուած թեկնածու Ընկեր Տոքթ. Եղիկ Ճէրէճեանին կուսակցութեան կեդրոնատեղիին կից շրջափակին մէջ կազմակերպեց ընդունելութիւն մը:



Ընկ. Եղիկ Ճէրէճեան

Հանդիսութեան թաղամասը ողողած էր հոծ բազմութեան մէջ ուր հեռաւոր շրջաններէն ընկեր-ընկերուհիներ համակիրներ տեղացի բարեկամներ եւ հիւրեր եկած էին իրենց ուրախութիւնը բաժնելու Հնչակեան կուսակցութեան Լիբանանի Շրջանի Վարչի Մարմնոյ հետ, փոխանցելու իրենց շնորհաւորութիւնները կուսակցութեան եւ անոր արժանի թեկնածուին յաջողութեան: Ուրախ եւ տօնական մթնոլորտին աւելի մեծ ոգեւորութիւն կու տար Ազգային հայրենասիրական երգերու ցանկը որուն կենդանի ապացոյցը դարձան երիտասարդ-երիտասարդուհիներու շուրջ պարերը Հաճնոյ թաղամասին մէջ:

Խանդավառ եւ միաժամանակ ոգեւորիչ մթնոլորտի մէջ խօսք առաւ լիբանանահայութեան միասնական ցանկի Հնչակեան կուսակցութեան թեկնածու պետական երեսփոխան Ընկեր Տոքթ. Եղիկ Ճէրէճեանը: Ան իր երախտագիտութիւնը յայտնեց կուսակցական ընկեր-ընկերուհիներու նուիրումին հաւատքին ու ցուցաբերած զոհողութեան, որ կուսակցութեան միջով կը հասնէր դէպի թեկնածուն: Ապա ան խոստացաւ արդարացել կուսակցութեան կողմէ իր վրայ դրուած յոյսերը եւ ակնկալութիւնները:

Ընդունելութեան հաւաքը աւարտեցաւ ուշ գիշերին:

## Դաշնակահար Հայկ Աւագեանի Բացառիկ Մենանուագը

Դաշնակահար Հայկ Աւագեանը, այն հմուտ արուեստագէտներէն է որ լռելեայն արգասաւոր աշխատանք տանելով, այսօր կը նուագէ մեծ թիւով աշխարհահռչակ երաժշտագէտներու գործերէն: Աւելին՝ ան կը նուագէ այն հազուագիւտ եւ բարդ կտորները, որ ոեւէ դաշնակահար չի համարձակիր նուագել ու կը խուսափի անոնցմէ: Ան կը նուագէ սահուն կերպով եւ խոր ըմբռնումով: Ամէն անգամ որ ներկայ գտնուած ենք իր տուած ռեսիթալներուն, նշմարած ենք նոր երաժիշտ դէմքերու ներգործումը յայտագրին վրայ: Եւ ասիկա Հայկի վերելքի յաջողութիւններէն մին է, հիացմունք պատճառելով բոլորիս:



Հետեւաբար Կիրակի 15 Սեպտ.ի երեկոյեան, Գահիրէի Օփերայի փոքր դահլիճին մէջ, ժամադրուած էինք ներկայ գտնուելու տաղանդաւոր դաշնակահար Հ. Աւագեանի շքեղ մենանուագին, որ իր նոր եղանակի առաջինն էր: Ներկայ էին եգիպտացի, այլազգի եւ հայ հասարակութիւն մը: (Գրեթէ միշտ նոյն երաժշտասէր այն հայերը, որոնք գիտեն գնահատել արուեստն ու արուեստագէտը):

Համակրելի դաշնակահարը այս անգամ մեզի կը հրամցնէր մէկը միւսէն տպաւորիչ եւ տարբեր բնոյթ ունեցող երաժշտական կտորներէ բաղկացած փունջ մը: Առաջին տարափը սկսաւ երբ Հայկ սրտոտ, նստաւ դաշնակին գլուխը ու սկսաւ իր ընդոծին կարողութիւնները ցուցաբերել, մեկնաբանելով ֆրանց Լիստի B minor սոնաթը: Սոյն ստեղծագործութիւն զոր յօրինած է հեղինակը 1800-ական թուականներուն, կը նկատուի անոր ամենէն սխրալի գործերէն մին, որ նուագեց դաշնակահարը բիւրեղեայ հնչականութեամբ:

Երկրորդ գործը որ մեզի կը ներկայացնէր արուեստագէտը, Սերկէյ Փրոքոֆիեւի դժուարին ստեղծագործութիւններէն՝ թիւ 7 սոնաթը, in B flat major, op. 83-ը: Զափազանցած պիտի չըլլանք եթէ ըսենք, որ ան նուագեց յատուկ ախորժակով մը: Այս երկարաշունչ եւ վերին կեդրոնացում պահանջող յօրինումը, Հայկ կը նուագէր հեշտալիօրէն: Մեկնաբանութիւնը համոզիչ էր. մերթ ուժեղ եւ մերթ մեղմ նուագելու անհատականութեամբ, ան կարողացած էր կեդրոնացնել ունկնդիրին ուշադրութիւնը:

Յայտագրին առաջին բաժինը վերջանալով, սկսած էր երկրորդ բաժինը, ուր կը վերակենդանանար եգիպտացի նշանաւոր երաժիշտ Ազիզ էլ Շաուանի յօրինումները: Յիշեալ երաժշտագէտը դասական երաժշտութեան մէջ կը նկատուի բացառիկ տաղանդ ներկայացնող վիթխարի մը: Ան մեռաւ ասկէ մօտ երեք տարիներ առաջ, մեծ բաց մը ձգելով Եգիպտոսի դասական երաժշտութեան մէջ: Ասկէ քանի մը տարիներ առաջ առիթով մը, երբ կը խօսակցէինք երաժիշտ Շաուանի հետ, ան ըսաւ. «Բացարձակ չեմ կրնար հաւատալ, թէ աշխարհի մէջ գտնուի անձ մը, որ երգ կամ երաժշտութիւն չի սիրէր: Որքան ատեն որ սիրտ մը կը բաբախէ, անպայման այնտեղ կայ սրտին խօսող երգն ու երաժշտութիւնը»: Եւ իսկապէս իր յօրինումներէն կը նշմարենք զգայուն եւ փափկասիրտ արուեստագէտի յատկութիւնները: Գիտակից դաշնակահարը անոր խորիմաստ ստեղծագործութիւններէն նուագեց երեք փրելիւտները՝ A minor, D minor and

3

ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԷՆ

## ՀԱՅՐԵՆԱԴԱՐՁՈՒԹԻՒՆԸ ՆՇՈՒՄ Է ՎԵՐԱԴԱՐՁԻ 50 ՏԱՐԻՆ

ԳԻՒՄՐԻ,- 1946 թուականի հայրենադարձութեան 50-ամեակին նուիրուած հանդիսութիւն տեղի ունեցաւ Գիւմրիի պետթատրոնի դահլիճում: Հայաստանի հայրենակցական միութիւնների խորհրդի նախագահ Ժոզէֆ Աւեփիսեանը, իր ելոյթում գնահատեց հայրենադարձութեան պատմական իրողութիւնը մեր ժողովրդի գոյատեւպահպանութեան մէջ:

Շիրակի թեմի առաջնորդ Գրիգորիս Արք. Բունիաթեանը աղօթեց բոլոր նախապաշ հայրենադարձների հոգու համար: Խօսք առաւ Բանասիրական գիտութիւնների թեկնածու, հայրենադարձուած գերդաստանի շառաւիղ Զօհրապ Չաղաեան:

Երեկոյին իրենց սրտի խօսքը փոխանցեցին ամերիկահայ Յովհաննէս Մայիլեանը, խմբավար եւ հեղինակ Տիգրան Մանսուրեանը, ժողովրդական դերասանուհի Վարդուհի Վարդերեսեանը, արւեստաբան Շահէն Խաչատրեանը, Գիւմրիում ապրող մտաւորականներ: Երեկոյին ելոյթ ունեցաւ Սուրիայի ժողովրդական ժողովի պատգամաւոր քարտուղար Մ. Մուշանպապը:

Վերջում տրուեց համերգ արւեստի վարպետների կատարմամբ:

## Իրան-Հայաստան ելեկտրագիծը կը Շինուի

Հայաստանի ուժանիւթի նախարարութեան բանբերին համաձայն, Իրանէն Հայաստան երկարող ելեկտրագիծին շինութիւնը սկսած է: Հայաստանի հողամասին վրայ, սոյն գծին երկարութիւնը պիտի ըլլայ 40 քիլոմեթր, ինչ որ պիտի ապահովէ ելեկտրական հոսանքի հայթայթումին կանոնաւորութիւնը եւ բարելաւէ դրութեան ապահովութիւնը: Շինութիւնը, որ պիտի աւարտի տարեվերջին, ֆինանսաւորուած է «Արմէներկօ»ի եւ ուժանիւթի ցանցերու կառուցման ձեռնարկութիւններու կողմէ:

## Պղինձի եւ մոլիպտէնի Ձուլարաններ պիտի Կառուցուին

Համաձայն «Ազատութիւն» ռատիոկայանի հաղորդման, Հայաստանի կառավարութիւնը վաւերացուցած է ճարտարարուեստի նախարարութեան ծրագիրը, հաստատելու համար պղինձի ձուլարան մը տարեկան 25,000 թոն արտադրութեամբ եւ երկրորդ մոլիպտէնի ձուլարան մը, որուն տարեկան արտադրութեան տարողութիւնը պիտի ըլլայ 3,000 թոն: Առաւել եւս, կառավարութիւնը կը ծրագրէ ստեղծել մոլիպտէնի երկթթուիտ (molybdenum dioxide) պատրաստող գործարան մը, որուն տարեկան արտադրութիւնը պիտի ըլլայ 8.200 թոն: Այս վերջին ծրագիրը պիտի արժէ 155 միլիոն տոլար:

## ԱՂԵՔՍԱՆԴՐԱՀԱՅ ԿԵԱՆՔ

### ԽԱՉՎԵՐԱՑԻ ՏՕՆԸ

Այս տարի Խաչվերացի տօնը, որ կիրակի 15 Սեպտեմբեր 1996-ի օրուան կը հանդիպէր, մասնաւոր շուքով տօնուեցաւ:Այսպէս, որովհետեւ ոչ միայն ան մեր եկեղեցւոյ հինգ մեծ Տաղաւարներէն վերջինն էր, այլ նաեւ՝ համայնքիս նորագալուստ առաջնորդական փոխանորդ՝ Հոգշ. Տ. Թադէոս Վրդ. Զիլեկեանց իր անդրանիկ Ս. Պատարագը կը մատուցանէր Ս. Պօղոս-Պետրոս տաճարին մէջ:

Այս զոյգ առիթներուն պատճառով, եկեղեցին տօնական օրերու տեսքը զգեցած էր: Հոգեշնորհ Հայր Սուրբը նախքան «Հայր Մեր»ը, աւուր պատշաճի քարոզ մը խօսեցաւ, որուն ընթացքին մասնաւորապէս շեշտը դրաւ հաւատացեալներու ներկայութիւնը՝ մեր եկեղեցական արարողութեանց, ոչ իբրեւ ժամանց այլ որպէս քրիստոնեայի պարտաճանաչութիւն եւ հոգեկան սփոփանք:

Ապա նոյն օրը, կէսօրէ ետք, Հայր Սուրբը նախագահեց Խաչվերացի աւանդական Անդաստանին, իր կողքին ունենալով համայնքիս հոգեւոր հովիւ՝ Արժ. Տ. Գրիգոր Քհնյ. Մուրատեանը եւ Սարկաւագաց ու Դպրաց դասերը:

Արդարեւ այդ օր, Հայաստանեայց հոգեպարար եւ Աստուածաշունչ աղօթքները զմայլեցուց եւ առինքնեց մեր հաւատացեալ ժողովուրդը:

Նշենք թէ, առաւօտեան Ս. Պատարագի աւարտին, եկեղեցւոյ շրջաբակի դալար մարգագետնին վրայ պատշաճ հիւրասիրութիւն մը տեղի ունեցաւ, եկեղեցւոյ պայծառութեան սատարող Յանձնախումբին կողմէ:

### Արձանագործ Սարգիս Թօսունեանի Յաջող Ցուցահանդէսը

Երկուշաբթի, 16 Սեպտ. 1996-ի երեկոյեան, քաղաքիս Արուեստագէտներու եւ Գրողներու Տան՝ աթիլիէին մէջ, տեղի ունեցաւ արձանիկներու ցուցահանդէսի բացումը, սիրուած եւ ծանօթ արուեստագէտ, արձանագործ Սարգիս Թօսունեանի գործերուն: Բացման կը նախագահէր Աղեքսանդրիոյ Գեղարուեստից Համալսարանի արձանագործութեան բաժնի վարիչ՝ Դոկտ. Թարէք Զապատի:

Բացումը կատարեց Պօղոսեան Ազգ. վրժ.ի գեղարուեստական բաժնի վարիչ եւ երաժշտութեան ուսուցիչ Պր. Հրանդ Աղաճանեան, որ ժապաւէնը կտրելէ ետք, ներկաները հրաւիրեց ցուցասրահ: Ներկայ էին առաջնորդական փոխանորդ Հոգշ. Տ. Թադէոս Վրդ. Զիրեկեանց, Հոգեւոր հովիւ Տ. Գրիգոր Քհնյ. Մուրատեան եւ մեծ թիւով հայ թէ օտար արուեստասէր հասարակութիւն մը:

Սիրելի արուեստագէտը որ Գեղարուեստից համալսարանէն շրջանաւարտ ըլլալէ յետոյ, ոչ միայն ժամանակ մը արուեստի ուսուցիչի պաշտօնը կատարեց Պօղոսեան վարժարանին մէջ, այլ նաեւ կազմակերպեց առանձին կամ խմբական ցուցահանդէսներ, Աղեքսանդրիոյ մէջ կամ այլուր: Ան ինչպէս միշտ, այս անգամ եւս ինքնորոյն իր ոճով կը ցուցադրէր գեղեցիկ արձանիկներու փունջ մը:

Ուրախ ենք տեղեկանալով, որ ցուցահանդէսը, որ բաց մնացած է շաբթուան մը տեւողութեամբ, մեծապէս գնահատուած է բոլոր այցելուներուն կողմէ, յատկապէս արուեստագէտներու կողմէ, որոնք զմայլած են արձանագործին արժանիքներուն վրայ:

Մեր սրտագին շնորհաւորութիւնները կը յայտնենք սիրելի Սարգիսին, մաղթելով անոր նորանոր յաջողութիւններ արուեստի ծիրէն ներս:

Թղթակից

ՄԻՆԱՍ ՊԱՆՏՈՅԵԱՆ

## Ուսումնական Յաջողութիւններ

### ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

Ուրախութեամբ կը հաղորդենք կրթասէր մեր հասարակութեան եւ ծնողներուն Նուպարեան Ազգ. Վարժարանի 1995-1996 կրթական տարեշրջանին երկրորդական բաժինի քննութիւններուն արդիւնքները:

| | 400էն | առ հարիւր |
|---|---|---|
| Ժորժ Շահմիրեան (գիտական բաժին) | 345 | 86,25 |
| Սիլվա Ոսկերիչեան (գրական բաժին) | 230 | 57,50 |
| Հին գիտական բաժին.- | | |
| Նայիրի Սիմոնեան | 299,5 | 74,50 |
| Աշոտ Նազաշեան | 273,5 | 68,30 |
| Ժորժ Պօյաճեան | 243 | 60.75 |

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

### ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն որ Պօղոսեան Ազգային Վարժարանիս 1995-96 ուսումնական տարեշրջանի երկրորդական Սանաուէյայի պետական քննութիւնները արձանագրած են հետեւեալ արդիւնքները:-

| ԳԻՏԱԿԱՆ ՃԻՒՂ | առ հարիւր |
|---|---|
| Անուշ Զարպհանէլեան | 78.25 |
| Ռիթա Պահարեան | 75.80 |
| ՀԻՆ ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ ԳՐԱԿԱՆ ՃԻՒՂ | |
| Մարկրիթ Թօփալեան | 75.13 |
| Հանի Ֆաուզի | 74.00 |
| Արա Միսքճեան | 65.20 |
| Նայիրի Համբարձումեան | 64.00 |

*Կը շնորհաւորենք յաջողած աշակերտներն ու անոնց ծնողները, ինչպէս նաեւ կը գնահատենք զոյգ վարժարաններուն ուսուցչական կազմերն ու տնօրէնութիւնները:*

## ՀԻՆ ՍԱԿԱՅՆ ՄԻՇՏ ՆՈՐ...

# ԳԵՂՕՆ Ի ՊԱՏԻՒ ՀԱՅ ԼԱԶՈՒԻՆ

**ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆ**

Ինչպէս գետ մը անհուն, հինաւուրց լեռներու անմատոյց բարձունքներէն ծնած, եւ որ անհաշուելի ժամանակներէ ի վեր արեւուն տակ կը պտըտցնէ իր թարմ կեանքը մշտահոս ու երգեցիկ, դուն կը վազես դարերուն մէջէն, ո՜վ գեղեցիկ ու քաղցր Լեզու Հայկական: Քու ակունքդ կը կորսուի անցեալին ալեւոր սարերուն մշուշին տակ խորհրդաւոր: Առասպելախառն ստուերներուն վեհութեան ծոցէն, ինչպէս կաղնի մը հաստաբերձ՝ քու նորացայտ ուղխինահոսմանդ վերեւ կանգուն՝ դեռ կը տեսնենք պայծառ դէմքը հսկայ դիցակերպ Հայկին, որ քու վրադ կաթեցուց բռնութեան դէմ առաջին բազուկը բարձրացնող ըմբոստի իր նայուածքն առնական: Եւ մեր որդիական աչքերուն զմայլած խանդաղատանքը դեռ կը նշմարէ խոռխտ շնորհը գեղեցիկ Արային, որ քու եզերքդ ի վար պահ մը շողաց ինչպէս բուրաստան մը շուշաններու, ու յետոյ, Սիրոյ եւ Հայրենիքին հաւատարիմ, արի մահով մը մարեցաւ, մահով մը երփնավառ ու մաքուր ինչպէս կարմիր պարտէզ մը մեծ վարդերու: Ու մեզի աւելի մօտիկ ժամանակներուն ընթացքին մէջ, ի՜նչքան դէմքեր մետաքսէ բամբիշներուն, երկաթէ հերոսներու, խունկէ մարգարէներու եւ կրակէ բանաստեղծներու, որոնք իրենց երազը քու ջուրերուդ մէջ հայելացուցին:

Հարիւր ցեղ, էն հզօրներէն եւ էն նուրբերէն, էն վայրագներէն եւ էն ազնիւներէն, քու ափունքներէդ անցան: Անոնցմէ շատերը, որ սեւ մտածումն ունեցան քեզ ցամքեցնելու, իրենց բուռն անցքին յարուցած փոշիին մէջ թաղուելով կորան առյաւէտ, իսկ դուն անոնց անձնիւրէն շող մը, երանգ մը, թոյր մը, զանակներ առիր ու ամփոփեցիր քու ծոցիդ մէջ, քու պատմուիանիդ շքեղութիւնը անոնցմով պերճացուցիր եւ՝ յամառ ու մշտակայտառ՝ դարերուն մէջէն քու վազքդ շարունակեցիր:

Ո՞վ մեզի վերստին լսելի պիտի ընէ մեծապանծ նուագները, ազնուական տաղերն ու ազատաշունչ յաղթերգները զոր ալիքներդ հնչեցուցին՝ այն ոսկեղէն օրերուն, երբ փառքին երիվարը քու հողիդ վրայ սիգարշաւ կը սուրար՝ Տիգրաններուն եւ Տրդատներուն հուժկու ձեռքով առաջնորդուած: Ժամանակին խաւարներուն տակ թաղուած՝ կը քնանան անոնք: Բայց մենք անոնց արձագանգը կը գտնենք հզօր ու լիալիր համերգութեանը մէջ զոր դուն բարձրացուցիր Մեսրոպեան հոյլին աստուածային շունչին տակ, երբ աշխարհիս գեղեցկագոյն ծաղիկներով պճնուած ափունքներուդ մէջէն ալիքներդ, բնիկ ծիրանիովդ հագուած եւ արեւուն բոլոր ոսկիովը լուսաշող, արքայական թափօրի մը մեծավայելչութեամբ ծաւալեցան:

Օր մը, մրրիկ մը քեզ սարսեց, եւ ջուրերդ, փրփրակուտակ, յորձանապտոյտ եւ մեծամռունչ, արջնաթոյր ու փայլակներով պատռտուած, անօրինակ երգ մը բարձրացուցին, մոլեգին ու դաշնաթաւալ, վեհօրէն դաժան ու քաղցրօրէն ահաւոր, երգ մը կարծես սարսափով ու գթութեամբ լեցուն հրեշտակապետի մը փողովն հնչուած՝ երախաբաց դժոխքին արհաւիրքներուն վերեւ: Նարեկայ մոնազին հոգին էր որ վրայէդ կ՚անցնէր...:

Ատեններ յետոյ, լուսնակ գիշեր մը աննման անուշութեամբ քեզ լուսածաղկեցուց, ջուրերդ, անդոյր ալեակներով, երանաւէտ յափշտակութեան մը մէջ մեղմօրօր, արծաթ նշոյլներու մեղրահոս տարափի մը տակ ցոյցլուն, երգեցին նուագ մը սիրոյ եւ օրհնութեան: Շնորհալիին սիրտն էր որ վրադ կը ճառագայթէր...

Եկան մեծ աղէտի օրեր: Փառքն ու զօրութիւնը հեռացան ափերէդ: Թշուառութիւնը ծանրացաւ վրադ: Ժանտ հովեր իրենց սեւ թեւերով ծոցդ բզքտեցին: Արիւնի անձրեւ մը տեղաց վրադ ու քեզ կարմրցուց: Դիակներու աղիողորմ շեղջակոյտեր ալիքներուդ վրայ ծփացին: Ջուրերդ աղարտուեցան, փտութեան պիղծ գոյներ զգեցան: Ու պահ մը մահուան աղջամուղջն զգացիր քու վերեւդ հոլաթեւ: Եւ սակայն քու ներքին կորովդ յաղթեց մահուան, եւ դուն վերակենդանացար, նորոգուած եւ աւելի քան երբեք երիտասարդ: Նոր գարուն մը ճաճանչեց, քու ջուրերդ մաքրեց, բիւրեղի թափանցկութիւն եւ մարգարիտի փայլ տուաւ անոնց, քնքուշ թեւերով զեփիւռ մը ծոցդ զովացուց, ափերուդ վրայ այգիներ փթթեցան, ու մոխակներ եկան՝ անոնց բարի ստուերներուն մէջ թաքչած՝ իրենց գորովոտ խաղերը գեղգեղել: Աշուղներուն երամն էր մեղանոյշ...

Եւ այսօր, ա՜յնքան այլազան վայրերու, ա՜յնքան բազմաթիւ դարերու, ա՜յնքան տարանման իրադարձութեանց մէջէն անցնելէ, էն մաքուր փառքերն ու էն սոսկալի փորձանքները ճանչնալէ յետոյ, դուն կը հոսիս միշտ, ո՜վ Լեզու Հայկական, կը հոսիս առոյգ եւ պայծառ: Դարաւոր վազքդ քեզ չէ յոգնեցուցած, քեզ չէ ծերացուցած: Մշտանորոգ երիտասարդութեան գաղտնիքը քու մէջդ է: Դուն հիմա կը միացնես քու դասական մեծ օրերուդ ոսկեհուռ պատմուճանին պերճութիւնը աշուղական սատափաշող շրջանին փափուկ շնորհին, մերթ անպատում քաղցրութիւնն ունիս մեր մայրերուն գորովով ակաղձուն նայուածքին, մերթ կուռ փայլը մեր հերոսներուն արոյրէ հոգիին, մերթ կը ցոլացնես ահեղ կարմիրը մեր գեհենական աղէտներուն եւ մերթ արեգակնափայլ ճառագայթումը մեր ազնիւ յոյսերուն: Եւ քու ջուրերուդ բոլոր բերաններովը դուն Ազատութիւնը երգեցիր, այնպիսի խոր, ուժեղ եւ անոյշ շեշտով մը, որ Արեւելքն ամբողջ ցնցուեցաւ եւ զայն գերեզմանող խաւարին մէջէն ահա արդէն կը տեսնենք մեծ Այգու մը առաջին ճաճանչներուն շողիւնը...

Ո՜վ մեր Լեզուն, հայելի՜ մաքրութեան, գորովի եւ արութեան, դուն մեր հոգին ու մեր արիւնն ես, դուն մեր զրահն ու մեր փառքն ես: Դուն ամենէն բարձր երեւոյթներէն մէկն ես տիեզերական Ուժին: Որքան ատեն որ կեանքը երկրիս վրայ տեւէ, դուն պիտի շարունակես յաղթականօրէն քու վեհանձն ու պայծառ գնացքդ ժամանակին անծայր դաշտերուն մէջէն:

# ՀՀ ՎԵՐԸՆՏՐՈՒԱԾ ՆԱԽԱԳԱՀ ԼԵՒՈՆ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ

## ( Համառօտ Կենսագրական Գիծեր )

Ծնած է Յունուար 9, 1945-ին, Հալէպի մէջ (Սուրիա): 1946-ին ընտանեօք կը ներգաղթեն Հայաստան:



1963-ին կ՚աւարտէ թիւ 17 երկրորդական վարժարանը: 1968-ին շրջանաւարտ կ՚ըլլայ Երեւանի Պետական Համալսարանի Արեւելեան Գիտութեանց բաժանմունքէն, որպէս մասնագէտ հայերէն եւ ասորերէն լեզուներու: 1972-ին կը ստանայ լեզուաբանական Գիտութեանց թեկնածուի գիտական աստիճանը: 1972-էն 1978 գիտաշխատող է Հայկական Գիտական Ակադեմիայի Գրականութեան Ինստիտուտէն: 1978-էն 1985 կը պաշտօնավարէ Մատենադարանէն ներս, որպէս ակադեմական քարտուղար: 1985-էն ի վեր Մատենադարանի գիտաշխատող է: 1987-ին կը վկայուի որպէս դոկտոր լեզուաբանական գիտութեանց: Ան հեղինակն է աւելի քան 70 գիտական յօդուածներու եւ աշխատասիրութեանց, հայ-ասորական մշակութային կապերու եւ Կիլիկիոյ հայկական թագաւորութեան մասին: Անդամ է Հայաստանի Գրողներու Միութեան, Ֆրանսա-Ասիական ընկերակցութեան եւ այլ կազմակերպութեանց:

Լեւոն Տէր Պետրոսեան քաղաքական ասպարէզ մտաւ 60-ական թուականներուն, մասնակցելով աշակերտական շարժումներու, որուն համար բանտարկուեցաւ 10 օրեր: 1988-ին դարձաւ «Ղարաբաղ Կոմիտէ»ի առաջնորդը: Դեկտ. 10, 1988-էն Մայիս 31, 1989 «Ղարաբաղ Կոմիտէ»ի միւս անդամներուն հետ բանտարկուեցաւ Մոսկուայի մէջ: Օգոստոս 27, 1989-ին ընտրուեցաւ պատգամաւոր Հայկական ՍՍՀ-ի Գերագոյն սովետի, եւ ապա ղեկավար՝ Հայոց Համազգային Շարժման: 16 Հոկտեմբեր 1991-ին դարձաւ Հայաստանի Հանրապետութեան առաջին ազգընտիր նախագահը: Ամուսնացած է եւ ունի զաւակ մը:

## ԹԱՐԳՄԱՆՉԱՑԻ ԱՌԹԻՒ

# ԼԵԶՈՒ, ԳԻՐ ԵՒ ՅԱՒԵՐԺՈՒԹԻՒՆ

**ԿԱՐՊԻՍ ԽՈՐԱՍԱՆՃԵԱՆ**

Լեզու մը, որպէսզի իր համաշխարհային դիրքով բարձրանայ կատարեալի, պէտք է ամբողջացնէ նախ «գրական լեզու», յետոյ «պետական կամ քաղաքական» ու «կրօնական լեզու» ըլլալու յատկութիւնները եւ ըլլայ «քաղաքակրթական լեզու»:

Մեր մեծասքանչը այս պայմանները լրացուցած է դարեր առաջ եւ իր տեղը գրաւած է քաղաքակրթական լեզուներու մէջ:

Վիճակագրութիւնները ցոյց տուած են, թէ երկրի վրայ խօսուած բայց ներկայիս չխօսուող (մեռեալ) եւ մինչեւ այսօր խօսուող (կենդանի) լեզուներու թիւը 2796 է: Բայց այս լեզուներէն միայն 60 հատը կարողացած են կատարեալ ու քաղաքակրթական լեզուներու մակարդակին հասնիլ: Մինչեւ իսկ հայերէնը այս 60 լեզուներու մի քանիներէն մէկն է, որ ունի իր սեփական գիրը:

Ինչպէս գիտէք, հայերէնը բազմաձայն ու հարուստ լեզու մըն է եւ արդէն անոր այս ձայներու հարստութիւնն է, որ երեւան հանած է սեփական գիրի մը անհրաժեշտութիւնը: Թէ ոչ, մենք ալ գուցէ պիտի գրէինք յունարէնով, որ արդէն փորձուած էր ու չէր յարմարած:

Գիր մը գտնել հանճարեղ գործ մըն է, եթէ այդպէս չըլլար, շատ ժողովուրդներ պիտի փորձէին ու պիտի ունենային իրենց լեզուին իւրայատուկ գիրը: Ո՞վ, քանի անձեր, կրնան մէկ-մէկ ուսումնասիրել բառերը ու անոնց մէջի ձայները եւ գտնել, թէ քանի ձայներ կան լեզուին մէջ ու գիրով ձեւաւորել:

Հայը միշտ կարիքը զգացած է ուրոյն գիրի մը: Մեծն Տիգրանի վիպական պատմութեան մէջ ալ կը կարդանք, Տիգրան արքայի այն խօսքը, որ կ՚ըսէ, «Հայը անպատճառ պէտք է գիր ունենայ» եւ Քուրմ Նորայր կը լծուի այս աշխատութեան: Բայց յոյներ, որոնք հաստատուած էին Տիգրանակերտ, որպէսզի բարգաւաճի նորաշէն քաղաքի գիտական ու գեղարուեստական կեանքը, քմծիծաղով կը հետեւին քուրմին աշխատութեան եւ քաղաքի պաշարումի ատեն ալ օգտուելով խառնակութենէն, կը սպաննեն քուրմ Նորայրը: Զրոյցներու ու արձանագրութիւններու յենած այս տեղեկութիւնները, որքան ճիշդ են չենք գիտեր, բայց նորէն ալ կրնանք եզրակացնել հայուն գիր ունենալու մարմաջը:

Յետոյ Դանիէլեան գիրերը, որոնցմէ տեղեակ կ՚ըլլայ Մեսրոպ Մաշտոց կը գտնէ ու կ՚ուսումնասիրէ, բայց կը տեսնէ, թէ բաւարար չեն անոնք:

Հայը, ի վերջոյ, Ե. դարուն սկիզբն է, որ կը հասնի իր դարաւոր փափաքին Մեսրոպ Վարդապետի սրբամաքուր միտքով, տքնաջան աշխատութեամբ եւ քրիստոնէական անսահման հաւատքով:

Մեզ մշակոյթով գերիացնել ուզողները, որքան որ անհանգիստ եղան, չկրցան եղծել այս սրբատառերը, որոնք պիտի անկախացընէին Հայ եկեղեցին ու Հայ ազգը:

Այսօր մեզի կը մնայ լեզուն ու գիրը բռնել իր ամենաբարձր դիրքին վրայ, անոր տալով Ս. Սահակի ու Ս. Մեսրոպի առաքինութեան արժէքը: Լրջօրէն խորհիլ ու հարթել թերութիւնները, ուղղագրական միաձայնութիւնը վերահաստատել արեւմտահայերէնի ու արեւելահայերէնի միջեւ: Անշուշտ այս վերջինը կախեալ է մայր հողի վրայ ապրող ու գործող գրագէտներու, լեզուաբաններու մերձեցումին, ընդունելով որ Մեսրոպեան ուղղագրութիւնն է ամենապատշաճը հայ քերականութեան:

Տեսնենք, թէ ինչեր ցոյց պիտի տան տարիները, ամէն պարագայի լաւը, աղուորը, բարին պիտի վիճակուի մեր ազգին, մեր ժողովուրդին:

*«Ժամանակ»*

# ՀԱՅ ԳԻՐՔԸ

— Հայ մարդը
հայ գիրքին դիմաց:
— Հայ գիրքը
պատիւը Հայուն:
— Հայ գիրքը
պարտքը Հայուն:
— Հայ գիրքը
ճանապարհը Հայուն:
— Հայ գիրքը
ընկերը Հայուն:
— Հայ գիրքը
հանգոյցը յաւերժութեան
և ժամանակին:
— Հայ գիրքը
գրահանդէսը Հայուն:
— Հայ գիրքը
օճախնափիւռ Հայուն:
— Հայ գիրքը
սպեղանիքը Հայուն:
— Հայ գիրքը
բալասանը Հայուն:
— Հայ գիրքը
այգեստանն Հայուն:

**Ն.Ս.Օ.Տ.Տ. ԳԱՐԵԳԻՆ Ա.**
**ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍ**

## Դաշնակահար Հայկ Աւագեանի

E minor: Ան առնական հպումներով եւ խոր իմաստութեամբ նուագելով, յաջողեցաւ իւրացնել Շաւեանի երաժշտական վայելքը: Հ. Աւագեան առինքնած էր բոլորիս:

Չորրորդ եւ վերջին գործը որ ան հրամցուց մեզի այդ գիշեր, այն ալ աշխարհահռչակ Արամ Խաչատուրեանի հմայիչ յօրինումներէն՝ «Մասքարատի երեք պարեղանակները, վալսը, Մազուրքան եւ Կալոփը զոր դաշնաւորումը կատարած է Ալեքսանտր Դոլուխանեան: Ի՞նչ հրաշալի նուագածութիւն: Խիզախ էր մեկնաբանութիւնը: Իսկապէս նուագողական բերկրանք կը պատճառէր, յատկապէս հայերուս: Իսկ օտարները զմայլած էին Հայկին ճկուն նուագելու յատուկ ոճին եւ տոգորումին, հանդէպ հայ երաժշտագէտին եւ հայադրոշմ երաժշտութեան: Գեղարուեստական վայելքի երեկոյ մըն էր այդ գիշեր:

Սրտագինս կը շնորհաւորենք մեր սիրելի երիտասարդ արուեստագէտ, դաշնակահար Հայկ Աւագեանին եւ կը մաղթենք նոր վերելքներ երաժշտական ասպարէզէն ներս:

Ա. Մ.

## Պետական Յեղաշրջման Ձախողուած Փորձ

կարգի պահպանման ուժերի արհեստավարժ, զուսպ եւ կազմակերպուած գործողութիւնների շնորհիւ, բարեբախտաբար, զոհեր չկան: Զգալի նիւթական վնաս է հասցուել Ազգային Ժողովի շէնքին: Ձեռնարկւում են կարգուկանոնը պահպանելու անհրաժեշտ բոլոր միջոցները:

Ըստ ՀՀ ներքին գործերի նախարար Վանո Սիրադեղեանի, կատարուածը միանշանակ պէտք է որակել որպէս պետական յեղաշրջման ձախողուած փորձ, որի հետեւանքների պատասխանատուութիւնն ամբողջովին ընկնում է նրա կազմակերպիչների եւ հրահրիչների վրայ:



ԶԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

# ՄԱՐԶԱԿԱՆ

**ՖՈՒԹՊՈԼ**

## ՀՄՄ - ԲԿՄԱ 2-1

ՀՀ ֆութպոլի առաջնութեան 6-րդ շրջանում մրցումներում ընթացքին ՀՄՄ պարտութեան մատնեց ԲԿՄԱ 2-1 արդիւնքով: Հանդիպումը շատ վստահ սկսեց : Արդէն 8-րդ րոպէին Արզումանեան-Գէորգեան - Զանազանեան եռաքայլ գոմպինացիայից յետոյ վերջինս գրաւեց ՀՄՄ-ի դարպասը: Կոլից յետոյ էլ նախաձեռնութեանը տիրում էր ԲԿՄԱ-ն: Սակայն յարձակուողները վճռական պահերին տարւում էին անհատական խաղով եւ կորցնում գնդակը: ՀՄՄ-ն հիմնականում պաշտպանւում էր եւ ձեռնարկում հազուադէպ, բայց սուր հակագրոհներ:

ՀՄՄ-ի հակագրոհներից մէկի ժամանակ դատարկ դարպասին Մարտին Սարգսեանի գլխով կատարած հարուածը ստիպուած էր ձեռքով կասեցնել բանակային ֆութպոլիստը: Բանակայինները ոչ միայն մնացին 10 հոգով (դաշտից հեռացուեց Գէորգեանը), այլեւ պատժուեցին 11 մ. հարուածով: Դարպասապահ Շմաւոնեանին յաջողուեց ետ մղել գնդակը, բայց Անէմեանի կատարած 2-րդ հարուածը անկասելի էր: Ոգեւորուելով յաջողութիւնից, վերջին րոպէներին ՀՄՄ-ն ուժեղացրեց ճնշումը: Խաղաւարտից քիչ առաջ Սպարտակ Սարգսեանի հարուածից յետոյ գնդակը դիպչելով բանակային պաշտպանին, յայտնուեց դարպասում:

## ·ԴԷՊԻ 21-ՐԴ ԴԱՐ

*յաղթական կը նայի դէպի փայլուն ապագան, դէպի 21-րդ դար, վստահ ըլլալով թէ յառաջիկայ հինգ տարիներուն ազգընտիր նախագահը դեռ եւս պիտի շարունակէ լայն ճանապարհ բանալ կայունութեան, տնտեսական բարեբոխումներու իրականացման եւ առաջընթացի առջեւ:*

*Պէտք է վերջ տանք նախագահական ընտրութեանց առթիւ պատահած անհաճոյ դէպքերուն եւ նոր էջ մը բանալով, միասնականութեամբ պահպանենք այն, որ մեծ դժուարութեամբ ունեցանք: Հայաստանի թէ Սփիւռքի մէջ բնակող իւրաքանչիւր հայ, անկախ իր ըմռնումներէն, գաղափարական ու քաղաքական իր հայեցողութիւններէն, պարտի համախմբուիլ Հայաստանի իշխանութեան եւ անոր նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանի շուրջ, յօգուտ հայ պետութեան հզօրացման, յօգուտ Արցախի ազատագրման եւ Հայ Դատի յաղթանակին:*

*Ի բոլոր սրտէ կը շնորհաւորենք վերընտրուած նախագահ, Լ. Տէր Պետրոսեանը, մաղթելով քաջառողջութիւն եւ արեւշատութիւն եւ Մայր հայրենիքին՝ բարգաւաճութիւն ու խաղաղ կեանք:*

## «ՎԵՐԱԾՆՈՒԹԵԱՆ ՄԻՒՌՈՆ»Ը

նեկտարներից պատրաստուած խառնուրդը եւ բալասանը, որից յետոյ որպէս խորհուրդ միասնութեան, նորաօրհնեալ Միւռոնին է խառնւում Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոսութիւնից բերուած Միւռոնը: Եկեղեցու զանգերի ղօղանջների ներքոյ նոր Միւռոնին է խառնւում նաեւ հինը՝ ներծծուած Ս. Գրիգոր Լուսաւորչի շնչով ու լոյսով՝ իբրեւ Հայ եկեղեցու յաւերժութեան ու կենսունակութեան խորհրդանիշ:

Ապա Վեհափառ Հայրապետը երեք սրբութիւններով՝ Ս. Կենաց փայտով, Ս. Գեղարդով եւ Ս. Գրիգոր Լուսաւորչի աջով երեք անգամ «տիառնագրում» եւ խառնում է նորօրհնեալ Միւռոնը եւ կարդում վերջին պահպանիչ աղօթքը:

Միւռոնօրհնութեան արարողութեան աւարտին Նորին Սրբութիւն Գարեգին Ա. Կաթողիկոսը, իր հայրապետական պատգամը տալով ներկաներին, ասաց.

«Թող այս օրհնեալ Միւռոնը դառնայ մեր ողջ ժողովրդի զաւակների համար կենսատու ուժ՝ ցնծութեան եւ ուրախութեան, դեղ ու դարման՝ մեր ցաւերին, մաքրողական ներգործութիւն՝ մեր մեղքերին, կեանքի պահապան մեր ժողովրդին, արդարութեան կնիք՝ մեր հայրենիքին հաւատքի զէնք՝ ընդդէմ անհաւատութեան, հաւատարմութեան հաւաստիք՝ Աստուծոյ, եւ քաջութեան զրահ՝ ընդդէմ երեւելի եւ աներեւոյթ թշնամւոյն»:

Անդրադառնալով նախորդ օրը տեղի ունեցած նահատակ Խորէն Մուրատբեկեանի աճիւնի՝ Ս. Գայանէ վանքից ի Մայր Տաճար տեղափոխութեան արարողութեանը, Վեհափառ Հայրապետը շեշտեց, որ իր անդրանիկ Միւռոնօրհնութիւնը, «որպէս խունկ բուրումնաւէտ», ընծայում է նրա «պայծառ եւ ճաճանչող» յիշատակին:

Սրբալոյս Միւռոնի օրհնութիւնն աւարտուեց «Հայր մեր»ով:

Սրբազան արարողութեանը ներկայ էին ՀՀ նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանը, տիկնոջ հետ, Ազգային ժողովի նախագահ Բաբգէն Արարքցեանը, վարչապետ Հրանդ Բագրատեանը, Սահմանադրական Դատարանի նախագահ Գագիկ Յարութիւնեանը՝ տիկնոջ հետ, ԼՂՀ պատուիրակութիւնը՝ ԼՂՀ-ի նախագահ Ռոբերտ Քոչարեանի գլխաւորութեամբ, ներկայացուցիչներ Մեծի Տանն Կիլիկիոյ կաթողիկոսութիւնից, Երուսաղէմի Հայոց Պատրիարք Թորգոմ Արք. Մանուկեանը, դիւանագիտական եւ քոյր եկեղեցիների ներկայացուցիչներ, բարձրաստիճան հիւրեր եւ պաշտօնեաներ, աշխարհասփիւռ հայ հաւատացեալների եւ ուխտաւորների խմբեր:

Արարողութիւնը լուսաբանում էին Հայաստանի եւ արտասահմանի գործակալութիւնների եւ պարբերականների, ինչպէս նաեւ սփիւռքի թերթերի 170 լրագրողներ: Արարողութիւնից յետոյ տեղի ունեցաւ ընդունելութիւն:

ԹՂԹԱԿԻՑ

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

**Իր սիրելի եղբօր Ողբ. Արտաշէս Վարդուկեանի մահուան քառասունքին առթիւ եւ անոր քաղցր յիշատակին Տիկին Սիրարփի Քիլիտճեան կը նուիրէ.**

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 100 |
| Փօլ Քիլիտճեան Ֆոնտին | 100 |
| Գահիրէի Աղքատաց. | 100 |
| "Այծեմնիկ"ին | 100 |
| Եկեղեցւոյ Տիկնանց Խնամակալութեան | 25 |
| "Յուսաբեր"ին | 25 |
| "Արեւ"ին | 25 |
| "Զահակիր"ին | 25 |

Իրենց սիրելի փաքրոջ եւ հօրեղբեր Ողբ. Արփաշէս Վարդուկեանի մահուան քառասունքին առթիւ եւ անոր քաղցր յիշատակին Տիկին Սիրվարդ Վարդուկեան, Տէր եւ Տիկին Արթօ Վարդուկեան (ԱՄՆ) եւ Տէր եւ Տիկին Ժանօ Վարդուկեան եւ դուստրերը կը նուիրեն.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 50 |
| Փօլ Քիլիփճեան Ֆօնտին | 50 |
| Գահիրէի Աղքատախնամին | 50 |
| Այծեմնիկ Հանգստեան Տան | 50 |
| Եկեղեցւոյ Տիկնանց Խնամակալութեան | 25 |
| «Արեւ»ին | 25 |
| «Յուսաբեր»ին | 25 |
| «Զահակիր»ի | 25 |

Իրենց սիրելի փաքրոջ եւ հօրեղբօր Ողբ. Արփաշէս Վարդուկեանի մահուան քառասունքին առթիւ եւ անոր քաղցր յիշատակին Տիկին Մարսէլ Վարդուկեան եւ Տէր եւ Տիկին Բենիամին Վարդուկեան կը նուիրեն.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 50 |
| Փօլ Քիլիփճեան Ֆօնտին | 50 |

(Սփանալ Գահիրէի Ազգային Առաջնորդարանէն),

Իրենց շատ սիրելի մօր եւ մեծմօր Ողբ. Արաքսի Գէորգեանի մահուան փխուր առթիւ Տէր եւ Տիկին Անդրանիկ եւ Նոյեմի Գործեան եւ զաւակները (Ֆիլատելֆիա) կը նուիրեն.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 50 |
| «Արեւ»ին | 25 |
| «Զահակիր»ին | 25 |

(Սփանալ Գահիրէի Ազգային Առաջնորդարանէն)

### Հ.Մ.Ը.Մ.-ՆՈՒՊԱՐ (ԱՂԵՔՍ.)

**ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ԵՒ ԿԱՅՏԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԻՆ**

Առ ի քաջալերանք Շարժումիս կազմակերպած պարեկան «Քէրմէս»-ին (23-6-1996) զպած փայլուն յաջողութեան, շնորհակալութեամբ ստացած ենք հետեւեալ նուիրատուութիւնները.-

| | |
|---|---|
| Տիկին Նուրիկ Զամպաքեան | 100 |
| Տիկին Ալիս Պօպուրեան | 100 |
| Տէր եւ Տիկ Արամ Սահակեան | 100 |
| Տիկին Ալիս Ճամճեան | 50 |

### ՍՏԱՑՈՒԱԾ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Շնորհակալութեամբ ստացանք Պր. Սեդի Գօչունեանէ (Սիտնի) 1996 տարւոյ իր բաժանորդագինը աւստրալիական 50 տոլար:

**Յաջորդ Թիւով**

Տեղի սղութեան պատճառաւ, յաջորդ թիւով պիտի տանք՝ ՀՀ անկախութեան 5-րդ տարեդարձին առթիւ տեղի ունեցած ձեռնարկներուն ինչպէս եւ Հ.Մ.Ը.Մ.-Արարատի քոքթէյլ - ընդունելութեան նկարագրականները:

ԽՄԲ.

## Պր. Եդուարդ Զարդարեան Ոչ Եւս Է

Սրտի անհուն կսկիծով իմացանք եգիպտահայ համայնքի սիրուած և յարգուած ազգայիններէն, Գահիրէի Թեմական ժողովի փոխ ատենապետ, Հայ Գեղ. Միութեան երկարատեւ ժրաջան ատենապետ՝ Պր. Եդուարդ Զարդարեանի մահուան գոյժը, որ տեղի ունեցած է երէկ Չորեքշաբթի 2 Հոկտեմբերի առաւօտեան ժամը 11-ին, Աթէնքի մէկ հիւանդանոցին մէջ, յետ կարճատեւ հիւանդութեան:

Թաղման արարողութիւնը պիտի կատարուի Կիրակի 6 Հոկտեմբեր 1996-ի յ. մ. ժամը 3.30-ին, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր տաճարին մէջ, ուրկէ հանգուցեալին մարմինը պիտի փոխադրուի Մարմինայի գերեզմանատունը և ամփոփուի ընտանեկան դամբարանին մէջ:

Այս տխուր առթիւ "Զահակիր" և իր շրջանակը իրենց խորազգաց ցաւակցութիւնները կը յայտնեն հանգուցեալի կողակցին, մօր, ազգականներուն, բարեկամներուն և գաղափարակից իր ընկերներուն:

## ՍՏԱՑԱՆՔ «ՓՕԼ ՔԻԼԻՏՃԵԱՆ» ՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱՆ ՀԻՄՆԱԴՐԱՄԷՆ

Խմբագրութիւնս շնորհակալութեամբ ստացաւ, ինչպէս ամէն տարի, Գահիրէի Ազգային Իշխանութենէն Ե.Ո. 500 գումարը, «ՓՕԼ ՔԻԼԻՏՃԵԱՆ » Հիմնադրամի հաշւոյն:

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

### Հ.Մ.Ը.Մ.-ՆՈՒՊԱՐ - ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

**Սկաուտական եւ Կայտական Շարժում**

Ուրբաթ 11 Հոկտեմբեր 1996 առաւօտ ժամը 10-էն սկսեալ

**ԿՐԱԿ ՎԱՌԵԼՈՒ ԵՒ ՃԱՇ ԵՓԵԼՈՒ ՄՐՑՈՒՄ**

Շարժումիս սկաուտական եւ կայտական խմբակներու միջեւ

**ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՎԵՐԻՆ ՄԱՐՄԻՆ**

1996 տարեշրջանի ձմեռուան եղանակի Շարժումիս չորս բաժիններու հաւաքոյթներուն ժամերը՝ Ուրբաթ 18 Հոկտեմբեր 1996-էն սկսեալ.-

| | | | | |
|---|---|---|---|---|
| ա - ԳԱՅԼԻԿՆԵՐ.- | Ուրբաթ | օրերը | կ. ե. ժամը | 6.30-8.00 |
| բ - ԱՐԾՈՒԻԿՆԵՐ.- | » | » | » | 6.30-8.00 |
| գ - ԿԱՅՏԵՐ.- | » | » | » | 7.00-8.30 |
| դ - ՍԿԱՈՒՏՆԵՐ.- | » | » | » | 7.00-8.30 |

(Իւրաքանչիւր բաժին իր խցիկին մէջ)

**ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՎԵՐԻՆ ՄԱՐՄԻՆ**

Ս.թ. Նոյեմբերի 4-ից Գահիրեի Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւնում կազմակերպուելու են Հայոց լեզուի դասընթացներ սկսնակ եւ միջին մակարդակների համար: Արձանագրութեան համար հարկաւոր է անձամբ ներկայանալ դեսպանութիւն՝ ամէն օր ժամը 11,00-ից մինչեւ 14,00-ը, բացառութեամբ Ուրբաթ եւ Շաբաթ օրերի:

Դեսպանութեան հասցէն է՝ 20 Մուհամմատ Մազհար, Զամալէք, Գահիրէ: Լրացուցիչ տեղեկութիւնների համար զանգահարել՝ 342-14-57: 342-14-59:

ԵԳԻՊՏՈՍՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ

### ԳԱՀԻՐԷԻ ԱՂՔԱՏԱՑ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

Շաբաթ, 28 Դեկտեմբեր 1996 երեկոյեան ժամը 9-ին

**«ՊԸԼԸՔՍՏԱՆԵԱՆ ՍՐԱՀ»ԻՆ ՄԷՋ**

**ՏԱՐԵԿԱՆ ԱՒԱՆԴԱԿԱՆ ԱՆՈՒՇԱՊՈՒՐԱՍԵՂԱՆ**

Մանրամասնութիւնները մօտ ապագային
Բոլոր միութիւններէն կը խնդրուի
նկատի ունենալ ու չխաչաձեւել



دار شرشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

Հիմնուած 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
Armenian Weekly


P.O.Box 2111 (Cairo),
Tel: 3914908, Fax:(202)4530327
E-mail: emarco@ritsec3.com.eg


ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1344 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 17 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1996 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 25 Եգ. Դհկ. عدد رقم ١٣٤٤ - الخميس ١٧ أكتوبر ١٩٩٦


## ԵԹԷ ԱՅՍ ԷՐ ՓՆՏՌՈՒԱԾ ԺՈՂՈՎՐԴԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ...

*Յանուն Հայաստանի ընդդիմութեան պէտք է խոստովանիլ որ շնորհիւ կատարուած քարոզչութեան եւ կազմակերպուած խռովարարութեան, վերջին օրերուն, Հայաստանի նախագահական ընտրութիւնները եւ անոր հետեւանքով ստեղծուած ձգրուած վիճակը, Արեւմտեան Ափի եւ Քաղուլի անկումին հետ զուգահեռ գրաւած է միջազգային մամլոյ գործակալութիւններու եւ թղթակիցներու դիտակներուն ուշադրութեան:*

*Եւ յուրախութիւն, որպէս ժողովուրդ, որ քանիերորդ դարու ասպարէն ունինք Ծապլվարեան հերոսները յիշեցնող կերպարներ: Ինչ կը պահանջէ ընդդիմութիւնը: Չեղեալ նկատել ընտրութիւնները եւ կրկնե՞լ՝ ո՛չ: Ան կ'աղաղակէ նախագահական ընտրութիւններու ընթացքին կատարուած զեղծարարութիւններու մասին, երբ իր կողքին միջազգային դիտորդներ, նշելով հանդերձ կարգ մը թերութիւններ մեզ կը գնահատեն ընտրական գործընթացը իր ամբողջութեան մէջ եւ կը դրուատեն մանաւանդ հայ ժողովուրդը՝ անկախութիւն ձեռք բերելէ ընդամէնը հինգ տարի ետք ժողովրդավարութեան մէջ նետած հսկայ քայլերուն համար...:*

*Իսկ մենք ի՞նչ կ'ընենք, անտեսելով Մ. Նահանգներու, Ռուսիոյ, Մեծն Բրիտանիոյ, եւ այլոց ականատեսի վկայութիւնները: Միջազգային հանրային կարծիքին առջեւ մենք մեզի կ'արտօնենք նուաստանալ: Նուաստանալ դիրքով եւ վարկով:*

*Կ'ընդունինք որ նախագահական ընտրութիւնը սուր բնոյթ ունէր: Սա կը նշանակէ թէ 99,75 առ հարիւրի օրերը առյաւէտ մեկնած են: Կ'ըմբռնենք որ նոյնիսկ սխալներ կրնան գործուած ըլլալ ընտրութիւններու ընթացքին, կամայ թէ ակամայ: Եւ եթէ պահ մը ենթադրենք որ խնդիրը այդպիսին էր, ո՞ւր է բողոքը ներկայացնելու վայրը: Կեդրոնական Ընտրական Յանձնախո՞ւմբը, թէ՞ փողոցը: Ի՞նչ կ'ըսէ Հայաստանի Սահմանադրութիւնը այս մասին...: Սակայն, դժբախտաբար փնտռուածը այդ չէր: Փնտռուածը կրկին ռոմանթիք զգացականութեան վրայ կերտուած «հերոսական աքթ» մըն էր ցոյց տալու, որ իբրեւ թէ ողբերգութիւն մը գործուած էր, որ անհրաժեշտ էր սրբագրել ամէն գնով, ի գին ամէն զոհողութեան:*

*Ահա այսպէս կ'ըմբռնէ ընդդիմութիւնը ժողովրդավարութիւնը եւ սրբագրելու համար սխալը Չարենցի խելագարուած Ամբոխներուն նման կը խուժէ Ազգային Ժողով (խորհրդարան), ապա խայտառակութիւն...:*

*Գուցէ գայ օրը,որ ընդդիմութեան մէջ ուժեր իրենք եւս յանդգնութիւնը ունենան այդ սխալը ընդունիլ եւ ընկերանան մեզի հետ դատապարտելու նորանկախ պետութեան պատմութեան այդ մութ էջը:*

*Ընդդիմութիւնը եւ առողջ քննադատութիւնը որեւէ հասարակարգէ ներս նուիրական սրբութիւններ են: Անոնց գոյութիւնը պայմանաւորուած է տուեալ պետութեան վերելքին ի նպաստ գործունէութեամբ ու քարոզչութեամբ: Ընդդիմութիւնը սակայն իշխանութիւն չէ: Երբ կը խօսի որպէս ընդդիմութիւն այլ է, իսկ երբ կը դառնայ իշխանութիւն խօսիլ, մտածել գործել բոլորովին այլ է:*

*Կաշկանդումներ կարծիքի ու արտայայտութեան սեղմումներ կ'ըսուին, կը զարմանանք:Ո՞ր չափանիշին մասին է խօսքը երբ ընդդիմութեան օրաթերթերը առիթ չեն կորսնցներ ամենանուաստացուցիչ ոճով քննադատելու հանրապետութեան նախագահը, իշխանութիւնները: Ինչի՞ մասին է խօսքը երբ քննադատութենէ աւելի նախատինքով լեցուն այլ երկիրներու մէջ գոյութիւն չունեցող եւ քաղաքական բառապաշարէ հեռու արտայայտութիւններով կը պարսաւեն նախագահը:*

*Իսկապէս ինչպիսի՞ յանդգնութիւն նորելուկ ընդդիմութեան մօտ: Ոչ որ անսխալական է: Կը սխալին բոլոր անոնք որ կը գործեն: Գործելու կոչուած մահկանացուներս բոլորս սխալական ենք, սակայն, իրաւունք չունինք երկրին ազգային անվտանգութեան դէմ արկածախնդրութեան դիմել, իրաւունք չունինք մեր ժողովուրդի եւ պետականութեան ճակատագիրը փորձաքարի ենթարկել, իրաւունք չունինք...: Կը դատապարտենք:*

Պէյրութ,

«ԱՐԱՐԱՏ»

## Նշում Հայաստանի Հանրապետութեան Անկախութեան Հինգերորդ Տարեդաձի

### Ս. Գրիգոր լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ

Կիրակի 22 Սեպտեմբեր 1996-ի առաւօտեան, Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ, ՀՀ անկախութեան 5-րդ տարեդարձին առթիւ տեղի ունեցաւ Գոհաբանական Մաղթանք:

Ս. Պատարագը մատուցանեց թեմիս բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան: Յատուկ շարականներու երգեցողութենէն ետք, յաւուր պատշաճի քարոզ մը խօսեցաւ: Սրբազան Հայրը մաղթանքներ ըրաւ մեր հայրենիքի անկախութեան եւ Արցախի սահմաններուն անվտանգութեան համար:

Ս. Պատարագէն ետք Ազգային Առաջնորդարանի դահլիճին մէջ հիւրասիրութիւն մը տեղի ունեցաւ, ուր Տիկնանց Խնամակալութեան անդամուհիները հիւրասիրեցին ներկաները:

Դահլիճին մէջ խօսք առաւ ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Դոկտ. Էտուարտ Նալպանտեան, որ իր խօսքին մէջ անդրադարձաւ անկախութեան նշանակութեան մասին: Ապա շեշտը դրաւ յառաջիկայ շրջանին հայրենիքի ունենալիք դերը, այդ անկախութիւնը ամրապնդելու կարեւորութեան վրայ:

Առաջնորդ Սրբազան Հօր հայրենաշունչ փակման խօսքով վերջ գտաւ ընդունելութիւնը:

### Քոքթէյլ - Ընդունելութիւն

Չորեքշաբթի 25 Սեպտ.ի երեկոյեան, Հելիոպոլսոյ «Պըլըքտանեան» հանդիսասրահին մէջ, տեղի ունեցաւ ՀՀ անկախութեան 5-րդ տարեդարձի նշում, Գահիրէի Ազգ. Իշխանութեան կազմակերպած քոքթէյլով մը հովանաւորութեամբ՝ Եգիպտահայոց առաջնորդ 2

ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## ՊԱՏԿ. ԹԵՄԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ ՆԻՍՏ

Ուրբաթ 11 Հոկտ.ի երեկոյեան ժամը 5-ին, Աղեքսանդրիոյ Ազգ. Առաջնորդարանի դահլիճին մէջ տեղի ունեցաւ Պատկ. Թեմական ժողովի 1996 տարւոյ Բ. նիստը, նախագահութեամբ՝ թեմիս բարեջան առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի եւ ատենապետութեամբ Պր. Նորայր Պէնօհանեանի, ի ներկայութեան 15 երեսփոխաններու:

Նիստի գլխաւոր հարցերէն մին էր, Հոգշ. Տ. Թադէոս Վրդ. Զիրեկեանցի Աղեքսանդրիոյ առաջնորդական փոխանորդի նշանակումը: Ժողովը որոշեց յետաձգել վաւերացումի հարցը շուրջ վեց ամիսով: Նշանակումը պաշտօնականացնել՝ եթէ երկուստեք ներկայացուած պայմանները ընդունին:

Երկրորդ գլխաւոր հարցն էր Աղեքսանդրահայ որոշ ակումբներու նորոգութեանց ծախսերու բացառիկ յատկացում: Ժողովը համաձայն գտնուեցաւ:

Քառորդ ժամ դադարէ ետք ժողովը անցաւ օրակարգի վերջի հարցի քննարկման, ուր տեղի պիտի ունենար երեսփոխաններու մասնակի վիճակաձգութիւնը: Հետեւաբար վիճակով դադրեցան հետեւեալ 3

## ՇՆՈՐՀԱՒՈՐԱԿԱՆ ՀԵՌԱԳԻՐ

*Մեծարգոյ Պրն. Լեւոն Տէր Պետրոսեան*
*Ազգընտիր Նախագահ Հայաստանի*
*Անկախ Հանրապետութեան*

*<u>ԵՐԵՒԱՆ</u>*

Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութիւնը հիմնուելով Ձեր հնգամեայ նախագահութեան շրջանի իրագործումներուն՝ վրայ՝ Հայաստանի անկախութեան կայացման, ներքին ապահովութեան ամրացման եւ արտաքին միջ-պետական յարաբերութիւններու զարգացման մարզերէն ներս, եւ գնահատելով նաեւ Ձեր մէջ Հայաստանի եւ աշխարհի այսօրուան իրադրութեան հաղորդ պետական մարդու արժանիքները՝ Հայաստանի թէ Սփիւռքի Կեդրոնական Մարմիններով առաջադրած էր Ձեր նախագահութեան Բ. շրջանի թեկնածութեան համար:

Մեծ գոհունակութեամբ, Կիրակի 22 Սեպտեմբեր 1996ին, ամբողջ Հայաստանի տարածքին կատարուած ընտրութեան՝ Ձեր վերստին նախագահութեան բարձր պաշտօնին համար ընտրական յաջողութիւնը շնորհաւորելով, զայն կը նկատենք Հայաստանի եւ հայութեան յաղթանակը: Ժողովրդավարութեան յաղթանակը:

Կը շնորհաւորենք նաեւ հայրենաբնակ մեր ժողովուրդը, որ գիտցաւ քաղաքացիական օրինակելի արթնութեամբ իր ձայները կեդրոնացնել արժանաւորին, Հայրենիքի եւ հայութեան գերագոյն շահերու պաշտպանի անձին շուրջ:

Յոյսով ենք, որ Ձեր նախագահութեան երկրորդ հնգամեակին Հայաստան կ'ապրի վերելքի տարիներ եւ Հայրենիք-Սփիւռք յարաբերութիւնները կը դրուին աւելի լուրջ եւ գործնական հիմքերու վրայ:

Ս.Դ.ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ
ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

*Պէյրութ*

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԵԼԵԿՏՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ԱՅՍ ՁՄՐԱՆ

Հայաստանի ուժանիւթի նախարար՝ Գագիկ Շահպազեան Ազգային Խորհուրդի ի նիստին վերջերս յայտարարեց, թէ ըստ նախատեսուած ժամանակացոյցին, ելեկտրական հոսանք պիտի տրամադրուի ժողովուրդին 24 ժամ, մինչեւ Նոյեմբեր 1: Անկէ ետք, մինչեւ Ապրիլ 1 1997, Հայաստանի քաղաքացիները ելեկտրականութեան բարիքները պիտի վայելեն 14 ժամ անընդհատ: Մինչ այդ, Մեծամօրի հիւլէակայանը, որ նորոգութիւններու համար փակուած էր ամրան ամիսներուն, վերսկսաւ գործել Հոկտեմբեր 1-էն սկսեալ:

## Ճատրակի 32-րդ Համաշխարհային Ողիմպիականին Հայաստանի Կը Գրաւէ 5-րդ Դիրքը

Ինչպէս որ նախապէս տեղեկացուցած էինք, Հայաստանի մէջ կայացաւ ճատրակի 32-րդ համաշխարհային ողիմպիականը: Շուրջ 15 օրերու սուր մրցակցութենէ մը ետք, Երկուշաբթի 1 Հոկտեմբերին Ծիծեռնակաբերդի մարզահամարգ ային համալիրին մէջ վերջ գտան մրցումները:

14 փուլերով իրագործուած այս մրցումներուն կը մասնակցէին 126 երկիրներու 188 հաւաքական խումբեր՝ 114ը մանչերու, իսկ 74ը աղջիկներու:

Հայաստանի մանչերու հաւաքականները մրցումներուն մասնակցեցաւ, 3, իսկ աղջիկներու՝ 2 խումբերով:

Հայաստանի մարզիկները ընդհանրապէս, մրցումներու ընթացքին, իրենց լաւ խաղարկութեամբ դրական տպաւորութիւն ձգեցին մրցող խումբերուն մօտ, սակայն մանչերու ախոյեանութիւնը խըլեց Ռուսիոյ հաւաքականը, 38,5 կէտերով: Հայաստանի գալով, 33,5 կէտով լաւագոյն արդիւնքը ձեռք ձգեց մանչերու առաջին հաւաքականը, որ յաւակնութիւնը ունէր գէթ 3

## Ցնցիչ երկրաշարժ Եգիպտոսի Մէջ

Նախանցեալ Չորեքշաբթի 9 Հոկտեմբեր 1996-ի յետ միջօրէի ժամը 3.15-ին, ցնցիչ երկրաշարժ մը տեղի ունեցաւ Եգիպտոսի մէջ, կէս վայրկեան տեւողութեամբ 5.7 ռիխթըր ուժգնութեամբ:

Գիտահետազօտութեան նախարարութիւ Դոկտ. Վ. Քամէլ յայտնեց թէ երկրաշարժի կեդրոնը կը գտնուի Հելուանէն 500 քլմ. հեռաւորութեան՝ Կիպրոս կղզիի հարաւակողմը:

Բարեբախտաբար մարդկային վնասներ տեղի չեն ունեցած սակայն ութը շէնքեր Գահիրէի մէջ փլուզման ենթարկուած են եւ մէկ շէնք մըն ալ՝ Սանթայի մէջ:


1 ⇨

## Նշում Յայաստանի Յանրապետութեան Անկախութեան Յինգերորդ Տարեդաձի

Եգիպտահայոց առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի եւ նախագահութեամբ՝ ՀՀ լիազօր դեսպան Դոկտ. Էտուարտ Նալպանտեանի: Ներկայ էին Ազգ. Իշխանութեան զոյգ ատենապետներն ու իրենց տիկինները, Արժ. Տ. Գալուստ խչկ. քհնյ. Դարբինեան, համայնքի ներկայացուցչական դէմքեր եւ ընտրանի հասարակութիւն մը:

Ընդունելութեան ընթացքին, խօսք առաւ յանուն Ազգային Իշխանութեան Տոքթ. Սուրէն Պայրամեան: Ան իր բովանդակալից խօսքին մէջ, նախ արտայայտուեցաւ անկախութեան նշանակութեան մասին, ապա յիշեց հայ ժողովուրդի տարիներու ընթացքին տարած զոհողութիւնները, անկախութիւնը ձեռք բերելու գծով:

Տոքթ. Ս. Պայրամեանի ելոյթէն ետք, բեմ հրաւիրուեցաւ հայրսենի դաշնակահարուհի Իրինա Զալեանը ու նուագեց ՀՀ հիմնը՝ «Մեր Հայրենիքը»: Ան նաեւ խոր ըմբռնումով նուագեց ազգագրական այլ երաժշտական կտորներ: Ապա փոքրիկն Ալիսիկ Մազլումեանի մեներգը մեծապէս գնահատուեցաւ ներկաներուն կողմէ: Մեներգին յաջորդեց Աշոտ Թումայեանցի ասմունքը: Ան ապրումով արտասանեց Յովհ. Շիրազի «Հայրենիքիս» բանաստեղծութիւնը:

Ապա խօսք առնելու հրաւիրուեցաւ ՀՀ դեսպան Տոքթ. Է. Նալպանտեան: Ան ողջունելէ ետք անկախութեան 5-րդ տարեդարձը նշեց, թէ այս մեր օրերուն 21 Սեպտեմբերի օրը կը նկատուի ամենամեծ տօնը հայրենիքին համար: Ապա աւելցուց, որ թէեւ հինգ տարիները կարճ ժամանակամիջոց մըն է ազգի մը պատմութեան համար, սակայն հայ ժողովուրդին համար եղաւ դժուարութիւններով լի տարիներ, զոր յաղթահարեց, կամքով ու հաւատքով: Վսեմաշուք դեսպանը նաեւ կարեւորեց Արցախի մէջ գոյատեւող հրադադարը, որ 28 ամիսներէ ի վեր կը մնայ անխախտ: Ան նաեւ տեղեկացուց, որ նախագահի ընտրութեանց՝ նախագահ Լեւոն Տէր Պետրոսեան վերընտրուած է, պարտութեան մատնելով ընդդիմադիր միւս թեկնածուները: Ներկաները բուռն ծափողջոյններով ողջունեցին զայն:

Փակման խօսքով ելոյթ ունենալու հրաւիրուեցաւ Առաջնորդ Սրբազան Հայրը: Ան յայտնեց թէ Աստուծոյ կամքով ձեռք բերուած անկախութիւնը, յառաջիկայ տարիներուն աւելի պիտի ամրապնդուի հայ ժողովուրդին տանելիք արդիւնաբեր աշխատանքով: Ապա պարզեց, որ ամէն հայ անհատ պարտք պէտք է համարէ հայրենիքին օժանդակելը: Սրբազան Հօր պատշաճ փակման խօսքով վերջ գտաւ տօնախմբութիւնը:

### Մարզական Փառատօնն ու քոքթէյլ-ընդունելութիւնը

Հինգշաբթի 26, Ուրբաթ 27, Շաբաթ 28 եւ Կիրակի 29 Սեպտեմբեր 1996-ին, մայր հայրենիքի անկախութեան հինգերորդ տարեդարձին առթիւ, ՀՄԸՄ-«Արարատ»ի դաշտին վրայ տեղի ունեցաւ եգիպտահայ պասքէթ-պոլի մրցաշարք մը հովանաւորութեամբ՝ թեմիս առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի. պատուոյ հիւրն էր ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Դոկտ. Էտուարտ Նալպանտեան եւ իր տիկինը: Իսկ մրցաշարքին նախագահութիւնը ստանձնած էին Տէր եւ Տիկ. Լեւոն Գաղթացեանները:

Մրցաշարքին իրենց մասնակցութիւնը բերին Գահիրէէն՝ Ս. Թէրեզայի եւ ՀՄԸՄ- «Արարատ»ի, իսկ Աղեքսանդրիայէն՝ ՀՄԸՄ- «Կամք»ի եւ ՀՄԸՄ- «Նուպար»ի խումբերը: Աւարտական մնացին Աղեքսանդրիոյ երկու խումբերը, որ Շաբաթ 28 Սեպտ.ին ՀՄԸՄ- «Կամք» յաղթելով ՀՄԸՄ- «Նուպար»ին տիրացաւ Տէր եւ Տիկ. Էտուար Թովմասեանի տրամադրած բաժակին:

Ապա ժամը 9.30էն սկսեալ տեղի ունեցաւ «Յուսաբեր» ակումբի սփնազաւիթին մէջ խրախճանք - պարահանդէս, մասնակցութեամբ լիբանանահայ սիրուած երգիչ Արարատ Ահարոնեանի:

Յաջորդ օրը՝ Կիրակի 29 Սեպտ.ի երեկոյեան, մարզական փառատօնի եզրափակիչ մրցման մասնակցեցան, կազմակերպիչ միութեան վարչութեան հրաւէրով Գահիրէ ժամանած Հալէպի ՀՄԸՄ- «Եարմուք»ի եւ Գահիրէի ՀՄԸՄ- «Արարատ» - «Կամք»ի խումբերը: Սոյն միջ-մասնաճիւղային մրցման նախագահութիւնը ստանձնած էին Տէր եւ Տիկ. Տիգրան Պօղոսեանները եւ բաժակը տրադրած էին Տէր եւ Տիկ. Նուպար Լէյլէկեանները: Իսկ 4-օրեայ բոլոր մրցումներուն մետայլները տրամադրուած էին Տէր եւ Տիկ. Վարդ Ալեքսանեաններուն կողմէ: Հանդիպման հիւրն էր Եգիպտոսի մօտ Սուրիոյ Հանրապետութեան դեսպան Դոկտ. Իսա Տարուիշ:

Խանդավառ եւ եղբայրական մթնոլորտի մէջ մրցումը վերջացաւ ի նպաստ ՀՄԸՄ- «Եարմուք»ին:

Ապա ժամը 10-էն սկսեալ «Ա. Մէօթէմէտեան» հաւաքավայրին մէջ, ի ներկայութեան հոծ բազմութեան, տեղի ունեցաւ քոքթէյլ-ընդունելութիւն մը, ի պատիւ ՀՄԸՄ- «Եարմուք»ի պասքէթ-պոլի պատուիրակութեան:

Նախ ընդունելութեան ընթացքին, յանուն կազմակերպիչ վարչութեան ողջոյնի խօսքերով ելոյթ ունեցաւ (արաբերէն եւ հայերէն լեզուներով) Տոքթ.Սուրէն Պայրամեան: Առաջին առթիւ յանուն ՀՄԸՄ- «Արարատ»ի վաչութեան Վարուժան Գազանճեան յիշատակի գեղեցիկ պնակ մը նուիրեց Սուրիոյ դեսպանին: Ապա կազմակերպիչ վարչութիւնը լաւ գաղափար մը ունեցած էր, որպէս երախտագիտութիւն, մեծարել 60 տարիներու «Արարատ»ի անդամ, մարզիկ, գործօն նուիրեալ եւ այժմու փոխ-ատենապետ՝ Պր. Խոսրով Զաքարեանը, անոր յանձնելով թաւշապատ տուփի մէջ զետեղուած՝ մետաղեայ յուշատախտակ մը:

Հուսկ ուրեմն խօսք առնելու հրաւիրուեցաւ վսեմաշուք Սուրիոյ դեսպանը: Ան շնորհաւորական խօսքեր ընելէ ետք, խոր յարգանք յայտնեց հայ ժողովուրդին: Հայասէր դեսպանը շեշտեց, թէ յանուն Սուրիոյ նախագահ Հաֆէզ Էլ Ասատին, պատրաստ է անվերապահ աջակցութիւն ցուցաբերել հայ ժողովուրդի զաւակներուն, որ երկրին մէջ ալ, որ գտնուին անոնք: Ապա եզրափակելով իր խօսքը, յաւերժութիւն մաղթեց սուրիացի եւ հայ ժողովուրդի գործակցուեաւնն ու բարեկամութեանը:

Ջերմօրէն կը շնորհաւորենք ՀՄԸՄ- «Արարատ»ի վարչութիւնը, այս կազմակերպած յաջող մարզական փառատօնին առթիւ, մաղթելով նորանոր յաջողութիւններ, յուսալով որ յառաջիկային պիտի կարենայ համախմբել բոլոր եգիպտահայ մարզական խումբերը:

Ա. Մ.

## ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ

Ուրախութեամբ կը տեղեկանանք, որ Նուպարեան Ազգ. Վարժարանի աշակերտ՝ ԺՈՐԺ ՇԱՅՄԻՐԵԱՆ, 1995-1996 տարեշրջանի երկրորդական գիտական բաժինի պետական քննութեանց յաջողած է ձեռք բերել 86.25 % պատուաբեր արդիւնք:



Ժորժ իր համալսարանական ուսումը պիտի շարունակէ Յէլուանի Յամալսարանի ճարտարագիտութեան բաժինին մէջ:

Այս ուրախ առթիւ ջերմօրէն կը շնորհաւորենք զինք ու իր ծնողքը՝ Տէր եւ Տիկին Զարեհ Շահմիրեանները, մաղթելով նորանոր յաջողութիւններ:

## ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԷՆ

### ՅԱՅԿԱԿԱՆ ՔՈՆԵԱԿԸ ՄԵՏԱԼԻ ԱՐԺԱՆԱՑԱՒ

Վերջին երեք տարիներու ընթացքին Երեւանի քոնեակի գործարանի արտադրանքը տարբեր միջազգային մրցոյթներու ընթացքին, շահած է 13 ոսկի եւ արծաթ մետալներ: Վերջինը հայկական քոնեակը ստացած է Պելճիքայի մէջ, ուր «Ախթամարը» շահեցաւ արծաթ, իսկ «Նայիրին»՝ ոսկի մետալները: Միւս կողմէ, «Նայիրի»ն իր արտադրման ամբողջ պատմութեան ընթացքին արժանացած է շուրջ 80 բարձր մրցանակներու:

### Վերաբացուեց Գոգաւանի Ս. Աստուածածին եկեղեցին

Նախկին Սպիտակի շրջանի Ս. Աստուածածին եկեղեցին կառուցուել է 4-5-րդ դարերում, վերակառուցուել՝ 17-րդ դարում: Այն գործել է մինչեւ Յայաստանի խորհրդայնացումը, որից յետոյ դարձել է կոլտնտեսութեան պահեստ, կինոդահլիճ եւայլն: 1988-ի երկրաշարժից, եկեղեցին ամբողջութեամբ աւերուեց:

«Երկիր եւ Մշակոյթ» հայկական բարեգործական կազմակերպութեան նախաձեռնութեամբ եւ ջանքերով, 1991-ից սկսուեց եկեղեցու վերականգնումը: Եւ ահա Սեպտեմբերի 1-ին, Գոգարանում տեղի ունեցաւ եկեղեցու հանդիսաւոր բացումը: Օծման արարողութիւնը կատարեց Ամենայն Յայոց Գարեգին Ա. Կաթողիկոսը:

### ՈՍԿԻԻ ՆՈՐ ՅԱՆՔԵՐ ԿԸ ՅԱՅՏՆԱԲԵՐՈՒԻՆ

Ոսկիի նոր հանքեր յայտնաբերուած են Լոռիի մարզին մէջ: Պրպտումները կը շարունակուին ու միայն անոնց աւարտէն ետք կարելի կ'ըլլայ վերջնական արժեւորում մը ընել: Յոյս կը ներշնչէ նաեւ Ապարանի մօտերը գտնուած այլ հանքավայր մը:



## Յ.Մ.Մ.Ի 75 ԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ ՔԵՍԱՊ-ԳԱԼԱՏՈՒՐԱՆԻ ՄԷՋ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ԲԱՆԱԿՈՒՄԸ

75 տարիներ անցած են այդ լուսաւոր թուականէն երբ խումբ մը գաղափարապաշտ երիտասարդներ մտածումը յղացան հիմնելու «Արարատ» Մարզական Միութիւնը Յալէպի մէջ, 1921 թուին:

Անոնց նպատակն էր ծառայել Յայ ժողովուրդին՝ «Առողջ միտք առողջ մարմնի մէջ» լոզունգին հետեւելով:

Յ.Մ.Մ. ծնունդ առնելով Յայ ժողովրդի ծոցէն, ծառայեց հայուն՝ գաղթական ու տառապած, Մեծ Եղեռնի մնացորդին:

«Արարատ» կորիզը հանդիսացաւ Յ.Մ.Մ.ի ընտանիքի կազմութեան: Կորիզը ըսինք, որովհետեւ քանի մը տարի ետք Դամասկոսի «Տալւորիկ»ը եղաւ, ապա Յ.Մ.Մ. «Տալւորիկ»ը 1925-ին, իսկ 1927ին Պէյրութի մէջ կը կազմուէր Յ.Մ.Մ.ը:

Երկար է Յ.Մ.Մ.եան ազգանուէր կազմակերպութեան ուղին. անոր գաղափարական նուիրումը ազգին ու հայրենիքին եղած է անսակարկ: Յ.Մ.Մ.ի հիմնադիրներուն հոգիները անմահացած կը ճախրեն անհունին մէջ, տեսնելով յաջորդականութիւնը գաղափարականին՝ իրենց թողած աւանդին:

75 տարի, զոհողութեան, նըւիրումի ու ծառայութեան ազգին ու բազմաչարչար Յայ ժողովուրդին:

Յ.Մ.Մ. ծառայեց անսակարկ ու տակաւին պիտի շարունակէ ծառայել հնչեցնելով անցեալէն ժառանգած զանգին ղօղանջը:

Եթէ ակնարկ մը նետենք Յ.Մ.Մ.եան մեծ ընտանիքին կըտրած ճանապարհին, հոն պիտի տեսնենք տիտանական աշխատանք մը յանուն հայրենիքին ու Յայ ժողովուրդին:

«Կայծ» ամսագիրը եղաւ Յ.Մ.Մ.ի Կեդրոնական Վարչութեան օրկանը 1942-47, դադրեցուած պետութեան կողմէ քաղաքական նկատումներով: «Արարատ Մարզական»ը Պէյրութի Յ.Մ.Մ.ի տեղական վարչութեան կողմէ, որը վերահրատարակուեցաւ շրջան առ շրջան:

Երկրորդ Յամաշխարհային Պատերազմին, Պէյրութի մէջ Յ.Մ.Մ. կազմակերպեց ֆութպոլի միջազգային մրցումներ, նիւթականը ամբողջութեամբ նուիրելով Դաշնակից ուժերուն եւ Կարմիր Խաչին: Մեծ աշխատանք տարաւ մասնակցելով «Սասունցի Դաւիթ» զրահապատ (հրասայլային) զօրասիւնի հանգանակութեան ֆոնտին:

Յ.Մ.Մ. «Միշտ Պատրաստ» իր բնաբանով մասնակցեցաւ 1946-47 ներգաղթի աշխատանքներուն դէպի հայրենիք:

Սուրիոյ ու Լիբանանի շրջաններուն մէջ աճեցաւ ու նոր մասնաճիւղերով բազմացաւ Յ.Մ.Մ.ի ակումբը:

Յալէպի մէջ հիմնադրուած Յ.Մ.Մ.ի առաջին փողերախումբը իր 80 անդամներով, մինչեւ այսօր կը շարունակէ առաջնորդել Յ.Մ.Մ.եան շարքերը: Դամասկոսի փողերախումբը նոյնքան նշանաւոր է:

1981ին, մեծ շուքով տօնուեցաւ Յ.Մ.Մ.ի 60 ամեակի տօնակատարութիւնները, հասնելով մինչեւ Մայր Յայրենիք:

1996, այս տարի 75րդ յոբելինական տարին է, ամիսներէ ի վեր շրջաններու մէջ տօնակատարութիւնները կը շարունակուին, Գալիֆորնիոյ, Լոս Անճելըսի, Գանատայի, Յալէպի, Դամասկոսի, Պէյրութի, Ֆրանսայի, Ուրուկուէյի, Պոսթնի, Աւտրալիոյ, Մայր Յայրենիք Յայաստանի մէջ եւ այլուր:

Տասնեակ տարիներէ ի վեր Քեսապի գեղածիծաղ հովտին՝ Գալատուրանի մէջ կը կատարուի բանակում: Այս տարի եւս, կազմակերպութեամբ իրենց պաշտօնին գիտակից Յ.Մ.Մ.եան նուիրեալներու Յանձնախումբի,


Հալէպի Հ.Մ.Մ.ի փողերախումբը տողանցքի ընթացքին

խմբապետներու եւ օգնականներու, որոնք ջանք չէին խնայած հարիւրաւոր արիներու եւ արենուշներու համար կազմակերպուած եւ խնամուած յայտագիրի մը գործադրութեան համար, Քեսապ - Գալատուրանի Յնչակեան սկաուտական ճամպարը լեցուած էր Յ.Մ.Մ.եան սկաուտական մեծ խումբի մաս կազմող մըջնիկ, գայլիկ, արծուիկ, սկաուտ, արենոյշ եւ երէց անդամներով, որոնք պատասխանատուներու հսկողութեան տակ տասը օր սորվեցան սկաուտական գիտելիքներ, ազգային հայրենասիրական երգեր եւ դասախօսութիւններ: Յայտագրին մաս կը կազմէր նաեւ խաղերն ու պարերը: Վերջին օրը՝ Կիրակի Օգոստոս 18ին, Գալատուրանի Յ.Մ.Մ.ի սեփական կալուածին մէջ, ծնողներ ու բարեկամներ վայելեցին Սուրբ Աստուածածնի տօնին առթիւ մատուցուած մատաղը - իսկ կէսօրէ ետք մեծ տողանցք տեղի ունեցաւ Գալատուրանի Քեսապի հրապարակը, Յ.Մ.Մ. Յալէպի բազմանդամ փողերախումբի նուագակցութեամբ: Յ.Մ.Մ.եան սկաուտական եւ փողերախումբի շարքը ծափերու ու ծաղիկներու տարափի տակ կը հասնի պետական տուն, ուր որոտընդոստ ծափերով ընդունուեցան Սուրիոյ պետական պատասխանատուներուն կողմէ:

Երեկոյեան, տեղի ունեցաւ խարուկահանդէս, ուր հրամցուեցաւ պատշաճ յայտագիր մը:

Յ.Մ.Մ.եան մեծ ընտա-

⇨ 4

# ՆԵՂՈՍԻ ՋՈՒՐԻՆ ՏԱԳՆԱՊԸ ԿԸ ՅԻՇԵՑՆԷ ԵՓՐԱՏԻ ԵՒ ՏԻԳՐԻՍԻ ՋՈՒՐԵՐՈՒՆ ՏԱԳՆԱՊԸ

Քաղաքական մեկնաբաններ եւ ռազմավարական հարցերու մասնագէտներ ու հետազօտող մարմիններ, ամենայն աչալրջութեամբ կը հետեւին, ինչպէս Միջին Արեւելքի, այնպէս ալ Ափրիկէի մէջ, ջուրի պատճառով ստեղծուած տագնապալից հարցերուն, որոնք եթէ բարդանան, բազմաթիւ երկիրներ կրնան ներքաշուիլ պատերազմներու խորխորատը, կրնան պատճառել աշխարհաւեր պատերազմներ: Ինչպէս Միջին Արեւելքի, այնպէս ալ Ափրիկէի մէջ ջուրի հարցը կենսական եւ էական հարց մըն է հոն բնակող ժողովուրդներուն համար, որովհետեւ՝ ջուրով պայմանաւորուած է երկրի մը տնտեսական բարգաւաճումը, ուժանիւթի հայթայթումը, երկրագործութեան զարգացումը, հետեւաբար նաեւ՝ ժողովուրդի մը բարօր ու կայուն կեանքը: Այդ պատճառով, բազմաթիւ երկիրներ շահագրգռուած են ջուրով եւ ջուրի բաժանման խնդրով:

Բազմիցս խօսուած է ու գրուած, Եփրատի եւ Տիգրիսի ջուրերուն առնչութեամբ Թուրքիոյ, Սուրիոյ եւ Իրաքի միջեւ գոյութիւն ունեցող տագնապի մասին: Անգարա օգտուելով Եփրատ եւ Տիգրիս գետերուն իր տարածքէն ծնունդ առնելուն հանգամանքէն, այդ գետերուն ջուրը կը շահագործէ իր նպատակներուն համար, կը կառուցէ ջրամբարտակներ, խեղդամահ ընելու աստիճան՝ իր հարաւային շրջանի հարեւան ժողովուրդները: Եւ հակառակ անոր որ, Սուրիա եւ Իրաք ունին բազմաթիւ տարակարծութիւններ (քաղաքական-գաղափարախօսական առումներով), այս հարցը լուծելու համար՝ կը կատարեն հերթական ժողովներ, մասնագիտական յանձնախումբերու մակարդակով: Ուրեմն, Թուրքիոյ որդեգրած ջուրի քաղաքականութիւնը, ուղղակիօրէն սպառնալիք մը կը հանդիսանայ Սուրիոյ եւ Իրաքի համար:

Նմանատիպ կացութիւն մը կը տիրէ հիւսիս-արեւելեան Ափրիկէի մէջ՝ Նեղոսի եւ անոր վտակներուն ջուրերուն առնչութեամբ՝ Սուտանի, Եթովպիոյ եւ Եգիպտոսի միջեւ: Այստեղ, Թուրքիոյ դերակատարութիւնը կը կատարէ Եթովպիա, իսկ արաբական երկիրներ՝ Սուտան եւ Եգիպտոս կը մատնուին, տանգապի (ինչպէս՝ Սուրիա եւ Իրաք): Եւ հակառակ անոր որ, Եգիպտոս եւ Սուտան ունին բազմաթիւ տարակարծութիւններ (հողատարածքային, գաղափարախօսական առումներով), Նեղոսի ջուրին հարցը լուծելու համար, ունին գործակցութեան եզրեր, կը կատարեն համատեղ աշխատանքներ:

Վերջերս, Եթովպիոյ կառավարութեան որոշումը՝ Նեղոսի վտակներուն վրայ ջրամբարտակներ կառուցելու ուղղութեամբ, մեծ իրարանցում ստեղծած է Եգիպտոսի եւ Սուտանի մէջ: Անոնք խորհրդակցութիւններ ունեցած են Միջազգային Դրամատան հետ, յայտնելով իրենց ընդվզումը այս հաստատութեան, որ յանձն առած է նշեալ ջրամբարտակներուն կառուցման ծախսերը, նաեւ՝ իտալական ընկերութիւն մը պիտի ունենայ իր նիւթական ներդրումը: Խարթում եւ Գահիրէ որոշած են, միասնաբար քարոզչական արշաւի ձեռնարկել Եթովպիոյ դէմ, որպէսզի ան հրաժարի իր ծրագիրներէն: Այս ծիրէն ներս, Գահիրէ պահանջած է բացատրութիւններ եթովպական կառավարութենէն եւ յիշեցուցած 1903ի համաձայնագիրը, ըստ որուն՝ Եթովպիա Նեղոս գետի շուրջ որեւէ ծրագիրի պարագային, պարտի խորհրդակցիլ Եգիպոսի եւ Սուտանի հետ:

Միւս կողմէ, եթովպական կառավարութիւնը իր ռոզման հարցերու նախարարին բերնով, հասկցուցած է այս հարցով մտահոգ կողմերուն, թէ՛. Եթովպիա ազատ է իր տարածքէն անցնող գետերու ջուրերուն օգտագործման ուղղութեամբ, թէ՛ Ատիս Ապապա յանձնառու չէ որեւէ համաձայնագիրի եւ կողմի, թէ՝ Եթովպիա հինգ տարիներ սպասած է Միջազգային Դրամատան նիւթական օժանդակութեան եւ իտալական ընկերութեան օգնութեան: Ատիս Ապապա դիտել կու տայ, թէ ինք կարիքը ունի ջուրերուն, ելեկտրուժի հայթայթման համար: Ան կը նշէ, թէ Նեղոսի ջուրերուն շահագործման առնչութեամբ, անհրաժեշտութիւնը չի տեսներ որեւէ կողմի հաւանութեան կամ համաձայնութեան:

Եթովպիա, ինչպէս այսօր, անցեալին եւս մերժած է ընդունիլ որեւէ համաձայնութիւն՝ իր հիւսիսային հարեւաններուն հետ, Եթովպիոյ Կայսրը՝ Հայլէ Սելասիէ 1959ին յայտարարած է, անոնք որոնք Նեղոսի ջուրերուն օգտագործման համար միացեալ դաշինք կնքած են եւ որոշած ջուրերուն բաժանումը, անգիտացած են, թէ՝ Նեղոսի ջուրերը իրենց մօտ կը հասնին Եթովպիոյ բարձրունքներէն, ան աւելցուցած է, թէ՝ Եթովպիա իր յատուկ ծրագիրները մշակած է Նեղոսի ջուրերուն վերաբերեալ: Աւելին, 1980ական թուականներուն, Եթովպիոյ ղեկավարը՝ Զօր Մանկեսթօ Հայլէ Մարիամ Իսրայէլէն մասնագէտներ հրաւիրած է, ուսումնասիրելու համար Նեղոսի գետին վրայ ջրամբարտակներ կառուցելու հարցը: Իսրայէլացի մասնագէտներ, մեծ ուշադրութեամբ հետեւած են այս զարգացումներուն եւ պատրաստած յոյժ կարեւոր հետազօտութիւններ՝ Եթովպիոյ ջուր ապահովելու համար:

Ինչպէս կ'երեւի, Ատիս Ապապա որդեգրած է բաւականին կարծր դիրքորոշում Սուտանի եւ Եգիպտոսի նկատմամբ, մերժելով ընդունիլ Նեղոսի ջուրերուն միջազգային հանգամանքը, անոնցմէ Սուտանի եւ Եգիպտոսի տրամադրելու անհրաժեշտութիւնը: Անշուշտ, այս կացութենէն օգտուած է Իսրայէլ եւ քաջալերած Ատիս Ապապայի վարքագիծը՝ իր արաբ հակառակորդներուն դէմ: Եթովպիա, միշտ ալ, որոշ համարում ցոյց տուած է Իսրայէլի, ան արտօնած է, որ իր երկիրը բնակող հրեաներ զանգուածաբար փոխադրուին Իսրայէլ (Ֆալաշաներ), աւելին, վերջերս երբ եթովպիացի նախարար մը մահափորձի պատճառով վիրաւորուեցաւ, ապաքինման համար մեկնեցաւ Իսրայէլ: Փաստօրէն, Իսրայէլ-Եթովպիա մերձեցումը, մէկ կողմէ իր թիրախը ունի արաբական կարգ մը երկիրներ:

Եգիպտոս եւ Սուտան ստեղծած են միացեալ յանձնախումբ մը, Նեղոսի ջուրերուն բաժանում կազմակերպող, անոնք Հալայէպ շրջանին համար ունին տարակարծութիւններ, ինչպէս նաեւ՝ Եգիպտոս Սուտանը կ'ամբաստանէ արմատական իսլամութիւնը Եգիպտոսէն ներս տարածելու ուղղութեամբ, իսկ Սուտան կը մեղադրէ Եգիպտոսը ընդդիմադիր սուտանցի ղեկավարներ իր մօտ ապաստան շնորհելու յանցանքով: Հակառակ այս ոչ-շինիչ երկողմանի յարաբերութիւններուն, կողմերը միաճակատ են Եթովպիոյ հանդէպ, որովհետեւ՝ Նեղոսի ջուրերուն հարցով Ատիս Ապապա հակառակորդ է ե՛ւ Սուտանի:

Միւս կողմէ, 1990ականներուն Սուտան եւ Եթովպիա ծընունդ տուին մասնագիտական յանձնախումբի մը, որուն պարտականութիւնն էր մշակել ջուրի բաժանման ծրագիրներ, Նեղոսի շրջակայ բընութիւնը պահպանելու միջոցներ, նոյնիսկ, յանձնախումբը 1990-1995 գումարեց ժողովներ Ատիս Ապապայի եւ Խարթումի մէջ: Վերջինը՝ 1995 Ապրիլին, տեղի ունեցաւ Խարթումի մէջ, սակայն 1995ի ամրան, Եթովպիոյ մէջ Եգիպտոսի Նախագահ Հոսնի Մուպարաքի դէմ կատարուած մահափորձին պատճառով, Ատիս Ապապայի եւ Խարթումի յարաբերութիւնները խիստ վատթարացան: Ատիս Ապապա եւ Գահիրէ կ'ամբաստանեն Խարթումը մահափորձին ետին կանգնելու յանցանքով, ինչպէս նաեւ մահափորձին ահաբեկիչներուն ապաստան տալու յանցանքով: Այս ամբաստանութեան կը միանայ ՄԱԿը, որ որոշած է խիստ միջոցառումներ որդեգրել Սուտանի նկատմամբ: Հետեւաբար, Եթովպիոյ եւ Սուտանի ստեղծած յանձնախումբը չկարողացաւ կատարել իր առաջադրանքը:

Այս բարդ իրադրութեան մէջ, երբ Եթովպիոյ, Սուտանի եւ Եգիպտոսի յարաբերութիւնները կ'արձանագրեն մերթ մագլցում եւ մերթ մեղմացում, Նեղոսի ջուրերուն տագնապը կը մնայ ամենազգայուն կէտը: Բոլոր կողմերուն համար կենսական հարց մը: Իսկ Եթովպիոյ վերջերս առած քայլը՝ Նեղոսի վրայ ջրամբարտակներ կառուցելու առնչութեամբ, կրնայ կողմերը առաջնորդել տարրողունակ բախումի մը: Այդ պատճառով, Եգիպտոս եւ Սուտան ունեցած են խորհրդակցութիւններ Միջազգային Դրամատան հետ, որպէսզի՝ վերջինս հրաժարի ջրամբարտակներուն կառուցման ծախսերը հոգալէ: Միւս կողմէ, ինչպէս կ'երեւի, Եթովպիա վճռած է մնալ անդրդուելի եւ որոշած է լաւագոյնս օգտագործել Նեղոսի ջուրերը, ի հեճուկս Սուտանի եւ Եգիպտոսի դժգոհութիւններուն:

Արդարեւ, եթէ զուգահեռ կատարենք Նեղոսի ջուրին եւ Եփրատի ու Տիգրիսի ջուրերուն հարցերուն միջեւ, կը նկատենք բազմաթիւ հանգիտութիւններ հիւսիս-արեւելեան Ափրիկէի եւ Միջին Արեւելքի մէջ: Կայ ջուրի տագնապ (Նեղոս-Եփրատ-Տիգրիս), կայ ջուրի իւրացում (Եթովպիա, Թուրքիա), կայ իւրացումը քաջալերող տարր (Իսրայէլ), կայ հակառակորդներու մերձեցում՝ ընդդէմ ջուրերու զաւթիչի եւ վերջապէս՝ առկայ է պատերազմի վտանգը...:

**Ընդհանրապէս, կրակ մը մարելու կամ բոցավառում մը շիջեցնելու համար, մարդիկ կ'օգտագործեն ջուրը, իսկ Նեղոսի, Եփրատի եւ Տիգրիսի ջուրերու պարագային, անոնք բոցավառում մը տարածելու կը ծառայեն, կը դառնան պատերազմներու կայծը...:**

ԱՐԱՄ

## Ճատրակի 32-րդ Համաշխարհային Ողիմպիականին ...

1

պրոնզէ մետալին տիրանալու, սակայն դժբախտաբար գրաւեց 5-րդ դիրքը:

Հայաստանի Գ. հաւաքականը 30 կէտերով գրաւեց 42րդ դիրքը, իսկ Բ.ը՝ 28,5 կէտերով, գաւեց 50րդ դիրքը:

Աղջիկներու հաւաքականներու ախոյեանութեան տիրացաւ Վրաստանի կազմը՝ 30 կէտով:

Հայաստանի աղջիկներու առաջին հաւաքականը գրաւեց 20րդ դիրքը, իսկ երկրորդը՝ 29րդ:

*ՀՀ նախագահ Լեւոն Տէր Պետրոսեան, ՖԻՏԷ-ի նախագահ Կիրսան Իլիւմժինովի հետ*

Յիշենք թէ Սեպտեմբեր 28-ին եւ 29-ին ՀՀ նախագահ Լեւոն Տէր Պետրոսեան այցելած է մարզահամալիր եւ զրոյցներ ունեցած է ճատրակի վարպետներ Սմբատ Լպուտեանի եւ Արշակ Պետրոսեանի հետ: Ապա ՖԻՏԷ-ի նախագահ Կիրսան Իլիւմժինովի հետ միասին հանդիպում մը ունեցած է լրագրողներուն հետ:

Հետաքրքրական պիտի ըլլայ նաեւ այն մրցումը ուր պիտի որոշուի աշխարհի « ճատրակի թագաւորը»: Սոյն մրցումին, որ պէտք է կայացած ըլլայ մինչեւ 15 Նոյեմբեր, աշխարհի ճատրակի ախոյեան հայազգի Կարրի Գասպարով եւ ՖԻՏԷ-ի կողմէ ճատրակի աշխարհի ախոյեան ճանչցուած Անաթոլի Քարփով իրարու հետ պիտի մրցակցին ընտրելու համար «թագաւոր»ը: Այս որոշումը առնուեցաւ Երեւանի մէջ գումարուած ՖԻՏԷ-ի 67-րդ համագումարի ընթացքին:

## ԲԱՐԵՐԱՐ ՔՐՏԻՆՔԸ

Մարդկային մորթը իւրաքանչիւր քառակուսի սանթիմեթրի վրայ 200 քրտնային գեղձերու «բերաններ» կը պարունակէ: Այս հաշիւով, ուրեմն, 3 միլիոնէ աւելի քրտնային գեղձեր ունի անիկա: Մարմնին զանազան մասերուն մէջ տարածուած այս գեղձերը իրենց արտադրածով մարմինը կը մաքրեն այն բնական թոյներէն, որոնք կը կազմուին ամէն վայրկեան, շարունակ:

Քրտինքին 99.5%ը հասարակ ջուր է, մնացեալ կէսը կազմուած է բնամէզէ (հիւրէք եւ այլ թունալից տարրերէ): Ասով հանդերձ, նկատի առած օրուայ մը մէջ արտադրուած քրտինքին քանակը, արտաքսուած թոյներուն չափն ալ զանցառելի չի կրնար ըլլալ:

Մէզը ալքալէն է մորթի ծալքերուն մէջ, բայց երբ օդին հետ շփման մէջ գտնուի, կ'ըլլայ թթու, ճիշդ այս պատճառով է, որ հագուստներուն քրտինքի հետ շփման մէջ եղած մասը կ'այրի եւ գոյնն ալ կը խաթարուի:

Ամրան շրջանին մորթը միւս եղանակներէն աւելի քրտինք կ'արտադրէ, իսկ շոգիանալու համար մարմնին ներքին ջերմութենէն մաս մը ծծելով, կենդանական ջերմութիւնը կը պահէ իր սովորական աստիճանին վրայ:

Ձմրան պաղ օրերուն, սակայն, քրտնահոսումը նուազագոյնի կ'իջնէ, որպէսզի ներքին ջերմութիւնը չնուազի:

Կան շատ մը հիւանդութիւններ, օրինակ թոքախտը, վահանագեղձի գերաճումը, որոնք որոնք շատ քրտնիլ կու տան: Կան հիւանդութիւններ ալ, որոնք ընդհակառակն, կը կասեցնեն զայն, օրինակ՝ շաքարախտը:

Կայ նաեւ ջղային կամ յուզական պաղ ու առատ քրտինքը, որ յառաջ կու գայ մեծ յուզումներու կամ վախերու ընթացքին:

Քրտինքի ճամբով մարմինը կը մաքրուի թէ՛ իր եւ սնունդներու արտադրած թոյներէն, այս 4

## Ք Ի Չ  Մ Ը  Ծ Ի Ծ Ա Ղ

- Ահա քեզ շօքօլաներ: Բաժնիր ընկերոջդ հետ: Բայց տես, հա, եղբայրաբար...:
- Այդ ինչպէ՞ս եղբայրաբար:
- Շատը նրան՝ քիչը քեզ...:
- Աւելի լաւ է բոլորը տամ, թող նա ինքը բաժանի եղբայրաբար:

Մի կին, որ այցելութեան էր գնացել ընկերուհուն, նրա որդուն հարցրեց.
- Փոքրիկ ջան, դուք ժամը քանիի՞ն էք ճաշելու:
- Մայրիկս ասաց, որ ձեր գնալուց յետոյ անմիջապէս կը ճաշենք:

- Նիկողոս, եթէ խելօք կենաս, դրախտ պիտի երթաս, եթէ չար կենաս՝ դժոխք պիտի երթաս:
- Իսկ ինչ պէտք է ընեմ, որ սինեմա երթամ:

## ՊԱՏԿ. ԹԵՄԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ ՆԻՍՏ

1

ինը ժողովականները.-

Լէյլէկեան Նուպար, Գասպարեան Արթօ, Ալեքսանեան Վահան, Մազլըմեան Պարգեւ, Գալփաքճեան Մանուկ, Վարձպետեան Սարգիս, Լէյլէկեան Ժորժ, Միսքճեան Անդրանիկ, Աւագօֆ Հայկ: Յաւելեալ մահացածներ՝ Գարեգին Նախըշքէրեան, Յակոբ Քէհիայեան եւ նորոգ ողբացեալ՝ Վահան Գաւուքճեան:

Ժողովը կարգ մը հարցեր յետաձգեց նոր ընտրութիւններէն ետք, օրակարգի նիւթ ընել: Յիշենք թէ մասնակի ընտրութիւններու թուական որոշուած է յառաջիկայ 10 Նոյեմբեր 1996:

Ժողովը փակուեցաւ առաջնորդ Սրբազան Հօր արտասանած Պահպանիչով:

Թղթակից
ՄԻՆԱՍ ՊԱՆՏՈՅԵԱՆ

*Աղեքսանդրիա*

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

Կիրակի 27 Հոկտեմբեր 1996, երեկոյեան ժամը 6-ին
Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ
Տեղի պիտի ունենայ
**Ս. Պսակի Խորհուրդը**
**ԱԼԵՔՍ-ի եւ ՅԱՍՄԻԿ-ի**
Կնքահայրութեամբ
**ՏԻԱՐ ԱՐԹԸՐ ՀԱՔՈՅԵԱՆԻ**
Այս ուրախ առթիւ
**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՎԱՐԴ ԵՒ ՆՈՒԷՐ ԱԼԵՔՍԱՆԵԱՆ**
**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ԱՐԹԷՄ ԵՒ ԳՈՀԱՐ ԳԷՈՐԳԵԱՆ**
Հաճոյքն ունին հրաւիրելու իրենց
ազգականներն ու բարեկամները

Fax: Alexanian-Kevorkian 2825092

## ՅԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Գահիրէի Քաղաքական ժողովը, գործադրելով «Վ.. Չագըրեան» հայերէն եւ հայագիտական նիւթերու ուսուցչաց ֆոնտին յատուկ կանոնագրութեան տրամադրութիւնները, որոշեց 1996 Յունուար-Յունիս վեցամսեայ շրջանին համար, Գալուստեան, Նուպարեան եւ Պօղոսեան վարժարաններէն ներս այս նիւթերը դասաւանդող ուսուցիչ ուսուցչուհիներուն եգ. ոսկի 6224,30 քաջալերական յատկացում կատարել 15 Յոկտեմբեր 1996-էն սկսեալ, Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Առաջնորդարաններուն միջոցաւ:

ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ
ԳԱՅԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## ՅՄԸՄ-ՆՈՒՊԱՐ ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

**Սկաուտական եւ Կայտական Շարժում**

1996 տարեշրջանի ձմեռուան եղանակի Շարժումիս չորս բաժիններու հաւաքոյթներուն ժամերը՝ Ուրբաթ 18 Յոկտեմբեր 1996-էն սկսեալ.-

ա - ԳԱՅԼԻԿՆԵՐ.- Ուրբաթ օրերը կ. ե. ժամը 6.30-8.00
բ - ԱՐԾՈՒԻԿՆԵՐ.- » » » 6.30-8.00
գ - ԿԱՅՏԵՐ.- » » » 7.00-8.30
դ - ՍԿԱՈՒՏՆԵՐ.- » » » 7.00-8.30
(Իւրաքանչիւր բաժին իր խցիկին մէջ)

ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՎԵՐԻՆ ՄԱՐՄԻՆ

## ՊԱՍՔԷԹ ՊՈԼԻ ՖԵՏԵՐԱՍԻՈՆԻ ՄՐՑՈՒՄՆԵՐ

(ԵՐԹ)
Կիրակի 20 Յոկտեմբեր 1996 կ.վ. ժամը 6-ին
Ա.-Յ.Մ.Ը.Մ.-Նուպար ընդդէմ Քլէոփաթրա
(աղջիկներ - 14 տարեկանէն վար)
երեկոյեան ժամը 8-ին
Բ.-Յ.Մ.Ը.Մ.-Նուպար ընդդէմ Սփորթինկ «Բ»
(աղջիկներ - առաջին խումբ)

Կիրակի 27 Յոկտեմբեր 1996 կ.վ. ժամը 6-ին
Ա.-Յ.Մ.Ը.Մ.-Նուպար ընդդէմ Էլ-Ֆաթի
(աղջիկներ - 14 տարեկանէն վար)
երեկոյեան ժամը 8-ին
Բ -Յ.Մ.Ը.Մ.-Նուպար ընդդէմ Քլէոփաթրա
(աղջիկներ - առաջին խումբ)

Կիրակի 3 Նոյեմբեր 1996 կ.վ. ժամը 6-ին
Ա.- Յ.Մ.Ը.Մ.-Նուպար ընդդէմ Սմուհա
(աղջիկներ - 14 տարեկանէն վար)
երեկոյեան ժամը 8-ին
Բ - Յ.Մ.Ը.Մ.-Նուպար ընդդէմ Սմուհա «Ա»
(աղջիկներ - առաջին խումբ)

**ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ**

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Ողբ. Եդուարդ Զարդարեանի ցաւալի մահուան առթիւ կը նուիրեն՝
Տէր եւ Տիկին Սարտիկ Պալաեան
«Արեւ»ին 20
«Ջահակիր»ին 20
Ընկ.ներ Պետրոս եւ Աւետիս Սովսէսեան եղբարք
«Արեւ»ին 15
«Ջահակիր»ին 15

## 3 ԲԱՐԵՐԱՐ ՔՐՏԻՆՔԸ

բնական եւ արտաքին թոյներու մարմնին մէջ կուտակումը պատճառ պիտի ըլլար զանազան հիւանդութեանց ծագումին, եթէ մէզը եւ քրտինքը իրենց բարերար դերը չկատարէին: Բնական առողջութեամբ անհատի մը թունաւոր տարրերուն երեք-չորրորդը երիկամներուն, այսինքն՝ մէզի, իսկ մէկ չորրորդն ալ քրտինքի ճամբով կ'արտաքսուի:

Ամրան շրջանին շատ քրտնողը քիչ կը միզէ, իսկ ձմրան եղանակին՝ ճիշդ հակառակը:

Քրտինքը աւելորդ ծանրութիւններ կորսնցնելու եւ մարմնին գիծերը պահելու միջոց մըն ալ է:

Քրտնելով՝ մարմինը կը կորսնցնէ ջուր: Քրտնելու համար անցեալին մարդիկ արեւելեան բաղնիքները կ'երթային:

Չքրտնող մարդուն մորթը շուտ կը ծերանայ, մինչ քրտնող մորթը աւելի թարմ եւ երիտասարդ է:

Ծերերու մորթը կը ճաքռտի, որովհետեւ չի քրտնիր:

Որպէսզի մորթը թարմ մնայ, պէտք է մաքրուի, իւղոտի եւ ջուր ստանայ: Քրտինքը այդ բոլորը միանակը կը հայթայթէ: Քրտինքը իր պարունակած իւղաթթուով կ'իւղոտէ մորթը, պայմանաւ սակայն, որ այդ իւղը շատ չյամենայ մորթին վրայ, որովհետեւ թթուն ալքալէն դառնալով վերնամաշկը կը գրգռէ:

Յիմա, որ քրտինքին զանազան բարերար դերերուն ծանօթացանք, պէտք է ուրեմն կատարենք մարզանքներ, օրինակ՝ քալել, վազել, հեծանիւ քշել, ասոնք բոլորն ալ քրտնելու լաւ միջոցներ են:

Ջուր խմելն ալ քրտնահոսումը կ'արագացնէ, պէտք է խմել առատօրէն, սակայն ճաշերու միջեւ:

Կան պարագաներ, երբ չափազանց քրտնիլը ընդհանուր տկարութեան մը ախտանշանը կրնայ ըլլալ, բայց կան ուրիշ պարագաներ ալ, երբ քրտինքը իր հոտով եւ քանակով նեղացուցիչ կը դառնայ:

Թէյը եւ սուրճը քրտնային գեղձերը գրգռող յատկութիւններ ունին, ուրեմն պէտք չէ չափազանցել:

Շատ անհաճոյ է ոտքի քրտինքին պարագան թէ՛ ենթակային եւ թէ՛ շուրջիններուն համար, երբ գարշահոտ է:

Ասոր համար ալ կը յանձնարարուի գաղջ աղի ջուրով ամէն օր լուալ զանոնք եւ ապա յատուկ սփրէով կամ փուտրով օծել:

Աւելորդ է ծանրանալ մորթին ամէնօրեայ մաքրութեան վրայ: Մաքուր մորթ մը իր պաշտօնը աւելի լաւ կը կատարէ, քան քրտնային ծակերը աղտով խցուած մորթ մը:

## 2 Յ.Մ.Մ.Ի 75 ԱՄԵԱԿԻՆ...

Նիքին ու անոր գլխաւորող Ս.Դ.Յ.Կ.ի գաղափարով լիցքաւորուած պատանիները, կոփուելով վաղուայ հայրենասէր հայու վեհ գաղափարով, **«Մի՛շտ Պատրաստ»** ծառայելու Յայրենիքի, Ազգին, Յաւատքին ու 75 ամեայ իրենց կազմակերպութեան, ակամայ մեկնեցան Գալատուրանի իրենց բանակավայրէն:

ԹՂԹԱԿԻՑ

## ՄԱՀԱԶԴ

Գահիրէի Ազգային Իշխանութիւնը, խոր ցաւով կը գուժէ յանկարծական մահը, Գահիրէի Թեմական ժողովի Բ. ատենապետ,

**ՏԻԱՐ ԵԴՈՒԱՐԴ ԶԱՐԴԱՐԵԱՆԻ**

որ տեղի ունեցած է Աթէնքի մէջ, Չորեքշաբթի 2 Յոկտեմբերի առաւօտեան, յետ կարճատեւ հիւանդութեան:

Ողբացեալը կը մեկնի այս աշխարհէն, գործելու իր կարողութեան լիութեան մէջ:

Բոլորէն յարգուած եւ սիրուած յաւէտ ողբացեալ Եդուարդ Զարդարեանի համար կատարուեցաւ Ազգային յուղարկաւորութիւն, Կիրակի 6 Յոկտեմբեր 1996-ին, յետմիջօրէի ժամը 3.30-ին, Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ:

Յիշատակն արդարոց օրհնութեամբ եղիցի:

ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ - ԳԱՅԻՐԷ

## ՏԽՈՒՐՆԻ

Այրի Տիկին Յելէն Զարդարեան, Տիկին Ռոզ Զարդարեան, Տէր եւ Տիկին Թոմ եւ Ալիս Տատլի (ԱՄՆ), Տէր եւ Տիկին Արեգ Ճիկունեան (ԱՄՆ), Մայարիտիս ընտանիքներ, Տէր եւ Տիկին Արա Պոյաճեան եւ զաւակը (Յոլանտա), Տէր եւ Տիկին Եան եւ Արտա Վան Տէր-Տիւսըն եւ զաւակները (Յոլանտա), Տէր եւ Տիկին Պերճ Զէյթունցեան (Յայաստան), ինչպէս նաեւ Մանուկեան ընտանիքները, սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն դառնաղէտ մահը իրենց սիրելի ամուսնոյն, որդւոյն, եղբօր, մօրեղբօր, զարմիկին եւ ազգականին, ողբացեալ

**ԵԴՈՒԱՐԴ ԶԱՐԴԱՐԵԱՆԻ**

որ հանգեաւ ի Տէր, Չորեքշաբթի, 2 Յոկտեմբեր առաւօտեան ժամը 12-ին, ի Յունաստան, հիւանդանոցի մը մէջ, յետ կարճատեւ հիւանդութեան:

Յուղարկաւորութիւնը տեղի ունեցաւ, Կիրակի 6 Յոկտեմբեր 1996, յետմիջօրէի ժամը 3.30-ին Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ:

Այս տխուր առթիւ, «Ջահակիր» եւ իր շրջանակը իրենց խորազգած ցաւակցութիւնները կը յայտնեն հանգուցեալի Այրիին, մօր, քրոջ, ընտանիկան պարագաներուն եւ գաղափարակից իր ընկերներուն:

## ՅԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆ - ԳԱՅԻՐԷ

**ՅՈԲԵԼԵՆԱԿԱՆ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ**
ԵՐՋԱՆԿԱՅԻՇԱՏԱԿ
**ԿԱՐԴԻՆԱԼ ԳՐԻԳՈՐ ՊԵՏՐՈՍ ԺԵ. ԱՂԱՃԱՆԵԱՆ**
ԿԱԹՈՂԻԿՈՍ ՊԱՏՐԻԱՐՔԻ
**ԾՆՆԴԵԱՆ ՅԱՐԻՒՐԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ**
Յինգշաբթի, 24 Յոկտեմբեր 1996, երեկոյեան ժամը 8-ին
**ՀԵԼԻՈՊՈԼՍՈՅ Ս. ԹԵՐԵԶԱ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ**
Լիբանանէն յատկապէս հրաւիրուած է խօսք առնելու
**ԱՐՀԻ. ՏԷՐ ՄԱՆՈՒԷԼ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՊԱԹԱԳԵԱՆ**
Ընդհանուր փոխանորդ պատրիարքական Պէյրութի թեմին
*Կը խնդրուի չխաչաձեւել - անխտիր հրաւէր բոլորին*

## ՅԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆ - ԱՂԵՔՍ.

**ՅՈԲԵԼԵՆԱԿԱՆ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ**
ԵՐՋԱՆԿԱՅԻՇԱՏԱԿ
**ԿԱՐԴԻՆԱԼ ԳՐԻԳՈՐ ՊԵՏՐՈՍ ԺԵ. ԱՂԱՃԱՆԵԱՆ**
ԿԱԹՈՂԻԿՈՍ ՊԱՏՐԻԱՐՔԻ
**ԾՆՆԴԵԱՆ ՅԱՐԻՒՐԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ**
Շաբաթ, 26 Յոկտեմբեր 1996, երեկոյեան ժամը 8-ին
**ՊՕՂՈՍԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ**
Լիբանանէն յատկապէս հրաւիրուած է խօսք առնելու
**ԱՐՀԻ. ՏԷՐ ՄԱՆՈՒԷԼ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՊԱԹԱԳԵԱՆ**
Ընդհանուր փոխանորդ պատրիարքական Պէյրութի թեմին
Կը խնդրուի չխաչաձեւել - անխտիր հրաւէր բոլորին



دار شوشنة للطباعة – رقم إيداع دار الكتب ٨٠٥

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
Հիմնուած 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 3914908, Fax:(202)4530327
E-mail: emarco@ritsec3.com.eg

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1345 - ՀԻՆԳՇԱԲԹԻ, 31 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1996 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 25 Եգ. Ղրշ. عدد رقم ١٣٤٥ - الخميس ٣١ أكتوبر ١٩٩٦

# ԺՈՂՈՎՐԴԱՎԱՐՈՒԹԵԱՆ ՍՊԱՌՆԱՑՈՂՆԵՐԸ

*Հայաստանի նախագահական ընտրութիւններուն յաջորդող իրադարձութիւններն ու դէպքերը եկան յայտնաբերելու, որ ժողովրդավարութեան գործընթացը վտանգուած է, իսկ լաւագոյն պարագային դանդաղեցման ենթակայ: Նորանկախ հանրապետութենէն ներս ժողովրդավարութիւնը յարձակումի թիրախ է ո՛չ թէ իշխանութիւններուն կողմէ, ինչպէս սովոր է այլ երկիրներու մէջ, այլ ընդդիմադիր ուժերն են, որոնք կը սպառնան ժողովրդավարութեան սկզբունքներու գործադրման ու արմատաւորման՝ Հայաստանի պետական կառուցուածքէն ներս:*

*Ժողովրդավարութիւն հասկացողութիւնը պետութիւններու պարագային կը պահանջէ քաղաքական երկու ուժերու՝ կառավարող ու իշխող խումբերու կողք-կողքի գոյութիւնը, իւրաքանչիւրը իրեն սահմանուած կարգով: Ընդունուած օրէնքներու հիման վրայ գործելով միայն, կարելի կը դառնայ ժողովրդավարութիւն կիրարկել որեւէ քաղաքակիրթ երկիրէ ներս, իսկ ժողովրդավարութեան փորձի ու աւանդոյթներու պակասը ունեցող երկիրներու պարագային անհրաժեշտ կը դառնայ յաւելեալ զգուշաւորութիւն ու ջանք:*

*Այսօր, Հայաստանի մէջ պակսողը օրինաւոր այդ ընդդիմադրութիւնն է, որ կ՚արգելակէ քաղաքական պայքարը իր ընդունուած սահմաններուն մէջ պահելու կարելիութիւնը:*

*Սեպտեմբեր 22-էն 25 պատահածները քաղաքակիրթ պայքարի սահմանները անցնելով վերածուեցան վայրագութեան, առաջին հերթին տառապանքներու գնով ծեռք ծգուած հայրենիքի մը դէմ, որ դանդաղ սակայն հաստատ քայլերով կը փորձէր իր պետականութիւնը կառուցել՝ Սահմանադրական օրէնքի գերակայութեան պայմաններուն տակ: Ժողովրդավար ծեւացողները մի քանի տարիով ետ նետեցին մեր հայրենիքը, Հայ ժողովուրդը արժանացնելով համազգային խայտառակութեան:*

*Խաբկանք է այն կարծիքը, որ վերջին դէպքերը կապուած էին ընտրութիւններու ընթացքին պատահած խախտումներուն հետ: Ապօրէն միջոցներով ու փողոցի ճնշումին տակ իշխանութեան հասնելու փորձերը ունեցան իրենց նախընթացը ասկէ առաջ եւս: Ժողովուրդի ծայներու 83 տոկոսով ընտրուած Լեւոն Տէր Պետրոսեանի պաշտօնավարութեան երրորդ ամիսը իսկ կը պահանջուէր նախագահի հրաժարականը ու իրենց կամքը պարտադրելու համար ցուցարարներ կ՚առաջնորդէին դէպի նախագահական պալատ: Գաղտնի կառոյցներ կը հաստատուէին պետութեան մէջ պետութիւն դառնալու դիտաւորութեամբ: Յեղաշրջումի փորձ կը կատարուէր իշխանութիւնը գրաւելու նպատակով, իսկ ամբաստանեալներու հասցէին եղած մեղադրանքները կը նկատուէին շինծու, խոստովանութիւնները՝ ճնշումի տակ առնուած եւ դատարանի առնելիք որոշումները «վերէն» հրահանգուած:*

*Հայաստանի ընդդիմադրութեան համար խորհրդարանական ընտրութիւնները ապօրէն էին, Սահմանադրութեան քուէարկութիւնը կեղծուած, իսկ այժմ առանց սպասելու Կեդրոնական Ընտրական Յանձնաժողովի տուեալներուն, նախագահական ընտրութիւնները նկատուեցան խարդախուած՝ հիմնուելով Երեւան քաղաքի արդիւնքներուն վրայ: Սեպտեմբեր 22-ին Հայաստանի ժողովուրդը Երեւանի նախագահը չէ որ կ՚ընտրէր, այլ ամբողջ Հայաստանի ու տակաւին ամբողջ Հայութեան:*

*Ժողովրդավարութիւնը ունի իր «խաղի» օրէնքները: Այդ օրէնքները չյարգող ընդդիմադրութեան մը գոյութեամբ, որեւէ պետութեան համար դժուար կը դառնար հարիւր տոկոսով կառչիլ ժողովրդավարութեան եւ՛ տարրին եւ՛ ոգիին եւ՛ աւանդոյթներուն:*

*Այսօրուայ դրութեամբ Հայաստանի ընդդիմադրութիւնը բարոյալքուած է: Այդ կը վկայէ Հայաստանի ժողովուրդի գիտակից կեցուածքը՝ Սեպտեմբեր 25-ի դէպքերէն ետք: Ընտրութիւններուն նախորդող ու յաջորդող հաւաքներուն մասնակցող Վազգէն Մանուկեանի համակիրները անգամ մը եւս կու գան յայտնելու, թէ պատրաստ են երթալու արկածախնդրութիւններու ետեւէն եւ իրենց դժգոհութիւնը յայտնելու ամէն տեսակ միջոցներով:*

*Հայաստանի վերջին իրադարձութիւններուն բարոյական գնահատական պիտի տայ պատմութիւնը, սակայն մինչ այդ մեր տունը կարգի դնելու պարտաւորութիւնը առաջին հերթին կ՚իյնայ հայրենաբնակ մեր ժողովուրդի ու քաղաքական ղեկավարութեան ուսերուն: Ուշ չէ տակաւին զգաստութեան գալու: Նախագահ Լեւոն Տէր Պետրոսեան արդէն իսկ յայտնած է երկխօսութեան նստելու եւ ընտրութիւններու անդրդիւնքներու վերաբերեալ Սահմանադրական դատարանի միջոցաւ լուծելու իր պատրաստակամութիւնը:*

*Ընդդիմադիր խմբաւորումներուն կը մնայ ըլլալ նոյնքան լրջախոհ ու շրջահայեաց՝ փրկելու համար Հայաստանի մանուկ ժողովրդավարութիւնը իրեն սպառնացող վտանգներէն:*

*«ՄԱՍԻՍ»* *Գ. ԽՈՏԱՆԵԱՆ*

# ԹՈՒՐՔԻԱ ՊԻՏԻ ԲԱՆԱ՞Յ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԵՏ ՑԱՄԱՔԱՅԻՆ ՃԱՄԲԱՆ

ԱՆԳԱՐԱ.- Թուրքիոյ արտաքին գործոց նախարար Թանսու Չիլէր յայտարարեց, թէ ծրագիր կայ Հայաստանի հետ ցամաքային ճամբան բանալու:

Կարս-Գիւմրի գիծը բանալու մասին առաջարկները վաղուց կը լսուէին Թուրքիոյ մէջ, սակայն, ըստ «Եու.Փի.Այ.»ի, Ատրպէյճան կ՚ընդդիմանար ատոր:

Սահմանային ապօրինի առուտուրը շրջանին մէջ ծաղկուն վիճակ մը կը պարզէ: Տեղական թրքական առեւտրական գրասենեակներ եւ առեւտրական փոքր խմբակներ երկար ատենէ ի վեր Անգարայի իշխանութիւններէն կը պահանջեն սահմանային դրան բացումը:

# ԳԱՐԵԳԻՆ Ա. ՎԵՀԱՓԱՌԸ ԱՅՑԵԼԵՑ ՆՈՐՎԵԿԻՈՅ ԹԱԳԱՒՈՐԻՆ

Նորվեկիա կատարած այցելութեան ընթացքին Ամենայն Հայոց Կաթողիկոս Գարեգին Ա. արքայական պալատէն ներս ընդունուեցաւ Նորվեկիոյ Հերալտ Թագաւորին կողմէ: Փոխանցելով նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանի ջերմ ողջոյնները: Նորին Սրբութիւնը հանգամանօրէն ներկայացուց Հայաստանի ներկայ կացութիւնը՝ հոգեւոր, մշակութային եւ տնտեսական ասպարէզներէն ներս: Զրոյցի ընթացքին խօսուեցաւ նաեւ համագործակցութեան նոր ծրագիրներու մշակման շուրջ:

Հերալտ Թագաւորը իր համակրանքն ու յարգանքը արտայայտելով Հայաստանի եւ հայ ժողովուրդի նկատմամբ, նշեց, որ Ֆրիտիոֆ Նանսէնի թողած աւանդը իր արտայայտութիւնը կը գտնէ նաեւ այս օրերուն եւ հայ-նորվեկիական յարաբերութիւնները աւելի կ՚ամրանան ու կը զարգանան:

Գարեգին Ա. Վեհափառ Հայրապետը հանդիպումներ ունեցած է նաեւ Նորվեկիոյ մշակոյթի նախարար Ասէ Կլեւլանտի եւ արտաքին գործոց նախարար Թորէ Կոտալի հետ:

**ԳԱՀԻՐԷ**

# ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԱՍՈՒԼԻՍ ԵԳԻՊՏՈՍԻ ՀԵՏ ՀԱՅՈՑ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ՇՈՒՐՋ

Երէկ 30 Հոկտ.ի երեկոյեան, Զամալէքի «Մեծ Գահիրէի Գրադարան»ին մէջ տեղի ունեցաւ շահեկան ասուլիս մը, հովանաւորութեամբ Եգիպտոսի մշակոյթի նախարար Դր. Ֆարուք Հոսնիի: Ներկայ էին եգիպտահայոց առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան, եգիպտահայ համայնքի ներկայացուցչական դէմքեր, համալսարանի դասախօսներ, պատմաբաններ, լրագրողներ, եւ հայ ու արաբ ընտրանի հասարակութիւն մը: Ասուլիսը վարեց գրադարանի տնօրէնուհի Տիկ. Ֆարտուս Ապտէլ Մենէէմ: Խօսք առաւ Հ.Բ.Ը. Միութեան ատենապետ Դր. Պերճ Թէրզեան, որ շուրջ կէս ժամուայ տեւողութեամբ ընդհանուր համապատկեր մը տուաւ հայութեան մասին, անդրադառնալով բոլոր ասպարէզներէն ներս: Իր խմամուած ելոյթին մէջ Դր. Թէրզեան հանգամանօրէն խօսեցաւ Եգիպտոսի հետ հայոց յարաբերութիւններուն շուրջ, անցեալին ու ներկայիս: Եւ եզրափակեց իր ճառը շեշտը դնելով Մեծ Եղեռնի եւ ցեղասպանութեան վրայ:

Ապա խօսք առաւ պատմաբան Դր. Մոհամմէտ Ռէֆաաթ էլ Իմամ: Հետաքրքրական իր գրոյցին մէջ, պատմաբանը նախ յիշեց այն հանգիտութեան մասին, որ գոյութիւն ունեցած է դարերու ընթացքին, հայերու եւ եգիպտացիներու վրայ եղած արշաւանքներուն: Ապա թուեց շարք մը ծանօթ հայերու անուններ, որոնք իրենց կարեւոր դերը ունեցած են Եգիպտոսի մէջ ինչպէս՝ Վարդան էլ Ռումի, Պատր էլտին էլ Կամալի, Շակարաթ էլտոր եւայլն: Եւ գալով մինչեւ 19-րդ դար, նշեց՝ Մոհամմէտ Ալիի շրջանին եւ անկէ ետք, կարգ մը հայերու անունները, որոնք մեծ պաշտօններ ստանձնած էին կառավարութեան մէջ այդ տարիներուն, ինչպէս՝ Նուպար Փաշա, Եագուպ Արթին Փաշա, Առաքել Պէյ, Տիգրան Տ՚Ապրօ, Պօղոս Նուպար Փաշա եւայլն: Ան նաեւ արտայայտուեցաւ 1915-էն ետք, Եգիպտոս գաղթած հայերուն մասին: Դրուատելով եգիպտահայութիւնը, ան ընդգծեց անոնց աշխատանքը, յատկապէս առեւտուրի, արհեստի եւ արուեստի մարզերէն ներս: Յուսկ ուրեմն, պատմաբան էլ Իմամ ➪ 2

**ՄՈՍԿՈՒԱ**

# Լեռնային Ղարաբաղի Շուրջ Բանակցութիւնները

Ինչպէս որ տեղեկացուցած էինք իր ատենին, ԵԱՀԿ-ի Մինսկի խումբի վերջին բանակցութիւնները տեղի ունեցած էր անցեալ Յուլիսին, Սթոքհոլմի մէջ: Այս այդ, նախագահական ընտրութիւններէն ետք, առաջին հանդիպումը տեղի ունեցաւ անցեալ Երկուշաբթի 28 Հոկտեմբերին, Մոսկուայի մէջ: ՀՀ պատուիրակութիւնը կը գլխաւորէր ՀՀ արտաքին գործոց նախարար Վահան Փափազ- ➪ 4

# Վազգէն Մանուկեան Սահմանադրական Դատարանին Դիմեց

Հոկտեմբեր 24-ին, Հայաստանի Հանրապետութեան Սահմանադրական դատարանին յանձնուեցաւ նախագահական ընտրութիւններու թեկնածու Վազգէն Մանուկեանի պաշտօնական դիմումնագիրը՝ նախագահական ընտրութիւններու արդիւնքը անվաւեր ճանչնալու ➪ 4

**ԼԻԲԱՆԱՆ**

# ԴՐՈՒԵՑ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԴԵՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՇԷՆՔԻ ՀԻՄՆԱՔԱՐԸ

Լիբանանում ՀՀ դեսպանութիւնից հաղորդեցին, որ Հոկտեմբեր 11-ին Պէյրութի արուարձան Նագգաշի բարձունքում դրուել է Լիբանանում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութեան շէնքի հիմնաքարը:

Նուիրատու Նազարեան ընտանիքը կալուածը տրամադրել է Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեանը՝ ՀՀ դեսպանատուն կառուցելու համար, ի յիշատակ իրենց վաղամերիկ եղբօր՝ Նուպար Նազարեանի:

Նախատեսուած է 1085 քառ. մեթր հողատարածքի վրայ կառուցել հայկական աւանդական ճարտարապետութեամբ մի շէնք՝ իր բոլոր յարմարութիւններով: Շէնքի շինարարութիւնը կ՚աւարտուի 1998 թուի Յունուարին:

Հիմնաքարի տեղադրման արարողութեանը ներկայ էին ՀՀ նախագահի աշխատակազմի ղեկավար Շահէն Գարամանուկեանը, ՀԲԸՄ-ի նախագահ Լուիզ Մանուկեան-Սիմոնը, Միութեան կեդրոնական եւ շրջանային մարմինների անդամներ, Լիբանանի հայ երեսփոխաններ եւ Լիբանանում ՀՀ դեսպանութեան բարեկամներ:

ՋԱՀԱԿԻՐ

# ԵՒՍ ՄԻ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ, ՈՐ ՀԱՅԱՍՏԱՆՆ ՈՒՆԻ ՀԶՕՐ ՈՒ ՄԱՐՏՈՒՆԱԿ ԲԱՆԱԿ

Անցեալ ամիս, աւելի քան չորս ժամ, Արմաւիրի ուսումնական ռազմափորձադաշտում տեղի ունեցան Հայաստանի զինուած ուժերի եւ Անդրկովկասում ռուսական բանակային զօրախմբի համատեղ ուսումնամարտավարական զօրավարժութիւնները՝ ներկայութեամբ Հայաստանի նախագահի, Հայաստանի զինուած ուժերի գլխաւոր հրամանատար Լեւոն Տէր Պետրոսեանի, Սահմանադրական Դատարանի նախագահ Գագիկ Յարութիւնեանի, Պաշտպանութեան նախարար Վազգէն Սարգսեանի, Ազգային Անվտանգութեան նախարար Սերժ Սարգսեանի, Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան նախագահ Ռոպերտ Քոչարեանի, վարչապետ Լեոնարտ Պետրոսեանի, Պաշտպանութեան նախարար Սամուէլ Բաբայեանի, ռուսական զինուած ուժերի գլխաւոր շտաբի պետ, բանակի ժեներալ Միխայիլ Կոլեշնիկովի, հայ եւ ռուս բարձրաստիճան զինուորականութեան: Զօրավարժութիւններին Հայաստանից եւ ռուսական կողմից մասնակցում էին 4000 սպայ եւ զինուոր, օգտագործելով 100 զրահատեխնիկա, 50 հրետանի, տասնեակ ինքնաթիռներ եւ ուղղաթիռներ:

Այս զօրավարժութիւնները մէկ անգամ եւս հաւաստեցին, որ Հայաստանն ունի հզօր ու մարտունակ բանակ, որ մեր նորանկախ պետութիւնը՝ որի ծնունդն է այս բանակը, յուսալիօրէն պաշտպանուած է:

# ՀԱՅ ՈՒՍԱՆՈՂՆԵՐԸ ՆԵՂՈՒՄ ԵՆ ՊԻԼ ՔԼԻՆԹԸՆԻՆ

Նախընտրական շրջագայութեան ժամանակ ԱՄՆ-ի նախագահ Պիլ Քլինթընը Լունգուիչ քաղաքում հանդիպել է հայ սովորողների բուռն հակազդեցութեանը:«Գալիֆորնիա Քուրիէր»ի վկայութեամբ այդ քաղաք էին եկել տարբեր բուհերում սովորող բազմաթիւ հայեր: Նրանք նախագահից պատասխան էին պահանջում, թէ նա Թուրքիային ինչու՞ չի պատժում Հայաստանը շրջափակելու համար, ինչու՞է հրաժարուել հայոց ցեղասպանութեանը ճանաչելու մասին 1992-ին իր իսկ տուած խոստումից: Հարաւային Գալիֆորնիայի համալսարանը ուսանողուհի Սերինէ Ոսկանեանը պարզապէս հարցրեց. «Ինչու՞ չէք ընդունում հայոց ցեղասպանութիւնը»: Քլինթընը խուսափողական պատասխան դիմեց, «Դա քաղաքականութիւն է, իսկ ես այստեղ եկել եմ գործից խօսելու համար»: Իսկ միւս հարցին, որ տուեց Գալիֆորնիայի նահանգային համալսարանի մասնաճիւղի հայ ուսանողական միութեան նախագահ Յովհաննէս Մանուչարեանը որ ձեւակերպուած էր այսպէս՝ «Ինչպէ՞ս կարող է մէկը, որ ներկայանում է որպէս մարդու իրաւունքների պաշտպանութեան առաջատար, աջակցել թուրքական վայրագութիւններին». Քլինթընը պատասխան չգտաւ, որովհետեւ սրութեամբ ուղղուած էր անձամբ իր քաղաքականութեան դէմ: Պարզապէս լռեց ու անցաւ այլ հարցերի:

Հայ ուսանողների անվախ, բայց քաղաքավարի տուած հարցերին անվտանգութեան մարմիններն ու հանդիպման կազմակերպիչները բացասական վերաբերմունք չցուցաբերեցին: Ընդհակառակը, նրանք դահլիճից դուրս հանեցին մի մարդու, որը սպառնում էր հայ տուող ուսանողներից մէկին:

**ԱՐՑԱԽ**

# ՍՏԵՓԱՆԱԿԵՐՏԸ՝ ՔԱՆԴԱԿԱԶԱՐԴ

**Իրականացաւ «Արցախ-96» գիպաժողովը, որի արդիւնքում պասնըհինգ ինքնատիպ քանդակներ մէկընդմիշտ գրանցուեցին Ստեփանակերտում:**

Դրանց հեղինակները փարիների վասպակի պէր շնորհալի քանդակարգործներ են, Գագիկ Ղազարեան («Վերածնուած Արցախը»), Տիգրան Արզումանեան («Մաշտոց»), Ռաֆայէլ Սարգսեան («Աւետում»), Պաղդասար Սարգսեան («Վիշապաքար»), Եւրի Սամուէլեան («Բեկոր»), Համլետ Մապինեան («Զապիկ»), Եւրի Պեպրոսեան («Ազապութիւն»), Վահան Ղազարեան («Նախնիների կանչը»), Ռոբերպ Ասկարեան («Առաջընթաց»), Ալբերպ Յարութեունեան («Մայր Ղարաբաղ»), Ալբերպ Սարգսեան («Մուսա») եւ այլն:

ԼՂՀ կառավարութիւնը որոշել է քանդակի գիպաժողովը շարունակել մինչեւ 2001 թ., հեպապնդելով գլխաւոր մի նպապակ՝ աշխուժացնել հանրապեպութեան մշակութային կեանքը եւ Արցախը հարսպացնել արուեսպի նոր արժէքներով:

# ՌՈՒՍԱԿԱՆ ՆՈՐ ՎԱՐԿ՝ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱԹՈՄԱԿԱՅԱՆԻՆ

Մոսկուայի մէջ, ԱՊՀի երկիրներու, Եւրոպական Միութեան եւ Միջազգային Ելեւմտական հաստատութիւններու հետ յարաբերութիւններու պատասխանատու նախարար Գագիկ Շահպազեան, վարկի համաձայնագիր մը ստորագրեց Ռուսաստանի առաջին փոխ-վարչապետ Ալեքսէյ Պոլշաքովի հետ:

Ըստ այս համաձայնագրին, Ռուսաստան 98,3 միլիառ ռուբլիի վարկ մը պիտի յատկացնէ Հայաստանի: Գումարը պիտի տրամադրուի աթոմակայանի գործարկումին եւ անոր վառելանիւթ գնելու համար: Նախարար Շահպազեան հանդիպում մը ունեցաւ նաեւ փոխ վարչապետ Վալէրի Սերովի հետ, քննելով գործակցութեան եւ շրջանային քաղաքականութեան վերաբերող հարցեր.

# Ամերիկեան Ակնաբոյժները Հայաստանում

Սեպտեմբեր 28-ին, Երեւանի «Զուարթնոց» օդակայանում վայրէջք կատարեց ամերիկեան ինքնաթիռ, աչքի ամենաարդի սարքաւորումներով յագեցած քլինիք: 20 օրուան ընթացքում, ԱՄՆ ակնաբոյժները հայ գործընկերների հետ համատեղ, կատարեցին ամենաբարդ վիրահատութիւններ:

Սոյն ծրագիրը գործադրուեցաւ, ՀՀ առողջապահութեան նախարարութեան եւ «Orbis International» ամերիկեան կազմակերպութեան համատեղ համաձայնութեամբ:

# 40,000 Թոն Ցորեն Հասաւ Հայաստան

Սեպտեմբերի վերջին շաբթուան ընթացքին, Վրաստանի Պաթում նաւահանգիստէն 40,000 թոն ծանրութեամբ ցորեն հասաւ Հայաստան, երկաթուղիի ճամբով: Մօտերս 5,000 թոն եւս կը սպասուի:

# ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԱՍՈՒԼԻՍ

1

հպանցիկ ակնարկ մը նետեց տեղւոյս համայնքային գործունէութեան վրայ:

Վերջաւորութեան, ներկաներէն քանի մը անձնաւորութիւններ հարցումներ ուղղեցին, որոնց պատասխանեց մասնաւորապէս Պր. Պ. Թերզեան:

Վստահ ենք թէ հարցադրողները գոհացում ստացան Պր. Թերզեանի տուած ճշգրիտ, տեղի եւ բացատրական պատասխաններէն:

Ասուլիսին յաջորդեց ցուցադրութիւնը Նապիլ Էզզաթի՝ «Հայերը Եգիպտոսի մէջ» վաւերագրական ժապաւէնին, որ վերջերս Գահիրէի 1996-ի փառատօնին առաջին մրցաշարքին արժանացած էր:

Համոզուած ենք որ անհրաժեշտ է, աւելին՝ հրամայական է, այս տեսակ ձեռնարկներով, հայը ծանօթացնել եգիպտացի ժողովուրդին: Սփիւռքահայ բոլոր գաղութներուն մէջ հայը ծանօթացնելով օտարին, վստահաբար սատարած կ'ըլլանք նաեւ ազգապահպանման նուիրական գործին, քանի որ այլեւ ունինք անկախացած հայրենիք մը:

Ա. Մ.

# Հ.Մ.Մ.-Ի 75 ԱՄԵԱԿԸ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Շաբաթ 12 Հոկտեմբերին, Փարիզի «Լօրէ Տիւ Պուա» սրահին մէջ 600 հոգիի ներկայութեամբ, հանդիսաւոր կերպով նշուեցաւ սփիւռքահայ մարզական մեծագոյն կազմակերպութիւններէն՝ ՀՄՄ-ի հիմնադրութեան75-ամեակը եւ տեղւոյն ՀՄՄ-ի 10-ամեակը:

Ներկաներուն մէջ էին բազմաթիւ հիւրեր, քոյր կազմակերպութեանց ներկայացուցիչներ, տարբեր երկիրներէ ժամանած ՀՄՄ-ի եւ Հնչակեան Կուսակցութեան ղեկավարներ:

Երեկոն խանդավառեցին ֆրանսահայ «Անի» նուագախումբը, ինչպէս նաեւ՝ էսթրատային սիրուած երգիչներ՝ Ատիս Հարմանտեան (Գալիֆորնիայէն) եւ Պերճ Նազգաշեան (Լիբանանէն):

Արդարեւ, պատմական եւ անմոռանալի խանդավառ երեկոյ մըն էր, որ յիշատակելի պիտի մնայ թէ ՀՄՄ-ի եւ թէ ֆրանսահայ գաղութի մարզասէր շրջանակներուն համար:

# ՇԱՐԼ ԱԶՆԱՒՈՒՐ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ

Սեպ. 20-22ի երեւանեան շաբաթավերջը քաղաքական կարեւոր անցքերով յագեցած էր: Շաբաթ օրը նշուեցաւ Հայաստանի անկախութեան հնգամեակը, իսկ Կիրակի ժողովուրդը քուէատուփ պիտի դիմէր ընտրելու համար Հանրապետութեան արդէն երկրորդ շրջանի նախագահը: Պատմական այս օրերէն ներշնչուած ապրումները իրենց հզօր մրցակից ունեցան այն մեծ խանդավառութիւնը, զոր ապրեցաւ Հայաստանի ժողովուրդը երգիչ իր մեծ ազգակիցին՝ Շարլ Ազնաւուրի այցելութեան առիթով: Բարերարի, Հայաստանի շրջուն դեսպանի անոր մինչեւ այսօր տրուած ստորոգելիները եւս հպարտութիւն պատճառելով հանդերձ, ոչինչ կրնար մրցակից ըլլալ զինքը վերջապէս որպէս երգիչ վայելելու երջանկութեան: Ան եկած էր երգելու տարիներու անհամբերութիւն կուտակած իր ազգակիցներուն համար: Եկած էր իր նուագախումբով, ընկերացող երգիչներով, թէքնիսիէններով, կրկնելու փարիզեան իր ռեսիթալը Երեւանի Օփերայի բեմէն:

Երգահանդէսին նախորդեց յայտարարութիւն մը, թէ Ազնաւուր պաղառութիւն ունի ու կը վախնայ որ ձայնը կը փորձէ դաւաճանել իրեն. այդ պատճառով կանխաւ ներողութիւն կը խնդրէ: Երգիչը բեմին վրայ յայտնուեցաւ որպէս հարազատ հայաստանցի մը, ձայնին դաւաճանելու հաւանականութեան դէմ որպէս ամենէն ազդու միջոց՝ գաւաթ մը մեղր բռնած ձեռքը: Դրաւ զայն դաշնակին վրայ, պարբերաբար անկէ դգալ մը առնելով ընկրկումի վախին դէմ:

Ազնաւուրի արուեստին հանդէպ հեպաքրքրութիւնը, խանդավառութիւնը խմբած էր երկրին մեծագոյն դէմքերէն մինչեւ փոքրերը: Առաջինները կը գլխաւորէր նախագահ՝ Լ. Տէր Պետրոսեան, քովը ունենալով Ամենայն Հայոց կաթողիկոս Գարեգին Ա.ը, Ազգային Ժողովի նախագահ՝ Բ. Արարքցեանը, Սահմանադրական Ատեանի նախագահը, վարչապետը, նախարարներ, եւայլն:

Ազնաւուր հայերէն դիմելով ժողովուրդին, ըսաւ թէ

3

# ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆ ՀԱՅՈՑ - ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## ԸՆՏՐԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Աղեքսանդրիոյ Պատկ. Թեմական Մասնակի Ընտրութիւնը տեղի պիտի ունենայ Կիրակի, 10 Նոյեմբեր 1996-ին: Առ այդ, ընտրութեան մասնակցելու իրաւունք ունեցողներու ուշադրութեան կը յանձնենք հետեւեալները.-

Ա) Աղեքսանդրիոյ Թեմական Մասնակի Ընտրութիւնը տեղի պիտի ունենայ Կիրակի, 10 Նոյեմբեր 1996-ին, առաւօտեան ժամը 9-էն մինչեւ երեկոյեան ժամը 5, որմէ ետք ներկայացողները կը մերժուին քուէարկել:

Բ) Համաձայն եգիպտահայոց կազմական կանոնագրին - յօդուած 11, ընտրելի են Եգիպտոսի Արաբ. Հանրապետութեան հպատակ եւ 30 տարիքը բոլորած ազգայինները, որոնց անունները քուէարկելու իրաւունք ունեցողներու ցանկերու մէջ կ'երեւին:

Գ) Ընտրութեան օրը անձնական հպատակութեամբ քուէարկող ամէն ազգային պարտի ի ձեռին ունենալ հպատակութեան վկայագրին բնագիրը կամ ինքնութեան քարթին (Պըթաքա Շախսիյէ կամ Աիլիյէ) որպէսզի զայն ներկայացնելէ վերջ ստանայ իր ընտրութեան քարթը եւ քուէարկէ:

Դ) Իրենց հօր հպատակութեան վկայագրով ընտրելու իրաւունք ունեցող ամէն ազգային պէտք է միասին բերէ իր ինքնութեան քարթին (Պըթաքա Շախսիյէ կամ Աիլիյէ) բնագիրը, որպէսզի զայն ներկայացնելէ վերջ ստանայ իր ընտրութեան քարթը եւ քուէարկէ:

Ե) Հպատակութեան քարթի կամ ինքնութեան քարթի լուսատիպ պատճէններով ներկայացնողները պիտի չկարենան մուտք գործել Առաջնորդարանի բակէն ներս, ուստի պիտի կորսնցնեն իրենց ընտրելու իրաւունքը:

Զ) Քուէաթուղթին վրայ ընտրելիներու համար որոշեալ 12 անունէն աւելի գրուած քուէաթուղթերը անվաւեր կը նկատուին:

Է) Ընտրող ազգայինները ընտրութեան օրը ընտրական յատուկ տոմարի մը մէջ ստորագրելէ վերջ կը ստանան իրենց ընտրական պաշտօնական քարթը, իսկ առանձնասենեակը մտնելէ առաջ իրենց կը տրուի մասնաւորաբար կնքուած պահարան մը, որուն մէջ ազատօրէն կը դնէ իր քուէն, ապա կը դիմէ դէպի քուէատուփ:

Ը) Մէկէ աւելի քուէաթուղթ պարունակող պահարաններու քուէները բոլորովին չեղեալ կը համարուին:

Թ) Ամէն ստորագրուած քուէաթուղթ չեղեալ կը համարուի:

ԸՆՏՐԱԿԱՆ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎ
ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## ՆՈՐ ՀԱՅԱՍՏԱՆ Օրաթերթի 11-րդ Հրատարակութիւնը՝
# ՅՕՇՈՏՈՒԱԾ ՀԱՅԱՍՏԱՆ

*ԴԱՒԻԹ Յ. ԷՎԵՐԵԿԼԵԱՆ*

Ատենին, հաճոյքով ստացանք, Լոս Անճելըսէ ի վեր մեզի ուղարկուած, հայոց մեծ եղեռնեան դէպքերը խորհրդանշող գողտրիկ կողքով, 212 էջերէ բաղկացած խնամեալ տպագրութեամբ՝ **«Յօշոտուած Հայաստան»** հատորը:

Սա եւս հովանաւորուած էր Յ. Նազլիքեան եւ Վ. Եափուճեան ընտանիքներու՝ հայ հեղինակները քաջալերելու յոյժ գնահատելի նըպատակաւ հիմնուած հրատարակչական ֆոնտին կողմէ:

Գիրքը անգլերէնով գրուած 1918-ին Հանրի Լ. Գէյտսի կողմէ՝ կը ներկայացնէ Արշալոյս Մարտիկեան արիասիրտ հայ պարմանուհիին ապրած ոդիսականը, արեան ճանապարհներու վրայ 1915-ի ցեղասպանութեան դժնդակ տարիներուն: Հեղինակը իր յառաջաբանին մէջ, պատմուած դէպքերուն վաւերականութիւնը կը հաստատէ այդ օրերու Մեծն Բրիտանիոյ դեսպան՝ Ճէյմս Պրայսի փաստարկուած վկայութիւններով:

Իրերայաջորդ՝ - **Սկսուեցին Սարսափի Օրեր, Զաբթիէների գործելակերպը, Աղջիկներ Կ. Պոլսի հարեմների համար, Մալաթիա մահուան քաղաք** եւ այլ տասնեակ մը գլուխներու մէջ կը տողանցեն ականատես հայուհիին ապրած անհաւատալի թուացող դժոխային օրերը, որոնց մէջ կը պատմուին մանրամասնութիւններ անապատ քշուած ամբողջ ընտանիքներու, թրքական հարեմներու վաճառուած կոյս աղջիկներու, ճամբեզրին բռնաբարուած կիներու, սովամահ եղող մանկահասակ երեխաներու մասին:

Հայոց ցեղասպանութեան մեր օրեայ ուրացողները ըմբերանելու կոչուած հրատարակութիւններու շարքը երկարող սոյն գործը՝ խնամուած թարգմանութեամբը Գուրգէն Պ. Սարգսեանի, իւրաքանչիւր հայու համար ընթերցանութեան արժանի հատոր մը կը հանդիսանայ արդարեւ:

Հատոր մը, մանաւանդ արժանահաւատ օտար գրչով մատուցւած՝ արժանի է տարածուելու ամենուրեք:

Կը շնորհաւորենք, 1918-ին հրատարակուած թանկագին գործ մը եօթ տասնեակ տարիներ ետք հայացուած, լոյս աշխարհի բերող ոսկեսիրտ անձերը եւ անոր հրատարակութիւնը իրագործողները:

*Մոնրէալ*

---

# Քիւրտերը Մեզմէ Ներողութիւն կը Խնդրեն

*Առանց որեւէ մեկնաբանութեան, մեր ընթերցողներուն կը ներկայացնենք Սուրիոյ Քրտական Դեմոկրատական Յառաջդիմական կուսակցութեան պաշտօնաթերթ՝ «Տիմոքրաթի» թերթէն առնուած այս յօդուածը, ուր յօդուածագիրը Ապրիլ 24-ին առթիւ ցաւակցական զգացումներ արտայայտելէ ետք, իր ժողովուրդի անունով ներողութիւն կը խնդրէ հայերէս, անցեալի պարահարներուն համար, հետեւեալ գրութեամբ:*

*ԽՄԲ.*

«Հայկական ջարդերու յիշատակութեան առթիւ, թուրք թուրանական, ֆաշիստ ղեկավարները, շահագործելով առաջին աշխարհամարտէն բխած իրավիճակը ու համաշխարհային քաղաքական իրադարձութիւնները, ձեռնարկեցին եւ գործադրեցին իրենց կողմէ վաղուց փայփայուած երազները, ոչնչացնելով օսմանեան պետութեան ոչ-թուրք ժողովուրդները եւ վերջ տալով անոնց ազգային ազատագրական պայքարին:

Ծրագրի գործադրութիւնը սկսաւ 1915 թուականի Ապրիլ 24-ին, ջարդարարական լայնատարած պատերազմով մը, առաջնահերթութիւնը տալով հայ ժողովուրդին, որուն նկատմամբ գործադրեցին պատմութեան ամենամեծ սպանդը, ոչնչացնելով մէկուկէս միլիոն հայ: Այս սպանդը արդիւնքն էր թուրք պետականութեան կողմէ շատ մանրամասնօրէն փլանաւորուած դաւադրութեան մը, պատճառաբանելով, թէ հայերը կը պատրաստուին անկախ պետութիւն մը կառուցելու, թէ անոնք կը զինեն իրենց երիտասարդները պետութեան դէմ միանալով ռուսական բանակին, թէ անոնք համակրանք ցոյց կու տան դաշնակիցներուն եւ այլ անհիմն պատճառաբանութիւններ:

Թուրք ոստիկաններու յարձակումներուն դէմ հայեր թոյլ դիմադրութիւն մը կը ցուցաբերեն, որովհետեւ թուրք զինուորները նախօրօք պատրաստուած էին սպանութիւններ, կողոպուտներ եւ բռնաբարական արարքներ կատարելու:

Թրքական կառավարութիւնը իր ծրագրի ամբողջացման մէջ կը հասնի յաջողութեան, շնորհիւ այն ոճրագործներուն եւ քրէական յանցագործներուն, որոնք ազատ արձակուած էին թրքական բանտերէն, անոնց խոստանալով ընդհանուր ներում հայերու գանկերուն փոխարէն:

Այնուհետեւ, թրքական պետութիւնը հրահրեց նաեւ միամիտ եւ տգէտ թուրք եւ յատկապէս քիւրտ զանգուածի կրօնական մոլեռանդութիւնը:

Հասարակաց գերեզմանափոսերը, որոնք այսօր կը գտնուին հոս եւ հոն, ու փոքրաթիւ ողջ մնացած ականատեսները ապացոյց մըն են այն բազմահազար կիներուն, մանուկներուն եւ ծերերուն, որոնք թրքական սուիններէն եւ ֆաշական-թուրանական, բարբարոսական վայրենի բռնութիւններէն փախչելով հասան հարաւային շրջանները, ուր պահպանութեան տակ առնուեցան այդ տեղամասերու աշիրաթներէն, մղուած՝ բարի դրացիութեան պարտականութեան զգացումէն:

Աշիրաթներէն ոմանք հասկցած էին դաւադրութեան էութիւնն ու իմաստը եւ կը զգային, որ թուրքը նպատակադրած էր իրարու դէմ լարել դարերով համերաշխութեան եւ բարի դրացիութեան մէջ ապրող ժողովուրդները եւ այդպիսով կառավարութեան համար կարելի պիտի ըլլար հեշտութեամբ ոչնչացնել զանոնք մէկը միւսին ետեւէն:

Այս տխուր առիթով, մենք կը բաժնենք բարեկամ հայ ժողովուրդին վիշտն ու ցաւը եւ ներողութիւն կը խնդրենք, եթէ դեռեւս պատեհութիւնը ունինք ներողութիւն խնդրելու, այն բոլոր արարքներուն համար, որոնք այդ ժամանակաշրջանին գործադրուեցան տգէտ եւ անօրէն քիւրտերու միջոցով, որոնք մասնակցեցան այդ ջարդերուն:

Կը յուսանք, որ այսուհետեւ բարելաւուին եւ ամրապնդուին փոխ-օգնութեան եւ բարեկամական կապերը մեր երկու դրացի, կողք կողքի գոյակցող ժողովուրդներուն միջեւ:

*Թարգմանեց՝ Բժ. Ալեքսանդր Քէշիշեան*

---

# «ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐՑ» Հանրագիտարանը Լոյս Տեսած

Կոստանդին Խուդավերդեանի գլխաւոր խմբագրութեամբ. լոյս տեսած է «*Հայկական Հարց*» հանրագիտարանը:

Ինչպէս կ՚ըսէ խմբագիրը, հոն ամփոփուած են նիւթին առնչուած ամէն բան, միջազգային փաստաթուղթեր, վեհաժողովներու, խորհրդարաններու որոշումներ, ցեղասպանութեան պատմութիւնը, զանազան յօդուածներ:

Պատրաստութեան մասնակցած են նաեւ սփիւռքէն (Ֆրանսա, ԱՄՆ, Անգլիա, Յունաստան, Լիբանան, Գանատա, Արժանթին, եւայլն) մասնագէտներ: Հատորը նախապէս լոյս տեսած էր ռուսերէն, ունի 10,000 տպաքանակ: Մտադրութիւն կայ զայն անգլերէնի թարգմանելու:

---

# ԱՌՈՂՋԱՊԱՀԱԿԱՆ ԵՐԿՈՒ ՏԱՍՆԱԲԱՆԵԱՆԵՐ

### ՔԱՌԱՍՈՒՆ ՏԱՐԵԿԱՆԷՆ ԱՌԱՋ

1) Նախաճաշէն առաջ խմել մէկ կամ երկու գաւաթ ոչ-շատ պաղ ջուր:
2) Նախաճաշին կարեւորութիւն տալ:
3) Օգտագործել կարագ եւ անուշ:
4) Երեք ճաշերու միջեւ որեւէ բան չուտել:
5) Հեղուկ կամ ջուր խմել ճաշելէ մէկ ժամ առաջ կամ ճաշելէ մէկ ժամ ետք:
6) Պտուղ ուտել անպայմա՛ն:
7) Քնանալէ երկու ժամ առաջ ընթրել:
8) Մարզանքի հետեւիլ եւ շատ քալել:
9) Մի՛շտ մաքուր օդի մէջ գտնուիլ եւ չծխել:
10) Օրական 8 - 10 ժամ քնանալ, 8 ժամ աշխատիլ, 2 ժամ կատարեալ հանգիստ ընել եւ մնացեալ 4-6 ժամերուն հետեւիլ օգտակար ու հաճելի զբաղումներու:

### ՔԱՌԱՍՈՒՆ ՏԱՐԵԿԱՆԷՆ ԵՏՔ

1) Նախաճաշէն առաջ խմել մէկ կամ երկու գաւաթ ոչ-շատ պաղ ջուր:
2) Անպայմա՛ն նախաճաշել:
3) Հրաժարիլ՝ աղէն, ճարպէն եւ կարագէն:
4) Երեք ճաշերն ալ չափաւոր ուտել:
5) Ճաշելու ընթացքին ջուր չխմել:
6) Ընդհանրապէս ուտել բանջարեղէն եւ պտուղ:
7) Քնանալէն 2 ժամ առաջ ընթրել՝ թեթեւ:
8) Չծխել. եւ ոգելից ըմպելին չչափազանցել:
9) Մաքուր օդ, մարզանք եւ միշտ քալել:
10) 10 ժամ քնանալ, 8 ժամ աշխատանք, 3 ժամ կատարեալ հանգիստ եւ 3 ժամ զանազան զբաղումներ:

**ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ**

---

# ՆՈՒԻՐՈՒՄ

*Քաղցրահունչ Մարկօ-ի յիշատակին*

Իմաստութեան ակունքներէն ըմպեցիր դուն անյագօրէն
Ու երգեցիր մեծ ստնտու՝ փայլը ջերմուկ արեւներուն.
Ու կախուեցար յորդահոսան Գեղին ատոք ողկոյզներէն
Ու թրջեցիր հողը բերրի, ծառը բարի, քերթո՛ղ արթուն...

Ծեփորեցիր արշաւներու յաղթանակի երազը սին,
Ողջունեցիր առատութեան ու բերկրանքի դաշտերը գէս,
Բայց դուն նորէն փակ պահեցիր շունչը հոգւոյն, հունչը սրտին՝
Աշխարհին դէմ զգայազիրկ, մարդկանց համար կարօտակէզ...

Քերթո՛ղ բարի, մոռցա՞ր արդեօք որ հո՛ս դրին, սկիհեցին՝
Այդ յղացքի, վերընձիւղման, յաւերժութեան սաղմերունքով
Հիւլէնե՜րը լուսապայծառ, հիւսկէննե՜րը հրաշածին՝
Ստեղծագործ նուիրումի խորհուրդներով, պատարագով...:

ՀԱՅԿ ԺԱՄԿՈՉԵԱՆ

---

<u>ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ</u>

# ՄԱՐԿՐԻԹ - ՊԱՅԾԱՌ ՅԱԿՈԲԵԱՆ ՀԻՄՆԱԴՐԱՄ

Մօ. Եդուարդ Յակոբեան իր յաւէտ ողբացեալ կնոջ, վաստակաշատ երգչուհի եւ Ազգային Բարերարուհի Մարկրիթ - Պայծառ Յակոբեանի քաղցր յիշատակին հաստատած Հիմնադրամի կանոնագրին համաձայն, Դեկտեմբեր 1--էն սկսեալ, Հիմնադրամի եկամուտները պիտի բաշխուին հետեւեալ կերպով.-

| | | |
|---|---|---|
| Արեւ Օրաթերթին | | 1200 |
| Յուսաբեր Օրաթերթին | | 1200 |
| Ջահակիր Շաբաթաթերթին | | 600 |
| Գալուստեան եւ Մերճանեան Մանկապարտէզներու ուսուցչուհիներուն | | 800 |
| Գահիրէի եւ Աղեքս. Հոգեւորականներուն | | 350 |
| Շնորհալի երգչախումբին | | 550 |
| Սարկաւագաց դասին | | 200 |
| Ս. Եկեղեցւոյ Տիկնանց Խնամակալութեան | | 200 |
| Ընդհանուր գումար | Եգ. ոսկի | 5100.- |

ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

---

# ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Հայկական Ընթերցասրահի վարչական կազմը, Տիկնանց «Մարօ» Յանձնախումբը, «Նոր Սերունդ Մշակութային Մարմին»ը, «Հ.Մ.Մ. Երիտ. Մարմինը» եւ «Ջահակիր» շաբաթաթերթի խմբագրութիւնը, ներկայիւս կը ծանուցանեն, թէ Կիրակի, 3 Նոյեմբեր 1996-ին, Ամենայն Սրբոց Գերեզմանատան Մատրան մէջ յաւարտ Սուրբ Պատարագի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Ազգային Բարերարուհի բարեյիշատակ՝

**ԸՆԿԵՐՈՒՀԻ ՄԱՐԿՐԻԹ-Պ. ՅԱԿՈԲԵԱՆԻ**

մահուան վեցերորդ տարելիցին առթիւ:

Հայկական Ընթերցասրահի անդամ անդամուհիներէն, ինչպէս նաեւ հանգուցեալ ընկերուհիին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

---



# ՇԱՐԼ ԱԶՆԱՒՈՒՐ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ

'Ils sont tombe' էն ետք ի տես երկրին ներկայ կացութեան, կ՚ուզէ գրել նոր երգ մը, այս անգամ «Կ՚անգուն են անոնք» վերնագրով:

Երգահանդէսը որ հեռասփռուեցաւ ուղղակի, կը բաղկանար մէկական ժամուան երկու մասերէ. առաջինը սկսաւ 'Hier encore' ով, թէեւ խմբած էր նոր կտորներ. երկրորդ մասին մէջ առնուած էին հանրածանօթ իր երգերը, որոնք դասականացած են այլեւս:



*Շարլ եւ Քաթիա Ազնաւուր*

Ազնաւուր, որուն խոր յուզումը ակներեւ էր, շատ յաղորդական մթնոլորտ մը ստեղծեց պարբերական իր խօսքի բաժիններով: Իւրայատուկ սրամտութեամբ թաթաւուն այդ պահերէն մէկուն օրինակ. նուագողները ներկայացնելու կարգը երբ դաշնակահարին հասաւ. ան ցոյց տալով զինքը յայտարարեց.«դաշնակ...» ու անմիջապէս աւելցուց. «չէ՛, չէ՛ քաղաքական յայտարարութիւն չէ ըրածս»: Յետոյ յատկապէս շեշտեց Օլաֆեան մականունը, քլառինէթ ու սաքսոֆոն նուագող երիտասարդին, աւելցնելով որ Անգարայէն է, հայերէն չի գիտեր, բայց լաւ հայ է: Ապա ներկայացման կարգը հասաւ իրեն ընկերացող երկու երգչուհիներուն. որոնց մէկը՝ Քաթիա Ազնաւուրն էր, իր աղջիկը. յայտնութիւնը երկարատեւ ծափերու պատճառ եղաւ, այնքան որ Ազնաւուր խնդրեց չչափազանցել, որպէսզի աղջիկը չշփանայ:

Երգահանդէսին աւարտին, ամբողջ սրահը ոտքի, երկար վայրկեաններ ծափահարեց երգիչը ու թիւ չկար այն ծաղկեփունջերուն, որոնք մեծ մասով փոքրիկներու կողմէ նուիրուեցան իրեն:

«ՅԱՌԱՋ»

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

Հիմնուած 1948

چاهكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 3914908, Fax:(202)4530327
E-mail: emarco@ritsec3.com.eg

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1346 - ՀԻՆԳՇԱԲԹԻ, 21 ՆՈՅԵՄԲԵՐ 1996 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 25 Եգ. Դիկ. عدد رقم ١٣٤٦ - الخميس ٢١ نوفمبر ١٩٩٦


## ՄԵԾ ՀԱՅՐԵՆԱՍԷՐԸ
## Ողբ. Սարգիս Պալաեանի
### Մահուան Երկրորդ Տարելիցին Առթիւ

Ահաւասիկ երկու տարի անցած է այն օրէն, երբ ճակատարգի սեւ մանգաղը անգութօրէն հնձեց արժանաւոր վերթերան ընկեր մը, «Ջահակիր» շաբաթաթերթիս «Նոր Շրջան»ի հիմնադիր - սեփականատէր, վաստակաւոր խմբագիր, մտաւորական մը, Հնչակեան հաւատաւոր բազմամեայ ղեկավար մը, Գահիրէի Հայկական Ընթերցասրահի ցկեանս պատուոյ նախագահ մը, եգիպտահայ ազգային գործիչ մը և ընտանիքի տիպար հայր մը:

Հանգուցեալ ընկերը թէեւ տարիներ առաջ Գանատա հաստատուած էր, սակայն միշտ կը հետաքրքրուէր ու կը զբաղուէր «Ջահակիր»ով: Նոյնպէս մտահոգուած էր Հայկական Ընթերցասրահի գործունէութեամբ:

Բոլորս կը սիրէինք ու կը յարգէինք զինք, շնորհիւ իր անկեղծ ու յանդուգն բնաւորութեան: Եւ այս կը շեշտուէր նաեւ իր կանայական գրութիւններուն կամ բոցաշունչ ճառերուն մէջ: Ան արդարօրէն պաշտպանած է իր կուսակցութեան սկզբունքները: Գաղափարապաշտ իր խառնուածքով, համոզուած էր որ Ս.Դ. Հնչակեան Կուսակցութիւնը կարեւոր դեր մը ունի կատարելիք արտասահմանի թէ հայրենիքի մէջ: Հետեւաբար ընկեր Սարգիսի ներդրումն ու դերակատարութիւնը կուսակցութենէն ներս եղաւ գերգնահատելի, որովհետեւ իր հայրենասիրական անխառն զգացումները փարեցաւ հաստատ տեսլականով՝ հայրենիքի անկախութեան երազով: Արդարեւ մեծապէս խանդավառուած էր հայրենիքին ձեռք բերած անկախութեամբ, սակայն ափսոս չկարողացաւ տեսնել:

Յիշենք թէ, երջանկայիշատակ Վազգէն Ա. Հայրապետ Դեկտեմբեր 1993-ին, հաճած էր պատուել իր Սրբատառ Կոնդակով, բազմաբեղուն, երկար տարիներու հասարակական եւ լրագրական գործունէութեամբ յայտնի ընկեր Սարգիս Պալաեանին, որուն տուչութիւնը տեղի ունեցաւ Մոնրէալի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ մէջ, ձեռամբ՝ Գանատահայոց առաջնորդ Գերշ. Տ. Յովնան Արք. Տէրտէրեանի:

Տարիներու թաւալումով, կսկիծը կը վերածուի մահուան հետ հաշտուելու գաղափարին: Սակայն ողբացեալ Սարգիսին պարագային նոյնը չէ: Յարդ չենք համոզուած այս մեծ հայրենասէրին կորուստին: Չենք համպուած որ «Ջահակիր» թերթը կը հրատարակուի առանց իրեն: Ամէն անգամ որ հարց մը կը ծագի եւ կարիքը կ'ունենանք ճշմարտութիւնը պարզելու, անմիջապէս կը յիշենք իր ուշագրաւ խօսքը. *«Մի՛ վախնար իրականութիւնը գրելու»*: Մենք ալ մեր կարգին կը ջանանք քալել այդ նոյն ուղիէն:

Հաղորդական իր բնաւորութեամբ և նկարագրի վճռակամութեամբ, քաջաբար կարողացաւ դիմագրաւել ամէն տեսակ դժուարութեանց: Սիրեց աշխատանքը, գրելն ու կարդալը և ի գին ամէն զոհողութեանց, 1963-էն սկսեալ, տարիներ շարունակ հրատարակեց «Ջահակիր»ը:

Զարմանալիօրէն հանգուցեալ ընկերը ամբարած էր հարուստ իմացական պաշար: Նաեւ ունէր մտաւորական արժանիք: Ան կը հաւատար հայ մամուլին անհրաժեշտութեան: Այս բոլորը կը նշմարենք երբ կը թղթատենք նախկին «Ջահակիր»ի համարները: Անոնց մէջ կը տեսնենք, թէ հայ մշակոյթի անդաստանին որքան գրական ներդրումներ կատարած է, իր իւրայատուկ երանգով:

Ղեկավար Սարգիս առաջնորդող մըն էր: Իր գործունէութեան ծիրը ընդհանրապէս ընդգրկած է հայրենիքը, հայ մամուլը, մեր ազգային քաղաքական կեանքը և գաղափարական սկզբունքները: Այս պատճառով ալ իր կենդանութեան տարած հայրենանուէր գործունէութիւնը լուսաւոր էջ մը պիտի ըլլայ յատկապէս եգիպտահայ պատմութեան մէջ և օրինակ պիտի հանդիսանայ ապագայ սերունդներուն:

Այսօր մեզմէ յաւէտ մեկնած է, բայց իր աւանդը պիտի մնայ յաւերժ: Յարգանք իր անթառամ և խնկելի յիշատակին:

Ա. Մ.

## Աղեքսանդրիոյ Թեմական Ժողովի Մասնակի Ընտրութիւնները

Կիրակի 10 Նոյեմբեր 1996-ին տեղի ունեցաւ Թեմական ժողովի մասնակի, այսինքն 12 դադարեալ անդամներուն տեղ, 12 երեսփոխաններու ընտրութիւնը: Մէկ համերաշխական ցանկ մը ներկայացուած ըլլալով, ընտրական պայքար տեղի չունեցաւ:

Ընտրութիւններուն ցուցակներուն արձանագրուած 257 երկսեռ ընտրողներէն մասնակցեցան միայն 140 հոգի (55% ):

( Քուէարկութեան արդիւնքները տեսնել էջ 2 )

## ՀՀ Նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանի Երդման Արարողութիւնը

Երկուշաբթի 11 Նոյեմբերին, Ազգային ժողովի դահլիճին մէջ, յատուկ նիստի մը ընթացքին, տեղի ունեցաւ ՀՀ նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանի երդման արարողութիւնը: Բաբգէն Արարքցեանի հրաւէրով, նախագահը կարդաց իր երդումը, աջ ձեռքը դնելով մատենադարանին մէջ պահուող հնագոյն՝ 7-րդ դարու թուագրուող հայերէն ձեռագիր Աստուածաշունչի՝ Վեհամօր Աւետարանի եւ ՀՀ Սահմանադրութեան վրայ:

## ՀԱՅԱՍՏԱՆ ՄԱՍՆԱԿՑԵՑԱՒ Մ. ԱՐԵՒԵԼՔԻ ԵՒ ՀԻՒՍԻՍԱՅԻՆ ԱՓՐԻԿԷԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ

Հայաստան մասնակցեցաւ Նոյեմբեր 12-14 Գահիրէի մէջ կայացած Մ. Արեւելքի եւ Հիւսիսային Ափրիկէի տնտեսական խորհրդաժողովին, ուր կը հովանաւորէին Մ. Նահանգներ եւ Ռուսիա: Հայաստանի պատուիրակութիւնը կը գլխաւորէր Եգիպտոսի մօտ Հայաստանի Հանրապետութեան դեսպան Դր. Եդուարդ Նալպանտեան :

Ինչպէս կը հաստատեն ՀՀ դեսպանատան աղբիւրները, Հայաստանի մասնակցութիւնը այս կարգի միջազգային համագումարներուն կարեւոր է եւ արդիական հայկական պետականութեան համար: Աշխարհագրականօրէն սահմանակից ըլլալով Մ. Արեւելքին, Հայաստան ունի որոշ տնտեսական շահեր շրջանին մէջ եւ՝ բնականաբար, ապագային սեփական հնարաւորութիւններու զարգացման զուգընթաց պէտք է ձգտի իր շուրջ կատարուող համարկման ընթացքներուն մաս կազմել :

Համագումարի օրերուն Դր. Եդ. Նալպանտեան հանդիպումներ ունեցաւ քանի մը պատուիրակութիւններու ղեկավարներուն հետ, որոնց ներկայացուց Հայաստանի տնտեսական հնարաւորութիւնները եւ քննարկեց համագործակցութեան հնարաւորութիւնները:

Համագումարին մասնակցելու համար Գահիրէ կը գտնուէին 92 պետութիւններու եւ 52 միջազգային ու շրջանային կազմակերպութիւններու տարբեր մակարդակի պատուիրակութիւններ : Մօտ 4600 մասնակիցներու շարքին կը գտնուէին արտաքին գործոց եւ տնտեսական մարզերու նախարարներ, բարձրաստիճան պաշտօնատարներ, դիւանագէտներ, փորձագէտներ եւ աւելի քան 1700 գործարաններ:

## ՄԵԾԻ ՏԱՆՆ ԿԻԿԼԻԿԻՈՅ ԱՐԱՄ Ա. ԿԱԹՈՂԻԿՈՍԸ ՀԱՅԱՍՏԱՆ ԺԱՄԱՆԵՑ

Հոկտեմբերի 22-ին Պէյրութ-Երեւան ինքնաթիռով, «Հայաստան» Համահայկական Հիմնադրամի հոգաբարձուների հերթական նիստին մասնակցելու նպատակով, Մայր Աթոռ Ս. Էջմիածին ժամանեց Նորին Սրբութիւն Արամ Ա. Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոսը:

Մայր Տաճարում բարեգալստեան արարողութեան ընթացքում, Գարեգին Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսը նշեց, որ Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոսի այս՝ թուով երկրորդ այցելութիւնը մի նոր աղբիւր կը հանդիսանայ այն եղբայրական գործակցութեան համար, որ գոյութիւն ունի երկու կաթողիկոսութիւնների միջեւ:

Իր հերթին Արամ Ա. Կաթողիկոսն աւելացրեց, որ այդ գործակցութիւնը նախ եւ առաջ ուղղուած պէտք է լինի Մայր Հայաստանի ամրացմանն ու զօրացմանը, քանզի «ամէն բանից առաջ եւ ամենէն վեր հայրենիքն է»:

Ուղեւորութեան ընթացքում Արամ Ա. Կաթողիկոսին ընկերակցում են Սեպուհ Ծ. Վրդ. Սարգսեանը եւ գաւազանակիր Մաշտոց Աբեղայ Չոպանեանը:

Հոկտեմբերի 24-ին ՀՀ նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանն ընդունեց Ամենայն Հայոց Գարեգին Ա. եւ Մեծի Տանն Կիլիկիոյ Արամ Ա. կաթողիկոսներին: Զրոյցի ընթացքում քննարկուեցին «Հայաստան»» Համահայկական Հիմնադրամի աշխատանքներին, հայրենիք սփիւռք յարաբերութեաններին, Հայ Առաքելական Եկեղեցու միասնականութեան խնդիրներին առնչուող հարցեր:

Այցելութեան ընթացքում Մեծի Տանն Կիլիկիոյ Արամ Ա. ➪ 3

**ՎՐԱՍՏԱՆ**

## *ՀՀ Արտգործ. Նախարար Ալեքսանդր Արզումանեանի Առաջին Այցելութիւնը*

*Անցեալ Երկուշաբթի 18 Նոյեմբերին, ՀՀ արտաքին գործոց նորընտիր նախարար Ալեքսանդր Արզումանեան Վրաստան այցելեց:*

*Մեծ թիւով անձնաւորութիւններ դիմաւորեցին ՀՀ նախարարին եւ անոր հետ ժամանած պատուիրակութեան, գլխաւորութեամբ Վրաստանի արտաքին գործոց նախարար Իրակլի Մենաղարիշվիլիի: Նոյն օրը, ան տեսակցութիւն մը ունեցաւ ՀՀ նախարարին եւ պատուիրակութեան հետ, ուր քննարկուեցան երկկողմ յարաբերութիւններու անհրաժեշտութիւնը, մասնաւորապէս հաղորդակցութեան ճամբաներու եւ բեռներու*

➪ 4

## Արցախի Շուրջ Բանակցութիւններ

Նոյեմբեր 18-ին, Հելսինքիի մէջ վերսկսան Մինսկի խումբին ղարաբաղեան հակամարտութեան շուրջ բանակցութիւնները:

Նշենք թէ մօտերս ԵԱՀԿ-ի գլխաւորութեամբ Լիզպոնի մէջ գագաթաժողով մը տեղի պիտի ունենայ: Հետեւաբար Հայաստանի արտաքին գործոց նախարարի տեղակալ Վարդան Օսկանեան, որ կը գլխաւորէր պատուիրակութիւնը, յայտնեց որ բանակցութիւններուն ընթացքին կը քննարկուին քաղաքական պայմանագիրին վերաբերող եւ Լիզպոնի հանդիպումին առընչուող հարցեր:

## Նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանի Հանդիպումը Ընկ. Վահրիճ Ճէրէճեանի Հետ

Հայաստան Համահայկական Հիմնադրամի Հոգաբարձուներու Խորհուրդի հերթական 6-րդ նիստին առիթով, որ տեղի ունեցաւ Հոկտեմբեր 27-ին Երեւանի մէջ, Հոկտեմբեր 28-ին նախագահ Լեւոն Տէր Պետրոսեան հանդիպում ունեցած է Հոգաբարձուներու Խորհուրդի անդամ, Ս.Դ. Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութեան նախագահ Ընկեր Վահրիճ Ճէրէճեանի հետ:

Հանդիպման ընթացքին քննարկուած են Հայաստան Հիմնադրամին գործունէութեան, Հայաստան -Սփիւռք յարաբերութիւններուն, աղետի գօտիին համար Սփիւռքի մէջ հանգանակուած բայց ցարդ չօգտագործուած գումարներու , եւ անոնց նպատակին օգտագործման հետ առնչուած հարցեր:

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՆՈՐԱԿԱԶՄ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ

Հայաստանի Հանրապետութեան նախագահ Լեւոն Տէր Պետրոսեան սահմանադրութեան 55րդ յօդուածի 4րդ կէտով, որոշած է կառավարութեան հետեւեալ անդամները նշանակել հրամանագրով.-

| | |
|---|---|
| ԱՐՄԷՆ ՍԱՐԳԻՍԵԱՆ | ՀՀ Վարչապետ |
| ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆ՝ | Ներքին գործերի եւ ազգային անվտանգութեան նախարար |
| ՄԱՐԱՏ ԱԼԵՔՍԱՆԵԱՆ՝ | Արդարադատութեան նախարար |
| ԱՇՈՏ ՍԱՖԱՐԵԱՆ՝ | Արդիւնաբերութեան նախարար |
| ԱՐԱ ԲԱԲԼՈՅԵԱՆ՝ | Առողջապահութեան նախարար |
| ԳԱՌՆԻԿ ՆԱՆԱԳՈՒԼԵԱՆ՝ | Առեւտուրի, սպասարկումներու եւ զբօսաշրջիկութեան նախարար |
| ՍՈՒՐԷՆ ԱՒԵՏԻՍԵԱՆ՝ | Բնապահպանութեան նախարար |
| ՎԼԱՏԻՄԻՐ ՄՈՎՍԻՍԵԱՆ՝ | Գիւղատնտեսութեան նախարար |
| ԱՆԴՐԱՆԻԿ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ՝ | Էքոնոմիքայի նախարար |
| ԳԱԳԻԿ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ՝ | Էներգետիկայի նախարար |
| ԳՐԻԳՈՐ ՊՈՂՊԱՏԵԱՆ՝ | Կապի նախարար |
| ԱՐՏԱՇԷՍ ՊԵՏՐՈՍԵԱՆ՝ | Կրթութեան եւ գիտութեան նախարար |
| ԱՐՄԷՆ ՍՄԲԱՏԵԱՆ՝ | Մշակոյթի, երիտասարդութեան հարցերու եւ սփորտի նախարար |
| ՎԱԶԳԷՆ ՍԱՐԳՍԵԱՆ՝ | Պաշտպանութեան նախարար |
| ՀՐԱՆՈՒՇ ՅԱԿՈԲԵԱՆ՝ | Սոցիալական ապահովութեան նախարար |
| ՀԵՆՐԻԿ ՔՈՉԻՆԵԱՆ՝ | Դրանզբորդի եւ հաղորդակցութեան նախարար |
| ՖԵԼԻՔՍ ՓԻՐՈՒՄԵԱՆ՝ | Քաղաքաշինութեան նախարար |
| ԼԵՒՈՆ ԲԱՐԽՈՒԴԱՐԵԱՆ՝ | Ֆինանսներու նախարար |
| ՍՏԵՓԱՆ ԲԱԴԱԼԵԱՆ՝ | Արտակարգ իրավիճակներու վարչութեան պետ- նախարար |
| ԷԴՈՒԱՐԴ ԱՂԱՋԱՆՈՎ՝ | Վիճակագրութեան, պետական ռեժիստրի նախարար |
| ԳԱԼՈՒՍՏ ԳԱՄԱՋԵԱՆ՝ | Տարածքային կառավարման նախարար |
| ԳԱԳԻԿ ՇԱՀՊԱԶԵԱՆ՝ | Կառավարութեան աշխատակազմի ղեկավար նախարար |
| ՆՈՐԱՅՐ ԽԱՉԱՏՐԵԱՆ՝ | Սեփականաշնորհման եւ օտար երկրեայ ներդրումներու նախարար |

**ԼԻԲԱՆԱՆ**

## Հ.Բ.Ը.Մ. - Հ.Ե.Ը. ԱՆԹԻԼԻԱՍԻ ՏԷՄԻՐՃԵԱՆ ԿԵԴՐՈՆԻ ԲԱՑՄԱՆ ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆԸ

Յինգշաբթի, 10 Յոկտ.ի ժամը 7:00ին, հովանաւորութեամբ վարչապետ Ռաֆիք Յարիրիի եւ նախագահութեամբ Յ.Բ.Ը.Մ.ի նախագահ Տիկ. Լուիզ Սիմոնի, ներկայութեամբ հայ հոգեւոր պետերու, նախարարներու, երեսփոխաններու, դեսպաններու, Յայաստանի Յանրապետութեան ներկայացուցիչներու, Յ.Բ.Ը.Մ.ականներու, հայ քաղաքական եւ մշակութային կազմակերպութեանց ներկայացուցիչներու, լրագրողներու եւ հոծ բազմութեան մը, տեղի ունեցաւ Յ.Բ.Ը.Մ. - Յ.Ե.Ը. Տէմիրճեան կեդրոնի բացման պաշտօնական հանդիսութիւնը:

Յանդիսութեան բացման խօսքը կատարեց լրագրող Զաւէն Գույումճեան, ապա խօսք առին մեթր Պերճ Սեդրակեան եւ Յ.Բ.Ը.Մ.ի նախագահ Լուիզ Սիմոն, որոնք անդրադարձան Յ.Բ.Ը.Մ.ի աշխարհատարած կազմակերպութեան գործունէութեան, առաքելութեան եւ նպատակներուն: Յայաստանի Յանրապետութեան նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանի խօսքը փոխանցեց իր խորհրդականներէն՝ Շահէն Գարամանուկեան որ ողջունեց Յ.Բ.Ը.Մ.ի առաքելութիւնը հայապահպանման գործին մէջ, որմէ ետք իր պատգամը փոխանցեց Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոս Արամ Ա. Վեհափառը, որ շեշտեց հայ համայնքին կառչուածութիւնը լիբանանեան հայրենիքին եւ հայութեան հաւատքը Լիբանանի կառուցման առաքելութեան մէջ: Ի վերջոյ վարչապետ Ռաֆիք Յարիրի իր խօսքով դրուատեց հայութեան կառուցողական եւ շինարար աշխատանքը յանուն Լիբանանի վերաշինութեան եւ խաղաղութեան: Օրուան խօսք առնողները դրուատեցին եւ ողջունեցին Տէմիրճեան կեդրոնին բարերարները՝ Յակոբ, Աւետիս, Սարգիս Տէմիրճեանները, որոնք սիրայօժար եւ ամբողջական նուիրումով կատարած են շքեղ կառոյցին շինութեան բարերարութիւնը: Անոնք արժանացան շքանշաններու: Նշենք որ Կեդրոնը լիբանանահայութեան պարծանք առթող կառոյց մըն է իր շքեղութեամբ:



Հայ համայնքապետերը, բարերարները, պետական երեսփոխաններ կը շրջապատեն վարչապետը

Պաշտօնական հանդիսութենէն ետք տեղի ունեցաւ հիւրասիրութիւն:

# ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԷՆ

## ՀՀ ՆԱԽԱԳԱՀԸ ԸՆԴՈՒՆԵՑ ՆԵՐՔԻՆ ԳՈՐԾՈՑ ՆԱԽԱՐԱՐՆԵՐԻ ՀԱՆԴԻՊՄԱՆ ՄԱՍՆԱԿԻՑՆԵՐԻՆ

ՀՀ նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանը Հոկտեմբեր 17-ին ընդունեց Սեւծովեան տնտեսական համագործակցութեան անդամ երկրների ՆԳ նախարարների հանդիպման մասնակիցներին: Ողջունելով հիւրերին, նա գոհունակութիւն յայտնեց, որ ԱՊՀ շրջանակներում համագործակցութիւնը աւելի աշխոյժ է դառնում: Երկրից երկիր տեղափոխուելու ազատութիւնները ռեգիոնալ համագործակցութեան նոր խնդիրներ են առաջացրել, որոնց թւում՝ յանցաւորութեան դէմ պայքարի բնագաւառում, նշեց նախագահը:

Հանդիպման աւարտին ՀՀ նախագահը նշեց, որ առանց յանցաւորութեան դէմ ուղղուած ռեգիոնալ համագործակցութեան հնարաւոր չէ իրականացնել ժողովրդավարացման եւ ազատ շուկայական տնտեսութեան ընդլայնման գործընթացները: Նա յաջողութիւն մաղթեց ՆԳ նախարարներին իրենց դժուարին գործում:

Հանդիպմանը մասնակցում

 3

## Հայաստան Մասնակցեցաւ Ընդունուած Զէնքերու Ցուցահանդէսին

Հոկտեմբեր 1-էն 5, Աթէնքի մէջ կայացաւ միջազգային հինգերորդ ցուցահանդէսը, նուիրուած ընդունուած պաշտպանական դրութիւններու: Հայաստան եւս իր մասնակցութիւնը բերաւ սոյն ցուցահանդէսին, եւ ըստ ՀՀ պաշտպանութեան նախարարութեան մամլոյ բաժնին, Հայաստանի տաղաւարը յատուկ ուշադրութիւնը գրաւած է տարբեր երկիրներու զինուորական մասնագէտներու: Այս առիթով, Հայաստանի պատուիրակութեան անդամները տեսակցած են Յունաստանի պաշտպանութեան նախարար Աքիս Եոխածոփուլոսի, ինչպէս նաեւ Յունաստանի զէնքի ճարտարարուեստի եւ այլ երկիրներու ներկայացուցիչներու հետ: Քննարկուած են համագործակցութեան եւ առեւտուրի համաձայնագրերու կնքման կարելիութիւնները:

## Հայաստան Ստորագրեց Կորիզային Զէնքերու դէմ Համաձայնագիրը

Սեպտեմբեր 10-ին ՄԱԿ-ի ընդհանուր համաժողովին կողմէ կորիզային զէնքերու արգիլման գծով համաձայնագրի ընդունումէն մէկ ամիս ետք, Հայաստան եւս, ձեռամբ արտաքին գործոց նախարար Վահան Փափազեանի, ստորագրեց սոյն դաշնագիրը՝ ՄԱԿ-ի Նիւ Եորքի կեդրոնատեղիին մէջ: Համաձայն ՀՀ արտաքին գործոց նախարարութեան մամլոյ բաժանմունքին, Հայաստան 100-րդ պետութիւնն էր որ իր ստորագրութիւնը կը դնէր սոյն համաձայնագրին տակ:

## ՅԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

## ԱՊԱՔԻՆՈՒՄԻ ՄԱՂԹԱՆՔ

Գահիրէի Ազգ. Իշխանութիւնը կու գայ յայտնել Եգիպտոսի հասարակութեան, թէ Եգիպտահայոց Բարեջան Առաջնորդ Գերաշնորհ Տ. Զաւէն Սրբազան Արքեպսկ. Չինչինեան ենթարկուած է փոքր վիրաբուժական գործողութեան մը, որը բարի եւ յաջող անցած է:

Սրբազան Յայրը ներկայիս կը բոլորէ ապաքինման շրջան մը:

Լիակատար առողջութիւն կը մաղթենք մեր սիրելի Առաջնորդ Սրբազան Յօր:

ԳԱՅԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

*Ուրախ ենք որ Գերաշնորհ Սրբազան Հայրը անցեալ Կիրակի առաւօտեան, հիւանդանոցէն բնակարան վերադարձած է եւ արդէն լծուած իր աշխատանքներուն:*

*«Ջահակիր» եւ իր շրջանակը կատարեալ ապաքինում կը մաղթէ մեր սիրելի Առաջնորդ Սրբազան Հօր:*

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

## ԹԵՄԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ ՆԻՍՏ

Ուրբաթ 8 Նոյեմբեր 1996 կ.ե. ժամը 5-ին, տեղի պիտի ունենար Աղեքսանդրիոյ Թեմական Ժողովի նիստ, մէկ օրակարգ ունենալով՝ Առաջնորդարանի Ա. յարկի արեւմտեան սենեակներու բարփոխութեան եւ պիւտճէի վաւերացում.

Թեմական ժողովի դիւանը եւ ժողովականներու մեծամասնութիւնը մերժելով ներկայ գտնուիլ, իրենց դժգոհութիւնը յայտնեցին, տրուած ըլլալով որ սոյն առաջակը քննարկուած էր անցեալ Թեմական ժողովի ընթացքին (11-10-1996) եւ որոշում առնուած՝ կրկին արծարծել հարցը յառաջիկայ Թեմական ժողովի կայանալիք մասնակի ընտրութիւններէն ետք: Հետեւաբար տեղի չունեցաւ նիստը, քանի որ ընտրութիւնները տեղի պիտի ունենան երկու օր ետք՝ Կիրակի 10 Նոյեմբեր 1996-ին:

1

## Թեմական Ժողովի Մասնակի Ընտրութիւնները

Ըստ քուէարկութեան արդիւնքներուն ներքոյիշեալ ազգայինները ընտրուեցան Աղեքսանդրիոյ Թեմական ժողովի անդամներ.-

| | ձայն |
|---|---|
| ԼԷՅԼԷԿԵԱՆ ՆՈՒՊԱՐ ԳՐԻԳՈՐ | 138 |
| ՄԱՋԼԸՄԵԱՆ ՊԱՐԳԵՒ ԳԷՈՐԳ | 138 |
| ՄԻՍՔՃԵԱՆ ԱՆԴՐԱՆԻԿ ՅԱՐՈՒԹԻՒՆ | 137 |
| ԿԱՐԱՊԵՏԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ-ԳԱՐԼՕ ԳԵՂԱՄ | 137 |
| ՇԱՀՊԱԶԵԱՆ ՆՈՒՊԱՐ ԽԱՉԱՏՈՒՐ | 135 |
| ԱՒԱԳՕՖ ՀԱՅԿ ՎԱՀՐԱՄ | 135 |
| ՎԱՐԶՊԵՏԵԱՆ ՍԱՐԳԻՍ ՀՐԱՆԴ | 165 |
| ԼԷՅԼԷԿԵԱՆ ԺՈՐԺ ԼԵՒՈՆ | 134 |
| ԳԱԼՓԱՔՃԵԱՆ ՄԱՆՈՒԿ ԵՐՈՒԱՆԴ | 133 |
| ԳԱՍՊԱՐԵԱՆ ԱՐԹՕ ԳՐԻԳՈՐ | 133 |
| ԱԼԵՔՍԱՆԵԱՆ ՎԱՀԱՆ ՏԻԳՐԱՆ | 128 |
| ԽՈՐԱՍԱՆՃԵԱՆ ՊԵՐՃ ԷՏՈՒԱՐ | 117 |

Խմբագրութիւնս կը շնորհաւորէ վերընտրեալ 9 եւ նորընտիր 3 Թեմական ժողովի անդամները և կը մաղթէ որ համագործական ոգին միշտ տիրէ իրենց միջեւ, ի նպաստ համայնքիս բարօրութեան եւ խաղաղութեան, որպէսզի ազգային գործերը մատակարարուին յաջողութեամբ:

ԹՂԹԱԿԻՑ

## «ՄԱՍԻՍ»՝ ՅԱՅԵՐԷՆ ԼԵԶՈՒՈՎ ԱՌԱՋԻՆ ԹԵՐԹԸ INTERNET-Ի ՎՐԱՅ

*«Մասիս» շաբաթաթերթը դարձաւ հայկական առաջին մամուլը, որ կը հրատարակուի նաեւ ինթըրնէթի վրայ՝ հայերէն լեզուով:*

*Քայլ պահելով համակարգիչներու այս ժամանակաշրջանին հետ, նաեւ թերթի բովանդակութիւնը ընթերցողներու աւելի լայն շրջանակներուն՝ յատկապէս Հայաստանի մէջ, մատչելի դարձնելու նպատակաւ, «Մասիս» շաբաթաթերթը սկսաւ հրատարակուիլ ինթըրնէթի վրայ:*

*Արդարեւ՝ աշխարհի որեւէ մէկ անկիւնէն ինթըրնէթի միջոցաւ բանալով «Մասիս էջը», կարելի կը դառնայ ծանօթանալ թերթի «Ինթըրնէթ Տարբերակ»ի բովանդակութեան՝ իր լուրերու եւ տեսակէտներու բաժիններով: Նիւթերը կը վերանորոգուին ամէն Չորեքշաբթի, այն պահուն երբ թերթը կ՛իջնայ հրապարակ:*

*«Մասիս» շաբաթաթերթի ինթըրնէթի հասցէն է՝*

**http:// www.earthlink.net/massis**

*Յաւելեալ մանրամասնութիւններու և կամ հայերէն տառեր ստանալու համար կարելի է հեռաձայնել խմբագրատուն՝ (818) 797-7680 թիւով և կամ էլէքդրոնիք նամակ ուղարկել՝*

*72460. 1314 @ compuserve.com հասցէին:*

**ԳԱՀԻՐԷ** Կարտինալ Գրիգոր - Պետրոս ԺԵ. Աղաճանեանի

## Ծննդեան 100-ամեակը Ս. Թերեզա Հանդիսասրահին Մէջ

Իրաւամբ ըսենք թէ պատկառելի անձնաւորութիւն մը եղած է երջանկայիշատակ Տէր Կարտինալ Գրիգոր - Պետրոս ԺԵ. Կաթողիկոս - Պատրիարքը, որ իր ծննդեան 100-ամեակն է այս տարի, որուն կու գայ զօդուիլ 25-րդ տարելիցը անոր բարի մահուան: (*Կենսագրութիւնը կարդալ ստորեւ*) :

Այս խնկելի յիշատակին՝ ինչպէս սփիւռքահայ շատ մը գաղութներու մէջ, Հայ Կաթողիկէ քոյր համայնքը եւս Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ մէջ, Յոբելենական հանդիսութեամբ մը, եկաւ իր խորին յարգանքը մատուցանելու 20-րդ դարու արժանաւոր եկեղեցականին, Հինգշաբթի 24 Հոկտեմբերի երեկոյեան, Հելիոպոլսոյ Ս. Թերեզա հանդիսասրահին մէջ:

Ներկայ էին ընդհանուր փոխանորդ պատրիարքական Պէյրութի թեմի՝ Արհ.ի Տէր Մանուէլ Եպս. Պաթազեան, (որ յատկապէս հրաւիրուած էր ներբողականը ընելու Կարտինալ Աղաճանեան կաթողիկոսի), Հայ Կաթողիկէ համայնքի Վիճակաւոր՝ Գերպ. Տ. Պետրոս Եպս. Թարմունի, Եգիպտահայոց առաջնորդ՝ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան, եգիպտահայ համայնքի ներկայացուցչական դէմքեր, Անարատ Յղութեան վրժ.ի Քոյրեր, եւ ընտրանի հասարակութիւն մը:

Պատշաճ բացման խօսքով ելոյթ ունեցաւ Օր. Սոնիա Գլենճեան: Առաջին առթիւ, հանդիսավար Օր. Սիլվա Սիմոնեան բեմ հրաւիրեց Անարատ Յղութեան Հայ Քոյրերու Վրժ.ի աշակերտութիւնը, որոնք քանի հայկական երգերով մեծապէս խանդավառեցին ներկայ հասարակութիւնը: Ապա Վահան Թէքէեանի՝ «Եկեղեցին Հայկական» քերթուածը խոր ապրումով ասմունքեց Պր. Աւետիս Մովսէսեան. Օր. Ս. Գլենճեան, Արհի. Տ. Մանուէլ Եպս Պաթազեանի համառօտ կենսագրութիւնը տալէ, ետք բեմ հրաւիրեց օրուան բանախօսը:

Տպաւորիչ իր ելոյթին մէջ Արհիապատիւ Տէր Մանուէլ նախ անդրադարձաւ Ղազարոս Աղաճանեանի մանկութեան մասին, ապա նշեց իր ուսման հանգրուանները: Որմէ ետք թուեց իր բեղուն գործունէութիւնը որպէս քահանայ, վարդապետ եւ յետոյ՝ Կարտինալ Գրիգոր-Պետրոս ԺԵ. Աղաճանեան: Ան շեշտը դրաւ Պատրիարքին երկար շրջագայութեան վրայ: Իր համապարփակ խօսքին մէջ, յարգելի բանախօսը ոչ միայն արտայայտուեցաւ Աղաճանեան որպէս հոգեւորական, այլ՝ որպէս մարդ, մտաւորական, հայ եւ վերջապէս որպէս աշխարհահռչակ եկեղեցական մը:

Փակման խօսքով ելոյթ ունենալու հրաւիրուեցաւ Գերպ. Տ. Պետրոս Եպս. Թարմունի: Շահեկան իր խօսքին մէջ Գերապայծառ Հայր Թարմունի յայտնեց, «թէ երջանկայիշատակ Կաթողիկոս Պատրիարքը բազմատաղանդ անձնաւորութիւն մը եղաւ, սակայն նոյն ատեն եղաւ համեստութեան, քաղցրութեան եւ ազգասիրութեան տիպար մը»:

Գերապայծառ Հօր շնորհակալութեան խօսքերով վերջ գտաւ սոյն Յոբելենական հանդիսութիւնը:

Ձեռնարկին վերջաւորութեան տեղի ունեցաւ մտերմիկ ընդունելութիւն մը:

Ս.Պ.

## ԿԱՐՏԻՆԱԼ ԱՂԱՃԱՆԵԱՆԻ ՆՈՒԻՐԱԿԱՆ ՅԻՇԱՏԱԿԻՆ

### ( Կենսագրական Գիծեր )

*Խորհո՛ւրդ խորին, Աղաճանեան Կարտինալի մանկութիւնը, Կարնեցի գերդաստանէ, ծիլ տուած՝ մեր հինաւուրց Ջաւախքի շէն հովիտին մէջ. ուր հազիւ 11 գարուններու վարդերն ըմբոշխնած, ինքն ալ ծաղիկ անմահ կամ թռչուն քաղցրաձայն, 1906 թուականի աշնան, հայրենական բոյնէն կը գաղթէր հեռու աշխարհ, ընտրութեամբ՝ Կովկասի Կաթողիկէ Հայոց օրուան եկեղեցական Կառավարիչին, որ մարգարէաշունչ ոգիով, մեծ յոյսեր կը տածէր՝ գերազանցօրէն ուշիմ, կրակ ու բոց եւ բարեպաշտ այս մանկան ապագային վրայ: Երեք զաւակներու ամենափոքրիկն էր Ղազարոսը՝ մատղաշ սարիկն հայրագուրկ, որ ահա՝ կ'երթար ուսանելու Արեւմուտքի հռչակաւոր մայրաքաղաքը: Մեր փոքրիկ Ախալցխացին ալ, անոնց նման պիտի զարգանար Հռոմի մէջ, բազում գիտելիքներ պիտի ամբարէր, լեզուներ պիտի սորվէր, պիտի սերտէր փիլիսոփայութիւն, աստուածաբանութիւն, իրաւաբանութիւն, վարդապետական տիտղոսներ ու ոսկի մետալներ պիտի շահէր:*

*Կը սահէին այսպէս 11 գարուններ եւս, եւ ահա՝ 1917ի ձմեռը, երիտասարդ Աղաճանեան, կուսակրօն քահանայութեան շնորհներով օծուն, սուրբ խորան կը բարձրանար: 1919ին՝ զինք կը գտնենք Թիֆլիս, որպէս հոգեւոր հովիւ՝ Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ: Կ'այցելէ Շիրակ, կը ծրագրէ հիմնել Աղեքսանդրապոլի մէջ «Ալիշան» անունով դպրոց մը: Հազիւ պատեհութիւնը կ'ունենայ վայելելու հայրենիքի եւ ընտանիքի քաղցր համբոյրը եւ ազգականներու մտերմութիւնը, ահա՝ յանկարծ վրայ կը հասնին կարմիր յեղափոխութեան դաժան օրերը: Աղաճանեան Վարդապետ, մեծաւորներու խոհեմ կարգադրութեամբ, կը վերադառնայ Հռոմ, 1921ի վերջերը:*

*Հռոմի մէջ, Աղաճանեան Վարդապետի գործունէութեան դաշտը՝ հովուականէն կը փոխուի ուսումնականի եւ կրթականի, նախ՝ 11 տարի՝ որպէս փոխ-տեսուչ, ապա 5 տարի՝ որպէս Տեսուչ-Մեծաւոր Ժառանգաւորաց Հայ Վարժարանին, ուր փութաջան հոգածութեամբ կը նուիրուի ընծայացուներու հոգեւոր եւ ուսումնական պատրաստութեան: Այդ ժամանակաշրջանին այսինքն՝ 1921-1937, կը դասաւանդէ Ուրբանեան Համալսարանին մէջ, նախ մի քանի տարի՝ փիլիսոփայական ամպիոնէն տիեզերաբանութիւն ( cosmologie ), յետոյ՝ աստուածաբանութիւն, ընդհանրապէս՝ Սուրբ Խորհուրդներու, եւ առանձնապէս Ս. Հաղորդութեան խորհուրդի մասին:*



*Աստուածաբան Աղաճանեանի բազմահարիւր օտարազգի աշակերտները, ամէն գոյնէ ու երկրամասէ, ոմանք՝ ապագայ հովուապետ-եպիսկոպոսներ, երախտագիտական զգացումներով առլցուն՝ իրենց պաշտելի ուսուցչին հանդէպ, նաեւ հայ ազգին հանդէպ գերազանց սիրով խանդավառ, հրճուանքով բացած են դռները՝ Միրանեփառ մեր Կարտինալին յետագայ ուղեւորութեանց առջեւ, Ամերիկայէն Աւստրալիա, Ափրիկեան երկիրներէն Հնդկաստան ու մինչեւ Փիլիպպեան կղզիներ:*

*1929ին կը հրատարակէ ընդարձակ կենսագրականը երանելի Տէր Կոմիտաս Քահանայի, ծանօթացնելով եւրոպացի ընթերցողներուն՝ 17-18րդ դարերու մեր եկեղեցա-պատմական իրադարձութիւնները:*

*Քառասնամեայ Աղաճանեան Վարդապետ կ'ընդունի եպիսկոպոսական Սուրբ Կարգը: Օծման սուրբ միւռոնի բոյրը ճակատին, իրեն կը յանձնուի Զմմառեան Միաբանութեան Կանոնագրի վերաքննութեան եւ յարակից հարցերու ուսումնասիրութեան թղթածրարը, զոր ձեռնհասօրէն քննարկելու համար՝ կ'ուղեւորուի Պէյրութ, ուր մեծ յաջողութիւն կ'արձանագրէ, շահելով ամէնուն համակրանքը, խանդավառ ապագայի լաւատես ակնկալութիւններ ներշնչելով ամէնուր: Երկու տարի ետք, 1937ի Նոյեմբեր 30ին, կը բարձրանայ Պատրիարքական Աթոռ, յորջորջուելով Գրիգոր-Պետրոս ԺԵ. Կաթողիկոս-Պատրիարք:*

*Վրայ կը հասնին Եւրոպական Երկրորդ Պատերազմի արիւնալի օրերը: Սակայն Աղաճանեան Պատրիարք՝ իր ժողովուրդի բազում հոգերով մտայոյզ, հովուական այցելութիւններ կը կատարէ, վազելով Արեւելքէն Արեւմուտք: Հալէպ, Դամասկոս, Տէր-Զօր, Երուսաղէմ, Յորդանան, Եգիպտոս, Իրաք... հանգրուաններն իր ուղեւորութեանց: Յանկարծ զինք կը գտնենք Ֆրանսա, Փարիզէն Մարսէյլ, Լիոն, Վալանս: Ու դարձեալ Պէյրութ, ուր Նախատակներու Յուշարձան կը նուիրագործէ՝ Պատրիարքարանի բակին մէջ, կ'օրհնէ հիմնաքարը Այնճարի Հայ Կաթողիկէ Վարժարանին, անխոնջ՝ կը բաշխէ իր հայրական խօսքն ու քաջալերիչ օրհնութիւնը, 1915ի աղէտէն ճողոպրած եւ մոխիրներէն վերածնած հայորդիներուն:*

*Եւ ահա՛ կը թեւակոխենք 1946 տարին: Հայ ժողովուրդի Տարեգրութեանց համար՝ պատմական թուական: Պիոս ԺԲ. Պապը կ'անուանէ 32 նոր կարտինալներ, ծիրանաւորներու շարքին գլուխն է Հայ Կաթողիկէ Պատրիարքը, որ յիշատակի պատարագ կը մատուցանէ Վատիկանի Սիքստեան մատրան մէջ, հայկական ծէսին բովանդակ շքեղութեամբ, նոյն Սրբազան Պապի եւ* ⇒ 4

## ՄԵԾԻ ՏԱՆՆ ԿԻԼԻԿԻՈՅ ԱՐԱՄ Ա. ԿԱԹՈՂԻԿՈՍԸ

1 ⇒

կաթողիկոսն ընկերակցութեամբ Ամենայն Հայոց կաթողիկոսի եղաւ Օշականում (նորաստեղծ Արագածոտնի թեմի առաջնորդանիստ), իսկ Հոկտեմբերի 25-ին Խոր Վիրապի վանքում: Այս նշանաւոր սրբավայրը, որը վերջին շրջանում նորոգւում ու բարեկարգւում է Ամենայն Հայոց կաթողիկոսի հոգածութեամբ, կարեւոր դեր է կատարելու Հայոց Դարձի 1700 ամեակի տօնակատարութեան ժամանակ:

## ՀՀ ՆԱԽԱԳԱՀԸ ԸՆԴՈՒՆԵՑ

2 ⇒

էին Պուլղարիայի, Յունաստանի, Մոլտովայի, Ռումինիայի, Ռուսաստանի, Ատրպէյճանի, Ուքրանիայի, Թուրքիայի եւ Եգիպտոսի պատուիրակները:

**Ի ՅՈՒՇ**

## ՍԱՐԳԻՍ ՊԱԼԱԵԱՆ ԵՒ ՆՈՒՊԱՐ ՍՈՒՔԻԱՍԵԱՆ

### Վեթերան Ընկերներու Մեծարանքի Երեկոն

Էր երբեմն, 1987-88 թուականներուն երբ Մոնրէալի մէջ ծնունդ առած Ն.Ս.Մ.Մ.-ը լծուած էր բեղուն գործունէութեան եւ իրերայաջորդ բազմազան ձեռնարկներու առընթեր ընկ. Պերճ Գոգորեանի տնօրէնութեամբ լոյս կը տեսնէր Միութեան »ԿԱՅԾ« ամսաթերթը, կազմուած էր նաեւ Ն.Ս.Մ.Մ.-ի թատերասէրներու խումբը:

Սա ի միջ իր իրագործած բեմադրութեամբ 20 Մարտ 1988-ին, հովանաւորութեամբ Գերշ. Վազգէն Արք. Քէշիշեան, Գանատահայոց առաջնորդին, Հ.Բ.Ը.Մ.-ի կեդրոնին մէջ կը կազմակերպէր Մեծարանքի պատուոյ հանդիսութիւն մը նուիրուած շրջանի վեթերան ընկերներէն Սարգիս Պալաեանի եւ Նուպար Սուքիասեանի:



Գերշ. Տէր Վազգէն Արք. Քէշիշեան, Պատուոյ Յուշատախտակներ կը յանձնէ Մեծարեալ ընկերներուն՝ Նուպար Սուքիասեանի եւ Սարգիս Պալաեանի

Գաղթաշխարհի հայ իրականութեան մէջ ընդհանրապէս երբ մեր հասարակական գործիչները, առաջնորդները հակառակ իրենց ծառայութիւններուն ու վաստակին չեն արժանանար գնահատանքի եւ արժեւորման, որքա՜ն հրճուալի էր տեսնել այդ օր սոյն երախտագիտական ելոյթը որ բերկրութեամբ կը լեցնէր բոլորի սրտերը:

Ամբողջութեամբ լի սրահին մէջ կը գործադրուէր որակաւոր յայտագիրը կազմուած, օրուան խորհուրդին պատշաճ թատերական երեք գործերէ: Այսպէս.-

**Առաջին** մասով կը ներկայացուէր Ա. Ահարոնեանի «Արցունքի հովիտը» ողբերգութենէն քաղուած տեսարան մը ուր կը պատկերանար, հարստահարուած հայ շինականին մէջ ազատութեան ոգին արծարծող շունչը գիւղ առ գիւղ շրջող հայ յեղափոխական գործիչ վեթերանի մը կողմէ որ յոյսի, պայքարի սերմերը կը ցանէր վաղուան Արշալոյսին համար:

**Երկրորդ** տեսարանով կը ներկայացուէր Լեւոն Մարտիրոսեանի «Յակոբ եւ Յաբեթ» թատրերգութենէն հատուած մը ուր անձնուէր հայ ֆետային կռուի երթալէ առաջ եկած է իր վերջին «մնաք բարով»-ը ըսելու մօրը եւ հարազատներուն:

Սոյն թատրերգութեան մեր ձեռքը հասած մասերէն կը տեղեկանանք թէ ան 1914-ին սկսած էր պրակ առ պրակ հրատարակուիլ Պոլսոյ մէջ, Պալենց գրատան կողմէ եւ հազիւ երեք պրակներ լոյս տեսած, թուրք կառավարութիւնը արգիլած է անոր հրատարակութիւնը եւ գրաւած պրակները: Եւ հետզհետէ ծաւալող պատերազմը արգելք էր եղած անոր հրատարակման:

Յետագային հեղինակը յաջողած էր յանձնել իր թատերախաղը «Երիտասարդ Հայաստան»-ի խմբագրութեան ու փրկած կորուստէ:

**Երրորդ** մասին մէջ, տեղի ունեցած հայ ժողովուրդի ամենէն ահաւոր ցեղասպանութենէն ետք հայ վեթերան գործիչին կը մնար նուիրուիլ հայ դպրոցին, հայ մամուլին: Հոս կը բեմադրուէր Ռուպէր Հատտէճեանի «Վաստակ» թատրերգութենէն բաժին մը որու մէջ կրթական վաստակաւոր մշակ մը կ'արժանանար յարգանքի եւ պատուի ինչպէս օրուան մեծարեալ երկու վեթերանները:

Յայտագրի թատերական բաժնէն ետք, կը հրաւիրուէր «ԿԱՅԾ» ամսաթերթի պատասխանատու տնօրէնը Պերճ Գոգորեան արտասանելու մեծարեալ վեթերան ընկ. Սարգիս Պալաեանի կեանքին ու գործին ուղղուած իր խնամուած, դրուատալից խօսքը, որուն յուզումով կը պատասխանէր մեծարեալը, կու տար սրտին խօսքը, կը պարզէր անշահախնդիր հայ կուսակցականի զոհողութիւնները, անցած դժնդակ ուղին ու շնորհակալութիւն կը յայտնէր կազմակերպիչներուն:

«ԿԱՅԾ»-ի թղթակիցներէն Սօսի Ղազարեանի կը վիճակուէր ներկայացնել մեծարեալ ընկ. Նուպար Սուքիասեանի կեանքն ու գործը, հարազատօրէն թուելով հետաքրքրական դրուագներ: Պատասխանելով անոր, Մեծարեալը կը կատարէր շրջանիս գործունէութեանց գովքը, իր կարգին ինք եւս յայտնելով շնորհակալութիւններ:

Շնորհաւորական եւ գնահատանքի արտայայտութիւններով ելոյթ կ'ունենար նաեւ Թորոնթոյէն հրաւիրուած ընկ. Տիգրան Սարաֆեան:

Հուսկ հանդիսութիւնը հովանաւորող Գերշ. Տ. Վազգէն Արք. Քէշիշեան իր խորիմաստ եւ կուռ պատգամէն ետք ծափերու տեղատարափին տակ բեմ հրաւիրուած երկու մեծարեալ ընկերներուն կը յանձնէր պատուոյ գեղեցիկ յուշատախտակներ որոնց վրայ կը կարդացուէր.-

**Մեր սիրելի վեթերան ընկե՛ր**
**Յարգանք - Մեծարանք - Շնորհակալութիւն**
**Քու ազգանուէր բազմամեայ վաստակիդ**
**Ս.Դ.Հ.Կ. ՄՈՆԴՐԷԱԼԻ «ՎԱՆԻԿ» ՄԱՍՆԱՃԻՒՂ**

Այժմ երբ կը գրենք սոյն սրտաբուխ տողերը ի յուշ մեր լուսաբնակ արժէքաւոր բարեկամներուն, կը համակուինք խոր յուզումով: Կը հաւատանք սակայն: Անոնք իրենց գործով ու վաստակով կ'ապրի՜ն միշտ սրտերու մէջ եւ պիտի ապրին ցվերջ...:

ԴԱՒԻԹ Յ. ԷՎԵՐԵԿԼԵԱՆ

*Մոնրէալ, 1996*




## ՅԻՇԱՏԱԿԻ ՈԳԵԿՈՉՈՒՄ ՎԱԽՃԱՆՄԱՆ ԵՐԵՍՆԱՄԵԱԿԻ ԱՌԹԻՒ

Կիրակի 1 Դեկտ. 1996-ին, Սրբոյն Թադէոսի եւ Բարթողիմիոսի, մեր առաջին Լուսաւորիչներու Տօնին օրը, Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ հանդիսաւոր Պատարագ պիտի մատուցանէ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան Եգիպտահայ Թեմի նախկին վաստակաշատ եւ հոգելոյս Առաջնորդ`

**Տ. ՄԱՄԲՐԷ ՄՐԲ. ԱՐՔ. ՍԻՐՈՒՆԵԱՆԻ**

Վախճանման երեսնամեակին առիթով

Ապա տեղի պիտի ունենայ հոգեհանգստեան մասնաւոր պաշտօն յաւէտ ողբացեալ Սրբազանի հոգւոյն ի հանգիստ:

Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8.30-ին
Սկիզբ Ս. Պատարագի ,, ,, 10.00
Հոգեհանգիստ ,, ,, 10.45

ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ

## ԿԱՐՏԻՆԱԼ ԱՂԱՃԱՆԵԱՆԻ ՆՈՒԻՐԱԿԱՆ ՅԻՇԱՏԱԿԻՆ




### ( Կենսագրական Գիծեր )

բոլոր Կարտինալներու ներկայութեան:

Տօնական օրեր էին յատկապէս Իտալիոյ բովանդակ հայութեան համար, որոնց ընթացքին, Կարտինալ Աղաճանեան հանդիսաւոր նիստի մը պահուն հռչակուեցաւ Մխիթարեան Հայրերու կողմէ, Ս. Ղազարու Հայկական Ակադեմիայի Պատուոյ Նախագահ:

Եթէ դարձնենք անոր կենսագրութեան յաջորդ էջերը, զինք կը գտնենք յաճախ՝ պատմական ուղեւորութեանց ճանապարհին, Իտալիայէն Յունաստան, Եգիպտոս ու Թուրքիա, Պոմպէյէն Պոսթըն, Փարիզէն Սիտնէյ, Կալկաթայէն Վենետիկ, Լուրտէն Լոնտոն, բայց եւ ստէպ կանգ առնելով Պէյրութ, իր Աթոռի գործերուն եւ հովուապետական բարձր պաշտօնի պարտականութեանց հետամուտ: Կը սիրէր իր պաշտելի գրասեղանին առջեւ, որ յաճախ աղօթարանն ալ էր իր հոգիին, գիշերներ լուսցնել՝ խմբագրելով բազմաթիւ Շրջաբերական նամակներ, Հովուական թուղթեր, Սուրբ Հայրապետներու ծաղկոցէն քաղելով հոգեշունչ ընտիր գաղափարներ, ի շինութիւն իր Հօտի: Միաժամանակ կը փութար օծելու Պատրիարքական նորակառոյց Մայր Տաճարը եւ Զահլէի Հայ Կաթողիկէ Եկեղեցին:

Բայց անգամ մը եւս թող դառնան էջերն իր օրագրութեան, հանդիպում՝ Գերմանիոյ վարչապետ Գոնրատ Այտէնաուերի, զօրավար Տը Կօլի, Պելժիոյ Թագաւոր Պոտուէն Ա.ի, ինչպէս նաեւ Արեւելքի այլ գահակալներու կամ հանրապետութեանց մեծանուն նախագահներու հետ:

1955 թուականը կ'անուանուի նախագահ՝ Արեւելեան Եկեղեցիներու Նոր Կանոնագրքի պատրաստութեան կարտինալական Յանձնախումբին:

1958 թուականին կը մասնակցի Պապի Դոնփակ ընտրական նիստերուն: Շատ կը խօսուի հաւանական իր ընտրութեան մասին, նոյնիսկ միջազգային մամուլին մէջ: Բայց այդ օրուան իր օրագրութեան էջը սպիտակ է թողուած: Պապ չէ ընտրուած, բայց Պապի նման աշխատած է՝ ի պայծառութիւն Սուրբ Եկեղեցւոյ:

1960 թուականին կ'անուանուի նախագահ Հաւատոյ Տարածման խորհրդաժողովին, զոր արդէն կը վարէր երկու տարիէ ի վեր, փոխանորդի տիտղոսով:

1963 թուականին կ'անուանուի Վատիկանեան Բ. Տիեզերական ժողովի չորս ատենավարներէն մէկը:

1967 թուականին հանդիսաւոր կերպով կը տօնուի իր քահանայական օծման 50ամեակը: Այս առիթով լոյս կը տեսնէ «Ձայն Հովուական» 513 էջնոց հատոր մը, տպուած Վենետիկ- Ս. Ղազար, որ՝ կը պարունակէ Կարտինալին Հովուական Թուղթերը, բանախօսութիւնները, ճառերը, քարոզները: Միաժամանակ, դարձեալ երկար ուղեւորութիւններ, Պօղոս Զ. Սրբազան Պապի կողքին, կամ որպէս Քահանայապետական Նուիրակ, մասնակցելու կրօնական մեծ համաժողովներու, բացառիկ տօնակատարութեանց, Մատակասկարէն, Ուկանտայէն՝ Ծայրագոյն Արեւելք: Այսպիսի պարագաներուն, ան հսկայ աշխատանք տարած է, վատիկանեան Բ. մեծ ժողովի ոգիով կազմակերպելու եւ ազգային քնիկ նկարագրով ու ծէսով ամրապնդելու, մանաւանդ Երրորդ աշխարհամասի երկիրներուն մէջ, նորածին եկեղեցիները: Առաջին սեւամորթ եպիսկոպոսներն իր ձեռքէն ընդունած են Սուրբ Օծումը: Իր ուղեւորութիւններու ժամանակ, ամէնուրեք կը փնտռէր հայու բեկորներ, Հակառակ այս տիեզերածաւալ գործունէութեան, հեւ ի հեւ տեղափոխութեանց ու բազմազբաղ աշխատանքին, Կարտինալ Աղաճանեան, իր կեանքի յետին 10 տարիներուն՝ կը տառապէր անողոք հիւանդութենէ մը, որ պիտի խլէր նոյնիսկ աչքերուն տեսութիւնը, վերջին ամիսներուն, հակառակ տեւական դարմանումի ուժեղ խնամքներուն: Բայց անմոռանալի դէպք մը եկաւ, հայրենիքի վարդերուն նման՝ ծաղկելու, ծերունազարդ Կարտինալի հոգիին մէջ: Շնորհաբեր հանդիպումն էր այդ, Վազգէն Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսի հետ, որ Հռոմ կը ժամանէր, որպէս հիւր՝ Պօղոս Զ. Պապին (1970, Մայիս): Հայրենիքի սրբութիւններուն կարօտով, ստացաւ սիրոյ ողջոյնն ու համբոյրը՝ որպէս ցօղ մխիթարանքի, մինչ հոգեկան հրճուանքի արցունքներ շողացին, այդ օրը Ծիրանեփառ Հայրապետի աչքերուն մէջ: Այդ օրերէն ոչ բազում ժամանակ ետք, Կարտինալ Աղաճանեան անվերադարձ պիտի հեռանար մեր հորիզոնէն, համբերութեամբ տոկալով առաջացած հիւանդութեան դառն ցաւերուն: Սուրբ Եկեղեցւոյ խորհուրդներով զօրացած, կ'օրհնէր իր սնարին շուրջ հաւաքուած սիրելիները եւ հարազատ հոգեւորականի սրբաշունչ բոյրն ու օրինակը թողելով կտակ՝ գալիք սերունդներուն, աղօթքի մրմունջներով կ'աւանդէր հոգին, 1971ի Մայիսի 16ին:

«Յիշատակն արդարոյն՝ օրհնութեամբ եղիցի»:

Հ. ՆԵՐՍԷՍ ԱՐՔ. ՏԷՐ-ՆԵՐՍԷՍԵԱՆ
Առաջնորդ Կաթողիկէ Հայոց Արեւելեան Եւրոպայի

Կիւմրի, ( Յապաւումներով) «ՅԱՌԱՋ»

## Շնորհակալիք

Խմբագրութիւնս իր խորին շնորհակալութիւնները կը յայտնէ Դր. Շահէ Լուսարարեանին, որուն հմուտ համակարգչային աշխատանքով, կարելի եղաւ հիմնականօրէն բարեզարդել թերթիս էջադրման աշխատանքը: Իր ձրաջան գործին արդիւնքովն է, որ թերթս կ'օժտուի արդիական եւ գեղատիպ էջադրման սարքաւորում:

Մեծապէս գնահատելի է մեր հայրենի բարեկամ ՝ Դր. Շահէ Լուսարարեանի տարած սիրայօժար աշխատանքը:

ԽՄԲ.

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իրենց շատ սիրելի եղբօր հօրեղբօր՝ ողբ. Վահան Գավուքճեանի մահուան քառասունքին առթիւ եւ անոր քաղցր յիշատակին, Գավուքճեան ընտանիք կը նուիրեն.

| | |
|---|---|
| Հ.Մ.Ը.Մ. «Կամք»ին | 250 |
| «Յուսաբեր»ի ֆոնտին | 150 |
| Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցիին | 100 |
| «Յառաջդիմասէր»Մշակ. Ընկեր. | 100 |
| «Յուսաբեր»Մշակ. Ընկերց. | 100 |
| Հայ Աղքատախնամին (Աղեքս.) | 100 |
| Վեթերաններու ֆոնտին (Աղեքս.) | 100 |
| Պօղոսեան Ազգ. Վրժ.ին | 100 |
| Հ.Կ.Խաչին | 100 |
| «Այծեմնիկ»ին | 100 |
| «Յուսաբեր» ակումբին (Հել.) | 100 |
| Հ.Մ.Ը.Մ.«Արարատ»ին | 100 |
| Ս. Թէրէզա ակումբին | 100 |
| ՀՄԸՄ «Նուպար»ին (Աղեքս.) | 100 |
| ՀՄԸՄ «Նուպար»ին (Գահիրէ) | 100 |
| «Արեւ» օրաթերթին | 100 |
| «Տիգրան Երկաթ»ին | 50 |
| «Ջահակիր» շաբաթաթերթին | 50 |

(Գահիրէի հաստատութիւններու նուիրատուութիւնները ստանալ «Յուսաբեր»էն)

Իրենց շատ սիրելի Եդուարդ Զարդարեանի մահուան տխուր առթիւ եւ անոր քաղցր յիշատակին Տէր եւ Տիկին Պերճ Տէօքմէճեան (Աւստրալիա) կը նուիրեն.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 100 |
| Գահիրէի Աղքատախնամին | 100 |
| Հայ Կարիքի Խաչին | 100 |
| «Արեւ»ին | 10 |
| «Յուսաբեր»ին | 10 |
| «Ջահակիր»ին | 10 |

(Ստանալ Գահիրէի Ազգային Առաջնորդարանէն)

Իր սիրելի եղբայրներուն Մկրտիչ եւ Յարութիւն Սարեաններու մահուան եւ քառասունքին տխուր առթիւ եւ անոնց քաղցր յիշատակին Տիկին Նուրիկ Զամպաքեան կը նուիրէ.

| | |
|---|---|
| Ս. Պօղոս - Պետրոս Եկեղեցւոյ Պայծառութեան | 100 |
| Աղքատախնամին (Աղեքս.) | 100 |
| Հ.Մ.Ը.Մ.-Նուպարին (Աղեքս.) | 100 |
| Տիգրան Երկաթին | 100 |

(Ստանալ Աղեքսանդրիոյ Ազգ. Առաջնորդարանէն)

## ՀՀ Արտգործ. Նախարար Ալեքսանտր Արզումանեանի




փոխադրութեան մարզին մէջ: Նաեւ քննարկուեցան շրջանին կայունութեանն առնչուող հարցեր: Այս ուղղութեամբ համաձայնութիւն մը գոյացաւ աշխուժացնելու երկկողմ հետաքրքրութիւն ներկայացընող հարցերու շուրջ, մասնաւորապէս տնտեսական եւ արտահանմանեան ներդրումներու մասին:

ՀՀ արտգործ. նախարարը եւ իր պաշտօնակիցը հանդիպում ունեցան հայկական եւ վրացական մամուլի ներկայացուցիչներու հետ:

## ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

**ՊՐ. ՅԱԿՈԲ ՏԱՅ**
**ԵՒ**
**ՕՐ. ԷՕԺԵՆԻ ՇԻՐԻՔՃԵԱՆ**

Գահիրէ - Պէյրութ 6 Նոյեմբեր 1996

Այս բարեբաստիկ առիթով խմբագրութիւնս ջերմօրէն կը շնորհաւորէ նորապսակ ամոլը, մաղթելով անամպ կեանք: Մեր շնորհաւորութիւնները կը յայտնենք նաեւ ընտանեկան բոլոր պարագաներուն:

## ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

**ՊՐ. ԷՏԻ ՊԱՀԱՐԵԱՆ**
**ԵՒ**
**ՕՐ. ՍՈՒԻՋԻ ՍԷՄԻՋԵԱՆ**

Աղեքսանդրիա-Գահիրէ 10 Նոյեմբեր 1996

Այս ուրախ առթիւ ջերմօրէն կը շնորհաւորենք նորապսակ ամոլը եւ կը մաղթենք երջանիկ կեանք: Մեր շնորհաւորութիւնները կը յայտնենք նաեւ իրենց ծնողաց՝ Տէր եւ Տիկ. Հանրի Պահարեաններուն եւ Տէր եւ Տիկ. Նշան Սէմիզեաններուն, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաներուն:

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

Կիրակի, 1 Դեկտեմբեր 1996 կ.ե. ժամը 6.30-ին

**ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐՈՒ ՀԱՆԴԷՍ**
**1995 - 1996 ՏԱՐԵՇՐՋԱՆԻ**

Հովանաւորութեամբ
**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**
Բարեխնամ Առաջնորդ Եգիպտոսի Հայոց

Նախագահութեամբ
**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆԻ**
Ատենապետ Պատկ. Թեմական Ժողովի

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈՒ ՅԱՅՏԱԳԻՐ
(Թատրոն, Խմբերգ, Ասմունք, Նուագ)

*Հայ հասարակութիւնը սիրով հրաւիրուած է*

## ՄԵՐՃԱՆԵԱՆ ԱԶԳ. ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

**ԳՐԱՒՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆ**
Կիրակի, 20 Դեկտեմբեր 1996
Կը խնդրուի նկատի ունենալ





دار شوشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

Հիմնուած 1948

چاهاكير

جريدة أسبوعية

ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR

Armenian Weekly

P.O.Box 2111 (Cairo),

Tel: 3914908, Fax:(202)4530327

E-mail: emarco@ritsec3.com.eg

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1347 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 5 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1996 — ՀԱՏԸ ԶԵՌՔԷ 25 Եգ. Դհկ. — عدد رقم ١٣٤٧ - الخميس ٥ ديسمبر ١٩٩٦


## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԵՒ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒՈՒԹԻՒՆԸ

Հայաստանի Երրորդ Հանրապետութիւնը արդէն բոլորած է իր տարեգրութեան հինգ տարիները: Խօսիլ և ներբողել անկախութեան մասին, արդէն կը նկատուի յանկերգ և ժամանակավրէպ, չտեսնել անկախութիւնը և չխանդավառուիլ այդ անկախութեամբ, պարզապէս կը նշանակէ հաւկուրութիւն և իրականութենէ խուսափում: Իսկ ի՞նչ կայ անկախութենէն անդին, ո՞ր հանգրուանը կը ծառանայ անկախութենէն ետք, ինչպիսի՞ հեռանկարներ և պատասխանատուութիւններ կը պարզուին մեր առջեւ:

Բնականաբար, անկախութեան առաջին տարիները կը նկատուին դժուարին և կոհողութիւններ պահանջող ժամանակահատուած, առաւել՝ փորձութիւններով և սայթաքումներով լի ժամանակաշրջան, նոյնիսկ՝ վտանգներով յղի փոխանցման հանգրուան: Բարեբախտաբար, Հայաստանի համար այդ շրջանը անցաւ առանց արմատական ցնցումներու, աւերիչ և քանդիչ իրադարձութիւններու: Հակառակ պատերազմական վիճակի մէջ ըլլալուն և շրջափակման տակ գտնուելուն, հայրենի ղեկավարութիւնն ու ժողովուրդը գիտակցութեամբ և սթափութեամբ յաղթահարեցին այդ ճգնաժամային և սպառնալից հանգրուանը, նոյնիսկ պատերազմական ճակատներու վրայ արձանագրեցին յաղթանակներ, պանծալի և հպարտառիթ էջեր ապահովելով մեր պատմութեան մէջ: Այդ հանգրուանը արդէն կը պատկանի պատմութեան:

Այժմ, ժամանակն է խօսելու անկախութեան յաջորդող հանգրուանին մասին, ժամանակն է գործելու անկախութեան յաջորդող հանգրուանին յաջողութեան ի խնդիր: Այդ հանգրուանը կը վերաբերի պետականութեան կառուցման և ամրապնդման, պետական կառոյցներու կայացման, անոնք, ըլլան քաղաքական, պինուորական, տնտեսական, արդիւնաբերական, վարչական հիմնարկներ թէ կառոյցներ: Վերջապէս, նշեալ բոլոր գործօններն ու օղակները պիտի նպաստեն ամուր և հզօր հայրենիքի մը գոյառման:

Անկախութիւնն ու սեփական երկրի տէր ըլլալու իրաւունքը, դարաշրջաններ ամբողջ եղած է հայութեան երազը. այժմ, երազը դարձած է իրականութիւն, շօշափելի գոյութիւն, շնորհիւ՝ անտեղիտալի պայքարի և անյողդողդ կամքի: Իրաւունք ունի՞նք անտարբեր մնալու այս իրականութեան հանդէպ, մնալու ձեռնածալ այս պատմակերտիչ նուաճումին նկատմամբ. առաւել՝ իրաւունք ունի՞նք խծբծելու և բամբասելու հոն իրագործուող զարգացումներուն հասցէին, վրէժխնդրութեամբ և ատելութեամբ լեցուելու հայրենական իրադարձութիւններու առնչութեամբ: Ինչպէ՞ս հրճուիլ սեփական տան թերիներով կամ ուռճացնել հայրենիքին ժխտական կողմերը: Կա՞ն այդպիսիներ -անշուշտ կան- ցաւ ի սիրտ կան, վարմանալիօրէն:

Այժմ, Հայաստան կը բոլորէ կառուցման, ամրապնդման և հզօրացման հանգրուանը, դարձեալ, այս հանգրուանը եւս կ'ենթադրէ կապուածութիւն և համբերութիւն, սակայն, աւելի անհրաժեշտ է աշխատանքի կորով և գերլարուած աշխատանք, կօրակցութիւն անոնց, որոնք իրենց ուսերուն կը կրեն հայրենիքի կառուցման պատասխանատուութիւնը. կը դիմագրաւեն արտաքին և ներքին դժուարութիւններ, կ'աշխատին օրն ի բուն, որպէսզի մեր դարերու տեսլականը՝ անկախ հայրենիքը ըլլայ զօտեպինդ և հաստատ:

Հայրենիքի կառուցման և ամրապնդման պատասխանատուութիւնը միայն չի վերաբերիր հայրենաբնակ հայութեան կամ հայրենի հողին կառչած հայրենի կանգուածներուն, ան համազգային հարց է, ազգութեան բոլոր հատուածները շահագրգռող. տասնեակ տարիներ խօսած ենք հայրենասիրութեան մասին, աղաղակած հայրենասիրական բուռն ճառեր. իսկ այսօր, ահա եկած է ժամանակը գործո՛վ ցոյց տալու մեր հայրենասիրութեան ջերմ զգացումը. ինչքա՞ն համոզիչ է օտարութեան ափեր ծուարած, խրատ տալ հայրենասիրութեան անոնց, որոնք հողին վրայ օրէցօր կ'ուռճացնեն հայրենիքը, կը պահպանեն անոր սահմանները, կը կառուցեն՝ քար-քարի վրայ տեղադրելով: Եւ ի՛նչ ծիծաղաշարժ երեւոյթ, երբ մարդիկ օտար ափեր բազմած կը յաւակնին ղեկավարել հայրենի հայութեան քաղաքական - տնտեսական կեանքը, յորդորներ բաշխել ժողովրդավարութեան կամ «իսկական հայրենասիրութեան»: Հայրենի ժողովուրդը երբե՛ք կարիքը չունի արտասահման նստած ինքնակոչ դասատուներու, խրատ բաշխող «փոլիթիքոս»ներու:

Հայաստանի կառուցման և ամրապնդման պատաս- 4

ԼԻԶՊՈՆ

## ԵԱՀԿ-Ի ԳԱԳԱԹԱԺՈՂՈՎԻՆ

### ԼԵՒՈՆ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ.- «Ատրպէյճան ի վիճակի չէ երաշխաւորելու Լեռնային Ղարաբաղի բնակչութեան ապահովութիւնը»

Անցեալ Երկուշաբթի, 2 Դեկտեմբերին, Փորթուկալի մայրաքաղաք Լիզպոնի մէջ սկսաւ երկօրեայ գագաթաժողովը Եւրոպայի Անվտանգութեան եւ Համագործակցութեան Կազմակերպութեան (ԵԱՀԿ-ի):

Գիտաժողովի ժողովի ընթացքին, որուն մասնակցեցան 54 պետութիւններ, երբ հարցը եկած է Արցախին, ՀՀ նախագահ Լեւոն Տէր Պետրոսեան պատասխանելով Ատրպէյճանի նախագահ Հէյտար Ալիեւի ամբաստանութիւններուն, պատասխանած է ըսելով, թէ Ատրպէյճան ի վիճակի չէ երաշխաւորելու Լեռնային Ղարաբաղի բնակչութեան ապահովութիւնը: Ապա աւելցուցած. «Այս պատճառով ալ մենք կը նկատենք, որ յաւելեալ ողբերգութիւններու առաջքը առնելու միակ ձեւը Լ. Ղարաբաղի բնակչութեան ինքնորոշման իրաւունքը երաշխաւորելն է»: Ապա ՀՀ նախագահը խոստացած է շարունակել բանակցութիւններուն մաս կազմել ԵԱՀԿ-ի Մինսկի խմբակի ծիրէն ներս:

Ըստ Ալիեւի արտայայտութիւններուն, ան պնդած է որ Հայաստանի Հանրապետութիւնը պէտք է ընդունի Ատրպէյճանի Հանրապետութեան հողային ամբողջականութիւնը, մէջը ըլլալով՝ Լեռնային Ղարաբաղի հողային տարածքը: Ապա սպառնալով հայկական կողմին, յայտարարած է թէ ինք պիտի չընդունի որեւէ փաստաթուղթ, եթէ հոն չշեշտուիր իր հողային ամբողջականութեան հարցը:

Սակայն յաջորդ օրը՝ Երեքշաբթի 3 Դեկտեմբերին, վերջին պահուն եզրափակիչ հաղորդագրութենէն դուրս բերուեցաւ Արցախի վերաբերեալ բաժինը: Նոյն պարբերութիւնը սակայն պահուեցաւ Կազմակերպութեան նախագահի յայտարարութեան մէջ: Այս բաժինը կը վերահաստատէ Ատրպէյճանի հողային ամբողջականութիւնը եւ Արցախի ինքնորոշման իրաւունքը կը սահմանէ Ատրպէյճանի սահմաններէն ներս «ինքնավարութեան բարձրագոյն աստիճան»ով:

Այս արդիւնքին ի տես, ՀՀ նախագահը ջնջեց նախապէս յայտարարուած մամլոյ ասուլիսը:

ԱՐՑԱԽ

## ՌՈՊԵՐԹ ՔՈՉԱՐԵԱՆ ԼՂՀ-Ի ՆԱԽԱԳԱՀ ՎԵՐԸՆՏՐՈՒԱԾ

Կիրակի, 24 Նոյեմբեր 1996-ին, ժողովրդային տօնական մթնոլորտի մը մէջ, տեղի ունեցան Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան նախագահական ընտրութիւնները: Արդիւնքը յայտնի եղաւ յաջորդ օրը, թէ նախագահ վերընտրուած է Ռոպերթ Քոչարեան, ստանալով ընտրողներու քուէներուն 89%ը:

Ըստ Կեդրոնական Ընտրական Յանձնաժողովի նախագահ Մուշեղ Օհանջանեանի, Հանրապետութեան 8 տարածքային կեդրոններու 171 ընտրական տեղամասեր ներկայացան Հանրապետութեան շուրջ: 90,000 ընտրողներէն 69,965ը, որոնց 60,296ը իրենց քուէն տուին Ռոպերթ Քոչարեանին (ընտրողներու 89%ը): Բորիս Առուշանեան ստացաւ 4806 քուէ (7%), իսկ Հրանդ Մելքումեան 2708 քուէ (4%):

Ընտրութիւններու կանոնաւոր ընթացքին հետեւելու համար, Արցախ ժամանած էին շուրջ 10 երկիրներէ աւելի քան 30 դէտեր, որոնք իրենց գոհունակութիւնը արտայայտեցին, ի տես ժողովրդային ազատ կամքի արտայայտութեան:

Յայտնենք, որ Ռոպերթ Քոչարեան, նախագահ վերընտրուելու առիթով շնորհաւորական գիրեր ստացած է Լեւոն Տէր Պետրոսեանէն, Ամենայն Հայոց Գարեգին Ա. եւ Մեծի Տանն Կիլիկիոյ Արամ Ա. Կաթողիկոսներէն:

ՄԻԱՑ. ՆԱՀԱՆԳՆԵՐ

## ՖԱԴԷՅ ՍԱՐԳՍԵԱՆ ԱՐԺԱՆԱՑԱՒ «ՏԱՐՈՒԱՆ ՄԱՐԴ»Ը

(«ՆՈՅԵԱՆ ՏԱՊԱՆ»).- Ամերիկայի Միացեալ Նահանգներու Միջազգային Կենսագրական Ինստիտուտը, 1996ի «**Տարուան Մարդ**» կոչումը շնորհեց Հայաստանի Ազգային Ակադեմիոյ նախագահ Ֆադէյ Սարգսեանին, առ ի գնահատանք հասարակութեան մատուցած իր ծառայութիւններուն:

Ըստ յիշեալ Ինստիտուտի տնօրէն Ջ.Մ. Իվընսի, յիշեալ կոչումը կը շնորհուի սահմանափակ թիւով անձնաւորութիւններու: Ան յայտնած է նաեւ, թէ ինք յատուկ նամակով շնորհաւորած եւ մետալի յանձնման արարողութեան հրաւիրած է Ֆադէյ Սարգսեանը:

ԳԱՀԻՐԷ

## Նորա Արմանիի Մասնակցութիւնը Գ.Ֆ.Մ.-ի 20-րդ Փառատօնին

Ուրախ ենք տեղեկացնելու թէ նախկին եգիպտահայ, այժմ ֆրանսահայ ծանօթ դերասանուհի, ֆիլմերու արտադրիչ՝ Նորա Արմանի անցեալ Երկուշաբթի 2 Դեկտ.ին, Գահիրէ ժամանած է յատուկ հրաւէրովը **Գահիրէի Ֆիլմերու Միջազգային 20-րդ Փառատօնի նախագահ՝** Սաատ Էլ Տին Ուահպայի:



Ան ինչպէս անցեալ տարի, այս տարի եւս իր մասնակցութիւնը կը բերէ որպէս արտադրիչ և դերասանուհի Գ.Ֆ.Մ.-Ի Փառատօնին, ցուցադրելով երկու որակաւոր ֆիլմեր:

Առաջինը որ հայկական ժապաւէն մըն է, նկարահանուած Հայաստանի մէջ, անունն է «Լաբիւրինթոս», (Labyrinthe), որուն գլխաւոր դերերը կը կատարեն սիրուած դերասանուհի Նորա Արմանին և ֆրանսահայ ծանօթ դերասան Սերժ Աւետիքեան. իսկ բեմադրութիւնը ստանձնած է արուեստագէտ՝ Միքայէլ Տովլաթեան:

Ֆիլմը որ արտադրած է Նորան, համագործակցութեամբ՝ հայկական, ֆրանսական և չեխական ընկերակցութիւններու, այսօր առաւօտեան ժամը 10-ին Գահիրէի օփերայի փոքր դահլիճին մէջ, պաշտօնական ցուցադրութիւնը պիտի կատարուի: Ապա ժամը 12-ին տեղի պիտի ունենայ մամուլի ասուլիս մը, որուն կարգ մը բացատրութիւններ պիտի տայ արուեստագիտուհին:

Երկրորդ ֆիլմը՝ պաղեստինեան ժապաւէն մըն է «Հայֆա» (Hayfa) անունով, որուն բեմադրիչն է Րաշիտ Մաշարաուին, իսկ Նորան որպէս արտադրիչ կարողացած է պատրաստել ֆիլմը համագործակցութեամբ հոլանտական և պաղեստինեան ընկերակցութիւններու:

Յաջորդիւ դեռ եւս պիտի անդրադառնանք այս մասին:

(Նախկին Առաջնորդ Հոգելոյս Տ. Մամբրէ Արք. Սիրունեանի Մահուան 30-ամեակին Առթիւ)

# ԵՐԵՍՆԱՄԵԱԿ

(Ա.)

«Երկայն աւուրբք լցուցից զնա եւ ցուցից նմա զփրկութիւն իմ»:
ՍԱՂՄՈՍ 91:16 (Ա.)

*Եգիպտահայ թեմի նախկին, հոգելոյս Առաջնորդ, Գերաշնորհ Տ. Մամբրէ Սրբազան Արքեպսկ. Սիրունեանի վախճանման երեսնամեակի լրման տարելիցն է այս տարի:*

*Ե՞րբ և որքան շուտ անցան երեք տասնամեակներ: Շատերուն մտքին մէջ պայծառ է տակաւին անոր բարի յիշատակը: Մեր եկեղեցիին կամարներուն տակ, տակաւին կը թրթռան անոր յաղթ ու գոռ ձայնը: Մեր սրահներուն մէջ, զանազան ձեռնարկներու առթիւ արտասանած ճառերն ու յորդորները չեն մոռցուած անշուշտ: Նաեւ խոր հաւատքէն բխած, ջերմ, հաղորդական հայրենասիրական քարոզներն ու մաղթանքները:*



*Վախճանման առթիւ գրուեցաւ թէ, յաճախ կը ճամբորդէր թեմական գործերով Սուտան, Եթովպիա կամ Յունաստան ու կը վերադառնար: Բայց այս անգամ այս մեկնումը, վերադարձ պիտի չունենայ: Թէ իր Առաջնորդական աթոռը, վախճանումէն ետք, կը նմանէր սիրուն շրջանակի մը, որուն մէջ նկարը չկար:*

*Հեռուէն դիտուած դաշտանկարի կամ ծովանկարի մը նման որուն թերութիւնները չենք տեսներ, այդպէս, երեսնամեակի հեռաւորութենէն երբ նայինք ողբացեալ Մամբրէ Սրբազանին, կը տեսնենք մարդը եւ գործը իր բազմաշխատ վաստակով, սրբուած իր մարդկային տկարութիւններէն:*

### *ՄԱՐԴԸ ԵՒ ԵԿԵՂԵՑԱԿԱՆԸ*

*Իր ժամանակին մարդն էր. և ինչպիսի ժամանակ: Հայոց պատմութեան ամենէն դժբախտ ժամանակահատուածը: Ծնած էր պատմական Հայաստանի Կարին քաղաքին մէջ 1891-ին: Նախնական ուսումը ստացած Կարնոյ Արծնեան վարժարանին մէջ: Բարեպաշտ ծնողքը քաջալերած են զինք ընդգրկելու հոգեւորական ասպարէզ: Կարնոյ Առաջնորդ Սմբատ Եպսկ. Սաատէթեանի կարգադրութեամբ, պատանի հասակին ղրկուած Արմաշի դպրեվանք որուն վանահայրն էր այն ատեն Տ. Մեսրոպ Ծայրագոյն վարդապետ Նարոյեան իսկ տեսուչը՝ Տ. Գարեգին Ծայրագոյն վարդապետ Խաչատուրեան: 1913-ին սարկաւագ կը ձեռնադրուի Դեկտ.-ի 25-ին, Սուրբ Ստեփաննոսի տօնին օրը, Արմաշի Չարխափան Ս. Աստուածածին եկեղեցիին մէջ:*

*Ապա երբ պատմական Հայաստանի ամէն կողմ աւերածութեան կ'ենթարկուէր, բռնագաղթի անուան տակ սկսած էր կոտորած, դպրավանքի միաբանութեան հետ կ'աքսորուի Էսկիշէհիր, ապա Գոնիա: Ձեւով մը խոյս տալով ստոյգ մահէ, ոլորապտոյտ ճանապարհներով կը հասնի Պոլիս, ապաստանելու համար Ամենապատիւ Տ. Զաւէն Պատրիարք Տէր Եղիայեանի մօտ:*

*Պատուական Արմաշի միաբանութեան հիանալի անդամներէն շատեր նահատակուեցան իրենց ժողովուրդին հետ, հիմա կ'երեւին սուրբերու լուսապսակներով: Այդ միաբանութեան վերջին անդամներէն մէկն էր անիկա: Արմաշ 19-րդ դարու վերջը և քսաներորդ դարու սկիզբը, մեր եկեղեցիին պարգեւեց այնպիսի հոգեւորականներ որոնք փայլուն համաստեղութիւն մըն են Հայաստանեայց եկեղեցւոյ երկնակամարին վրայ: Աhաւասիկ անոնցմէ ոմանք. Բաբկէն Կիւլէսէրեան, Մաղաքիա Օրմանեան, Եղիշէ Դուրեան, Թորգոմ Գուշակեան, Երուանդ Բէրտահճեան, և ուրիշներ:*

*Մամբրէ աբեղան Պոլսոյ մէջ ձեռնադրութիւն ստանալէ ետք, կը բռնադատուի ատանդական կեանքի: 1916-ին կ'աքսորուի Երուսաղէմ Սիսի Տ.Տ. Սահակ կաթողիկոսի մօտ:*

*1918-ին իբրեւ Առաջնորդական փոխանորդ Գահիրէ կուգայ, կարճ ժամանակ ետք կը ղրկուի Փոր Սայիտի վրանաքաղաքը, հովուելու շուրջ տասը հազար գաղթական հայերը որոնք հանգրուանած էին այնտեղ:*

*Յաջորդ տարին, օգտուելով զինադադարի խաղաղութենէն, որբերուն ու գաղթականներուն հետ կը մեկնի Կիլիկիա ուր վեհափառ Տ. Սահակ կաթողիկոսէն կը ստանայ Ծայրագոյն վարդապետի աստիճան: Կիլիկիոյ եղերական պարպումէն ետք որբերու և որբուհիներու խոշոր խումբով կը հաստատուի Լիբանան:*

*1923-ին կը հրաւիրուի Աղեքսանդրիոյ մէջ Առաջնորդական փոխանորդի պաշտօնին:*

*1931-ին Տ. Թորգոմ Սրբազան Արքեպսկ. Գուշակեան կ'ընտրուի Ս. Երուսաղէմի պատրիարք, իսկ Մամբրէ Ծայրագոյն վարդապետ, Առաջնորդի տեղակալի պաշտօնով կը փոխադրուի Գահիրէ: 1933-ին ի Ս. Էջմիածին՝ ուր նահատակեալ Խորէն Ա. Մուրատբէգեան կաթողիկոս զինք կը ձեռնադրէ Եպիսկոպոս: 1945-ին կ'ընտրուի Եգիպտահայոց հոգեւոր Առաջնորդ:*

*Նոյն տարին կը մասնակցի ի Մայր Աթոռ Ս. Էջմիածին, Տ.Տ. Գէորգ Զ. Կաթողիկոս Չէօրէքճեանի յԱթոռ Ս. Գրիգոր Լուսաւորչի ընտրութեան և օծման:*

*1951-ին կը կոչուի նաեւ Յունահայոց Առաջնորդի պաշտօնին: Կոչումի գիտակցութեամբ հոգեւորական, ուսուցանեց, քարոզեց, մխիթարեց և Աւետարանական ճշմարտութիւններ բաշխեց իր շուրջ:*

*Նախ, հաւատքի մարդն էր. ամուր հիման վրայ հաստատուած այդ հաւատքէն կը բխէին իր խօսքերը միշտ: Այդ հաւատքով դաստիարակեց իր հոգածութեան ու խնամքին յանձնուած հարիւրաւոր որբերն ու որբուհիները, աշակերտներն ու աշակերտուհիները զանազան դպրոցներու մէջ: Հոգածու ու բարեխնամ, հոգեւոր հայր եղաւ անոնց: Կարելի չէր չգրաւուիլ այն օղակին մէջ որ կը կազմուէր իր անձէն արտաշնչող հաւատքէն:*

4

## Յագուստներու Ցուցահանդէսը

2

ցուցադրութեամբ հագուստներու կոկիկ հաւաքածոյի մը, գեղեցկօրէն ներկայացուած գեղադէմ օրիորդներու կողմէ:

Ձեռնարկի յաջողութիւնը առաւելաբար եկաւ ո՛չ միայն ներկաներու քաջալերանքէն, այլ ան, մասնաւորաբար եւ իւրայատուկ կերպով, վարչութեան տքնաջան եւ յամառ աշխատանքին արդիւնքն էր:

## Յ.Մ.Մ.-Ի 75-ԱՄԵԱԿԻՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ

2

սեփական դաշտով: Ընկ. Մարգարեան տեղեկացուց, որ որոշ գումար մը՝ այս նպատակին համար մէջտեղ եկած է արդէն, իսկ այդ երեկոյի հասոյթը եւս պիտի օգտագործուի սեփական խաղավայրի հարցը լուծելու ուղղութեամբ:

Տեղի ունեցաւ յատուկ արարողութիւն, որու ընթացքին գնահատանքի յատուկ ցուցատախտակ յանձնուեցաւ աւելի քան յիսուն տարիներ առաջ Յալէպ քաղաքի մէջ Յ.Մ.Մ.-ի ղեկավարութիւնը վարած, նուիրեալ վեթերան ընկ. Յակոբ Սինանեանին: Յատուկ կրծքանշաններով պատուուեցան Միութեան հաւատաւոր անդամներ՝ Գրիգոր Լաչինեան եւ Անդրանիկ Օտապաշեան:

Ապա, 75-ամեակի կարկանդակը կտրելու հրաւիրուեցաւ օրուայ կնքահայր ու Յ.Մ.Մ.-ի անսակարկ օժանդակող Պր. Մարտիրոս Իսքէնտէրեան: Այս առթիւ ան Միութեան նուիրեց հինգ հազար տոլար եւս:

Պաշտօնական բաժինի աւարտին բեմ բարձրացաւ սիրուած երգիչ Ատիս Յարմանտեան, որ իր Յարմոնի նուագախումբի ընկերակցութեամբ խանդավառ եւ կայտառ մթնոլորտ մը ստեղծեց մինչեւ առաւօտեան կանուխ ժամերը:

## ՏԱՐԵԼԻՑ ԴԵԿՏԵՄԲԵՐ ԵՕԹՆԻ

ԺԱԳ ՅԱԿՈԲԵԱՆ

*Մէկ վայրկեան յոտնկայս լռութի՜ւն...*

*Լռութի՜ւն,*
*Անո՛նց համար, որոնք կեանքին տողը յանկարծ*
*Վերջակէտի բախեցաւ,*
*Իրենց սրտի խօսքը, ափսո՜ս, դեռ չաւարտած:*

*Լռութի՜ւն,*
*Անո՛նց համար, որոնց բերնին՝ երգը գարնան*
*Առկախուեցաւ լերդացած,*
*Անժամանակ ծմրան մը երբ հանդիպեցան:*

*Լռութի՜ւն,*
*Անո՛նց համար, որ կայծակէ մ'անակնկալ*
*Գլխատուեցան դիտապաստ,*
*Երբ ունէին իրենց ճակտին դեռ կեանքի փայլ:*

*Լռութի՜ւն սգաւոր,*
*Անո՛նց համար, որ որս դարձան արտասովոր*
*Մրրիկի մը թակարդին*
*Եւ կուլ գացին բիւր քարերու ծովու մը խոր:*

*Լռութի՜ւն,*
*Անո՛նց համար, որոնք կարծես քարկոծուեցան*
*Գերիրէշի մը ձեռքով,*
*Տրորուեցան քարերուն տակ իրե՛նց իսկ տան:*

*Լռութի՜ւն...*
*Բայց մեր սրտին թող չլռէ սուրբ սուգն այս նոր,*
*Թող կաղկանձէ կոծը գուժկան զանգակներուն,*
*Թող մեր արցունքն անոնց նինջին օրօր,*

*Երկնէ աղօթք,*
*Չի անոնք՝ դեռ մեր եղբայրներն են անբաժան,*
*Որ մեր սիրոյն շունչով պիտի ընդմիշտ ապրի՛ն:*
*...Յոտնկայս լռութի՜ւն մէկ վայրկեան...*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Բժշկական գործողութեան ենթարկուած ըլլալուս առիթով, ներկայիս շնորհակալութիւն կը յայտնեմ, Լիազօր դեսպան, Ն.Վ. Դոկտ. Էտուար Նալպանտեանին եւ իր անձնակազմին: Թեմական ժողովի յարգելի Ատենապետ, Տիար Անդրանիկ Մեսրոպեանի, Քաղաքական Ժողովի Ատենապետ, յարգելի Տիար Յրաչ Սիմոնեանի եւ ժողովականներուն, Տոքթ. Յենրի Բետերեանին, եւ բոլոր կազմակերպութիւններու ու անհատներու որոնք ծաղկեկողովներ ղրկեցին կամ անձամբ ապաքինման բարեմաղթութիւններ ըրին: Աստուծոյ օրհնութիւնը ըլլայ բոլորին վրայ:

ԶԱՒԷՆ ԱՐՔԵՊՍԿ. ՉԻՆՉԻՆԵԱՆ
Առաջնորդ Յայոց Եգիպտոսի

## ԲԱՑ ՆԱՄԱԿ...

# ՀԻՆ ՍԵՐՈՒՆԴԷՆ ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻՆ

Նոր սերունդը առանցքն է հիներուն մտահոգութեանց, այդ մասին ո՛չ մէկ կասկած: Անուրանալի է նաեւ, որ հին սերունդը արժէքները ստեղծած ու զանոնք բացի պահելէ, զարգացուցած է իր կարգին:

Նորը ժառանգորդն է անոնց, հետեւաբար կոչում պէտք է ունենայ պահելու եւ աւելցնելու զանոնք:

Սակայն հարց է, թէ արդեօք ունի՞նք մեր բաղձանքներուն համապատասխան նոր սերունդ մը:

Բաց գիրք մըն է հինը, կարելի է ըսել կարդացուած գիրք մը, բայց նորը՝ տակաւին չէ գրուած, կամ նոյնիսկ եթէ գրուած ալ է, քանի մը էջ գրուած ըլլալուն դեռ չէ կարդացուած:

Ահա թէ ինչո՞ւ նորերու դժգոհութիւնը հիներէն՝ աւելի պարզ է եւ յստակ քան հիներունը, որոնք դեռ չլուծուած առեղծուածներու առջեւ կը գտնուին:

Մեր նոր սերունդը, երկրէ երկիր ցրուած, հիներուն հետ մէկ դէմքով չի ներկայանար իր միջավայրով, իր ստացած դաստիարակութեամբ եւ ձգտումով:

Նոր սերունդին մէջ կայ տարր մը, որ ապրած է հայկական շրջանակի ներքեւ ու կ՚ապրի, հայկական դաստիարակութիւն ստացած է, հայ կեանքին կապուած է եւ կ՚ապրի հայ զանգուածին հետ: Անիկա հայ է իր լեզուով ու ճակատագրով:

Կայ նաեւ ուրիշ տարր մը, որպիսին է ֆրանսայի կամ Ամերիկայի մէջ ծնած ու մեծցած սերունդը, որ թէեւ հոգւով հայ է, սակայն դաստիարակութեամբ եւ կրթութեամբ, նոյնիսկ կրնանք ըսել լեզուով, հեռու է հայ կեանքէ:

Հին սերունդը, որ դեռ հայ կեանքին եւ ճակատագրին գլխաւոր ղեկավարն է, պարտի նորով զբաղիլ նոր սերունդի այս երկու ճիւղերով ալ, որպէսզի դալար մնան այդ երկու ճիւղերը, ծաղկին եւ պտղաբերին:

Աւելորդ եւ ապարդիւն վաստակ մըն է հիներուն կողմէ նորերուն ուղղուած այն մեղադրանքը, թէ անոնք չեն հետաքրքրուիր հայ կեանքի արժէքներով, ո՛չ մայրենին եւ ո՛չ մշակոյթը կը հետաքրքրէ զիրենք, ո՛չ ալ պատմութեամբ կը հետաքրքրուին:

Այո՛, անօգուտ, նոյնիսկ անարդար կ՚ըլլայ մեղադրել զանոնք, վասնզի, եթէ ատենին հիները մտածէին աւանդութեանց պահպանման մասին, եթէ կանուխ արթննային այդ հիները, եթէ ծնողները հոգ տարած ըլլային դաստիարակութեան, եթէ հայ լեզուն ուսուցուէր յարմարագոյն միջոցներով, եթէ տուներու մէջ հայերէն խօսուէր՝ այսօր տարբեր կ՚ըլլար պարզուած պատկերը: Շատ աւելի հայ կեանքին կապուած կ՚ըլլային նորերը:

Ի՛նչ օգուտ սակայն այս ակադեմական խորհրդածութեանց կամ փոխադարձ դժգոհութեանց պարզումին, երբ սա կամ նա պատճառով ստեղծուեր է կացութիւն մը, դժբախտութիւն մը պատահեր է կամ ըսենք, թէ արկածի մը հետեւանքով զոհեր կան, ի՞նչ կարելի է ընել:

Թէեւ քիչ մը ուշ մնացած ենք, բայց բնաւ ուշ չէ նոր գործի մը ձեռնարկելու եւ եռանդով ու հաւատքով վերանորոգուելու կամ աշխատելու՝ կորսուած ժամանակը շահելու համար:

Անցեալի մէջ, ինչ որ չենք ըրած կամ չենք կրցած ընել, ներկայ պայմաններու տակ այսօր կրնանք ընել:

Մենք ունինք երիտասարդութիւնը պատրաստելու բոլոր միջոցները եւ ազդակները, որոնք են՝ մշակութային միութիւնները, մարզական ակումբները, դպրոց ու եկեղեցի, լեզու եւ գրականութիւն, երգ ու թատերական արուեստ, ճարտարապետութիւն, մէկ խօսքով ամէն բան ունինք դարերու փորձառութեամբ: Կը մնայ օգտագործել այս բոլորը կազմակերպեալ աշխատանքով: Գիտակից հայը այլամերժ չ՚ըլլար, մեր բաղձանքն է պատրաստել սերունդ մը, որ զգայ թէ հայ ըլլալը արժէք մըն է, հայ մշակոյթը թանկագին հարստութիւն մը՝ իսկ հայոց պատմութիւնը փառաւոր անցեալ մը ունի, հայ գիրն ու գրականութիւնը նշանակութիւն մը կը ներկայացնէ միջազգային անդաստանին մէջ:

Հոգեկան ու գիտակցական այս վիճակը եթէ կարենանք ստեղծել երիտասարդութեան մէջ, եթէ այս մթնոլորտով յաջողինք շրջապատել զանոնք, այն ատեն միայն կրնանք տարած ըլլալ յաղթանակը:

ԱՐԱ ԳՕՉ
«Ժամանակ»

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

Հիմնուած 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 3914908, Fax:(202)4530327
E-mail: emarco@ritsec3.com.eg

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1348 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 19 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1996 | ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 25 Եգ. Դհկ. | عدد رقم ١٣٤٨ - الخميس ١٩ ديسمبر ١٩٩٦


## ՀԱՅՐԵՆԻՔԷՆ ԽԶՈՒԵԼՈՒ «ԿՈ՞Չ»

Պայման չէ, որ հայրենիքը շքեղ եւ բարգաւաճ ըլլայ եւ ապա սկսինք սիրելու զայն, պայման չէ, որ հայրենի ղեկավարութիւնը մեզի սիրելի անձինք ըլլան եւ ապա սկսինք գովաբանել զայն, պայման չէ, որ Հայաստանի նախագահը մեր պատկանած կազմակերպութեան անդամը ըլլայ եւ ապա դրուատենք զայն: Այլ՝ հայրենիքը իր բոլոր թերութիւններով, իր վիրաւոր կողմերով կը մնայ մերը, ուստի ինչ հանգամանքներ ալ տիրեն, պարտաւոր ենք մնալ անոր կողքին, կանգնիլ անոր թիկունքին եւ աջակցիլ անոր վերելքին եւ հզօրացման:

Այս սկզբունքին շուրջ կարելի՞ է վիճարկել. ոեւէ մէկը կրնա՞յ սարակուսիլ այս դիրքորոշման շուրջ: Կա՞ն մարդիկ որոնք տարակարծիք են հայրենիքի կողքին կանգնելու առնչութեամբ: Դժբախտաբար, կան:

Սփիւռքահայ զանգուածները հայրենիքին առնչելու, այդ զանգուածները հայրենիքով մխիթարելու եւ ինչու չէ նաեւ հայրենիքով պարծենալու առաքելութիւնը կը պատկանի այն հայրենասէրներուն, որոնք խտիր չեն դներ Հայաստանի ղեկավարութեան գոյնին, պատկանելիութեան եւ անունին միջեւ: Հայրենիքը ամէն բանէ վեր դասելու վճռականութիւնը եւ հաստատ կեցուածքը պէտք է ըլլայ բոլորին քաղաքականութիւնը, ուրեմն՝ փոխանակ ուռճացնելու հայրենական վատ դէպքեր, խծբծելու հայրենի ղեկավարները, զանազան անճիշդ ածականներով խարանելու Հայաստանի պատասխանատուները, անվարան կերպով պէտք է զօրակցինք հայրենի այն մարդկանց, որոնք լծուած են հայրենակերտումի եւ հայրենաշինութեան գործին. հակառակ պարագային՝ սփիւռքահայ զանգուածները խզած կ՚ըլլանք իրենց մխիթարութեան ակունքէն՝ հայրենիքէն: Եւ ի՞նչ կրնանք շահիլ եթէ հետեւողականօրէն նսեմացնենք հայրենիքը որպէս «բռնատիրական» երկիր, դաժան պայմաններու մէջ ապրող երկիր, ցաւի եւ ապազգային մթնոլորտի մէջ տուայտող երկիր, եթէ ոչ՝ սփիւռքահայ զանգուածներուն հակակրանքը իրենց սեփական օճախին նկատմամբ՝ հայրենիքին նկատմամբ. ի՞նչ կրնանք շահիլ խոշորացոյցի տակ առնելով հայրենական կեանքին վիրաւոր կողմերն ու երեսները, եթէ ոչ՝ արտերկրի հայութեան օտարացումն ու խորթացումը իր յոյսի եւ փրկութեան լաստէն՝ հայրենիքէն: Հետեւաբար, անկասկած, միայն ժխտական հետեւանքներ կրնայ ունենալ հայրենիքը անուանարկելու կարգ մը մարդոց հետեւողական ճիգերն ու վարքագիծը: Ինքնաբերաբար, ամէն եւ դէպքերուն ծայրերէն անտեղեակ մարդիկ ատելութեամբ եւ արհամարհանքով կը լեցուին իրենց հայրենիքին հանդէպ:

Կ՚ենթադրենք, որ հայ մամուլին եւ հայ յօդուածագիրներուն առաքելութիւնը յստակ է - օտարացնող ափերու մէջ ապրող հայութիւնը առնչել հայրենիքին, հայ զանգուածները կապել ու զօդել հայրենիքին, նոյնիսկ՝ մղել զանոնք որ երթան հոն եւ մասնակցին հայրենաշինութեան համազգային գործին. նպաստեն հայրենիքի տնտեսութեան ամրապնդման, բարգաւաճման, օգտակար հանդիսանան հայրենիքի պաշտպանութեան վսեմագոյն գործին, կառուցեն քար-քարի վրայ, դառնան մասնիկը հայրենակերտումի դժուարին առաքելութեան:

Սակայն, ցաւ ի սիրտ, կան գրիչ շարժողներ, որոնք իրենց պարտականութիւնը կը նկատեն անվերջ կերպով, առանց ձանձրանալու, նոյնիսկ առանց դոյզն խիղճի խայթի, վարկազրկել հայրենի ղեկավարութեան հեղինակութիւնը, անտեսել այդ ղեկավարութեան նուաճումները եւ խոշորցնել այդ ղեկավարութեան սխալ քայլերը. եւ այդ բոլորը յանուն ինչո՞ւ, որո՞ւ ջրաղացքին ջուր լեցնելու...:

Նման անպատուաբեր քարոզչութեամբ նաեւ սկսած են զբաղիլ հայրենի յօդուածագիրներ. սփիւռքահայ զանգուածները հայրենիքէն հեռացնելու եւ անջատելու գործին լծուած են:

Սփիւռքահայուն գործն է զօրակցիլ Հայաստանի, անոր առաջնորդներուն, ինչ գոյնի եւ հոսանքի ալ պատկանին անոնք, որովհետեւ՝ համոզուած ենք որ հայրենիքը վեր է ամէն նախասիրութենէ ու արժէքէ: Այդ առաքելութեան կը հաւատանք. այդ քարոզչութեան հաւատարիմներն ենք, որովհետեւ՝ համոզուած ենք որ հայրենիքը կը հզօրանայ միայն միասնական ջանքերով, հայու բազուկներով եւ հայրենաշինութեան հաւատամքով:

(Յապաւումներով) ԱՒԵՏԻՍ ՌԱԶՄԻԿ

ԵՐԵՒԱՆ

## «ԴՐՕ»Ի ԴԱՏԱՎՃԻՌԸ ՀՐԱՊԱՐԱԿՈՒԵՑԱՒ

Երեքշաբթի 10 Դեկտեմբերին, հրապարակուած է «Դրօ»ի դատավճիռը: Հայաստանի Գերագոյն Դա-
...րարանի քրէական գործերու դա-
...ական ժողովը մահապատիժի
...դատապարտած է զինուած խումբի
...կերպիչ ու ղեկավար Արսէն
...ն, Արմենակ Մնջոյեանը եւ Արմէն Գրիգորեանը:

«Դրօ»ի միւս անդամներէն Արմենակ Զաքարեանը դատապարտուեցաւ 15, Յովհաննէս Մկրտչեանը՝ 10, Արա Հարմանտայեանը՝ 6, Էդիկ Սիմոնեանը՝ 5, Գէորգ Ալավերտեանն ու Թաթուլ Գաբրիէեանը՝ 3-ական տարի բանտարկութեան:

Դատական ժողովը ապա-

4

## ՀՀ Առողջապահութեան Նախարարութեան Պատուիրակները Եգիպտոսի Մէջ

Եգիպտոսի Արաբական Հանրապետութեան (ԵԱՀ) եւ ազգաբնակչութեան նախարարութեան հրաւէրով Դեկտեմբեր 6-էն 13-ը պաշտօնական այցով Գահիրէում էր գտնւում ՀՀ առողջապահութեան նախարարութեան պատուիրակութիւնը՝ նախարարի առաջին տեղակալ Դերենիկ Դումանեանի գլխաւորութեամբ: Նրան եւ Եգիպտոսում ՀՀ դեսպան Էդուարդ Նալպանտեանին ընդունեց ԵԱՀ առողջապահութեան եւ բնակչութեան նախարար Իսմայիլ Սալամը, որին փոխանցուեց Հայաստան այցելելու ՀՀ առողջապահութեան նախարար Արա Բաբլոյեանի հրաւէրը: Իսմայիլ Սալամը շնորհակալութեամբ ընդունեց այն: Նախատեսւում է այդ այցն



Եգիպտոսի առողջապահութեան եւ բնակչութեան նախարար՝ Տոքթ. Իսմայիլ Սալամ եւ ՀՀ առողջապահութեան նախարարի առաջին տեղակալ՝ Տոքթ. Դերենիկ Դումանեան, կը ստորագրեն համաձայնագիրը:

իրականացնել 1997թ. Մայիսին:

Հանդիպման ընթացքում քննարկուեցին համագործակցութեան գոնգրէդ ծրագրեր: Մասնաւորապէս, պայմանաւորուածութիւն ձեռք բերուեց համատեղ ուսումնասիրել Երեւանում եգիպտական դեղագործական ցուցահանդէսի կազմակերպման հարցը, հրաւիրել դեղագործութեան բնագաւառում հայ - եգիպտական համագործութեան խնդիրներին նուիրուած գիտաժողով: Կողմերը համաձայնեցին գործնական ուղիղ կապեր հաստատել երկու երկրների առողջապահական կեդրոնների, գիտա- հետազօտական ինստիտուտների եւ հիւանդանոցների միջեւ, փոխանակել մասնագէտներ, միմեանց աջակցել գատրերի վերապատրաստման

2

## Հայ Նշանաւոր Նկարիչներ Գահիրէի 6-րդ Միջազգային «Պիէնալէ»ին

Գահիրէի 6-րդ միջազգային «Պիէնալէ»ին մասնակցելու նպատակով, Երեւանէն ժամանած են չորս նշանաւոր նկարիչներ՝ Արամ Իսաբէկեանը, Ալպերդ Աւետիսեանը, Սամուէլ Համբարձումեանը եւ Արա Հայթայեանը: Անոնց երեքական ստեղծագործութիւնները, աշխարհի քանի մը տասնեակ երկիրներ ներկայացնող արուեստագէտներու աշխատանքներու կողքին, ցուցադրուելու են նաեւ Գահիրէի Արուեստի Ազգային Կեդրոնի սրահներուն մէջ, որ բացումը տեղի ունեցաւ անցեալ Կիրակի 15 Դեկտեմբերին:

Հիանալի առիթ է ներկայացնելու Հայաստանի ժամանակակից կերպարուեստը թէ Եգիպտոսի եւ թէ միջազգային արուեստասէր հասարակութեան: Գոհունակութեամբ կարելի է արձանագրել, որ հայ արուեստագէտներու մասնակցութիւնը, Եգիպտոսի մէջ կազմակերպուող միջազգային մշակութային կարեւոր ձեռնարկներուն, կը դառնայ աւանդական, որը անշուշտ վերջին շրջանին հայ-եգիպտական բարեկամութեան եւ տարաբնոյթ կապերու զարգացման արդիւնքն ու վկայութիւնն է:

Նշենք որ մրցոյթին մասնակցած են 46 երկիրներէ՝ 181 նկարիչներ, 348 գործերով:

## Գահիրէի Թեմական Ժողովին Կողմէ Բարերարներ Հռչակուած

Այսու հաճոյքով կը տեղեկացնենք թէ Գահիրէի Թեմական ժողովը, ի նիստ գումարուած 6 Դեկտ. 1996-ին, քննելով Տիկին Նուրիկ Զամպաքեանի նուիրատուութիւնը հանգուցեալ իր երկու եղբայրներուն անունով, յօգուտ ազգային վարժարաններու հայագիտական առարկաներ ուսուցանող հայ ուսուցիչ եւ ուսուցչուհիներու, որոշեց միաձայնութեամբ Ազգային բարերարներ հռչակել իր յաւէտ ողբացեալ երկու եղբայրները

### Մկրտիչ եւ Յարութիւն Սարեանները

Սոյն նուիրատուութեան մանրամասնութիւնները, մամուլի միջոցաւ պիտի տեղեկացուին, Թեմական ժողովի սոյն նիստի պաշտօնական հաղորդագրութեան մէջ, որը շուտով պիտի հրատարակուի Եգիպտահայ մամուլին մէջ:

ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ

ՎԱՏԻԿԱՆ

## ԳԱՐԵԳԻՆ Ա. ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ ԱՌԱՋԻՆ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՊՕՂՈՍ Բ. ՊԱՊԻՆ ՀԵՏ

Ամենայն Հայոց Կաթողիկոս Գարեգին Ա., Երեքշաբթի, 10, Դեկտեմբերին հնգօրեայ պաշտօնական այցելութեամբ Հռոմ ժամանեց, ընդառաջելով Հռոմի քահանայապետ Յովհաննէս Պօղոս Բ. Պապի հրաւէրին:

Վեհափառ Հայրապետը զինք դիմաւորելու եկած պատկառելի շքախումբի մը ընկերակցութեամբ, Չիամբինօ օդակայանէն առաջնորդուեցաւ Վատիկանի Սուրբ Մարթա հիւրանոցը:

Կէսօրէ ետք ժամը 4-ին, Վեհափառ Հայրապետը իր շքախումբով այցելեց Ս. Պետրոս Եկեղեցի, յարգանք մատուցելով Պետրոս Առաքեալի, Յովհաննէս 23-րդ եւ Պօղոս 6րդ պապերու շիրիմներուն:

Երեկոյեան ժամը 6.30ին, Յովհաննէս Պօղոս Բ. իր պալատին մէջ ընդունեց Հայոց Կաթողիկոսը եւ շքախումբը:

Հռոմի քահանայապետը նախ 20 վայրկեան առանձին տեսակցութիւն ունեցաւ Գարեգին Ա.ի հետ, որմէ ետք Վեհափառ Հայրապետը մի առ մի պապին ներկայացուց իր շքախումբին անդամները:

ԷՋՄԻԱԾԻՆ

## Աբեղայական Ձեռնադրութիւն Գահիրէի Հոգեւոր Հովիւ Տ. ԳԱԼՈՒՍՏ ԽՉԿ. ՔՀՆՅ. ԴԱՐԲԻՆԵԱՆԻ

Անցեալ Ուրբաթ 13 Դեկտեմբերին, Ս. Էջմիածինէն վերադարձաւ Հոգեշնորհ Տ. Գալուստ Աբեղայ Դարբինեանը: Ան աւելի ամիս մը առաջ մեկնած էր Ս. Էջմիածին, ստանալու համար «Օրնութիւն Աբեղայի» կարգը: Այս առթիւ, Մայր Աթոռ Ս. Էջմիածնի պաշտօնաթերթ «Լուսաւորիչ» երկշաբաթաթերթի՝ Նոյեմբերի 2-րդ թիւին մէջ, անդրադառնալով 25 Նոյեմբերին տեղի ունեցած չորս հոգեւորականներու աբեղայական ձեռնադրութեան մասին, կը գրէ.

«Երեկոյեան ժամերգութիւնից յետոյ կատարւում է «Օրհնութիւն աբեղայի» կամ «Օրհնութիւն վեղարի» կարգը: Եգիպտոսից ժամանած էր Տ. Գալուստ Քհն. Դարբինեանը, որն իր երեցկնոջ մահւանից յետոյ ցանկացել էր դառնալ կուսակրօն քահանայ, եւ Եգիպտոսի հայոց առաջնորդ Տ. Զաւէն Արքեպս. Չինչինեանի տնօրինութեամբ եւ Վեհափառ Հայրապետի արտօնութեամբ

4

